ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ
ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ



# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

ԲԱԶՄԱՀԱՏՈՐՅԱԿԻ ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

*Աղայան Ծ. Պ., Առաքելյան Բ. Ն., Գալոյան Գ. Ա.,
Երեմյան Ս. Տ., Խաչիկյան Լ. Ս., Հակոբյան Ա. Մ.,
Հովհաննիսյան Ա. Գ., Ներսիսյան Մ. Գ.*

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ · 1974

# ՀԱՏՈՐ V

# ՀԱՅԱՍՏԱՆԸ 1801-1870 ԹՎԱԿԱՆՆԵՐԻՆ


ՀԱՏՈՐԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

*Աղայան Ծ. Պ. (պատասխանատու խմբագիր),*
*Ավետիսյան Վ. Ա., Գրիգորյան Զ. Տ., Դիլոյան Վ. Ա.,*
*Ղազարյան Հ. Մ. (պատ. խմբագրի տեղակալ), Ներսիսյան Մ. Գ.*

# Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն

## ԲԱԺԻՆ Դ

## ՀԱՅԱՍՏԱՆԸ 1830—1860-ԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԻՆ



## ԲԱԺԻՆ Դ

## ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԸ

## ԲԱԺԻՆ Ե

## ՀԱՅԿԱԿԱՆ ԳԱՂԹԱՎԱՅՐԵՐԸ

### Գլուխ տասնմեկերորդ.— Հայկական գաղթավայրերը 1800—1870 թթ.



## ԲԱԺԻՆ Զ

## ՄՇԱԿՈՒՅԹԸ (1801—1870)

### Գլուխ տասներկուերորդ.— Լուսավորություն, գիտություն, մամուլ (Գ. Խ. Ստեփանյան)



### Գլուխ տասներեքերորդ.— Գրականություն և արվեստ

# ԱՌԱՋԱԲԱՆ

Հայ ժողովրդի պատմության բազմահատորյակի հինգերորդ հատորն ընդգրկում է պատմական խոշոր իրադարձություններով և բախտորոշող անցքերով հարուստ ժամանակաշրջան՝ 1801—1870 թվականները։

Դարասկզբին հայ ժողովուրդը թևակոխեց իր տնտեսական և քաղաքական կյանքի զարգացման նոր շրջանը։ Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին, որը սկսվեց 1801 թ. և ավարտվեց 1828 թ., առաջադիմական խոշոր քայլ էր և կարևոր շրջադարձ հայ ժողովրդի կյանքում։ Պատմական այդ ակտով հայ ժողովրդի մի հատվածն ազատագրվեց պարսկական դաժան տիրապետությունից. դրանով.իսկ կանխվեց նրան սպառնացող ձուլման և ֆիզիկական բնաջնջման վտանգը։ Շուրջ 140 հազար հայեր գաղթելով Պարսկաստանից և Արևմտյան Հայաստանից, բնակություն հաստատեցին Արևելյան Հայաստանում և Անդրկովկասի տարբեր շրջաններում։ Փոխվեց երկրի դեմոգրաֆիական քարտեզը։ Արևելյան Հայաստանը դարձավ հայ ժողովրդի համահավաքման հիմնական կենտրոնը, ուր նպաստավոր պայմաններ ստեղծվեցին տնտեսական, մշակութային և հասարակական-քաղաքական կյանքի զարգացման համար։

XIX դարի 40—50-ական թվականներից սկսած, ինչպես ամբողջ Անդրկովկասի, այնպես էլ Արևելյան Հայաստանի սոցիալ-տնտեսական կյանքում տեղի են ունենում կարևոր իրադարձություններ։ Խորանում է ֆեոդալական հարաբերությունների ճգնաժամը, վերանում է երկրամասի տարբեր նահանգների միջև եղած ինքնապարփակվածությունը, քաղաքները դառնում են աշխուժացող առևտրի և արդյունագործության կենտրոններ։ Աստիճանաբար զարգանում են բուրժուական հարաբերությունները։

Տնտեսական զարգացման նոր ընթացքն ավելի է սրում դասակարգային ներհակությունները քաղաքում և գյուղում։ Քայքայվում է արհեստագործությունը։ Բողոքի ելույթներ են տեղի ունենում համքարությունների իրավունքները սահմանափակող օրենքների դեմ։ Միաժամանակ ծավալվում են գյուղացիական շարժումները։ Արևելյան Հայաստանում ուժեղացող սոցիալական պայքարն աստիճանաբար միահյուսվում է համառուսական հեղափոխական-դեմոկրատական շարժման հետ, դառնում նրա բաղկացուցիչ մասը։

Ռուսական հեղափոխական մտքի ներգործությամբ հայ աշխատավորական մասսաները մեծ առաջընթաց ապրեցին, իսկ դարավերջին լենինյան դրոշի ներքո բարձրացող բանվոր դասակարգի՝ աշխարհը վերափոխող պայքարի մասնակիցը դարձան։

Հայ ժողովրդի գերակշռող մասը կազմող արևմտահայ հատվածը շարունակում էր մնալ Օսմանյան կայսրության ծանր լծի տակ։

Սուլթանական ռազմա-ֆեոդալական կարգը, կառավարման վայրագ մեթոդը, ազգային ճնշումներն ու կրոնական խտրականությունը, տնտեսական

կողոպուտն ու հարստահարումները, փաշաների անզուսպ կամայականությունները կատարյալ իրավազրկության էին հասցրել հայ ժողովրդական զանգվածներին։ Ֆիզիկական բնաջնջման վտանգը դամոկլյան սրի նման կախված էր մնում հայ ժողովրդի գլխին։

Սուլթանների ինչպես 1839 թ., այնպես էլ 1856 թ. ռեֆորմները՝ Թանզիմաթը, մնաց որպես սոսկ թղթի կտոր։ Արևմտյան Հայաստանի գավառներում շարունակվում էին քաղաքական սարսափը, ազգային ճնշումները և հարստահարությունները, ջարդերի ու բացարձակ կողոպուտների քաղաքականությունը։

1850—60-ական թթ. ուժեղացան ազգային-ազատագրական շարժումները Օսմանյան կայսրության մեջ։ Սերբերի, չեռնոգորցիների, հույների, ալբանացիների, արաբների հետ միասին Թուրքական բռնապետության դեմ ապստամբության դրոշ պարզեցին նաև արևմտահայ զանգվածները Զեյթունում, Վանում, Մուշում, Ջարսանջակում և այլուր։ Ազգային-ազատագրական այդ շարժումները, և, մասնավորապես Զեյթունի 1862 թ. ապստամբությունը լայն արձագանք գտան հայ իրականության մեջ, այդ թվում և աշխարհով մեկ սփռված հայ գաղթօջախներում։ Ինչպես 1850—60-ական թթ., այնպես էլ հետագա տասնամյակների հայ ազատագրական պայքարի հիմնական շարժիչ ուժը աշխատավորական զանգվածներն էին՝ գյուղացիությունը և արհեստավորությունը։

Աշխատավոր մասսաների սոցիալական ազատագրության ու ազգի լուսավորության հարցերը և վերջապես այն, թե ի՞նչ ճանապարհով պետք է ապագայում ընթանա հայ ժողովուրդը, դառնում են ժամանակի հայ հասարակական-քաղաքական մտքի քննարկման հրատապ և կարևորագույն խընդիրները։ Եթե անցյալում հայ հասարակական-քաղաքական գործիչների մի մասը հույսեր էր կապում արևմտյան տերությունների օգնության հետ, ապա այս դարաշրջանում, հաշվի առնելով բալկանյան ժողովուրդների ազատագրական պայքարի փորձը, Մաձձինիի և Գարիբալդիի գլխավորած իտալական ժողովրդի պայքարը, ինչպես նաև 1848 թ. հեղափոխության բուռն ընթացքը Արևմտյան Եվրոպայի երկրներում, կարևոր տեղ է տրվում ժողովրդական լայն շարժումներին, դեմոկրատական-հեղափոխական պայքարին։ Նման պայմաններում էլ ձևավորվում են հայ հասարակական-քաղաքական հոսանքները, որոնցից յուրաքանչյուրն, առաջնորդվելով յուր դասակարգային շահերով, առաջադրում է իր քաղաքական ծրագիրը և նրա իրագործման ձևերն ու մեթոդները։

Այդ հոսանքներից կղերա-ֆեոդալականը կառչած մնալով հնին, պաշտպանում էր ֆեոդալական-կալվածատիրական կարգը և կրոնի դոգմաները։ Նա գտնում էր, որ գրաբարը պետք է անսասան մնա։ Այդ հոսանքին որոշ հարցերում հակադրվում էին ազգային-պահպանողականները, սակայն, տընտեսական կյանքի առաջընթացը, բուրժուական հարաբերությունների զարգացումն ու լուսավորության տարածումը դուրս էին մղում հին դոգմաները և դրանց պաշտպան կղերա-ֆեոդալական հոսանքը։ Ձևավորվում է լիբերալ-բուրժուական հոսանքը, որը խթանում է բուրժուական լուսավորության և ժողովրդին հասկանալի աշխարհաբար լեզվի արմատավորմանը։ Սոցիա-

լական կյանքի վերափոխման, հատկապես ճորտատիրական կարգերի վերացման գործում այդ հոսանքը որդեգրում է բուրժուական-ռեֆորմիստական ծրագրեր։ Գոյություն ունեցող կարգերը հեղափոխական ճանապարհով վերափոխելու ծրագիր է առաջադրում հեղափոխական-դեմոկրատական հոսանքը, որի առաջնորդ Միքայել Նալբանդյանը ջանում է ոչ միայն կամրջել արևելահայ և արևմտահայ սոցիալական, ազգային-ազատագրական պայքարը, այլև այդ շարժումները կապել համառուսաստանյան ու համաեվրոպական հեղափոխական մարտերի, սոցիալ-տնտեսական արմատական փոփոխությունների հետ։

Առաջադիմական մտավորականության մտահոգության առարկա է դառնում ազատագրական, հայրենասիրական գաղափարների պրոպագանդումը։ Ձևավորվում է ազգային-ազատագրական շարժման գաղափարախոսությունը, տարատեսակ դեմոկրատական գործիչները առաջադրում են «ամեն ինչ հայրենիքի համար» նշանաբանը։ «Տարակույս չկա,— գրում է Մ. Նալբանդյանը,— որ մարդկության պատմության մեջ, ոչ մի ժամանակ, այնպես սաստիկ և որոշակի երևեցած չեն ազգությունքը, ինչպես ներկայումս։ Ազգությունը ասես թե դարձել է մի ամենօրյա հաց, առանց որին չէր կարելի ապրել. մի էլեկտրականության պես բան, որ փայլակի շուտությամբ տարածվում է զանազան ազգության անդամների մեջ։ Այս բանի խմորը ընկնում է և մեր ազգի մեջ և մեզանում լսվում են ձայներ և մեր մեջ սկսում է բաբախել մի կենդանի սիրտ»[1]։

Այդ ժամանակաշրջանում ձևավորվեց հայ աշխարհաբար լեզուն և՛ արևելահայ և՛ արևմտահայ հատվածներում։ Գրական նոր շարժումը զարգացման աննախընթաց վերելք ապրեց։ Տպագրվեցին աշխարհաբար բազմաթիվ պարբերականներ, որոնց միջոցով գրավոր խոսքը տարածվելով լայն զանգվածների մեջ, մեծ արժեք ստացավ, համախմբող ու միավորող դեր կատարեց։

XIX դարի 50—60-ական թթ. մեծ թափ ստացավ ազգային ուժերի կոնսոլիդացիան, որն իր արտահայտությունը գտավ արևելահայերի և արևմտահայերի մշակութային ու գաղափարական կապերի ուժեղացման, դրականության, պարբերական մամուլի և դպրոցի զարգացման, մշակույթի նոր օջախներ ստեղծելու, լուսավորական շարժման և հասարակական այլ երևույթների մեջ։

Անհրաժեշտ պայմաններ ստեղծվեցին հայ բուրժուական ազգի ձևավորման համար։ Մեծ առաջընթաց նկատվեց հատկապես հայ ժողովրդի տնտեսական կյանքի, մշակույթի և հոգևոր կերտվածքի ընդհանրության ասպարեզում։

Հայ բուրժուական ազգի ձևավորմանը զուգընթաց նոր թափ ստացավ ազգային-ազատագրական շարժումը, որն ընդունեց համազգային ձև և համադեմոկրատական բովանդակություն։ Հայ ժողովուրդը դարեր շարունակ պայքար մղելով օտար զավթիչների դեմ, պաշտպանել է իր հայրենիքը և կառչած մնացել մայր հողին։ Սակայն տարբեր ժամանակներում բնակչության մի մասը պատմական դաժան դեպքերի բերումով ցրվել է աշխարհով մեկ և այս կամ այն

---

[1] Մ. Նալբանդյան, Երկերի լիակատար ժողովածու, Երևան, 1945, հատ. 1, էջ 463։

երկրում ստեղծել գաղթօջախներ, պահպանել իր ազգային առանձնահատկությունները ու նպաստել հայ մշակույթի զարգացմանը։

Հայկական գաղթօջախներն ինքնամփոփ կյանք չեն վարել, նրանք գործոն մասնակցություն են ունեցել և զգալի դեր խաղացել հյուրընկալած երկրի տնտեսական, քաղաքական ու մշակութային կյանքի զարգացման մեջ։ Հայ գաղթօջախներում հրատարակվել են բազմաթիվ պարբերականներ, ժամանակի առաջավոր միտքը պրոպագանդող աշխատություններ։ Միաժամանակ հայ հեղինակների ուսումնասիրություններն ու պատմագիտական, փիլիսոփայական ու գրական աշխատությունները թարգմանվել են տարբեր ժողովուրդների լեզուներով և մտել համաշխարհային քաղաքակրթության գանձարանը։

Հայ գաղթօջախները էական դեր են խաղացել նաև հայ հասարակականքաղաքական մտքի զարգացման գործում։ Ուստի նրանց, և առանձնապես Ռուսաստանի, Արևելյան Եվրոպայի երկրների, Պարսկաստանի, Հնդկաստանի և Մերձավոր Արևելքի գաղթավայրերի տնտեսական, քաղաքական ու մշակութային կյանքի լուսաբանումը պատշաճ տեղ է գտել ներկա հատորում։

Հատորում ծավալուն բաժին է հատկացված նաև մշակույթին։ XIX դ. առաջին կեսին հիմնվում են նոր տպարաններ, բացվում են տասնյակ դպրոցներ։ Ժամանակի ազգային կրթության ու լուսավորության գործում հատկապես մեծ է Մոսկվայի Լազարյան ճեմարանի, Թիֆլիսի Ներսիսյան դպրոցի, Փարիզի Մուրադ-Ռափայելյան և Ջմյուռնիայի Մեսրոպյան վարժարանների խաղացած դերը։ Սկզբնավորվում է ազգային պրոֆեսիոնալ երաժշտությունը, զարգանում է գեղարվեստական գրականությունը, դրամատուրգիան, մամուլը, հրապարակախոսությունը։ Պատմագիտությունը բարձրանում է մի նոր աստիճանի, պատմա-հնախոսական և կրոնա-բարոյագիտական երկերի կողքին տեղ են գրավում պատմա-քննական ուսումնասիրությունները. հայագիտության մեջ սկիզբ են առնում գիտական նոր, առաջավոր ուղղություններ։

Հայ ժողովրդի դեմոկրատական մտքի ու մշակույթի զարգացման վրա բարերար ազդեցություն ունեցան մասնավորապես ռուսական հարուստ մշակույթն ու հասարակական-քաղաքական միտքը։

* * *

Հատորը պատրաստել է հեղինակային կոլեկտիվը. Ա. Գ. Աբրահամյան, Ժ. Հ. Անանյան, Ծ. Պ. Աղայան, Վ. Բ. Բարխուդարյան, Ջ. Տ. Գրիգորյան, Վ. Ա. Դիլոյան, Վ. Ա. Խաչատրյան, Ա. Գ. Հովհաննիսյան, Ս. Վ. Հովնանյան, Հ. Մ. Ղազարյան, Մ. Մ. Ղազարյան, Վ. Ա. Միքայելյան, Ա. Հ. Մուրադյան, Ա. Մ. Պողոսյան, Վ. Հ. Ռշտունի, Ս. Ն. Սարինյան, Գ. Խ. Ստեփանյան, Ս. Է. Քոլանջյան։

Քարտեզների հեղինակներ՝ Ս. Տ. Երեմյան, Հ. Մ. Ղազարյան։ Սխեմատիկ քարտեզների հեղինակներ՝ Հ. Մ. Ղազարյան, Վ. Ա. Դիլոյան, Ս. Մ. Դուլյան, Լ. Հ. Վալեսյան։ Քարտեզագիր՝ Հ. Ն. Գործակալյան։

Կարևոր իրադարձությունների ժամանակագրությունն ու մատենագրությունը կազմել է Հ. Մ. Ղազարյանը, իսկ ցանկերը՝ Ա. Գ. Ավագյանը։

ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

# ԱՐԵՎԵԼՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ

## 1. ՎԱՐՉԱԿԱՆ ԲԱԺԱՆՈՒՄԸ ԵՎ ՎԱՐՉԱԿԱՐԳԸ

*XIX դարի սկզբին Հայաստանը, ինչպես նաև Ադրբեջանը և Վրաստանի մի զգալի հատվածը շարունակում էին մնալ շահական Պարսկաստանի և սուլթանական Թուրքիայի տիրապետության ներքո։ Պարսկական լծի տակ գտնվող Արևելյան Հայաստանը և Անդրկովկասի մնացած շրջանները մասնատված էին ֆեոդալական բազմաթիվ մանր, կիսանկախ իշխանությունների, որոնք անընդհատ բախումների մեջ էին միմյանց հետ։ Այս ժամանակահատվածում երկրամասի վարչական քարտեզը հետևյալ պատկերն էր ներկայացնում. Քարթլիի և Կախեթի միացյալ թագավորություն, Իմերեթիայի թագավորություն, Գուրիայի, Մեգրելիայի, Աբխազիայի, Աջարիայի իշխանություններ, Ախալցխայի փաշայություն, Երևանի, Ղարաբաղի, Նախիջևանի, Գյանջայի, Ղուբայի, Շաքիի, Շիրվանի, Բաքվի և Թալիշի խանություններ։*

*Արևելյան Հայաստանի հիմնական մասը ընդգրկված էր Երևանի, Նախիջևանի և Ղարաբաղի խանությունների մեջ, իսկ հյուսիսային շրջանները՝ Լոռին, Փամբակը, Բորչալուն և Շամշադինը մտնում էին Արևելյան Վրաստանի թագավորության մեջ, և վերջինիս միացմամբ Ռուսաստանին՝ անցան սրա տիրապետության տակ։*

*Քարթլիի և Կախեթի թագավորությունը թեև պահպանում էր իր հարաբերական անկախությունը, սակայն մեծապես թուլացել էր ներքին ֆեոդալական տարընթացություններից և գահաժառանգման հարցի շուրջը թագավորական ընտանիքում ծագած տարաձայնություններից։ Ի վիճակի չլինելով սեփական ուժերով դիմագրավել արտաքին հարձակումները և լուծել ներքին միջֆեոդալական վեճերը, Վրաստանն իր փրկության ելքը տեսնում էր Ռուսաստանին ապավինելու մեջ։ Արևմտյան Վրաստանի իշխանությունները և Ախալցխայի փաշայությունը գտնվում էին թուրքական լծի տակ, թեև ներքին կառավարման հարցերում օգտվում էին որոշ ինքնուրույնությունից։*

*Անդրկովկասի խանությունները մտնում էին պարսկական պետության կազմի մեջ և ենթակա էին շահի գերագույն իշխանությանը։ Սակայն այդ խանությունները օգտվելով XVIII դարի կեսերից Պարսկաստանում ծայր առած միջֆեոդալական բախումներից, ներքին երկպառակություններից և գահա-*

կալական անվերջ կռիվներից, կարողացել էին իրենց համար գրեթե կիսանկախ վիճակ ապահովել։ Ռուսական տիրակալության տարածումը Կովկասյան լեռնապարից հարավ, հիշյալ խանությունները դրեց երկընտրանքի առաջ. դրանցից Ղուբայի խանությունը ձգտում էր միանալ Ռուսաստանին, ոմանք էլ խուսանավման քաղաքականություն վարելով, ճգնում էին պահպանել իրենց կիսանկախ գոյությունը։

Անդրկովկասում առաջնակարգ նշանակություն ուներ Երևանի խանությունը։ Հատկապես XIX դարի սկզբին Երևանի խանությունը առանձնահատուկ կարևորություն ստացավ որպես կիսանկախ սահմանագլխային կուսակալություն։ Եթե ցարական Ռուսաստանը, ցանկանալով օգտագործել Երևանի խանի «տատանումները», ձգտում էր այդ կարևոր երկրամասը խաղաղ ճանապարհով վերցնել իր հովանավորության տակ, ապա շահական Պարսկաստանը ջանում էր մեկընդմիշտ վերջ տալ Մամադ խանի և նրա ազգական Նախիջևանի նախկին Քալբալայի խանի կիսանկախական հովերին։ Վերջինս վաղուց էր վտարվել իր պաշտոնից ու ապաստանել Երևանում։ Ի վերջո, 1805 թ. Պարսկաստանի գահաժառանգ Աբաս Միրզան ձերբակալում և Պարսկաստան է աքսորում Մամադ խանին, Երևանի խանությունը հանձնելով Մեհթի-Ղուլի խանին, ապա՝ Ահմադ խանին, որին 1807 թ. փոխարինելու եկավ Հյուսեին Ղուլի խանը՝ Երևանի վերջին սարդարը։ Այս հանգամանքը հնարավորություն ընձեռեց Պարսկաստանին՝ ժամանակավորապես ամրապնդելու իր դիրքերն Անդրկովկասի այդ մասում։

Սկսած 1805 թ. Պարսկաստանը ֆինանսական զգալի միջոցներ էր տրամադրում ռազմականորեն ամրացնելու Երևանի բերդը, վարժեցնելու խանության զորական ուժերը։ Այդ նպատակով Երևան էին ուղարկվում անգլիական և ֆրանսիական զինվորական հրահանգիչներ։ Եթե մինչև այդ էլ Երևանի խաները օժտված էին սարդարի՝ այսինքն փոխարքայի և գլխավոր զորահրամանատարի անսահմանափակ լիազորություններով, ապա Երևանի խանության վերջին սարդար Հյուսեին Ղուլի խանի իրավասության շրջանակներն առավել ևս ընդարձակվեցին։ Նա դարձավ խանության միահեծան տիրակալը։ Խանության բոլոր եկամուտները մնում էին տեղում և օգտագործվում երկրի ռազմունակության բարձրացման համար։ Այս ամենը ցույց է տալիս, որ Անդրկովկասում կրած կորուստներից հետո Երևանի խանության ռազմա-քաղաքական նշանակությունը մեծանում էր Պարսկաստանի համար։

Երևանի խանությունը բաժանված էր տասնհինգ վարչական միավորների, որոնք կոչվում էին մահալներ։ Դրանք էին՝ Կրխբուլաղի, Զանգիբասարի, Գառնիբասարի, Վեդիբասարի, Շարուրի, Սուրմալուի, Դարաքենդ-Փարչենիսի, Սաաթլուի, Թալինի, Սեիդլի-Աղսախլիի, Սարդարապատի, Կարբիբասարի, Ապարանի, Դարաչիչագի և Գյոկչայի մահալները։ Մինչև 1805 թ. Երևանի խանության մեջ էր գտնվում նաև Շորագյալի սուլթանությունը, որն այդ թվականին գրավվեց ռուսական զորքերի կողմից և միացվեց Ռուսաստանին։

Վարչական վերոհիշյալ բաժանման հիմքում ընկած էր ջրաբաշխման սկզբունքը, այսինքն՝ յուրաքանչյուր մահալ կազմվում էր այն բնակավայրերից, որոնց հողերը ոռոգվում էին միևնույն գետի ջրերով։ Վարչական բաժանման

նման սիստեմը ինչպես ողջ Արևելքում, այնպես էլ Հայաստանում բխում էր արհեստական ոռոգման կարևոր նշանակությունից։ Նման բաժանումը, անշուշտ, դյուրացնում էր մահալների, իբրև ինքնամփոփ վարչական տնտեսական միավորների, կառավարումը։

XIX դարի առաջին քառորդում Նախիջևանի խանությունը անմիջականորեն ենթարկվում էր Ատրպատականի տիրակալ՝ գահաժառանգ Աբաս-Միրզայի իշխանությանը։ Նախիջևանի խանությունը ևս բաժանված էր մի քանի մահալների՝ Ալինջա-չայի, Նախիջևանի, Մավազիխաթունի, Խոքի, Դարալագյազի։

Հարևան Օրդուբադի գավառն իր հերթին կազմված էր Ագուլիսի, Դասթինի, Բելևիի, Ջանանափի մահալներից։

XVIII դարի վերջին և XIX դարի սկզբին քաղաքական խոշոր փոփոխություններ էին կատարվել Ղարաբաղի խանության ներսում։ Հայկական նախկին հինգ մելիքությունները՝ Գյուլիստանը, Ջրաբերդը, Խաչենը, Վարանդան և Դիզակը կորցրել էին իրենց կիսանկախ վիճակը։ Տվյալ ժամանակահատվածում Ղարաբաղի խանության կազմի մեջ էր մտնում նաև Ղափան-Ջանգեզուրի շրջանը։ Ղարաբաղի խանությունը ևս բաժանված էր մահալների։ Դրանք էին՝ Սիսիանի, Կապանի, Դեմուրչասահլի, Բաղաբերդի, Քյաբիրլուի, Բարգուշատի, Տաթևի, Ջիվանշիրի, Ջրաբերդի, Խուրդափարայի, Փիսիանի, Օթուզիքիի, Իգիրմիդիորտի, Կարաչորլուի, Վարանդայի, Դիզակի, Աչնանի, Ջավանշիրի, Թալիշի, Խաչենի, Մեղրու մահալները, որոնց գլուխ կանգնած էին կամ հայ մելիքներ, կամ ադրբեջանական բեկեր։

Մահալների կառավարիչներն էին միրբոլուքները կամ նաիբները, որոնց նշանակում էին սարդարը կամ խանը։ Լինում էին դեպքեր, երբ մեկ միրբոլուքի կառավարմանն էին հանձնվում մեկից ավելի մահալներ։ Միրբոլուքները հետևում էին իրենց տնօրինությանը հանձնված մահալներում տուրքերի նշանակման և գանձման գործին, լուծում էին բնակչության մեջ ծագած վեճերը, ի կատար ածում վերադաս դատաստանական վճիռներն ու որոշումները։

Երևան քաղաքը իբրև վարչական առանձին միավոր, անմիջականորեն կառավարում էր դարուղան (ոստիկանապետը), որը հետևում էր քաղաքի ներքին կարգ ու կանոնին, հսկում շուկաներին և այլն։

Հայկական որոշ շրջաններում կառավարման համար նշանակվում էին մելիքներ, որոնք օժտված էին միրբոլուքների համար սահմանված իրավունքներով։ Այսպես, հիշյալ ժամանակաշրջանում Կրխբուլաղի մահալը հանձնված էր հարյուրապետ Գաբրիել Գեղամյանին, իսկ Երևանի հայ բնակչության կառավարումը՝ Մելիք-Աղամալյաններին։ XIX դարի սկզբում Երևանում մելիք էր Աբրահամ Մելիք-Աղամալյանը։

Նշված հայ մելիքների իշխանությունը ժառանգական էր և փոխանցվում էր հորից որդուն։ Հայկական գյուղերն իրենց հերթին կառավարվում էին գյուղական մելիքների և տանուտերերի կողմից։ Այդ պաշտոնները ձևականորեն ընտրովի էին։ Ընտրությունները կատարվում էին նեղ շրջանակներում և ժամանակի ընթացքում պաշտոնները գրեթե ժառանգական բնույթ էին ստանում։ Մեծ թվով բնակչություն ունեցող գյուղերը շատ դեպքերում կառավարում էին մեկից ավելի մելիքներ կամ տանուտերեր։

Ավազակային հարձակումները՝ թալանը, կողոպուտն այն ժամանակ սովորական երևույթ էին։ Ուստի և գրեթե ամեն մի գյուղ ունենում էր զենք կրելու ընդունակ մարդկանցից կազմված ջոկատներ, որոնք հարկ եղած դեպքում զինվում էին, հետապնդում կողոպտիչներին և աշխատում ետ բերել կողոպտված գույքը, անասունները։ Այդ ջոկատները ղեկավարում էին ընտրովի յուզբաշիներ (հարյուրապետներ), որոնք վճռական ձայնի իրավունք էին ստանում համայնքին վերաբերող գործերում։

Երևանի խանությունը, սակայն, ժառանգական ավատ չէր։ Սարդարները նշանակվում էին շահի կողմից և նրա կամքով կարող էին զրկվել իշխանությունից։

Ինչպես առհասարակ հատուկ է Արևելքի բռնապետություններին, Պարսկաստանի մասը կազմող Երևանի խանության մեջ ևս «կառավարությունն ուներ երեք գերատեսչություն. ֆինանսների (սեփական բնակչության կողոպուտ), պատերազմի (սեփական և օտար երկրների կողոպուտ) և հանրային աշխատանքների (հոգացություն վերարտադրության համար)[1]։

Խանական վարչությունը գլխավոր ուշադրությունը դարձնում էր տուրքերի գանձման վրա, իսկ դեպի հարևան խանությունների ու փաշայությունների սահմանամերձ շրջանները կատարվող ասպատակությունների նպատակը ավարառությունն էր։ Սարդարի բարեհաճ լռության ներքո կողոպուտի էին ենթարկվում երկրով անցնող վաճառականական քարավանները։ Եվ քանի որ խանությունների հիմնական արտադրաճյուղը արհեստական ոռոգման վրա խարսխված գյուղատնտեսությունն էր, ուստի վերարտադրությունն ապահովելու հիմնական գրավականը ջրանցքների վերանորոգումն էր կամ նոր ջրանցքների կառուցումը, որոնց կոռի կարգով մասնակցում էր ամբողջ աշխատավոր բնակչությունը։

Սարդարը և խաները ունեին իրենց դիվանը կամ խորհուրդը, ուր մտնում էին վեզիրը և մի քանի միրզաներ։ Նրանցից յուրաքանչյուրը ղեկավարում էր կառավարման իր հոգացողությանը հանձնված բնագավառը։ Խազնադար-աղասու (գանձապետի) հսկողությանն էր հանձնված խանական գանձարանը, իսկ սանդուխտար-աղասին (ծախսարարը) հոգում էր արքունի ծախսերը. բնակչությունից ստացվող բնամթերային տուրքերը կենտրոնացվում էին ամբարդար-աղասու (շտեմարանապետի) ղեկավարության տակ գտնվող շտեմարաններում։ Դիվանի մեջ մտնում էին նաև խանական սերաֆյոլ-բեկը (զորապետը), մուհասիլը, որ կենսագործում էր խանի հրամանները և դատաստանական վճիռները, ինչպես նաև Երևանի և մյուս քաղաքների ոստիկանապետը։ Կառավարության կարևորագույն խնդիրներն էին՝ նախ և առաջ հոգալ խանական արքունիքի պետքերը, այնուհետև ղեկավարել ֆինանսական ու ռազմական գործերը և, վերջապես, իրականացնել գործադիր իշխանությունը, այսինքն՝ ի կատար ածել դատաստանական որոշումներն ու վճիռները։

Դատական ֆունկցիան հիմնականում հանձնարարված էր մահմեդական հոգևորականությանը, որն առաջնորդվում էր շարիաթի օրենքներով։ Մանր

[1] *К. Маркс* и *Ф. Энгельс*, Сочинения, т. 28, стр. 221.

վեճեր լուծելիս հաճախ օգտվում էին նաև սովորութային իրավունքի նորմերից։ Դատավարությունը կատարվում էր բանավոր։ Սարդարը, երբեմն, անձամբ լսում էր քրեական գործեր և միջամտում քաղաքացիական գործերին, մանավանդ, եթե դրանք պատկառելի եկամուտ էին խոստանում ընչաքաղց իշխանավորին։ Սարդարի ամեն մի խոսքը, որքան էլ այն ընդդեմ լիներ արդարության սկզբունքներին, վերջնական վճռի և օրենքի ուժ ուներ։ Նման դեպքերում դրպարտության զոհ դարձած հպատակները միայն խոշոր կաշառքների գնով կարող էին փրկել իրենց կյանքը կամ ունեցվածքը։ Ուստի և միամտություն կլիներ խորհել օրինականության մասին «անօրինականության երկրում», ուր խաների կամքն ու քմահաճույքը օրենք էր, և ոչ ոք ի վիճակի չէր, համարձակություն չուներ հակառակել նրանց[2]։ Ամենուր կիրառվում էին մարմնական պատիժներ՝ անդամահատում, ծեծ, ականջ կտրել, աչքերը փորել և այլն։

Պետք է նկատել, որ քաղաքացիական համեմատաբար փոքր գործերի քննարկման ու վճռահատության դեպքում քրիստոնյաները, այսինքն հայ ազգաբնակչությունը, օգտվում էին դատական որոշ ինքնուրույնությամբ։ Այդ բնագավառում իրավասությունը պատկանում էր հայոց եկեղեցուն, հոգևոր դասին, ինչպես նաև մելիքներին՝ առհասարակ, գյուղական մելիքներին և տանուտերերին՝ մասնավորապես։ Քաղաքացիական գործերի դատավարության ժամանակ հայերն առաջնորդվում էին ինչպես կանոնական, այնպես էլ սովորութային իրավունքի նորմերով, իսկ որոշ դեպքերում էլ օգտվում էին Մխիթար Գոշի «Դատաստանագրքից»։ Վիճարկելի դեպքերում վերջնական խոսքը պատկանում էր Էջմիածնի կաթողիկոսարանին։

Այն դեպքում, երբ դատական վեճը գնում էր մահմեդականի և քրիստոնյայի միջև, դատավարությունը կատարվում էր համաձայն շարիաթի։

Քրեական գործերի դատավարությունն ամբողջովին գտնվում էր մահալների կառավարիչների՝ միրբոլուքների, իսկ հատկապես կարևոր գործերինը՝ Երևանի սարդարի իրավասության ներքո։ Նրանք չէին խորշում և ոչ մի միջոցից, որպեսզի նույնիսկ արհեստականորեն մեղքը բարդեն քրիստոնյաների և սնփամ Էջմիածնի վրա։ Նման դեպքերում դատական վճիռը ելնում էր ոչ թե արդարության սկզբունքից, այլ տիրակալի տրամադրությունից ու կամքից, նրա ընչաքաղցության աստիճանից։

Վրաստանի Ռուսաստանին միացումից հետո, նրա կազմի մեջ մտնող Բորչալուի, Ղազախի, Փամբակի, Շամշադինի, ինչպես նաև 1805 թ. գրավված Շորագյալի սուլթանությունները վերանվանվեցին թաթարական ուղեմասեր։ Սրանք թաթարական անունն ստացան այն պատճառով, որ դեռևս վրացական թագավորների ժամանակ այս շրջանների կառավարումը հանձնված էր ադրբեջանական ցեղապետերին, որոնք դրա դիմաց պարտավոր էին զինվորական ծառայություն մատուցել վրացական արքունիքին։ Հետագայում այս շրջանների կառավարումը հանձնվում էր վրաց իշխաններից մոուրավներին՝ գավառապետերին։

---

2 См. *П. Огородников,* На пути в Персию и Прикаспийские провинции ее, СПб., 1878, стр. 194.

1805 թ. Ռուսաստանին միացված Ղարաբաղի խանության մեջ պահպանվեց խանական վարչաձևը, դրանով իսկ վերջնականապես խորտակվեցին Ղարաբաղի մելիքների հույսերը, որ ցարական կառավարության օգնությամբ կվերստանան իրենց երբեմնի տիրույթները և կվերականգնեն վաղեմի իրավունքները։ Այստեղ ևս, ինչպես և մնացած բոլոր խանություններում, խանը կազմում էր դիվան կամ խորհուրդ, որի մեջ մտնում էին վեզիրը, սարքյարային (գլխավորում էր ֆինանսական վարչությունը), էշիգ-աղասին (վարում էր խանի անձնական տնտեսությունը), ամիրախորը (գլխավոր ախոռապանը), սանդուխտար-աղասին, ամբարդար-աղասին և ուրիշներ։ Դիվանը խորհրդակցական ձայնի իրավունք ուներ, վճռական խոսքը պատկանում էր խանին։ 1822 թ. Ղարաբաղում ևս ստեղծվեց ռուսական վարչակարգ։

Հարկ է նշել, որ հայ ազգաբնակչության մի զգալի հատվածը ապրում էր Անդրկովկասի տարբեր մարզերում։ Հայերը բնակվում էին Վրաստանում, Շաքիի, Շիրվանի, Բաքվի, Ղուբայի խանություններում և այլուր։ Այսպես, ըստ 1818 թ. կազմված էջմիածնական նվիրակական մի ցուցակի, հայերը բնակվել են ոչ միայն Շամախի քաղաքում, այլև շրջակա 38 գյուղերում։ Հայ ազգաբնակչություն կար Նուխի քաղաքում և մերձակա 47 գյուղերում։ Առանձնապես մեծ էր հայերի թիվը Վրաստանում։ Ներսես Աշտարակեցու Վրաստանի թեմակալության տարիներին (1814—1828 թթ.) վերաբերող մի վավերագրից պարզվում է, որ Թիֆլիսում եղել է 2951 հայ ընտանիք (14532 հոգի), Թիֆլիսի գավառում՝ 704 ընտանիք (4432 հոգի), Թելավում և գավառում՝ 990 ընտանիք (5233 հոգի), Սղնախի, Գորու, Դուշեթի գավառներում՝ 3467 ընտանիք (21316 հոգի), Իմերեթիայում՝ 149 ընտանիք (895 հոգի), իսկ Ելիզավետպոլում և գավառում՝ 2044 ընտանիք (9884 հոգի)[3]։ Վրաստանում և Ելիզավետպոլում հայերը կազմում էին քրիստոնյա բնակչության շուրջ մեկ երրորդը։ Գյանջայի խանության Ռուսաստանին միացվելուց հետո (1804), երբ մահմեդական բնակչության մի մասը խույս տվեց Պարսկաստան, Ելիզավետպոլում և շրջակայքում ստվարացավ հայ ազգաբնակչությունը՝ ի հաշիվ նաև Երևանի խանության սահմաններից տարագրված հայ զանգվածների։ 1804—1807 թթ. Կարսից մեծ քանակությամբ հայեր տեղափոխվեցին և բնակություն հաստատեցին Փամբակաձորում։ Այստեղ էին բնակվում նաև Աշտարակից, Մուղնուց, Օշականից, Բյուրականից և Վաղարշապատից գաղթած բազմաթիվ հայ ընտանիքներ։

## 2. ՀՈՂԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Պարսկական տիրապետության վերջին շրջանում Արևելյան Հայաստանում տիրապետող հասարակական-տնտեսական ֆորմացիան շարունակում էր մնալ ֆեոդալիզմը՝ արևելյան ավատատիրության բնորոշ գծերով։ Օտարերկրյա նվաճողները բերել էին իրենց զարգացման աստիճանին հատուկ արտադրա-

---

3 Ա. Երիցյան, *Ամենայն հայոց կաթողիկոսությունը և Կովկասի հայք XIX դարում, մասն Ա, Թիֆլիս, 1894, էջ 139—140, Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 37, վավ. 360։*

հարաբերություններ։ Մասամբ միահյուսվելով նվաճված երկրի հասարակական-տնտեսական կյանքի զարգացման ստորին հատուկ արտադրական հարաբերություններին, դրանք ստեղծել էին բավական բարդ ու յուրատեսակ վիճակ։

Ինչպես Պարսկաստանում, այնպես էլ նրա կազմի մեջ մտնող Արևելյան Հայաստանում հողային հարաբերությունների բնագավառում ղեկավարվում էին շարիաթի սկզբունքներով, այսինքն գերիշխում էր հողի պետական սեփականությունը, այլ կերպ ասած, հողը համարվում էր երկրի վրա ալլահի փոխանորդի՝ շահի սեփականությունը։ Շարիաթի սկզբունքների համար ամուր հենարան էին ծառայում արհեստագործության և գյուղատնտեսական արտադրության միասնության վրա խարսխված համայնքները։

XIX դարի առաջին տասնամյակներում Արևելյան Հայաստանում գոյություն ունեին հողատիրության հետևյալ ձևերը՝ պետական, մուլքադարական և թիուլդարական։ Հողատիրության ամենատարածված ձևը պետականն էր։

Պետական հողեր համարվում էին բոլոր այն գյուղերի հողատարածությունները, որոնք շահի կողմից տրամադրված էին խաներին։ Երևանի խանության մեջ, օրինակ, տասնչորս մահալներում արքունական կամ պետական գյուղերը կազմել են ամբողջ գյուղերի 70 տոկոսը[4]։

Պետական գյուղերից ստացվող հարկ-ռենտան ամբողջովին մտնում էր խանի գանձարանը և ծառայում էր ինչպես խանական արքունիքի, այնպես էլ ռազմական ու պետական այլ ծախսեր հոգալու համար։ Որոշ գյուղերի գյուղացիներ պարտավոր էին մշակել արքունական այգիները և այլն։ Պետական սեփականություն էին համարվում նաև մի շարք ջրաղացներ, ջրանցքներ, իշխանատներ, շուկաներ՝ իրենց խանութներով ու կրպակներով և այլն։

Բոլոր գյուղերը բաժանվում էին երեք կարգի՝ բահրաքյարական, յարիքյարական և ռանչպարական։ Բահրաքյարական էին համարվում բնակլիմայական լավ պայմաններում գտնվող գյուղերը, որոնք ունեին համեմատաբար զարգացած տնտեսություն, մեծաքանակ անասուններ և կարող էին ավելի շատ հարկ վճարել, քան այլ, համեմատաբար աննպաստ պայմաններում գտնվող գյուղերը։

Յարիքյարական կամ կիսարարական գյուղերի բնակչությունը կազմված էր տարբեր վայրերից բերված գաղթականներից, որոնց սարդարը արտադրամիջոցներ էր տրամադրում և դրանց դիմաց վերցնում բերքի կեսը։

Ռանչպարական գյուղերի բնակչությունը լիովին ընչազուրկ էր, չուներ հող և արտադրամիջոցներ։ Գյուղացիները հողը մշակում էին՝ բերքի 2/3-ը հողատիրոջն հանձնելու պայմանով։ Սակայն նման գյուղերը Երևանի խանությունում միայն 6-ն էին։

Հողատիրության մուլքադարական ձևի էությունը հետևյալն էր. մուլքադարներն իրավունք ունեին գյուղից կամ նրա մի մասից գանձել հարկ-ռենտայի այն մասը, որը կոչվում էր մուլք և կազմում էր բերքի 1/10-ը։ Հարկ-ռենտայի իրենց հասանելիք մասը մուլքադարները ոչ թե անձամբ էին գանձում,

---

4 Խ. Ավդալբեկյան, *Հողային հարցը Արևելյան Հայաստանում 1801—1917թթ.*, Երևան, 1959, էջ 37։

այլ ստանում էին պետական հարկահավաքների միջոցով։ Մուլքադարական իրավունքը փոխանցվում էր ժառանգաբար։ Մուլքադարական իրավունքի հաստատման համար բավական էր ունենալ ժառանգման, գնման ու վաճառքի, նվիրման ու փոխանակման և նման գործարքները վկայող փաստաթղթեր։ Մուլքի տրոհվելու դեպքում այն բաժանվում էր մինչև 6 հավասար մասերի (դանգերի), այնպես, որ հնարավոր լիներ այն բաժանել ժառանգորդների կամ գնորդների միջև։

Արևելյան Հայաստանի գյուղերի ընդհանուր թվաքանակի 16 տոկոսը մուլքադարական էր, իսկ 3 տոկոսը՝ պետական-մուլքադարական։ Մուլքադարական գյուղերն էլ պետական գյուղերի նման բաժանվում էին երեք կարգի՝ բահրաքյարական, յարիքյարական և ռանչպարական։ Մուլքադարական կամ պետական-մուլքադարական գյուղեր կային տաս մահալներում, ընդ որում Կրխբուլաղի մահալում ընդամենը երկու գյուղ, որոնցից Ձլղովանը պետական-մուլքադարական էր, իսկ Ջագը՝ մուլքադարական, Սեիդլի-Ախսախլի մահալում նույնպես երկու գյուղ՝ Սերգեուլը և Ուշին էին մուլքադարական։ Մուլքադարությունը համեմատաբար տարածված էր Սուրմալուի մահալում, որտեղ 58 շեն գյուղերից 20-ը, Շարուրում՝ 8 գյուղերից 7-ը, Գառնիբասարում՝ 47 գյուղերից 25-ը և Զանգիբասարում՝ 25 գյուղերից 17-ը մուլքադարական էին։

Պատահում էին դեպքեր, երբ մուլքադարները իրենց հասանելիք մուլքը կապալով էին տալիս։ Այսպես, կապալով էին տրվում Զանգիբասարի մահալի Աղջաղշլաղ և Դամիրչի-չորլի գյուղերի, Սարդարապատի մահալի Կարխուն գյուղի, Շարուրի Աքսիբենդ, Լառուշան և Կորչիլի գյուղերի, Սուրմալուի Ջուֆաքար, Ամարաթ գյուղերի մուլքերը։

Մուլքադարական որոշ գյուղեր, որտեղ բնակություն էին հաստատել քոչվոր ցեղախմբեր, որպես հարկ վճարում էին հասույթի 7/30 մասը, ինչպես Սաաթլուի մահալի 7 գյուղերը, Գառնիբասարի մահալի Մեհրաբլի, Զոհրաբլի, Շաֆիաբադ և Կիր-Բուզավանդ գյուղերը։

Մուլքադարներից շատերն ունեին իրենց սեփական տնտեսությունը՝ այգիներ, վարելահողեր և այլն, որոնք մշակում էին անձամբ կամ վարձու աշխատանքի միջոցով։ Միևնույն գյուղում կարող էին լինել մի քանի մուլքադարներ։ Այդ դեպքում մուլքը բաժանվում էր նրանց միջև։ Որպես որևէ գյուղի մուլքի ամբողջություն վերցվում էր 6 դանգը։ Մի գյուղում մի քանի մուլքադարների առկայության դեպքում 6 դանգ մուլքը բաժանվում էր նրանց միջև, բայց ոչ հավասարաչափ։ Մի մուլքադարի կարող էր պատկանել չորս դանգ, մյուսին՝ երկուսը և այլն։

Հողատիրության մյուս ձևը թիուլդարականն էր։ Թիուլները շնորհվում էին առանձին անհատների՝ նրանց պետությանը մատուցած ծառայության դիմաց, հարկ-ռենտայից ժամանակավորապես կամ ցմահ օգտվելու իրավունքով։ Թիուլը չէր թույլատրվում ոչ գրավ դնել և ոչ էլ վաճառել, մինչդեռ մուլքի վաճառքը ազատ կերպով թույլատրվում էր։ Թիուլային գյուղերը հազվադեպ էին ժառանգական ավատներ դառնում, այն էլ ամենից հաճախ այն դեպքերում, երբ գտնվում էին տեղաբնակ հայ ազնվականության ձեռքում։ Թիուլային գյուղերը կազմում էին գյուղերի ընդհանուր քանակի տասը տոկոսը։ Սրանք հիմնականում գտնվում էին Կրխբուլաղի, Կարբիբասարի, Սուրմալուի և Գառ-

նիբասարի մահալներում։ Հայ ազնվականներից թիուլային գյուղեր ունեին Մելիք-Աղամալյանները։

XIX դարի քսանական թվականներին Աբրահամ Մելիք-Աղամալյանի որդի Մելիք-Սահակը իր տոհմին ժառանգաբար շնորհված թիուլային իրավունքով տիրում էր Կրխբուլաղի մահալի Արինջ, Էլար, Արզաքյան, Դալուլար, Գյումուշ, Բեդկիս գյուղերին։ Դրանցից միայն Էլարի կեսն էր նույն թիուլային տիրապետման իրավունքով պատկանում Աղա-Բաբա սուլթանին։ Լինում էին դեպքեր, երբ միևնույն գյուղը կարող էր կիսվել երկու թիուլդարի միջև, որոնք հավասարաչափ իրար միջև բաժանում էին հարկ-տուրքերը։

Արևելյան Հայաստանի հողատիրական սիստեմի մեջ յուրահատուկ տեղ էր գրավում էջմիածնի վանական հողատիրությունը։ Մուլքադարական և թիուլային հիմունքներով էջմիածնի վանքը ժառանգաբար տիրում էր մի շարք գյուղերի, թեպետ և ամեն մի նոր շահ պետք է հատուկ հրովարտակով՝ ռաղամով, հաստատեր այդ իրավունքը, դրա դիմաց համապատասխան վարձահատուցում ստանալով ընծայատվության կամ, ավելի ճիշտ, կաշառատվության ձևով։

էջմիածնի համար կարևոր նշանակություն ունեին այն գյուղերի բնակիչները, որոնք պարսից շահերի հրովարտակներով նրան էին հանձնված իբրև «ռայա և ամալա», այսինքն որպես հպատակներ և ծառաներ։ Այստեղ պետության բոլոր հասույթները պարսից շահերի հրովարտակներով հատկացվել են էջմիածնին և նրա հոգևորականներին, թեև երբեմն պարսկական շահերի վերանալու պահերին հափշտակվում էին ժամիշխանների ձեռքով։

1810 թ., Եփրեմ արքեպիսկոպոսի կաթողիկոս ընտրվելու կապակցությամբ, Ատրպատականի կառավարիչ Աբաս Միրզան հատուկ ռաղամ հրապարակեց, որի համաձայն հաստատվում էին էջմիածնին տրված նախկին հրովարտակներն ու արտոնությունները և շնորհվում նորերը։

Սակայն միշտ չէ, որ Աբաս Միրզայի այդ հրամանագիրն ուժի մեջ էր մնում։ Իրենց իսկ կողմից տրված արտոնությունների ու առանձնաշնորհումների խախտումներ էին թույլ տալիս խանը, նրա միրզաներն ու մյուս պաշտոնյաները ամեն քայլափոխում։ Այսպես, միայն 1814 թ., շնորհիվ Ներսես Աշտարակեցու ջանքերի, հաջողվեց Աբաս Միրզայից ռաղամ ստանալ՝ Աշտարակ գյուղը էջմիածնին վերադարձնելու մասին։ Սակայն վերադարձնելու համար որպես պարգև Հյուսեին խանը պահանջեց հազար թուման։ Այդ առթիվ 1827 թ. Ներսես Աշտարակեցին գրում էր... «...մինչև ցայսօր ոչ աթոռը կարողացավ վճարել նրան այն գումարը և ոչ էլ սարդարը կամեցավ աթոռին հանձնել այն գյուղը. և ահա 13 տարի է, ինչ էջմիածնի աթոռը վայելում է արքայորդու պատվելագույն հրովարտակը, իսկ սարդարը՝ ամբողջ գյուղը և դրանից ստացվող արդյունքները»[5]։

Չնայած Աբաս Միրզայի 1810 թ. հրովարտակի համաձայն էջմիածնի բոլոր գյուղերը և կալվածքները ազատվում էին հարկերից, սարդարը նախկին

---

[5] Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր Մաշտոցի անվ. հին ձեռագրերի ինստիտուտ «Մատենադարան» (այսուհետև՝ Մատենադարան), Կաթ. դիվան, թղթ. 45, վավ. 142բ։

սովորությամբ հարկ էր պահանջում մաղթա անվամբ՝ 400 թուման, իսկ մյուս գյուղերի բնակիչներից նույնպես 400 թումանի չափով հարկ վերցնում։

Բացի «մլքատու փեշքաշային» Էջմիածնի վանքն ուներ նաև «սեփական հողեր», որոնց մեծ մասը կենտրոնացած էր Վաղարշապատ գյուղում։ Այդ հողերում տարեկան միջին հաշվով ցանվում էր 400 սոմար (սոմարը հավասար էր 3 փթի) ցորեն, 100 սոմար գարի, 80 սոմար կտավատ, 4 սոմար քունջութ և այլն[6]։ Աշխատող ձեռքերի պակասը հաճախ էր վանքին ստիպում իր հողերը կիսարարության հիմունքներով մշակության տալ գյուղացիներին։ Այսպես, Հաջիլար գյուղի գյուղացիները էջմիածնի հանդում ցանում էին բամբակ, որից վանքը մոտավորապես 50 լիտր (1 լիտրը հավասար էր 0,3 փթի) բամբակ էր ստանում որպես վարձատրություն։ Հողերից ու այգիներից բացի, զանազան վայրերում էջմիածինն ուներ 14 ջրաղաց, մեկ բրնձահան, երեք դինգ[7]։

Փոքր չէր նաև բեռնակիր և կաթնատու անասունների թիվը։ 1813 թ. էջմիածինն ունեցել է 39 միաբան (եպիսկոպոս և վարդապետ), 31 սարկավագ և դպիր, դպրատան 33 սան, 24 հրացանակիրներ (թվանքչիներ) և զանազան այլ ծառայողներ ու պաշտոնյաներ, որոնք կերակրվում էին վանքի սեղանից։ Դրանց բոլորի թիվը հավասար էր շուրջ 300 հոգու։ Նրանք ոչ միայն կերակրվում էին վանքի հաշվին, այլև դրամական վարձատրություն էին ստանում։

Վանական տնտեսությունը վարելու, հողը և այգիները մշակելու համար էջմիածինը կիրառում էր վարձու աշխատանք։ Վարձու բանվորները կոչվում էին մշակներ. դրանց սովորաբար վարձում էին էջմիածնապատկան գյուղացիների թվից, ինչպես բուն Վաղարշապատում, այնպես էլ Օշականում և Աշտարակում։

Տնտեսությունը ըստ ճյուղերի վարելու համար կաթողիկոսը նշանակում էր զանազան պաշտոնյաների։ Այսպես, վարդապետներից մեկը նշանակվում էր տնտես, որը վարում էր ընդհանուր գործերը։ Բացի այդ նշանակվում էին նաև գործակալներ, որոնցից մեկը հետևում էր մշակներ վարձելու գործին և այգիների ու հողատարածությունների մշակման աշխատանքներին, իսկ մյուսները՝ գյուղերից պետք է հավաքեին հարկերը և տեղափոխեին էջմիածին։

Գյուղերի կառավարման համար կաթողիկոսարանը նշանակում էր դարուղա, որը և պետք է հետևեր Վաղարշապատի շուկային, չափ ու կշռին և տանուտերերի միջոցով հավաքեր տուրքերը։ Ինչ վերաբերում է ջրաղացներին, ապա դրանք մեծ մասամբ կապալով էին տրվում զանազան մարդկանց, որի դիմաց վանքը ստանում էր դրամական հատուցում։

էջմիածնի եկամուտների բազմապատկման համար նշանակալից աղբյուր էր նվիրակությունը։ Նվիրակները կաթողիկոսի կողմից առաքվում էին աշխարհասփյուռ հայ զանգվածների մոտ նպաստ հավաքելու՝ հօգուտ էջմիածնի։ Նվիրակներն իրենց նվիրակության վայրերից երեք տարին մեկ անգամ յուրաքանչյուր շնչից հավաքում էին որոշակի գումար։ Լինում էին նաև տարբեր

---

6 Նույն տեղում, թղթ. 21, վավ. 117։

7 *И. Шопен*, Исторический памятник состояния Армянской области в эпоху присоединения ее к Российской империи, СПб., 1952, էջ 680—681։

յնույթի ընծայաբերությունններ։ Դրանցից էին՝ քառասնից, հիշատակի, խոստմունք, հոգեբաժին, խաչհամբույր, աջահամբույր, մատաղ, գավազանապտուղ, փոքրավորբէք, ժամուց, պաշտոնեից անուններով նվիրատվություններ, որոնց մի փոքր մասը (գավազանապտուղ, փոքրավորբէք, ժամուց) նախատեսված էր նվիրակի և նրա սպասավորների համար, իսկ մնացյալը՝ մայր աթոռի։

Նվիրակները էջմիածնի, աշխարհասփյուռ հայ զանգվածների և անգամ օտար պետությունների միջև մի տեսակ հասարակական և քաղաքական հարաբերությունները շաղկապող օղակ էին։ Նրանք հարուստ տեղեկություններ էին հաղորդում այս կամ այն երկրում ծվարած հայ ազգաբնակչության կացության մասին, նրանց կապում էին էջմիածնի հետ, կենդանի էին պահում ազգային ավանդությունները, պայքարում էին կրոնափոխության փորձերի դեմ և շատ դեպքերում ջանքեր թափում թուլացնելու հալածանքներն ու ճնշումները հայերի նկատմամբ, հատկապես Արևմտյան Հայաստանում։

Նվիրակներից բացի կային նաև նպաստահավաքներ կամ խմդադչիներ, որոնց պարտականությունն էր բնամթերքով նպաստներ հավաքել հօգուտ էջմիածնի։ Սրանք հատկապես ուղարկվում էին Արևելյան Հայաստանի, ինչպես նաև Վրաստանի ու Արևմտյան Հայաստանի սահմանամերձ շրջանները, որտեղից դյուրին էր անասուններ, ցորեն, գարի, աղ, յուղ և այլ մթերքներ հավաքելն ու տեղափոխելը։

Նվիրակության ինստիտուտի հետ սերտորեն առնչվում էին էջմիածնի առևտրա-վաշխային գործառնությունները։ Նվիրակների հավաքած դրամական եկամուտների հիման վրա էջմիածինը կառուցում էր իր առևտրա-բանկային գործարքները։ Այդ գումարները, որոնք հիմնականում հավաքվում էին հայկական գաղթավայրերից և Արևմտյան Հայաստանի հայկական թեմերից, նվիրակները ստացականով հանձնում էին, այսպես կոչված, «վեքիլներին»՝ առևտրական աշխարհիկ գործակալներին ի պահ։ Վերջիններս շրջանառության մեջ դնելով դրանք, ստացված շահույթը ուղարկում էին էջմիածին։

Վեքիլները սովորաբար կարգվում էին հարուստ վաճառականների թվից, որոնց հարստությունը և գրաված դիրքը կասկած չէին հարուցում։ Այսպես, Բայազետում գործակալ էր նշանակված Հակոբ աղա Արծրունին, Երևանում՝ աղա Խաչատուրը, Կարինում՝ աղա Կետիկյանը և այլն։ Սրանք բոլորն էլ խոշոր վաճառականներ էին և նրանց ապրանքաշրջանառությունը մեծ գումարների էր հասնում։

էջմիածինը հասույթներ էր ստանում նաև հայկական երկրներում ունեցած իր կալվածքներից ու մուլքերից, որոնք որպես հոգեբաժին նրան էին կտակում հավատացյալները։ էջմիածինը բավական ընդարձակ կալվածներ և մուլքեր ուներ Վրաստանում, Արևմտյան Հայաստանում և Օսմանյան կայսրության մեջ մտնող այլևայլ գավառներում։

Վրաստանում էջմիածնի վանական վիճակին պատկանող ազգաբնակչությունը կազմում էր 2646 ծուխ, երկու սեռի 15607 շնչով, որոնցից 145 ծուխ, ճորտեր էին։ Վրաստանում ունեցած իր բոլոր շարժական և անշարժ կայքե-

րից էջմիածինն ստանում էր մոտավորապես 148 ռուբլի արծաթ, տասնմեկ փութ մոմ[8]։

Այս ամենից բացի, էջմիածինն իր վիճակների բնակչությունից ստանում էր նաև զանազան «կամավոր» տուրքեր, որոնք տարբեր անուններ ունեին՝ սրբադրամ, աթոռահաս, հոգեբաժին, պտղի և այլն։

Արևելյան Հայաստանում սարդարական կառավարչության վերջին տարիներին էջմիածնի և հայկական մյուս վանքերի տնտեսական վիճակը գնում էր դեպի քայքայում՝ հետզհետե ուժեղացող բռնությունների և կեղեքումների հետևանքով։

## 3. ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ. ԳՅՈՒՂԱԿԱՆ ՀԱՄԱՅՆՔԸ

XIX դարի սկզբին Արևելյան Հայաստանում տնտեսության հիմնական ճյուղը գյուղատնտեսությունն էր, որի զարգացմանն արգելակում էին հետամնաց ֆեոդալական հարաբերությունները, աշխատանքի նախնական գործիքները, հողի մշակման հնամենի եղանակը։ Տարածված էր հողի մշակման եռադաշտային սիստեմը, որը դեռ ոչ բոլոր վայրերում էր կիրառվում։ Արարատյան դաշտում, որտեղ հողը բերրի էր, կիրառվում էր ցանքատեսակների փոփոխման եղանակը։

Գյուղատնտեսական արտադրության հիմնական գործիքը, որ օգտագործվում էր հողը վարելու համար, արորն էր։ Միայն խոշոր և ունևոր տնտեսությունները էին ի վիճակի գութան օգտագործել։

Ցանելու և հնձի գործիքները նույնքան նախնական էին։ Հնձի ժամանակ օգտագործում էին գերանդի և մանգաղ։ Հացահատիկը կալսելու համար օգտագործվում էր կամ, իսկ հատիկը դարմանից առանձնացնում էին փայտե լայն թիակների միջոցով՝ դարմանը քամուն տալով։

Այս պայմաններում հնարավոր չէր բարձր բերք ստանալ։ Հացահատիկային կուլտուրաների՝ հատկապես ցորենի և գարու բերքատվությունը հիմնականում կազմել է մեկին երեք-չորս, հազվադեպ մոտեցել է հինգի, բրնձինը՝ մեկին հինգ կամ վեց, կորեկինը՝ մեկին վեց-յոթ[9]։

Լեռնային շրջաններում, որտեղ գրեթե արհեստական ոռոգում չէր կատարվում, բերքն ամբողջովին կախված էր բնության ողորմածությունից։ Երաշտի, կարկուտի, մորեխի և բազմաթիվ այլ տարերային աղետների հանդեպ անզոր էր հողագործը։ Գյուղատնտեսության անկումը պայմանավորված էր նաև երկրի քաղաքական կացությամբ։ Զանգվածային արտագաղթերի հետևանքով երկրի բնակչության մի զգալի մասը թողնում էր հայրենի բնակավայրերը և անցնում հարևան երկրները։ Այնուհետև, Արևելյան Հայաստանում հաճախակի տեղի ունեցող ռազմական գործողությունների հետևանքով մեծամեծ ավերածություններ էին լինում, բազմաթիվ շեն գյուղեր, այգիներ ու անդաստաններ ոչնչանում էին։ Խիստ տուժել էին Վաղարշապատը, Աշտարակը, Եղվարդը, Մաստարան, Թալինը, Ջաֆարաբադը, Չարբախը և մյուս, համեմատաբար

8 Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 39, վավ. 335։

9 Նույն տեղում, թղթ. 31, վավ. 187։

մեծ գյուղերը, իսկ բազմաթիվ մեծ ու փոքր գյուղեր իսպառ ջնջվել էին երկրի երեսից։ Քաղաքական տեական երերում կացությունը Արևելյան Հայաստանում ազգաբնակչությանը շունչ քաշելու և քայքայված տնտեսության վերաշինությանը ձեռնարկելու հնարավորություն չէր տալիս։

«...Շրջապատի մեռած պատկերը ավելացնում էր մեր այն տպավորությունը, թե մենք մի անմարդաբնակ ամայության մեջ ենք գտնվում։ Երկրի ամեն կողմը ցրված նախկին բազմամարդ բնակչության անբնակ հետքերը՝ համեմատելով ամեն տեղի ներկա բացարձակ ամայության հետ, ես զգում էի, թե ամենամռայլ ճանապարհն էր այս իմ անցած բոլոր մյուս տեղերից։ ...Այդ ամայությունները պիտի օգտագործվեն մարդկանց կողմից, մինչ սրանցից մարդիկ վտարված են, բազմամարդ երկիրը վերածելով անապատի։ Գրեթե իմ անցած ամբողջ ճանապարհը այս վշտառիթ նկարագիրն ուներ. փաստերը սփռված էին ամենուրեք, թե այստեղ ապրում էր երբեմն մի բարգավաճ ժողովուրդ, հիմա սրբված երկրի երեսից»[10],— գրում էր այդ ժամանակաշրջանում Հայաստան այցելած անգլիացի ճանապարհորդ Քեր Փորթերը։

Գյուղատնտեսության քայքայված վիճակը, աշխատող ձեռքերի պակասը անհանգստացնում էր խանական վարչությանը, քանի որ բերքատվության անկման և ցանքատարածությունների կրճատման պատճառով նվազում էին պետական եկամուտները։ Հատկապես ծանր էր Սարդարապատի մահալի վիճակը, որտեղ բնակչությունը սակավ էր։ Այդ նկատառումներով էր, որ 1821 թ. պարսկա-օսմանյան պատերազմի ժամանակ մեծ քանակությամբ հայեր Բայազետից ու Ալաշկերտից բռնի կերպով քշվեցին Երևանի խանություն և բնակեցվեցին հիշյալ մահալում։ Նույնը կատարվեց նաև Կարբիբասարի մահալի Եղվարդ գյուղում, որն հուշակված էր իր լավորակ ցորենով։ Սակայն այս և նման միջոցները չէին կարող որևէ չափով փոխել դրությունը, քանի որ տիրապետող ֆեոդալական հարաբերությունները, բռնապետական վարչակարգը միայն խոչընդոտում էին գյուղատնտեսության վերելքին։

Արևելյան Հայաստանի գավառներից գյուղատնտեսական արտադրությունը համեմատաբար զարգացած վիճակում էր գտնվում Արարատյան դաշտում, որտեղ հնուց ի վեր մշակվում էին գյուղատնտեսական բազմաթիվ արժեքավոր կուլտուրաներ։

Գյուղատնտեսության գլխավոր ճյուղերից էին հացահատիկային կուլտուրաները (ցորեն, գարի, կորեկ)։ XIX դարի առաջին երեսնամյակում Երևանի խանությունում միջին հաշվով արտադրվել է ցորեն՝ 75000 խալվար, գարի՝ 30000 խալվար։ Հացահատիկի արտադրության այս քանակությունը միշտ չէ, որ բավարարում էր ազգաբնակչության պահանջները, ուստի շատ հաճախ ցորեն և գարի էր ներմուծվում հարևան Բայազետի և Կարսի փաշայություններից։

Տեխնիկական կուլտուրաներից առաջնակարգ նշանակություն ուներ բամբակի մշակությունը։ Բամբակի տարեկան համախառն բերքը կազմում էր մոտավորապես 2500 խալվար (75000 փութ)։ Բամբակի մշակության հիմնական կենտրոններն էին Զանգիբասարի, Կարբիբասարի, Գառնիբասարի, Վեդիբասարի, Շարուրի, Սուրմալուի, Սարդարապատի մահալները։ Այս մահալ-

10 Հովհ. Հակոբյան, Ուղեգրություններ (1800—1820), ԺԹ դար, հ. Զ, Երևան, 1934, էջ 751։

ներում բամբակն այնքան եկամտաբեր էր, որ բոլոր փոքր ի շատե խոշոր տնտեսությունները զբաղվում էին բամբակի մշակությամբ։ 1819 թ., օրինակ, Վաղարշապատ գյուղն հազիվ 200 տնտեսություն ուներ, որոնցից 160-ը զբաղվում էր բամբակի մշակությամբ։

Ինչպես բամբակի, այնպես էլ բրնձի վաճառքի գործում սարդարի յուրացրած մենաշնորհը մեծապես արգելակում էր այս կուլտուրաների ցանքատարածությունների ընդարձակմանը և արտադրանքի աճին։ Գյուղացիներին թողնելով նրանց տնտեսական կարիքների համար անհրաժեշտ մինիմումը, իսկ հաճախ ավելի պակաս, Երևանի սարդարն իր իսկ սահմանած գներով գնում էր այդ մթերքների ողջ ավելցուկը և վերավաճառում դրացի երկրներում։ Նման պարագան գյուղացիներին զրկում էր իրենց տնտեսությունը զարգացնելու շահագրգռվածությունից և իջեցնում այդ եկամտաբեր կուլտուրաների մշակության թափը։ Եթե գյուղացիները համարձակվում էին խախտել սահմանված կարգը, և իրենց բամբակը վաճառել այլ գնորդների, ապա խանի պաշտոնյաները դաժան դատաստան էին տեսնում նրանց հետ։

Համեմատաբար զարգացած վիճակում էր գտնվում այգեգործությունը՝ հատկապես խաղողագործությունը։ Երևանի խանությունում կար 3330 այգի, որից 1473-ը Երևան քաղաքում, Նախիջևանի խանությունում՝ 541 այգի, որից 184-ը Նախիջևանում, Օրդուբադի շրջանում՝ 1386 այգի, որից 473-ը Օրդուբադում։ Այդ 5257 այգիները զբաղեցնում էին 2352 3/4 խալվար[11] տարածություն և տարեկան, միջին հաշվով, տալիս էին 6228 խալվար 84 բաթման (բաթմանը հավասար էր 0,3 խալվարի) խաղող, 5808 խալվար 63 բաթման այլևայլ տեսակի մրգեր։ Այդ բերքի մեծ մասը՝ 5161 խալվար 84 բաթման խաղող և 5130 խալվար զանազան տեսակի մրգեր[12] բաժին էր ընկնում Երևանի խանությանը։ Իսկ Երևանի խանության սահմաններում ստացվող խաղողի և մյուս մրգերի համախառն բերքի ավելի քան կեսը տալիս էին Երևանի այգիները։ Պարզ է, որ քաղաքի բնակչության հիմնական զբաղմունքն այգեգործությունն էր, ընդ որում այգիներ ունեին նաև արհեստավորները և առևտրականները։

Խաղողի մշակությունը տնտեսական խոշոր նշանակություն ուներ գյուղացիների համար։ Խաղողից նրանք գինի և օղի էին ստանում ու վաճառքի հանում։ Ինչ վերաբերում է մյուս մրգերին, ապա դրանք չորացվում էին և արտահանվում հարևան երկրները, ինչպես նաև Արևելյան Հայաստանի այն շրջանները, որտեղ կլիմայական պայմանների բերումով հիշյալ կուլտուրաները չէին մշակվում։

Արևելյան Հայաստանում գյուղատնտեսական բավական տարածված կուլտուրաներից էր բրինձը։ Դրա մշակությամբ հիմնականում զբաղվում էր Զանգիբասարի, Գառնիբասարի, Վեդիբասարի, Կարբիբասարի, Շարուրի, Սաաթլուի մահալների բնակչությունը։ Բրինձը նույնպես արտահանության կարևոր ապրանքներից էր։ Այդ պատճառով էլ սարդարական վարչության կողմից բրնձի, ինչպես և բամբակի վաճառքի նկատմամբ մենաշնորհ էր սահմանված։

---

[11] Խալվարը նաև տարածության չափ էր և հավասար էր մոտավորապես 4 օրավար հողատարածության կամ 5000 քառակուսի սաժենի։

[12] И. Шопен, նշվ. աշխ., էջ 471—472, 747—748։

Բրնձի վաճառքի մենաշնորհը խախտողները նույնպես ենթարկվում էին խիստ պատիժների և մեծամեծ տուգանքների։ Ծխախոտի մշակությունը ևս զգալի տեղ էր գրավում, մանավանդ Սուրմալուի և Զանգիբասարի մահալներում։

Գյուղատնտեսական մյուս կուլտուրաներից բավականաչափ տարածված էին հաճարը (Զանգիբասարի, Կարբիբասարի, Գառնիբասարի, Վեդիբասարի, Շարուրի, Սուրմալուի, Սարդարապատի մահալներում), քունջութը (Կարբիբասարի, Սարդարապատի, Վեդիբասարի և Սուրմալուի մահալներում), կտավատը (Կրխբուլաղի, Զանգիբասարի, Գառնիբասարի, Սուրմալուի, Կարբիբասարի, Սարդարապատի մահալներում), ոսպը, սիսեռը, սոխը և այլն։

Հողագործության զարգացման համար բացառիկ կարևորություն ուներ արհեստական ոռոգումը։ Արևելյան Հայաստանի մի շարք շրջաններում ոռոգման ջուրը նույնպիսի կենսական անհրաժեշտություն էր, ինչպես հողը։ Այդ իսկ պատճառով, խանական կառավարչությունը կարևոր խնդիր էր համարում նոր ջրանցքների կառուցումը և հների նորոգումը, մանավանդ, որ արհեստական ոռոգումից էր կախված բերքի քանակը, իսկ հարկ-ռենտան գանձվում էր ոչ թե ըստ մշակվող տարածությունների, այլ ստացված բերքի քանակի։

Ոռոգման ջրերը բաժանվում էին երկու կարգի՝ բնական և արհեստական, կամ ինչպես ժողովուրդն էր ասում, «հանած ջուր»։ Առաջին դեպքում խոսքը վերաբերում էր լճերի, գետերի, առուների, առվակների, աղբյուրների ջրերին, ինչպես նաև անձրևաջրերին և այլն։ «Հանած ջրերի» կարգին էին պատկանում արհեստական ջրամբարների՝ քյարեզների, ջրանցքների և ոռոգման այլ կառույցների միջոցով ստացվող ջրերը։

Ջրերի նման կարգորոշումը իրավական տեսակետից խիստ կարևոր նշանակություն ուներ։ Բնատուր ջուրը դիտվում էր իբրև աստծու պարգև ու, որպես այդպիսին, համարվում էր տվյալ գետի կամ լճի ջրով ոռոգվող տերիտորիայի ողջ բնակչության սեփականությունը։ Ինչ վերաբերում է «հանած ջրին», ապա այն, ընդհակառակը, կարող էր լինել ինչպես մեկ անձի, այնպես էլ քաղաքային կամ գյուղական համայնքի, որևէ հիմնարկության մասնավոր սեփականությունը։ Քյարեզների (ջրհորների) ջուրը կարող էր պատկանել այն անձանց կամ համայնքներին, որոնք իրենց միջոցներով փորել էին դրանք։ Ջրանցքներն ու առուները նույնպես կարող էին պատկանել ամբողջ համայնքների կամ համայնքների խմբի, ինչպես և առանձին անձնավորությունների։

Յուրաքանչյուր համայնք, իրավական կամ ֆիզիկական անձ իրավունք ուներ բնատուր ջրից օգտվելու, եթե հողամաս ուներ այդ ջրով ոռոգվող տերիտորիայում։ Ջրօգտագործման իրավունքը ուղիղ համեմատական էր հողակտորի չափին։ Երևանի խանությունում այդ իրավունքը սահմանվում էր, ելնելով տվյալ շրջանի կամ համայնքի ծխերի թվից։

Ջրի նկատմամբ իրավունքը բացարձակ էր, անսահմանափակ, սրբազան ու նվիրական. այն նույնիսկ սահմանափակում էր հողատիրության իրավունքը։ Ոչ ոք, լիներ դա համայնք կամ մասնավոր անհատ, իրավունք չուներ կտրել ջրի ճանապարհը, իսկ ճանապարհ տալու համար իրավունք չուներ դրամական հատուցում պահանջել։ Որոշ դեպքերում, եթե հողակտորը, որտեղով անցնելու էր առուն կամ ջրանցքը, խիստ թանկ էր տիրոջ համար, նա

կարող էր ջրին շրջանցիկ ճանապարհ տալ, բայց մերժելու իրավունք չուներ[13]։ Քանի որ առուներն ու ջրանցքները ջուր էին մատակարարում համայնքի բոլոր անդամներին, ապա վերջիններս պարտավոր էին դրանց պահպանման համար աշխատանք կատարել ու միջոցներ տրամադրել։ Ջրանցքներ կառուցելիս կամ վերանորոգելիս կիրառվում էր կոռային աշխատանք, ընդ որում դրան մասնակցում էր տվյալ վայրի բնակչության մեծ մասը։

Ջրօգտագործումը կանոնավորելու համար նշանակվում էին հատուկ պաշտոնյաներ, որոնք կոչվում էին միրաբներ։ Նրանց հսկողության ներքո էին գտնվում ամբողջ մահալի ջրերը, նրանք պետք է հետևեին, որպեսզի գյուղական տարբեր համայնքների միջև ջուրը հնարավորին չափ հավասար բաժանվեր։ Ջրգողության, ջրի հերթի խախտումների դեմ միջոցներ պիտի ձեռնարկեին և առուների, ջրանցքների մաքրման, ջրօգտագործման վերաբերյալ ծագած զանազան վեճերը նույնպես պետք է լուծեին միրաբները։ Իսկ այդպիսի վեճերը երբեմն հասցնում էին նույնիսկ մարդասպանության։

Գյուղերում ջրաբաժանության գործը կարգավորում էին ջուվարները, որոնք ենթարկվում էին միրաբներին։ Ջուվարները պետք է հոգային ջրի պահպանման մասին, հատկապես նրա ակունքային մասում, հերթով բաժանեին ջուրն ու հսկեին հերթի պահպանումը։ Մեծ գյուղերում ջուվարներն ունեին օգնականներ, որոնք կոչվում էին կարաջուվարներ։ Միրաբների նման ջուվարներն էլ վարձատրությունն ստանում էին բնակչությունից։

Ջրի քանակությունը չափելու գործող հիմնական միավորը բահն էր, այսինքն բահի ծավալով բաց թողնված ջրի քանակությունը, որով մեկ մարդ միայնակ կարող էր ջրել որոշ հողատարածություն։

Արևելյան Հայաստանի տնտեսության կարևոր ճյուղերից էր անասնապահությունը։ Բարձրադիր լեռնային վայրերը շատ նպաստավոր էին անասնապահության զարգացման և հատկապես մանր եղջերավոր անասունների բուծման համար։ XIX դարի սկզբին անասնապահությունը զարգացավ առանձնապես ուժեղ թափով, ավելացավ անասունների գլխաքանակը, որովհետև Հյուսեին Ղուլի խան սարդարը երկրի հյուսիսային լեռնային շրջաններում բնակեցրեց քոչվոր ադրբեջանական և քրդական անասնապահ բազմաթիվ ցեղեր, որոնք իրենց հետ բերեցին մեծ թվով անասուններ։

Մարգագետինները համարվում էին համայնական սեփականություն։ Ամռան ամիսներին անասունների հոտերը քշում էին դեպի Կրխբուլաղի, Գյոկչայի, Ապարանի, Դարաչիչագի, Թալինի, Սուրմալուի, Սեիդլի-Ախսախլիի, Դարաքենդ-Փարչենիսի, Դարալագյազի, Գառնիբասարի և Վեդիբասարի մահալների լեռնային արոտավայրերը։

Ցրտերն ընկնելուն պես անասուններն իջեցնում էին ձմեռանոցները։

Գյուղացիական յուրաքանչյուր տնտեսություն որոշ քանակությամբ անասուններ էր պահում իր կարիքների համար՝ կաթ, պանիր, յուղ, մածուն և այլ կաթնամթերքներ պատրաստելու նպատակով։ Տնտեսություններն ունենում էին խոտհարքեր՝ ձմեռը անասուններին կերով ապահովելու համար։

---

[13] «Свод материалов по изучению экономического быта государственных крестьян Закавказского края», т. I, Тифлис, 1887, стр. 137—138.

Անասնապահությունը տալիս էր արհեստագործության համար անհրաժեշտ բուրդ, կաշի, մորթիներ, որոնց մի մասը մշակվում էր տնային պայմաններում, իսկ մյուս մասը՝ արհեստանոցներում։

* * *

Հնուց ի վեր Հայաստանում գյուղական հողերը իրավական տեսակետից գտնվում էին համայնքի տնօրինության ներքո։ Յուրաքանչյուր գյուղական համայնք, որ կազմում էր առանձին տնտեսական և վարչական միավոր, պարբերական հողաբաժանումների միջոցով հողերը բաշխում էր իր անդամների միջև։

Համայնքի հիմնական միավորը՝ «երդը», «ծուխը», ընտանիքն էր։ Գյուղական գերդաստանները, ըստ իրենց թվաքանակի, բաժանվում էին հինգ կարգի՝ համփաների, երեք-պճեղների, կիսանների, պճեղների և կես-պճեղների։ Համփաներն այն ընտանիքներն էին, որոնք բաղկացած էին 16 շնչից, երեք պճեղները՝ 12, կիսանները, պճեղները և կես-պճեղները՝ համապատասխանաբար 8,4 և 2 շնչից։ Կես պճեղները օգտագործվում էին ոչ միայն երկու շունչ ունեցող ընտանիքներին հողաբաժին հատկացնելու համար, այլև միաժամանակ որպես հավասարեցնող միավոր և հավասարեցնող հողաբաժին։ Դա նշանակում էր, որ վեց, տասը, տասնչորս շնչից բաղկացած ընտանիքների հողաբաժիններին համապատասխանաբար միացվում էր նաև կես պճեղ։ Հողաբաժինների չափից էլ կախված էր ընտանիքի իրավական վիճակը գյուղում. մեծ հողաբաժիններ ունեցողները առավել հարուստ գյուղացիներն էին։

Իշխող համընդհանուր բնատնտեսության պայմաններում գյուղական համայնքն ինքնըստինքյան փակ տնտեսական միավոր էր, որը հիմնականում ինքն էր հոգում սեփական կարիքները։ Գյուղական համայնքի գլուխ կանգնած էին լինում տանուտերերը, անկախ այն բանից, թե նրանք ինչպես էին կոչվում՝ քյոխվա, քեդխուդա թե յուզբաշի։ Այս պաշտոնն ընտրովի էր, որը ձևական բնույթ ուներ, քանի որ այն մեծ մասամբ մնում էր միևնույն ընտանիքի անդամների ձեռքում։ Տանուտերերի հիմնական պարտականությունն էր ապահովել հարկերի հավաքումը գյուղում և լուծել մանր-մունր վեճերը։ Համայնքի ներսում գրեթե բոլոր հարցերը վճռվում էին սովորութային չգրված իրավունքի նորմերի համաձայն։

Սարդարը, միրբոլուքները և նրանց պաշտոնյաները գյուղական տանուտերերին էին դիմում իրենց տարբեր պահանջներով։ Տանուտերը պարտավոր էր հոգ տանել, որ համայնքի ներսում պահպանվեն խաղաղությունն ու հանգիստը, ժամանակին մուծվեն հարկերը։ Նա պետք է հոգար, որպեսզի տվյալ գյուղի մոտով անցնող ճանապարհները, ինչպես նաև կամուրջներն ու ջրանցքները բարեկարգ լինեն։ Նա պետք է ընդուներ, կերակրեր և անհրաժեշտ կենսամթերքներով բավարարեր խանական ծառաներին, որոնք հայտնվում էին գյուղում իրենց տերերի կարգադրությամբ։ Այդ պարտականությունները կատարելու գործում տանուտերերին օգնում էին տասնապետերը, վեքիլները և համայնքի այլ պաշտոնյաները։ Վերջիններս ամեն կերպ աշխատում էին պարհակները դնել չքավոր գյուղացիների ուսերին, նրանց հաշվին բավարարել խանական պաշտոնյաների պահանջները։ Համփաներր մեծ մասամբ կարողանում

*էին խուսափել համայնական ընդհանուր պարտավորությունները կատարելուց, մինչդեռ չքավոր գյուղացիությունը ենթարկվում էր ամեն տեսակ կամայականությունների։*

*Գյուղական համայնքն ուներ միջնորդ դատարան, որը կոչված էր «խաղաղ» ճանապարհով լուծել այնպիսի հարցեր, ինչպես ոռոգման ջրի հերթի խախտումը, ցանքսերի փչացումը, միջնակների շուրջ եղած վեճերը և այլն[14]։ Նման դեպքերում այն, որպես կանոն, կանգնում էր գյուղի ունևորների կողմը։*

*Նահապետական կացութաձևի պայմաններում համայնքի կառավարումը ամբողջովին կենտրոնացած էր համփային խոշոր ընտանիքների գլխավորների ձեռքում։ Հիմնականում նրանք էին ընտրում տանուտերերին, միջնորդներին, դահբաշիներին և այլն։*

*Հողաբաժանման հիմքում ընկած էր համփա-չարեքային սիստեմը։ Հիշյալ հինգ հողաբաժիններից որևէ մեկին տիրելու հիմք տալիս էր համայնքի անդամի ընտանիքի առկա անդամների թիվը, շատ դեպքերում նաև տնտեսական կարողությունը։*

*Ոչ համփան և ոչ էլ մյուս կարգերը կայուն մեծություններ չէին։ Նրանց տնտեսության չափը կախված էր ոչ միայն առանձին գերդաստաններում առկա շնչերի քանակից, այլև բնակչության աճից, համայնքին պատկանող հողային ֆոնդի հարուստ կամ աղքատ լինելուց։*

*Բայց միշտ չէ, որ ծխերը կազմված էին լինում զույգ շնչերից։ Այն դեպքում, երբ շնչերի թիվը կենտ էր, հնարավոր չէր նրանց ապահովել հողով՝ ըստ համփա-չարեքային սիստեմի, քանի որ այդպիսի ընտանիքները կտուժեին և դրանով իսկ կխախտվեր հողի հավասարաչափ բաշխման սկզբունքը։ Հարցը լուծելու համար սովորութային օրենքը ստեղծել էր կես-պճեղի հետ միասին նաև կենտ թիվ ունեցող ընտանիքներին մեկ շունչ ավելացնելու սիստեմը։*

*Հողաբաժանման նման կարգը կարելի էր կիրառել այն համայնքներում, որոնք հող շատ ունեին և համայնքի անդամները կարող էին թույլ տալ նման շռայլություն։ Այլ էր դրությունը այն համայնքներում, որտեղ հողային ֆոնդը գրեթե սպառված էր։ Իսկ եթե որևէ մեկից հողը կտրում էին, ապա դա երկարատև վեճերի ու թշնամանքի պատճառ էր դառնում։ Նման դեպքերում փոքր, կենտ թվով շնչեր ունեցող ընտանիքները միավորվում էին, ստեղծում «ազատ ընկերակցություններ», որոնք կոչվում էին «հարաքաշություն» և համատեղ հողաբաժին էին ստանում։ Պահանջվում էր միայն, որ այդ հարաքաշությունները շնչերի թվով համապատասխանեին կամ համփայի, կամ երեք-չարեքի, կամ կիսամի, կամ չարեքի և կամ, հակառակ դեպքում, ունենային զույգ թվով շնչեր[15]։*

*Հարաքաշությունը նպաստում էր վերացնելու հողաբաժինների կտորատումն ու շերտընդմիջությունը, որոնք, անշուշտ, բացասաբար էին անդրադառնում գյուղացիական տնտեսությունների նյութական դրության վրա։ Հարաքաշության շնորհիվ հնարավոր էր լինում փոքր ի շատե տանելի բերք ստա-*

---

[14] *С. А. Егиазаров,* Исследования по истории учреждений в Закавказьи, т. I, Казань, 1889, стр. 87—88.

[15] «Свод матерналов...», т. I, стр. 22—23.

նալ, ինչ որ դժվար կլիներ մանր հողակտորների առկայության դեպքում։ Բայց հարաքաշությունը կիրառվում էր ոչ բոլոր վայրերում։

Պետք է նկատել, որ ոչ բոլոր հողերն էին ենթակա վերաբաժանման և վերաքաշխման։ Խաղողի և մրգի այգիները, տնամերձ հողակտորները, այսինքն բոլոր ցանկապատված հողամասերը գտնվում էին գյուղացիների տիրապետության ներքո և վերաբաժանման ենթակա չէին։ Տնամերձ և ցանկապատված հողամասերը իրավական իմաստով լրիվին գտնվում էին համայնքի առանձին անդամների տրամադրության ներքո։ Դրանք դիտվում էին իբրև տերերի սեփականություն, այդ իսկ պատճառով էլ կարող էին և վաճառվել, և գնվել, և գրավ դրվել, և փոխանակվել, և նվիրաբերվել, և որպես օժիտ տրվել, եթե գյուղացին մահից հետո արու ժառանգ չէր թողնում[16]։ Այդ իսկ պատճառով էլ հարթավայրերում, որտեղ արագ թափով տեղի էր ունենում արժեքավոր հողամասերի ցանկապատումը, համայնական հողատիրությունը աստիճանաբար իր տեղը սկսում էր զիջել մասնավոր հողատիրությանը՝ ժառանգական տիրապետության հիմունքներով։ Լեռնային շրջաններում և ձորահովիտներում համայնքի սեփականությունից դուրս էին համարվում նաև այնպիսի հողամասեր, ինչպես քարերից մաքրված խոպան և ազատ հողերը։

Թեպետ XIX դարի սկզբին Արևելյան Հայաստանում տակավին շարունակում էր պահպանվել գյուղական համայնքը, որը և տնօրինում էր իրեն պատկանող հողերը, բայց նրա մեջ արդեն նկատվում էին զգալի տեղաշարժեր։ Համփա ընտանիքները գյուղում կարողացել էին իրենց համար արտոնյալ վիճակ ստեղծել, իրենց ձեռքն առնել համայնքի գործերի տնօրինումը, պարհակների կատարումը փաթաթելով չունևոր գյուղացիների վզին, իրենց սեփականելով լավագույն հողաբաժինները։ Դաշտային շրջաններում համայնքային հողատարածությունները աստիճանաբար նվազում էին, ավելանում էր օտարված հողակտորների թիվը (Կարբիբասարի, Զանգիբասարի, Գառնիբասարի, Սուրմալուի և այլ մահալներում)։

## 4. ԱՐՀԵՍՏԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ ԵՎ ԱՌԵՎՏՈՒՐ

Արևելյան Հայաստանի տնտեսական կյանքում գյուղատնտեսությունից հետո զգալի դեր էր խաղում արհեստագործությունը, որով գլխավորապես զբաղվում էին քաղաքներում։ Սակայն գյուղերում էլ կային արհեստագործության առանձին ճյուղեր, որոնք կոչված էին բավարարելու տեղական կարիքները։

Արևելյան Հայաստանի արհեստագործության գլխավոր կենտրոնը Երևանն էր։ Արհեստագործությունը բավականաչափ զարգացած էր նաև Վաղարշապատում, որտեղ զանազան մասնագիտությունների տեր արհեստավորներ հոգում էին էջմիածնի վանական խոշոր տնտեսության ամենատարբեր կարիքները։

Արևելյան Հայաստանում կային շուրջ հարյուր տեսակի արհեստներ, որոնք բավարարում էին բնակչության և խանական արքունիքի ամենատարբեր

---

16 Նույն տեղում, էջ 40—41։

պահանջները։ Դրանցից էին՝ մաշակարությունը, բրուտագործությունը, քարտաշությունը, կաշեգործությունը, դարբնությունը, ներկարարությունը, պղնձագործությունը, գինեգործությունը, վրանագործությունը, թաղիքագործությունը, դերձակությունը, մանածագործությունը, արծաթագործությունը, հյուսնությունը, թամբագործությունը, շերամապահությունը, գզրարությունը և բազմաթիվ այլ արհեստներ։ Արհեստավորներ էին համարվում նաև բաղկալները, նպարավաճառները, բաղնիսպանները, փերեզակները, երկաթավաճառները, զունաչիները, ոսկրաբույժները, ալյուրավաճառները, հացագործները և ուրիշներ, որոնց զբաղմունքը կապված էր առևտրի հետ։

Արհեստավորների ընդհանուր թիվը Երևանի խանությունում դարասկզբին կազմում էր շուրջ 5000 մարդ, այսինքն մոտավորապես յուրաքանչյուր 20 բնակչից միջին հաշվով մեկը զբաղվում էր արհեստով։ Սա, ինարկե, բացատրվում է արհեստագործության ցածր արտադրողականությամբ, նրա տնայնագործական բնույթով։

XIX դարի սկզբներին Երևանում փործել են նաև մանուֆակտուրային տիպի մի շարք ձեռնարկություններ՝ «գործարաններ»։ Դրանք էին՝ ապակու, թնդանոթաձուլական և վառոդի ձեռնարկությունները։

Ապակու «գործարանը» գտնվելիս է եղել մի կիսամութ խրճիթանման շինության մեջ, որտեղ ապակու զանգվածը ձուլվել է 25 փութ տարողությամբ մի մեծ տաշտում։ Ձուլման պրոցեսը տևել է հինգ օր, որի ընթացքում օրական 100-ից մինչև 200 կտոր յոթ տարբեր գույնի ապակիներ են ստացվել։ Արտադրանքը հիմնականում սպառվել է Երևանում[17]։

Թնդանոթաձուլական ձեռնարկության մասին հատ ու կենտ տեղեկություններ են պահպանվել, որոնք վկայում են, որ դա, ըստ երևույթին, եղել է մի սովորական զինագործական արհեստանոց, որտեղ Երևանի բերդի պաշտպանության համար փոքր քանակությամբ թնդանոթներ են պատրաստվել։ Այն իր գոյությունը դադարեցրել է 1826—1828 թվականների ռուս-պարսկական պատերազմի ժամանակ[18]։

Վառոդի «գործարանը» գտնվում էր բերդի մոտ և կառուցվել էր Կարապետ անունով մի հայ վարպետի ձեռքով[19]։ Նա էլ, նախորդ զույգ ձեռնարկությունների նման, գործել է պարսկական տիրապետության վերջին ժամանակաշրջանում։

Զնայած հանքային հարուստ պաշարների առկայությանը, Արևելյան Հայաստանում XIX դարի սկզբին, խանական կառավարման ժամանակ, լեռնագործությունը ետ էր մնում։ Հանածոներից արդյունահանվում էր միայն աղ և փոքր քանակությամբ պղինձ։ Հայտնի էին ամբողջ Անդրկովկասում հռչակված Կողբի, մասամբ նաև Նախիջևանի աղահանքերը։

Կողբի աղահանքերը գտնվում էին Արաքս գետի աջ ափին, Երևանից 40 կմ հեռավորության վրա։ Դեկաբրիստ Լաչինովը հետևյալ կերպ է նկարագրում

---

[17] *И. Шопен*, նշվ. աշխ., էջ 858—859։

[18] Հովհ. Հակոբյան, *Ուղեգրություններ*, հ. Զ, էջ 383։

[19] «Ճանապարհորդութիւն Մ. Դ. Թաղիադեանց Վ. Ս. Սարկաւագի ստ. էջմիածնի ի Հայս», հ. Ա, Կալկաթա, 1847, էջ 129, Թ. Հակոբյան, Երևանի պատմություն, հատ. III, Երևան, 1957, էջ 88—89։

*Կողբը և Կողբի աղահանքերը. «Կողբ ավանը շրջապատող սարերը անսովոր ձև ունեն. սրածայր բլուրները, ժայռերի կտրված գագաթները, զառիթափ ձորակները, ալիքավոր տեղադրությունը, այգիները գեղեցիկ և բազմազան տեսարան են ներկայացնում։ Գյուղը թեև արտաքինից աղքատիկ տեսք ունի, բայց բնակիչները պետք է որ ունևոր լինեն, որովհետև այդ շրջանում է գտնվում ամբողջ երկրամասի հարստության անսպառ աղբյուրը՝ աղի սարերը։ Աղի հանույթը կատարվում է համարյա գետնի մակերեսի վրա։ Աղի հանույթից առաջացած և վերին շերտերը պահելու համար թողնված աղե սյուներով մեկը մյուսից անջատված հսկայական դահլիճները ծառայում են որպես աշխատանքի տեղ։ Կոտրատվում են համարյա երկու փթանոց աղաքարեր, որոնք և տեղափոխվում են Վրաստան ու հարևան բոլոր շրջանները»[20]։*

*Աղի հանույթով զբաղվում էին 173 ընտանիքից (1118 շունչ) բաղկացած Կողբ գյուղի բնակիչները՝ բոլորն էլ հայեր։ Յուրաքանչյուր տղամարդ կարող էր օրական մինչև 30 աղաքար հանել, ամեն մի քարը՝ մոտ երկու փութ ծանրությամբ։ Կողբում արտադրված աղը արտահանվում էր Վրաստան և Թուրքիայի սահմանամերձ փաշայությունները։*

*Մինչև 1807 թ., այսինքն Մամադ խանի իշխանության տարիներին, Կողբում աննշան էր աղի հանույթը։ Միայն հետագայում, Հյուսեին Ղուլի խանի իշխանության օրոք, հատուկ ուշադրություն է դարձվում աղի արդյունահանմանը։ Խանը աղահանքերի կառավարումը հանձնարարում է հատուկ պաշտոնյայի՝ սուլթանի, նրան օգնականներ է նշանակում երեք միրզաների, որոնցից մեկը պարսիկ, որը պետք է վարեր արտադրության հաշիվները, և երկուսը՝ հայ։*

*Հիշյալ ժամանակաշրջանում Կողբի աղահանքերը առաջվա 300 թումանի փոխարեն սկսեցին տարեկան 1400 թուման եկամուտ տալ։*

*Աղահատները ամեն մի բեռ (մեկ բեռը 4 քար էր, կամ 7—8 փութ) աղի համար ստանում էին 16 կոպեկ, մինչդեռ սարդարին մնում էր 80 կոպեկ, պահակային ծառայությանը՝ 4 կոպեկ, միրզաներին՝ 2 կոպեկ։ Այսպիսով, գնորդը մեկ բեռ աղի համար վճարում էր 1 ռուբլի 02 կոպեկ։*

*Եթե աղը փոխադրում էին սայլով (մեկ սայլը տանում էր 25—30 քար՝ մինչև 60 փութ կշռով), ապա աղ ջարդողներն ստանում էին 1 ռուբլի, մինչդեռ սարդարը՝ 3 ռուբլի 20 կոպեկ, պահակային ծառայությունը՝ 20 կոպեկ, սուլթանը՝ 5 կոպեկ։ Այսպիսով, մեկ սայլ աղը գնորդին նստում էր 4 ռուբլի 45 կոպեկ։ Սակայն սա միայն տեղում։ Քարավան-բաշին էլ իր հերթին յուրաքանչյուր սայլից վերցնում էր 1 ռուբլի, Թալինի բերդում նստող սահմանակալ Կաֆար խանը պահակների համար վերցնում էր 20—40 կոպեկ, քարավանբաշին էլ պարսկական աստիճանավորներին. մոտ մեկ ռուբլի փեշքեշ էր տալիս և այսպիսով մեկ բեռ աղը նստում էր շուրջ 8 ռուբլի։*

*Կողբի բնակիչներն իրավունք ունեին իրենց կարիքների համար ձրի օգտագործել աղը, բացի այդ, 200 բեռ էլ վաճառել լոկ իրենց օգտին։ Բնակավայրում կար 34 բինաչա, որոնցից յուրաքանչյուրը տարեկան վճարում էր*

---

[20] Մ. Գ. Ներսիսյան, *Դեկաբրիստները Հայաստանում, Երևան, 1958, էջ 364, տե՛ս նաև* նույնի «Из истории русскс-армянских отношений», Ереван, 1956, стр. 370—371.

մոտ 8 թուման հարկ, իսկ բնամթերքով գանձվում էր ստացված բերքի 1/3 մասը։ Հարկագումարը մուծելու փոխարեն կողբեցիները հաճախ սարդարի համար աղ էին տեղափոխում Երևան։

Կողբի բնակիչները պարտավորություններ ունեին նաև էջմիածնի վանքի նկատմամբ։ Ըստ սովորության, յուրաքանչյուր տուն էջմիածնին տալիս էր երկու բեռ աղ։ Հարսանիքի կամ թաղման դեպքում տրվում էր երեք բեռ աղ[21]։ Այս նպատակով ամեն տարի կաթողիկոսի կողմից Կողբ էին ուղարկվում հատուկ նվիրակներ, որոնք հավաքում էին այդ «կամավոր» տուրքը և շատ դեպքերում իրենց իսկ՝ կողբեցիների փոխադրամիջոցներով հասցնում էջմիածնի վանքը։ Այսպիսով, էջմիածինը տարեկան ստանում էր 300—400 բեռ աղ, առանց որևէ վճարի։

Նախիջևանի աղահանքերը գտնվում էին Խոքի մահալում։ Այդ աղահանքերին կցված էր, նույն հիմունքներով, ինչպես և Կողբը, Շեյխ-Մահմուդ գյուղը։ Նրա բնակիչները բաժանվում էին վեց հոգուց բաղկացած խմբերի և աղը հանում էին վառոդով պայթեցումներ կատարելով։

Նախիջևանի աղահանքերը նույնպես կապալով էին տրվում։ Մինչև XVIII դարի վերջերը կապալի համար տարեկան վճարում էին 30-ից մինչև 300 թուման։ XIX դարի սկզբին կապալավարձը բարձրացավ մինչև 700 թումանի։ Աղահանքերը կապալով վերցնում էր մեծ մասամբ Շեյխ-Մահմուդ գյուղի մելիքը։ Աղ կտրողներն այստեղ հաճախ էին ընդվզում, խլում էին կապալառուի ձեռքից դրամը և այնքան աղ էին վերցնում իրենց համար, որքան կամենում էին[22]։

Արևելյան Հայաստանի պարսկական տիրապետության տակ գտնվող շրջաններում արդյունահանվում էր նաև պղինձ։ Պղնձի հանքավայրերը գտնվում էին Դարալագյազում և Դարաչիչագում։ Սարդարական կառավարչության վերջին տարիներին Միսխանայում բնակություն էին հաստատել մի շարք հույն ընտանիքներ, որոնք և զբաղվում էին պղնձի արդյունահանությամբ։ Բայց ինչպես պղնձի հանույթը, այնպես էլ ստացված շահը այստեղ խիստ աննշան էր և առանձին զարգացում չունեցավ։

Դարասկզբին ցարական կառավարությունը միջոցներ ձեռք առավ երկրամասի բնական հարստությունների շահագործման ուղղությամբ։ Այդ նպատակով դեռևս 1799 թ. Անդրկովկաս ուղարկվեց լեռնային գործի լավագույն գիտակներից մեկը, բերգ-կոլեգիայի անդամ կոմս Ա. Ա. Մուսին-Պուշկինը, որը զգալի գործունեություն ծավալեց Ալավերդու պղնձահանքերի և Ախթալայի արծաթահանքերի ուսումնասիրության և մշակումը կազմակերպելու ուղղությամբ։ Լեռնային գործի հաջող կազմակերպման համար Մուսին-Պուշկինին տրամադրվեց 12 հազար ռուբլի տեղական եկամուտներից։ 1802 թ. հունիսի 2-ին նա պայմանագիր է կնքում Միսխանայի (Ալավերդու) նախկին կապալառուների և հանքագործ վարպետների հետ, որի համաձայն կարգավորվելու էին հարաբերությունները պետության և պղնձահանքերը մշակողների միջև։ Պետությունը պարտավորվում էր գյուղացիական կարգախմբեր տրամադրել փայ-

---

21 Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 27, վավ. 132։

22 И. Шопен, նշվ. աշխ., էջ 834—837։

տածուխ պատրաստելու և հանքավայրերը տեղափոխելու համար։ 1803 թ. փետրվարի 3-ին պայմանագիր է կնքվում Լոռու կալվածատերերի՝ Արղության-Երկայնաբազուկների և Մելիքովների հետ, որոնք պետք է հանքավայրերը և հարակից հողամասերն ու անտառները տրամադրեին պետությանը՝ հանքերը շահագործելու համար[23]։

1816 թ. գործարանների պետական շահագործումը դադարեցվում է և իրավունք վերապահվում հանքարդյունաբերողներին սեփական միջոցներով և ազատ տնօրինել պղնձագործարանները, փոխարենը կալվածատերերին տրամադրելով արդյունքի 10-րդ մասը։

Հանքերին ամրակցված Ղազախի հայ գյուղացիների վիճակը շատ ծանր էր։ 1803 թ. 500 գերդաստաններից 250-ը փախել էին։ Ամրակցված ամեն մի գյուղ պետք է ձիավոր և հետևակ աշխատողներ տրամադրեր, որոնցից առաջինները ամսական ստանալու էին 6 ռուբլի, վերջինները՝ 4 ռուբլի 50 կոպեկ։ Դրա փոխարեն ձի ունեցող գյուղացիները պարտական էին ամեն ամիս 6 խորանարդ սաժեն փայտ կտրել և 60 բեռ ածուխ փոխադրել գործարանները, իսկ ածխագործները պետք է 6 խորանարդ սաժեն ածուխ պատրաստեին։ Մյուս աշխատանքներում զբաղված գյուղացիները պետք է աշխատեին օրական 10—12 ժամ։ Դեպի գործարանները տանող ճանապարհների և կամուրջների վերանորոգումը պարտադրվում էր մոտակա գյուղերի բնակիչներին, որոնք օրական 10—50 կոպեկ վարձ էին ստանում։ Ծանր էր նաև Սիբիրից բերված ռուս վարպետների վիճակը։

Պղինձ արտադրվում էր փոքր քանակությամբ՝ 7500 փութ, որը հիմնականում օգտագործվում էր տեղական արհեստավորների կողմից, տնային գործածության իրեր պատրաստելու համար։ Այդ տարիներին Անդրկովկաս այցելած անգլիացի Ջոնսոնը գրում էր, որ «Կառավարությունը մտադիր է քաջալերել պղնձի ամանեղենի արդյունաբերությունը Թիֆլիսում, որպես առևտրի առարկա։ Փաստորեն պատրաստ պղնձի քանակությունը այնքան շատ է, որ նրանք՝ բավական արժանավոր իտալացի մի արտիստի ղեկավարությամբ, արձաններ են ձուլում. նա իր ռոճիկը ստանում է կառավարությունից։ Կարծում եմ, որ սկսած են ձուլել նաև փոքրիկ դաշտային թնդանոթներ»[24]։

Արևելյան Հայաստանում արհեստագործության ճյուղերից հատկապես տարածված էր ջուլհակագործությունը։ Գրեթե յուրաքանչյուր ընտանիք ուներ դազգահ և հոգում էր իր տնտեսության կարիքները։ Ի. Շոպենի հաշվումներով երկրում կար 4206 դազգահ, որոնք տարեկան արտադրում էին ավելի քան կես միլիոն արշին կտավ։ Երևանի սարդարը յուրաքանչյուր դազգահից հարկադրաբար վերցնում էր մի թոփ կտավ, իսկ Նախիջևանի խանությունում՝ յուրաքանչյուր դազգահից՝ մեկ թուման։

Արհեստագործության մեջ կարևոր տեղ էր գրավում կաշվի մշակությունը։ Կաշեգործական արհեստանոցները գտնվում էին քաղաքներում։ Երևանում կար 32 կաշեգործական արհեստանոց, Օրդուբադում՝ 12, Նախիջևանում՝ 1։ Երև-

---

[23] Центральный государственный исторический архив СССР (ЦГИА СССР), (այսուհետև՝ ՍՍՀՄ ԿՊՊԱ), ֆ. 866, ց. 1, գ. 162, թ. 462—462բ։

[24] Հովհ. Հակոբյան, Ուղեգրություններ, հատ. Ձ, էջ 660։

վանի կաշեգործական արհեստանոցները կենտրոնացած էին քաղաքի Դարաքենդ կոչված թաղամասում, Հրազդանի ափին։ Մշակվում էր ոչ միայն կաշվի տեղական հումքը, այլև Մակուի խանությունից և Բայազետի փաշայությունից մեծ քանակությամբ ներմուծվող կաշին։ Միայն Երևանի 32 կաշեգործական արհեստանոցներում տարեկան մշակվում էր 4000 խոշոր մակերեսի (տավարի) և 25000 փոքր մակերեսի (մանր եղջերավոր անասունների) կաշիներ, որոնք մեծ մասամբ իրացվում էին տեղում[25]։ Որոշ արհեստանոցներում, հատուկ բույսերի սերմնահյութի ներգործությամբ, կաշիներից ստացվում էր շագրեն, որը կապալի ենթակա չէր։ Մինչդեռ մնացած կաշիների մշակությունը կապալային հողված էր կազմում և, առանց հատուկ դրոշմանիշերի, կաշիների վաճառքը արգելվում էր։ Մի շարք արհեստանոցներում կաշիները ներկում էին սև, կարմիր և դեղին գույներով։

Երևանում և մի շարք այլ վայրերում օճառ էր պատրաստվում։ Օճառի արտադրությունը նույնպես գտնվում էր կապալառուների ձեռքում։ Օճառի ազատ վաճառքը արգելված էր։

Ներկարարները բաժանվում էին երկու մասի՝ շիլաչիներ, որոնք կտորը ներկում էին կարմիր, և բոյաղչիներ, որոնք ներկում էին կապույտ գույնի։ Ներկարարական հիշյալ արհեստանոցները, որոնք թվով 29-ն էին, պետության կողմից նույնպես տրվում էին կապալով։ Բացի Երևանից, ներկարարներ կային Գառնիբասարի, Վեդիբասարի, Զանգիբասարի, Շարուրի, Սուրմալուի, Սարդարապատի, Դարալագյազի, Կարբիբասարի մահալներում, Նախիջևան և Օրդուբադ քաղաքներում։

Արևելյան Հայաստանում աճեցվող գյուղատնտեսական կուլտուրաների մեջ արդյունաբերական նշանակություն ունեին կտավատը և քունջութը։ Դրանք օգտագործվում էին բուսական բարձրորակ յուղ ստանալու համար։ Ամբողջ երկրի տերիտորիայում կային շուրջ 285 ձիթհաններ, որոնցից, սակայն, XIX դարի սկզբին գործում էին միայն 25-ը՝ ունենալով տարեկան մինչև 15000 փութ արտադրանք[26]։ Արտադրվում էր նաև կանեփի ձեթ, որն օգտագործվում էր տները լուսավորելու համար։

Դեռ հնուց ի վեր Հայաստանում մեծ տարածում ուներ բրուտագործությունը։ Գրեթե բոլոր մահալներում էլ կային բրուտանոցներ, որտեղ պատրաստում էին գինու և հացահատիկի կարասներ, կավե կերակրամաններ և այլն։ Որոշ դեպքերում այդ նույն բրուտանոցներում աղյուս էին թրծում։

Արևելյան Հայաստանում կային մեծ քանակությամբ ջրաղացներ և դինգեր։ Ջրաղացների թիվը 2589 էր, որոնցից գործում էին միայն 1456-ը։ Դինգերի թիվը ավելի քիչ էր՝ 221, դրանցից գործում էր 138-ը։ Դինգերում չալթուկը թեփազերծում և բրինձ էին ստանում։ Խոշոր ջրաղացներում օրական աղացվում էր մինչև մեկ խալվար, իսկ փոքրերում՝ 15—20 բաթման ցորեն։ Հիշատակենք, որ Կարապետ անունով նշանավոր հայ վարպետը ջրի ուժով գործող երկու խոշոր դինգեր էր կառուցել Երևանում և Էջմիածնում[27]։ Սակայն նման տիպի ձեռնարկությունները եզակի էին։

25 Տե՛ս И. Шопен, նշվ. աշխ., էջ 387։

26 Նույն տեղում, էջ 861։

27 Մ. Թաղիադեանց, Ճանապարհորդութիւն ի Հայս, էջ 39—40։

Արհեստավորներն ունեին իրենց կազմակերպությունները, որոնք կոչվում էին համքարություններ կամ էսնաֆություններ։ Միևնույն ճյուղում զբաղված արհեստավորները մտնում էին իրենց առանձին համքարության մեջ և առաջնորդվում էին տվյալ համքարության սկզբունքներով։ «Պարսկական տիրապետության շրջանից,— գրում է Ա. Հաքստհաուզենը,— արհեստավորները միավորված են ցեխերում ըստ պարսկական օրենքների, բայց ոչ այնպես բացարիկորեն, ինչպես Վրաստանում։ Նոր վարպետները նույնպես հանդիսավոր կերպով են ձեռնադրվում։ Հայտնի տոնախմբությունների և հասարակական արարողությունների ժամանակ ամեն մի արհեստ ներկայացվում է համքարության կողմից։ Հայ և թուրք արհեստավորները առանձին համքարություններ են կազմում։ ...Համքարությունն ընտրում է իր ավագին, որ դատական իշխանություն ունի և ենթավարպետին վարպետ է ձեռնադրում, որի դեպքում առաջինը ծունկի է գալիս նրա առջև և ստանում է հարված»[28]։

Համքարությունների անդամներին միավորող կապը տնտեսական, կրոնական, իրավական, վարչա-դատական, հասարակական շահերի միասնության և, որ գլխավորն է, փոխադարձ օգնության գաղափարն էր[29]։ Համքարության անդամների թիվը չէր սահմանափակվում։ Նրանցից յուրաքանչյուրը կարող էր ուզած ժամանակ դուրս գալ մեկ համքարությունից և անդամագրվել մեկ ուրիշի։ Պատահում էր, որ միևնույն արհեստի տեր մարդիկ ունենում էին մի քանի համքարություններ։ Այսպես, սափրիչները, դարբինները, մազմանները և այլն կարող էին միևնույն վայրում միաժամանակ մեկից ավելի համքարություններ ունենալ։ Համքարությունները որոշակի զբաղմունք ունեցող անձանց կազմակերպություններ էին և գործում էին որոշակի կանոնադրություններով, որոնք լինում էին բանավոր, երբեմն էլ՝ գրավոր։

Համքարությունների կազմակերպման գործով զբաղվել է և Էջմիածինը։ Եփրեմ կաթողիկոսի ստորագրությամբ հաստատվել էր արևելահայ համքարությունների «սահմանադրություն», ընդ որում նույնիսկ Արևմտյան Հայաստանի, մասնավորապես Բաբերդի էսնաֆությունները խնդրել էին իրենց էլ ուղարկել այդ փաստաթղթի «պատկերը», որպեսզի իրենք էլ գործեն դրա համաձայն[30]։

Տվյալ կանոնադրության հաստատումը կաթողիկոսի կողմից վկայությունն է այն բանի, որ Էջմիածինը և նրա գահակալը այդ նույն համքարությունների համար եղել են որոշ առումով պետական ֆունկցիաների կրողներ, քանի որ դարեր շարունակ պետականությունից զուրկ հայ ժողովրդի համար կաթողիկոսն էր դարձել այդ ֆունկցիաների մասնակի գործադրողը։

Վաճառականները նույնպես ունեին իրենց առանձին համքարությունները։ Պարսկական տիրապետության շրջանում վաճառականությունը բաժանվում էր չորս խմբի՝ սովդաքյարներ, բինահդարներ, բազազներ և չարչիներ կամ փերեզակներ։ Այս բաժանման հիմքում ընկած էին ունեցած դրամագլխի չա-

---

28 *А. фон-Гакстгаузен,* Закавказский край, СПб., 1857, стр. 165.

29 *С. А. Егиазаров,* Исследования по истории учреждений в Закавказьи, т. 2, Казань, 1894, стр. 2.

30 Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 53, վավ. 8։

վը, առևտրական գործառնությունների շրջանակների ծավալը, երկրի տնտեսական կյանքում նրանց խաղացած դերը, վաճառած ապրանքների տեսակը։ Սովդաքյարները հարուստ վաճառականներ էին, որոնց ունեցած դրամական խոշոր կապիտալը նրանց հնարավորություն էր տալիս մեծածախ առևտրով զբաղվել։ Նրանք ազատ էին ամեն տեսակի տուրքերից, բայց մաքս վճարում էին։ Սովդաքյարներից հետո վաճառականության շարքերում իրենց ազդեցությամբ աչքի ընկնող տեղ էին գրավում բինահդարները։ Նրանք զբաղվում էին և մեծածախ, և մանրածախ առևտրով, ունեին խանութներ և հիմնականում կապված էին տվյալ վայրին։

Բաղալները մանր առևտրականներ էին, ունեին փոքրիկ խանութներ, որտեղ վաճառում էին իրենց ապրանքները, գլխավորապես կտորեղեն։ Սրանք, բինահդարների հետ մեկտեղ, Արևելյան Հայաստանի վաճառականության ճնշող մեծամասնությունն էին կազմում։

Չարչիները կամ փերեզակները շրջիկ մանր առևտրականներ էին, որոնք տեղից-տեղ էին թափառում և վաճառում ամենազանազան ապրանքներ, ձգտելով արժեքից ավելին կորզել միամիտ գնորդներից։ Աղքատ չարչիները շրջում էին ոտքով, համեմատաբար ունևորները՝ ձիով կամ ավանակով[31]։

Համքարության անդամներին նեղության դեպքում օգնելու, բարեգործական ձեռնարկումներին նպաստելու գործում մեծ դեր էին խաղում համքարությունների գանձարկղները (խազնաները)։ Այս գանձարկղների հիմնական դրամագլուխը գոյանում էր համքարության լիիրավ անդամների՝ վարպետների մուծումներից։ Սրանք լինում էին տարբեր չափի՝ ըստ տվյալ անդամի ունևորության աստիճանի, ընտանիքի անդամների թվի և այլն։ Բացի այդ, համքարության մեջ մտնող յուրաքանչյուր նոր անդամ նույնպես որոշ գումար էր մուծում։

Համքարությունների եկամտի մյուս կարևոր աղբյուրն էլ տուգանքներն էին, որոնք գանձվում էին «սահմանադրության» կանոնները խախտած անդամներից, ինչպես նաև, այսպես կոչված, «դաստուրհացը», որը վճարում էին վարպետացուները, երբ նրանք արդեն ինքնուրույն աշխատանքի իրավունք էին ստանում։ Այս դրամով սովորաբար ճաշկերույթ էր կազմակերպվում համքարների համար։

Համքարությունը ղեկավարելու համար ընտրվում էր ուստաբաշի (վարպետների գլուխ կամ գլխավոր վարպետ), ուստաբաշու օգնական կամ աղսախկալ, գանձապահ (խազնադար) և իգիթ բաշի[32]։ Սրանց ընտրում էին համքարության անդամների ընդհանուր հավաքույթում։ Ընտրություններից հետո ուստաբաշին ու աղսախկալները տնօրինում էին համքարության գործերը, կարգավորում համքարության ու քաղաքային իշխանությունների փոխհարաբերությունները։ Նրանք կատարում էին նաև համքարության ընկերային դատարանի ֆունկցիաները՝ քննում էին ոչ-քրեական բնույթի գործերը և մեղավորնե-

---

31 И. Шопен, նշվ. աշխ., էջ 986։

32 А. фон-Гакстгаузен, նշվ. աշխ., էջ 106, տե՛ս նաև Աշոտ Հովհաննիսյան, Գ. Ախվերդյանի և Գ. Շիրմազանյանի նամակափոխանակությունը Վրաստանի և Պարսկաստանի համքարությունների մասին («Պատմա-բանասիրական հանդես», 1963, № 2, էջ 200, 206)։

րին ենթարկում տուգանքների ու մարմնական պատիժների։ Ավելի մանր գործերը ուստաբաշին կարող էր վճռել միանձնյա։

Ուստաբաշուց և աղսախկալներից կազմված համքարական դատարանը քննում և լուծում էր մի կողմից վարպետների, մյուս կողմից վարպետացուների և աշակերտների փոխհարաբերությունները, միևնույն համքարության անդամ-վարպետների միջև ծագած վեճերը, ընտանեկան հարաբերությունների, կրոնական պարտականությունների խախտմանը, հասարակական հանգիստը խանգարելուն վերաբերող գործերը։ Այստեղ լսվում էին նաև կողմնակի անձանց բողոքները՝ պատվերների ցածրորակ կատարման մասին և այլն[33]։

Համքարությունները, սովորաբար, աշխատում էին գործերը քննել և լուծել իրենց դատարաններում, խուսափել դարուղայի (ոստիկանապետի) միջնորդությանը դիմելուց, քանի որ դա կապված էր ոչ միայն կաշառատվության, այլև համքարության հեղինակության և ինքնուրույնության հետ։

Ուստաբաշու և աղսախկալների վարձատրությունը կազմվում էր այն նվերներից, որ նրանք ստանում էին համքարության մեջ նոր անդամ ընդունելիս, դատական բնույթի վեճեր լուծելիս։ Համքարության համար ապրանքներ գնելիս նրանք տոկոսներ էին ստանում ապրանքի վաճառորդներից։ Բացի այդ, նրանք ազատված էին համքարության ընդհանուր գանձարկղը կատարվող որոշ մուծումներից։

Համքարության մեջ կարևոր դիրք էր գրավում գանձապահը։ Նա ընտրըվում էր գրագետ այն անդամներից, որոնց ազնվությունը կասկածի ենթակա չէր։ Գանձապահը պատասխանատու էր միայն ընդհանուր հավաքույթի առաջ, որտեղ պարբերաբար հաշիվ էր տալիս եկամուտների մասին։ Գանձապահի պարտականությունն էր անդամավճարների, հասարակական հարկի, տուգանքների հավաքումը և պահպանումը։

Իգիթբաշու պարտականությունն էր տվյալ համքարության բոլոր անդամներին տեղյակ պահել ուստաբաշու և նրա օգնականների ընդունած որոշումներին, հաղորդել, թե երբ են տեղի ունենալու համքարական հավաքույթներ և կամ կրոնական ծիսակատարություններ։ Որպես կատարածու, իգիթբաշին պետք է դատի ենթակա համքարներին ներկայացներ դատարան, ի կատար ածեր դատավճիռները։ Համքարության գերագույն օրգանը ընդհանուր հավաքն էր, որին լիիրավ ձայնի իրավունքով մասնակցում էին համքարները, ինչպես նաև մահացած համքարների այրիները, այն տարիքավոր վարպետացուները, որոնք երբևէ անդամակցել էին ուրիշ համքարությունների։ Այրի կանայք և երիտասարդ վարպետացուները վճռական ձայնի իրավունք չունեին։

Ընդհանուր հավաքներում քննարկվում էին համքարության ղեկավարների հաշվետվությունները, նոր անդամների ընդունելության, զանցառուների հեռացման և համքարության համար կենսական նշանակություն ունեցող այլ հարցեր։ Այս հավաքներում էլ հարկերն ու տուրքերը բաշխվում էին համքա-

---

33 С. А. Егиазаров, նշվ. աշխ., էջ 292—293։ А. фон-Гакстгаузен, նշվ. աշխ., էջ 102—106։

րության անդամների միջև, ստուգվում էին վարպետացուների աշխատանքները և համապատասխան գնահատական ստանում։

Համքարության ամենաստորին աստիճանին կանգնած էին աշակերտները։ Սրանց ընդունում էր վարպետը և ուստաբաշու, աղսախկալների ներկայությամբ երդում առնում, որ կաշխատեն ազնվորեն ու նվիրվածությամբ։ Ուսման տևողությունը երեքից մինչև տասը տարի էր, նայած արհեստին։ Ընդունվելուց հետո աշակերտը լիովին գտնվում էր վարպետի տրամադրության տակ, աշխատում էր առանց վարձատրության։ Նրան կարող էին ծեծել, ուզածի պես պատժել, օգտագործել վարպետի տնային աշխատանքներում, և աշակերտը այդ ամենը պիտի տաներ անտրտունջ։ Աշակերտին սովորեցնելու համար վարպետը հատուկ վարձատրություն չէր ստանում, բայց աշակերտը, երբ վարպետ էր ձեռնադրվում, պետք է նվեր տար նրան։

Համքարությունները հետաքրքրվում էին աշակերտների վիճակով, հետևվում էին նրանց ուսման ընթացքին և երբ համոզվում էին, որ նրանք արդեն բավականաչափ հմտացել են ընտրած արհեստում, դարձնում էին վարպետացու և ինքնուրույն աշխատանքներ հանձնարարում։

Ենթավարպետը աշակերտից բարձր էր կանգնած։ Բավական երկար ժամանակ մնալով այդ կարգում, նա ինքնուրույն որևէ գործ էր կատարում և իր պատրաստածը ներկայացնում ավագների դատին։ Քննությունը բռնելու դեպքում վարպետացուն ստանում էր վարպետի կոչում։ Դրա համար նա իր արհեստակիցներին խալաթ էր տալիս, իսկ համքարությանը՝ դաստուրհաց[34]։

Համքարության ոգուն խորթ էր մենաշնորհի ձգտումը։ Մենաշնորհին և մրցակցությանը վերջ տալու նպատակով հումքը հավասարաչափ բաժանվում էր համքարության անդամների միջև։ Նրա անդամներն իրավունք չունեին առանց ուստաբաշու և նրա օգնականների գիտության մասնավոր գործարքների մեջ մտնել՝ հումք գնել, խանութներ վարձակալել և այլն։ Արտադրանքի ցածր որակի վերաբերյալ գանգատի դեպքում հատուկ դատով որոշվում էր նրա խնդիրը, որից հետո միայն ցածրորակ ապրանք արտադրած արհեստավորը ենթարկվում էր տույժի։

Արհեստանոցները մեծ մասամբ տեղավորված էին շուկաներում և հրապարակներում, որտեղ, սովորաբար, յուրաքանչյուր համքարություն իր շարքերն էր ունենում։ Ապրանքներն արտադրվում և վաճառվում էին տեղերում։ Վտանգավոր և վնասակար մնացուկներ ունեցող արտադրության հետ կապված արհեստանոցները տեղավորվում էին քաղաքի ծայրամասերում, գետի ափին։

Յուրաքանչյուր համքարություն ուներ իր սուրբը կամ «փիրը», որը համարվում էր տվյալ արհեստի հովանավորը։ Երևանի ատաղձագործների համքարության «սուրբը» եղել է աստվածահայր Հովսեփը, կաշեգործների համքարությանը՝ Սիմեոն Ծերունին, դարբիններինը՝ Դավիթ Մարգարեն, մաշակարներինը՝ Մելքիսեդեկը և այլն[35]։

Հիշյալ սրբերի եկեղեցական օրացույցով սահմանված տոներին համքարությունները կազմակերպում էին շքեղ հանդեսներ, մատուցում էին պատա-

---

34 Ա. фон-Гакстгаузен, նշվ. աշխ., էջ 106։

35 Ե. Շահազիզ, Հին Երևանը, Երևան, 1931, էջ 79։

բաղ, «մատաղ» էին անում և բաժանում աղքատներին և այլն[36]։ Երևանի համքարությունները նման տոնահանդեսները կատարում էին քաղաքի Շահար թաղամասի Գեթսեմանի մատուռի շրջակայքում։

Համքարություններն ունեին իրենց խաչվառաձև դրոշները՝ համքարության հովանավոր սրբի պատկերով։ Եկեղեցական թափորների ժամանակ, կաթողիկոսին հանդիսավոր կերպով դիմավորելու և այլ նման դեպքերում համքարության անդամները դուրս էին գալիս իրենց դրոշներով և հանդեսներին շքեղ բնույթ տալիս։

Համքարությունների հիմնական սկզբունքը, որը նրանց անդամներին շաղկապում էր իրար, փոխօգնության սկզբունքն էր։

Ինչպես աշակերտները, այնպես էլ ենթավարպետները շահագործվում էին վարպետների կողմից։ Վերջիններս աշխատում էին որքան հնարավոր է նրանց ավելի երկար պահել կախյալ վիճակում, իրենց շահերի համար օգտագործել նրանց աշխատանքը։

Համքարության բարձրաստիճան խավը վարպետներն էին։ Նրանք ունեին խանութներ, պահում էին ենթավարպետներ և աշակերտներ, համքարության գործերը որոշելիս օգտվում էին վճռական ձայնի իրավունքով, կարող էին ընտրվել ուստաբաշի, աղսախկալ, գանձապահ։ Միաժամանակ նրանք պարտավոր էին կատարել իրենց պարտականությունները համքարության նկատմամբ։

Համքարությունները բաժանված էին ըստ ազգային հատկանիշի։ Արհեստի բազմաթիվ ճյուղեր ներկայացված էին մեկ կամ մի քանի արհեստավորներով, որոնք, բնականաբար, չէին կարող առանձին համքարություններ կազմել, ուստի և մտնում էին իրենց արհեստին համեմատաբար մոտ համքարությունների մեջ։

Կային նաև վարձու աշխատանքով ապրող արհեստավորներ։ Դրանցից էին էջմիածնի վանական տնտեսության մեջ աշխատող արհեստավորները, որոնք մտնում էին «Մայր աթոռի» ծառայողների՝ ամալաների թվի մեջ։ Վանական տնտեսության մեջ մշտապես աշխատում էին դարբիններ, խառատներ, աշչիներ (կերակուր պատրաստողներ), պայտարներ և այլն։

Նման արհեստավորների առկայությունը ցույց է տալիս, որ վարձու աշխատանքը ևս մասնակի կիրառություն ուներ երկրի տնտեսական կյանքում, որ գոյություն ուներ համքարությունից դուրս գտնվող և իր գոյության միջոցները աշխատուժի վաճառքով հայթայթող արհեստավորական մի խավ։

* * *

XIX դարի առաջին երեսնամյակում Արևելյան Հայաստանում առևտուրը, մասնավորապես արտաքին առևտուրը, բավական աշխույժ բնույթ էր կրում։ Բերենք Արևելյան Հայաստանի հիմնական մասը կազմող Երևանի խանության օրինակը, որը դրացի լինելով Ռուսաստանին և Թուրքիային, գտնվելով առևտրական բանուկ ճանապարհների կենտրոնում, որոնք նրան կապում էին Թավրիզի, Թիֆլիսի, Կարսի, Էրզրումի ու Բայազետի հետ, հանդիսանում էր առևտրական կարևոր հանգույց։ Արևելյան Հայաստանում առևտրի զարգացմանը

---

36 С. А. Егиазаров, նշվ. աշխ., էջ 208—210։

նպաստում էր նաև այն պարագան, որ Երևանը կուսակալության կենտրոնն էր, այնտեղ էր գտնվում խանական արքունիքը։ Քաղաքում էին կենտրոնացված բարձրաստիճան խաները, պարսկական զորքը, որոնց սպասման համար անհրաժեշտ բազմաթիվ ապրանքները ներմուծում էին օտար երկրներից։ Առևտրի զարգացմանը, ինչպես արդեն ասված է, նպաստում էր նաև Էջմիածնի՝ Երևանի խանության սահմաններում գտնվելու փաստը։ Էջմիածինն իր նվիրակների միջոցով աշխարհի տարբեր անկյուններից ապրանքներ էր ստանում որպես նվիրատվություն, որոնք և վաճառքի էր հանում իր կարիքները հոգալու համար։ Միաժամանակ Էջմիածինը առաջնակարգ գնորդներից էր, քանի որ մեծաթիվ միաբանության պահանջները բավարարելու համար հաճախ ստիպված էր լինում դիմել շուկա։



Հին Երևանի շուկայի հրապարակը

Երևանի վաճառականները առևտրական գործառնություններ էին ծավալում Պարսկաստանում, Թուրքիայում, Վրաստանում։ Հատկապես աշխույժ էր առևտրական կապը Թիֆլիսի և Էրզրումի հետ, որտեղ Երևանի վաճառականները գնում էին եվրոպական ու ռուսական արտադրության ապրանքներ և վերավաճառում Պարսկաստանում։ Փոխադարձաբար նրանք վերոհիշյալ քաղաքներն էին արտածում տեղական ու Պարսկաստանի հարևան շրջաններից ապրանքներ՝ մետաքսեղեն, կաշի, բուրդ, բուսական յուղ, բամբակ, չոր մրգեր, աղ և այլն։ Երևանի սարդարը և Էջմիածնի վանքը ներգրավված էին առևտրական գործառնությունների ոլորտը։ 1804—1813 թվականների ռուս-պարսկական պատերազմը, անշուշտ, բացասական ազդեցություն ունեցավ արտաքին առևտրի վրա, սակայն անգամ այդ տարիներին առևտրական կապերը չդադարեցին։

Պարսկաստանի և, հատկապես Ռուսաստանի առևտրական հարաբերությունների ընդլայնելու շահագրգռվածությունն իր արտահայտությունը գտավ Գյուլիստանի հաշտության պայմանագրում։ Պայմանավորվող կողմերը պետք

*է թույլ տալիս՝ վաճառականների ազատ երթևեկություն ցամաքային և ջրային ճանապարհներով։ Վաճառականների կյանքն ու գույքը, ինչպես և կտակի իրավունքը պետք է երաշխավորվեր ու հարգվեր երկու պետությունների կողմից։ Նրանց հպատակ վաճառականները տարանցիկ առևտրի իրավունք էին ստանում։ Կարգավորվում էր նաև մաքսային սիստեմը։ Նախկին տարատեսակ և կամայական մաքսերի փոխարեն սահմանվում էր ընդհանուր մաքս՝ ապրանքի արժեքի հինգ տոկոսի չափով[37]։ Հետագայում էլ Ռուսաստանը և Պարսկաստանը շարունակեցին միջոցներ ձեռնարկել առևտրին խանգարող արգելքները վերացնելու համար։ Չնայած դրան, վաճառականական քարավանների ապահովությունը Արևելյան Հայաստանում հեռու էր բավարար լինելուց։ Ավարառությունները սովորական երևույթ էին և հաճախ կատարվում էին սարդարի բարեհաճ հավանությամբ։*

*XIX դարասկզբի քաղաքական իրադարձություններից բացի, առևտրի զարգացմանն ու ծավալմանը խանգարում էին ավատատիրությանը հատուկ մաքսային կեղեքիչ սիստեմը, ճանապարհների վտանգավորությունը, վաճառականների կյանքի ու գույքի անապահովությունը, չափի ու կշռի բազմազանությունը և, որ գլխավորն է, հիմնական սպառողների՝ աշխատավոր զանգվածների ցածր գնողունակությունը, թեև Երևանում ու Նախիջևանում գոյություն ուներ սարդարի, պալատականների, հարեմի, զորքերի, խաների, բեկերի ու միրզաների՝ բարձր պահանջներ ունեցող այդ սպառողների բազմությունը[38]։*

*Բուն Երևանում մաքսատուն չկար։ Մաքսեր (ռահդարի) գանձվում էին Սարդարապատում, որտեղով անցնում էին Էրզրումից ու Կարսից եկող քարավանները։ Մաքսի գործն այստեղ տնօրինում էր սարդարի եղբայր Հասան խանը, իսկ Բայազետի ճանապարհին և Շարուրում՝ նրա թոռը։ Կրխբուլաղի ճանապարհին մաքսի գանձումը հանձնարարված էր հայազգի յուզբաշի Գեղամյաններին։*

*Ամեն տարի որոշ գումարի դիմաց Հյուսեին Ղուլի խանը մաքսի գանձումը հանձնարարում էր կապալառուներին։ Վերջիններս օսմանյան պետության սահմաններից բերված կտորեղենի, բամբակի, շաքարի, գխտորի, կաշու, պողպատի, հինայի և այլ ապրանքների յուրաքանչյուր բեռի համար գանձել են չորս հազար դիան (ռուսական դրամով մեկ ռուբլի վաթսուն կոպեկ)։ Նույն ապրանքների տրանզիտի համար գանձվել է հինգ ռեալ (երկու ռուբլի 50 կոպեկ)։ Երևանի խանության վաճառականները դրսից բերված նույն ապրանքների համար ավելի պակաս մաքս են վճարել։ Պարսկաստանից բերված մեկ բեռ կտորեղենի համար նրանք վճարել են միայն մեկ ռեալ (հիսուն կոպեկ արժաթով)։ Ձամիչի, յուղի, բրնձի յուրաքանչյուր բեռից գանձվել է, որպես մաքս, հազար դիան (քառասուն կոպեկ արժաթով), մեղրի մեկ բեռից՝ երկու հազար դիան (ութսուն կոպեկ արժաթով)։ Մետաքսի, լեղակի և մորթիների յուրաքանչյուր բեռից գանձվել է մեկ թուման։*

*Ռուսաստանի և Պարսկաստանի միջև Երևանի վրայով կատարվող առևտուրը ավելի մեծածավալ էր, քան Թուրքիայի և Պարսկաստանի միջև եղած*

---

37 *И. Шопен*, նշվ. աշխ., էջ 873։

38 Թ. Խ. Հակոբյան, Երևանի պատմություն, հատ. III, Երևան, 1957, էջ 90։

ապրանքաշրջանառությունը։ 1825 և 1826 թվականներին ապրանքաշրջանառության ընդհանուր գումարը կազմել է 919.770 ռուբլի արժաթ դրամ[39], իսկ 1828—1829 թվականներին՝ 867.700 ռուբլի, մինչդեռ 1815 թվականին միայն այն կազմել է 499.532 ռուբլի[40]։ Այդ ժամանակաշրջանում Պարսկաստանից Երևան է ներմուծվել տարեկան 80 հազար ռուբլու ապրանք։

Ներմուծվող ապրանքները տեղավորելու և նրանց վաճառքը կազմակերպելու համար կառուցվում էին քարավանատներ։ Կային պետական և մասնավոր քարավանատներ. առաջինների շահագործումը տրվում էր կապալով։ Երևանում կար յոթ քարավանատուն, որոնցից միայն Գյուրջիի քարվանսարան ունեցել է 62 խանութ ու կրպակ։ Դա սարդարին բերում էր 280 թուման, իսկ մյուսները՝ 150-ական, ընդամենը 700 թուման եկամուտ[41]։ Ընդհանուր առմամբ խանութների ու կրպակների թիվը հասել է 851-ի, որոնց մի մասը գտնըվում էր առևտրաշարքերում կամ շարսուներում և հրապարակներում։ Քարավանատուն կար նաև Վաղարշապատ գյուղում, որը վանական սեփականություն էր։

Քարավանատներից օգտվելու համար վաճառականներից գանձում էին զանազան տուրքեր։ Դրանցից էին ավային և բորոնան։ Ավայի գանձում էին մեծածախ առևտրի դեպքում, յուրաքանչյուր թումանից վերցնելով մեկ շահի։ Այդ գումարը կարող էր գանձվել այնքան անգամ, որքան ապրանքները քարավանատան մեջ մի ձեռքից մյուսն էին անցնում։ Բորոնան գանձվում էր այն դեպքում, երբ գնորդ չունենալու կամ մի այլ պատճառով վաճառականն իր ապրանքները դուրս էր հանում խանության սահմաններից և տանում մի այլ վայրում վաճառելու։ Յուրաքանչյուր բեռից բորոնա վերցվում էր 4 շահի (8 կոպեկ արժաթով)։

Եթե արտաքին առևտուրը համեմատաբար աշխույժ վիճակում էր, այդ նույնը չի կարելի ասել ներքին առևտրի մասին։ Հողագործության ամենակարևոր արտադրանքների, հատկապես բամբակի և բրնձի գնման ու վաճառքի մենաշնորհը սարդարը կենտրոնացրել էր իր ձեռքում և գնումները կատարում էր իր իսկ սահմանած գներով։ Բամբակի մեկ խալվարի համար նա վճարում էր 80 ռուբլի, իսկ շալթուկի մեկ խալվարի համար՝ 6 ռուբլի արժաթով։ Խանության մեջ սահմանված այդ մենաշնորհը խախտողները դաժան պատիժների և ծանր տուգանքների էին ենթարկվում։

Մեյդանում (հրապարակում) դրված էին ղանթարը՝ մեծ կշեռքը և միզանը՝ փոքր կշեռքը։ Սրանք նույնպես տրված էին կապալով։ Սարդարը նշանակում էր կշեռքների հսկիչ՝ ղանթարբաշի։ Կշեռքներից օգտվելու համար դրամով կամ բնամթերքով հատուկ վարձ էր գանձվում։

Ղանթարը խանական արքունիքին տարեկան տալիս էր 500 թուման եկամուտ, իսկ միզանից ստացվում էր 215 թուման[42]։ Խանութներից ստացվում էր տարեկան 1260 թումանի տուրք։ Առևտուր էին անում գյուղացիները, արհես-

---

[39] *О. Евецкий,* Статистическое описание Закавказского края, СПб., 1835, стр. 76—77.

[40] *Г. Тер-Гукасов,* Экономические интересы России в Персии, Петроград, 1915, стр. 35.

[41] *И. Шопен,* նշվ. աշխ., էջ 983։

[42] Նույն տեղում։

տավորները, վաճառականները։ Սարդարն ինքն էլ ստացված բնամթերային հարկերի մի մասը վաճառքի էր հանում։

Զնայած առևտուրը և առևտրի հետ կապված եկամուտները գտնվում էին խանական վարչության ուշադրության կենտրոնում, այնուամենայնիվ նույն այդ վարչությունը, սարդարի գլխավորությամբ, ի վիճակի չէր առևտրի զարգացման համար անհրաժեշտ պայմաններ ստեղծելու։ Մենաշնորհները, բազմապիսի տուրքերը, ճանապարհների անապահովությունը, ժողովրդական զանգվածների թշվառ կացությունը, գյուղատնտեսության ու արհեստագործության հետամնաց վիճակը արգելակում էին առևտրի հետագա ծավալմանը։



Սարդարի պալատի ճայելապատ դահլիճը

Արևելյան Հայաստանի առևտրական կյանքի առանձնահատկություններից մեկն եղել է այն, որ այստեղ ազատ շրջանառության մեջ են գտնվել բազմաթիվ և բազմատեսակ դրամներ՝ պարսկական, թուրքական, ռուսական, հոլանդական, վրացական, բուն երևանյան և այլն։ Տարբեր երկրների պատկանող և ամենատարբեր արժեքներ ունեցող այդ դրամները ստեղծում էին դրամափոխանակության անհրաժեշտություն, իսկ նրանց արժեքները խիստ տատանվում էին։

Այս պայմաններում ստեղծվել էր դրամափոխների (սարաֆների) մի խումբ։ Երևանում դրանց թիվը հասնում էր քսանի։ Սակայն սրանք հիմնականում ռուսական դրամներ էին փոխանակում, որոնցից Պարսկաստանում արծաթյա դրամներ՝ սահիբ-ղրաններ էին հատում և կրկին ուղարկում Երևան։ Այդ շրջանառությունից նրանք հինգ տոկոս շահ էին ստանում։ Շրջանառության մեջ էին նաև այնպիսի դրամներ, ինչպես «ֆնտղը», «ստամպօլը», «պաջաղլին», «ղուռուշը», «Ֆաթալի շահի ռիալը», «ուզլուկը», «օսմանցվի իքիլիքը», «սուլթան Սալիմի ռիալը», «փանահատլին» և բազմաթիվ այլ դրամներ, որոնք տարբեր արժողություններ ունեին[43]։

---

43 Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 24, վավ. 139։

*Երևանում՝ Արևելյան Հայաստանի առևտրի գլխավոր կենտրոնում, խաչաձևվում էին տարբեր ճանապարհներ, որոնցից մեկը, որը հետագայում, ռուսական տիրապետության շրջանում, գլխավոր փոստային ճանապարհ դարձավ, Շիրակավանը (Գյումրի) Մաստարայի, Սարդարապատի, Էջմիածնի վրայով միացնում էր Երևանին, իսկ այստեղից էլ անցնում դեպի Նախիջևան և Օրդուբադ։ Մի այլ ճանապարհով Սարդարապատը կապվում էր Բայազետ քաղաքին։ Սարդարապատի վրայով էին ձգվում նաև երկու այլ ճանապարհներ՝ Սարդարապատ—Կողբ—Կաղզվան—Կարին և Սարդարապատ—Անի—Կարս։ Նախիջևանը տարբեր ճանապարհներով կապվում էր Թավրիզի, Կարաբաղ ամրոցի և Շամշադինի հետ։ Երևանից դեպի Թիֆլիս ճանապարհն անցնում էր երկու ուղղությամբ՝ Դիլիջանի և Ապարան—Ղարաքիլիսայի վրայով։ Երևանը Կարսի հետ կապվում էր Էջմիածնի, Ղզլքիլիսայի և Ղոշավանքի վրայով։ Այդ ճանապարհներով անցնում էին կառքեր, սայլեր և բեռնակիր անասուններ։*

*Թիֆլիսում, Գորիում, Թելավում, Սղնախում, Անանուրում և Վրաստանի այլ վայրերում հայկական տարրը պատկառելի տոկոս էր կազմում, ուր արհեստները և առևտուրը նշանակալից չափով կենտրոնացած էին հայերի ձեռքին։ Դեռևս 1714 թ. Թիֆլիսի մելիքի և մամասախլիսի պաշտոնը ժառանգաբար վերապահված էր հայազգի Բեհբության իշխանական տոհմին։ Մելիքը օժտված էր մեծ արտոնություններով։ Առանց նրա կնիքի վավերական չէին Թիֆլիսի ու շրջակայքի կալվածքների առն ու վաճառքը։ Նա հետևում էր առևտրի վիճակին, չափ ու կշռին, վարում էր դատաստանական կարևոր գործերը։ Ռուսական տիրապետության հաստատումից հետո մելիքի պաշտոնը նույնացվեց ոստիկանապետի պաշտոնին, բայց սկզբնական շրջանում նրա նախկին արտոնություններն ու իրավունքները պահպանվեցին։*

*Վրաստանի քաղաքային բնակչության կազմում զգալի տոկոս էին կազմում մոքալաքները։ Մոքալաք կարող էին դառնալ միայն խոշոր վաճառականները և արհեստավորները։ Այդ կոչումը շնորհում էին վրաց թագավորները՝ հավանաբար որոշ ընծայաբերության դիմաց։ XVIII դարի կեսերից արդեն մոքալաք դառնում էին նաև թագավորական ծառայության մեջ գտնվող ցածր խավին պատկանող մարդիկ։*

*Մոքալաքները բաժանված էին երեք կարգի՝ առաջին, երկրորդ և երրորդ։ Նրանք ենթարկվում էին Թիֆլիսի մելիքին և կատարում էին նրա կարգադրությունները։*

## 5. ՀԱՐԿԱՅԻՆ ՍԻՍՏԵՄԸ

*Հարկերը խիստ ծանր էին, բազմաթիվ և բազմատեսակ։ Խանական վարչությունը ձգտում էր հնարավորին չափ շատ կորզել բնակչությունից և այդ նպատակին հասնելու համար խանական պաշտոնյաները չէին խորշում բացարձակ կողոպուտի և ոչ մի միջոցից։*

*Հարկերը երկու տեսակի էին՝ դրամական և բնամթերային։ Դրամական հարկերը որոշ իմաստով հաստատուն միավորներ էին, իսկ բնամթերային հարկերը կազմում էին տվյալ տարում ստացված բերքի 3/30 մասը։ Բնամթերքով գանձվող հարկը կարող էր լինել և՛ մուլք և՛ բահրա։ Բահրան դա հարկ-*

ռենտայի այն մասն էր, որ գնում էր պետության գանձարանը։ Մուլքադարական գյուղերում մուլքը կազմում էր բերքի 1/10 մասը և հատկացվում մուլքադարին։

Հարկային սիստեմը կարգավորելու և հարկերի գանձումը դյուրացնելու նպատակով խանական վարչությունը գյուղերը բաժանել էր երեք խմբի՝ բահրաքյարական, յարիքյարական և ռանչպարական։ Գյուղերն էլ իրենց հերթին տրոհված էին բինաչաների։ Վերջիններս հարկման ենթակա հատուկ միավորներ էին, կազմված մի քանի ընտանիքներից՝ նայած նրանց տնտեսական հզորության։ Նույնիսկ այնպես էր լինում, որ մի ամբողջ գյուղ հազիվ մեկ բինաչա էր կազմում, կային նաև գյուղեր, որտեղ բինաչաների թիվը մի քանի տասնյակի էր հասնում։ Այսպես, Ուլուխանլու գյուղում կար 80 բինաչա, Սարդարապատում՝ 50, մինչդեռ Ջաֆարաբադ գյուղում կար միայն մեկ բինաչա։ Բազմաթիվ կիսավեր գյուղեր նույնիսկ մեկ բինաչա էլ չէին կազմում։

Բինաչաները կազմելիս խանական վարչությունը հաշվի էր առնում նաև տեղական պայմանները, գյուղերի եկամուտների չափերը, քաղաքներից և գլխավոր մայրուղիներից նրանց հեռավորությունը, տեղական գյուղատնտեսական մթերքների որակը և դրանք հաջող կերպով իրացնելու հնարավորությունները, ինչպես և անասնապահության վիճակը։ Բինաչա կազմող գերդաստանները կարող էին իրենց հաշվում գրանցել աղքատ ընտանիքներին և վճարել նրանց փոխարեն ևս։ Հիմնականում այդպիսի վիճակում էին եկվորները։ Եթե նրանք մշակություն էին անում բինաչայի համար, ապա ոչինչ չէին վճարում, իսկ եթե ունեին իրենց սեփական տնտեսությունը, ապա մասամբ պետք է հատուցեին, կատարելով նրանց ընդունող բինաչայի պարհակները։

Բնական պատահարների դեպքերում սարդարը պակասեցնում էր բինաչաների քանակը։ Եվ, ընդհակառակը, բարեկեցության աճի հետ մեկտեղ, աճում էր նաև բինաչաների թիվը։ Այսպես, սարդարը 1826 թ., Ուլուխանլու գյուղի բինաչաների թիվը պակասեցրել էր 34-ով, 114-ի փոխարեն թողնելով 80-ը։ Բինաչաների թիվը ավելացվում էր նաև որպես պատիժ այս կամ այն արարքի համար։ Նման դեպքերում դժվար էր ազատվել հավելագրված բինաչաներից։

Բինաչաները, ըստ գյուղերի պատկանելության, երկու տեսակի էին՝ բահրաքյարական և յարիքյարական։ Բահրաքյարական յուրաքանչյուր բինաչա վճարում էր տասը թուման և երկրագործության արդյունքների 1/3 մասը։

Յարիքյարական կամ կիսրարական գյուղերի բնակչությունը գերազանցապես այլ վայրերից գաղթեցվածներ էին։ Նորեկ գաղթականներին սարդարը տրամադրում էր հող, անասուններ, սերմացու, երկրագործական գործիքներ։ Բերքը հավաքելուց հետո առանձնացնում էին սերմացուն, մնացածը բաժանվում սարդարի և յարիքյարների միջև։ Յարիքյարական բինաչան դրամով երեք թուման հարկ էր վճարում։

Պարսկական տիրապետության վերջին տարիներին Երևանի խանությունում կար բահրաքյարական 539,5 բինաչա։ Յարիքյարական բինաչաների թիվը նույն տարիներին կազմում էր 300,5, որոնցից 204,5-ը պետական էր, 20-ը՝ պետական-մուլքադարական և 76-ը՝ մուլքադարական։ Սրանց դրամական հարկավճարը կազմում էր 901 թուման[44]։

44 И. Шопен, նշվ. աշխ., էջ 972։

Մի շարք մահալներում հարկավճարումների համար բինաչաներ չկային։ Շարուրի մահալում, օրինակ, հողը մշակվում էր սարդարի հետ կիսրար, և դրամ չէին վճարում, իսկ բնապարհակներ կատարելու համար մահալի վրա գրանցված էր 126 բինաչա։

Որոշ վայրերում հարկավճարումներն ըստ բինաչաների կազմվում էին այլ կերպ։ Դա վերաբերում էր թուրքական քոչվոր ցեղախմբերով բնակեցված վայրերին։ Կարաչորլիներից 7,5 բինաչայի համար գանձում էին 62,5 թուման, միլլի ցեղախմբից՝ 19,5 բինաչայի համար 162,6 թուման, Քյոլանի և Մուղանլի ցեղախմբերից՝ 37 բինաչայի համար 193 թուման, սաաթլուցիներից՝ 28 բինաչայի համար 62,8 թուման, Ջիրախլի ցեղից՝ 40 բինաչայի համար 250 թուման, շահդիլիների և սադարակլիցիների 53 բինաչայի համար 275 թուման և այլն։ Հայկական համայնքից Կողբի և Չնչհավատի «աղ կտրողները» 38 բինաչայի համար վճարում էին 357 թուման, իսկ ակոռեցիները՝ 30 բինաչայի համար 250 թուման[45]։

Երևանի խանությունում բոլոր բինաչաների թիվը հավասար էր 1093-ի։ Սրանք տարեկան խանական գանձարան էին մուծում 7836 թումանից ավել դրամական հարկ։ Բացի այդ, կային նաև 490 բինաչաներ Շարուրի, Սարդարապատի և Կարբիբասարի մահալներում, որոնք դրամական տուրք չէին վճարում։

Համեմատաբար քիչ դրամական տուրք վճարում էին քոչվոր ցեղախմբերը, որոնց բնակավայրերի կենսապայմանները, ինչպես նաև զբաղմունքի տեսակը այնքան էլ չէին նպաստում նրանց բարեկեցությանը։ Բացի այդ, նրանց տրված էին որոշ արտոնություններ՝ սահմանապահ ծառայություն կատարելու համար։

Տարեկան դրամական տուրքեր վճարում էին նաև ա) Երևանի հայ բնակչությունը—1724,5 թուման, բ) էջմիածնի վանքը որպես մաղթա—400 թուման. (թեև Աբաս Միրզայի հրովարտակով ազատված էր այդ վճարումից), գ) Մակուի Ալի խանը, որը ենթարկվում էր Երևանի սարդարին և 300 թուման վճարում էր Շարուրի մահալում նրան որպես թիուլ պարգևված Արաբ-Յենգիջա, Կարա-Հասանլի և Դիադին գյուղերի համար, դ) քոչվոր ցեղերը—8219,8 թուման[46]։

Յուրաքանչյուր տարի Երևանի խանին տրվում էին ընծաներ՝ փեշքեշներ, որպես հարգանքի և հավատարմության նշան։ Փեշքեշը մատուցվում էր Նովրուզբայրամի օրը՝ ոսկե կամ արծաթե մատուցարանների վրա։ Այդ փեշքեշները պարտադիր էին, և նույնիսկ սահմանված էր նրանց գումարը։ էջմիածնի վանքը որպես փեշքեշ վճարում էր 150, Մակուի Ալի խանը՝ 200, Երևանի բնակիչները 100, Զանգիբասարի, Կրխբուլաղի, Գառնիբասարի, Վեդիբասարի, Շարուրի, Սուրմալուի, Սարդարապատի և Կարբիբասարի բնակիչները՝ 440 թուման։ Բացի այդ, Երևանի բնակիչները պարտավոր էին սարդարին ընծայել 60 գլուխ շաքար, իսկ Շարուրի բնակիչները, դրամի փոխարեն, վճարում էին մոտավորապես 1000 թաղիքե(?) ...

45 ՍՍՀՄ ԿՊՊԱ, ֆ. 1377, ց. 1, գ. 19, թ. 16բ։
46 И. Шопен, նշվ. աշխ., էջ 968—969։

ման[47]։ Դրամական զգալի գումար էր ստացվում կաշառատվությունից (ռուշ-վաթից), որին թեև փեշքեշի տեսք էր տրվում, բայց մատուցվում էր դատական գործերը հօգուտ իրենց լուծելու համար։

Խոշոր հարկ էր դրվում նաև հայերի խաղողի այգիների վրա։ Մահմեդականները խաղողի այգիների համար տուրք չէին վճարում, քանի որ նրանք իբր գինի չէին պատրաստում։ Զալմաքչի, Քանաքեռ և Կզլ-Ղալա (Կրխբուլաղի մահալ), Ծիրաքար (Զանգիբասարի մահալ), Աշտարակ (Կարբիբասարի մահալ) գյուղերի բնակիչները խաղողի այգիների համար վճարում էին 680 թուման։ Դրանցից միայն Աշտարակ գյուղը, որը խլվել էր էջմիածնից, վճարում էր 240 թուման։ Էջմիածնի սեփականությունը հանդիսացող Վաղարշապատ և Օշական գյուղերը ազատված էին այդ տուրքից։

Մահալների պետերը՝ միրբոլուքները, թեև իրենց ծառայության համար, սովորաբար խանից էին ռոճիկ ստանում, որոշ դեպքերում ռոճիկը վճարելու պարտավորությունը դրվում էր բնակչության վրա։ Սուրմալուի միրբոլուքի համար մահալի բնակչությունը հավաքում և վճարում էր տարեկան 40 թուման, իսկ նույն մահալի հայ բնակչությունն իր մելիքի համար հավաքում էր 30 թուման և այլն։

Բնակչությունից էր գանձվում նաև միրաբների (ջրբաժանների) վարձը։ Երևանի բնակչությունը պետք է հավաքեր և միրաբին վճարեր 145 թուման, Գառնիբասարի միրաբին տրվում էր 58 թուման, Վեդիբասարի միրաբին՝ 29, Կարբիբասար, Շարուր և Սուրմալու մահալների միրաբները ստանում էին 30-ական թուման, որոշ դեպքերում էլ տարբեր քանակությամբ բնամթերքներ։

Բնակչությունը հարկահավաքներին պետք է վճարեր ծառայության վարձ՝ ղուլլուղ-փուլի։ Այն գանձվում էր բերքահավաքից հետո։ Սարդարին հասանելիք յուրաքանչյուր խալվար հացահատիկի համար գանձվում էր 6 շահի, բամբակի և ծխախոտի համար՝ 2 թուման։ 1827 թ. ղուլլուխ-փուլու գումարը կազմել է 1383 թուման։ Միաժամանակ այդ տուրքի միջոցով ստուգվում էին մյուս տուրքերը։

Դեռ հնագույն ժամանակներից Երևանի բնակիչները սովորություն ունեին գիշերապահներ վարձել քաղաքում և շուկայում հասարակական անվտանգությունն ապահովելու համար։ Սարդարը այդ գործը հանձնարարել էր իր մարդկանց, իսկ դրանց հասանելիք 72 թուման դրամը դնում էր իր գրպանը։ Երևանի խանությունում հնձվորները ևս պետք է տուրք վճարեին՝ յուրաքանչյուրը 34 շահի. դա կազմում էր 400 թուման և մտնում էր սարդարի գանձարանը։։

Վերոհիշյալ բազմաթիվ դրամական ուղղակի տուրքերից և հարկերից բացի, խանական գանձարանին մեծ եկամուտ էին բերում նաև անուղղակի հարկերը՝ մաքսերը, զանազան տեսակի կապալային հողվածները, քարավանատները, կրպակները, դրամահատությունը և այլն։

Հյուսեին-Ղուլի խանի տիրապետության օրոք կապալով տրված օբյեկտներից ամենակարևորը Կողբի աղահանքերն էին, որոնք տարեկան 3500 թուման եկամուտ էին բերում։ Մաքսի կամ ռահդարիի գանձման գործը նույնպես տրվում էր կապալով։ Ռահդարի տարեկան կապալավարձը կազմում էր 3394

---

47 Նույն տեղում, էջ 274—275։

թուման[48]։ Գինի և օղի վաճառելու իրավունք ստանալու համար բնակչությունը պարտավոր էր սարդարին վճարել 110 թուման, որից 80 թումանն ստացվում էր Երևանից, իսկ 30-ը՝ Սարդարապատից։ Սևանա լճում ձկնորսության կապալից ստացվում էր ընդամենը 100 թուման։ Կապալային հողված էր նաև ծխախոտի վաճառքը։ Երևանի շուկայում ծխախոտի վաճառքից ստացվում էր 72 թուման. 50 թուման էլ բերում էր կաշվի դրոշմումը։

Որոշ դեպքերում սարդարը մուլքադարներին էր շնորհում նրանց գյուղերից ստացվող բոլոր հարկերը, բայց դրանց դիմաց զանազան գումարների դրամական հատուցում էր ստանում։ Այս գյուղերից էին Զանգիբասարի մահալի Դամիրչի-Տոըլը, Գառնիբասարի մահալի Ագհամզալը, Շարուրի մահալի Քյուրքչիլին, Ակսիքենդը, Լաուշանը, որոնց մուլքադարներից գանձվում էր 526 թուման։ Նույնիսկ Երևանի դարուղայի (ոստիկանապետի) պաշտոնն էր կապալով տրվում, որը սարդարին տարեկան 819 թումանի եկամուտ էր բերում, իսկ դարուղան էլ իր հերթին, այդ գումարից շատ ավելին գանձում էր Երևանի բնակիչներից, ինչպես նաև վաճառականներից, որոնք ապրանք արտահանելու համար նրանից թույլտվություն էին վերցնում և որոշակի գումար մուծում՝ ամեն մի բեռ ապրանքի համար։

Այսպիսի ուղղակի և անուղղակի հարկերից ու տուրքերից ստացվող դրամական գումարը տարեկան կազմում էր մոտավորապես 30709,2 թուման (158,837 ռուբլի արծաթով)[49]։

Դրամական հարկերն ու տուրքերը գանձվում էին երկու նվագով՝ աշնանը բերքահավաքից հետո և փետրվար ամսին, երբ ավարտվում էր բամբակի կտումը։ Այդ նպատակով գյուղերն էին ուղարկվում խանական ֆարաշներ՝ միրբոլուքների միրզաների ուղեկցությամբ և, ստորագրություն վերցնելով, պարտադրում էին տանուտերերին հավաքել և ճիշտ ժամկետին գանձարան մուծել դրամական հարկերը, հակառակ դեպքում տուգանում էին նրանց։ Տանուտերերը խկույն ձեռնամուխ էին լինում կես տարվա հարկերի գանձմանը։ Հարկերը հավաքելուց հետո նրանք այն մուծում էին խանական գանձարան և գանձապահից ստանում բարաթներ։ Դրանից հետո միրբոլուքները հավաքում էին բարաթները, վերադարձնում դրանք գանձապահին և ստանում մի ընդհանուր բարաթ՝ ամբողջ մահալի համար։

Դրամական հարկերից ու տուրքերից բացի, գյուղական բնակչությունից գանձվում էին նաև բնամթերային հարկեր։ Բնամթերային հարկերի չափը կախված էր գյուղերի այս կամ այն խմբին պատկանելուց։

Բահրաքյարական գյուղերը վճարում էին երկրագործական բոլոր մթերքների երրորդ մասը։ Ցարիքյարական կամ կիսրաբական գյուղերը, սերմացուն առանձնացնելուց հետո, գանձարանի հետ կիսում էին բերքը։ Ռանչպարական գյուղերի բնակչությունը լիովին ընչազուրկ գյուղացիներ էին, որոնք հողազուրկ էին և մշակում էին ուրիշի հողերը՝ նրանց իսկ արտադրամիջոցներով։ Գյուղացիներից խլում էին բերքի 2/3-ը և թողնում էին այնքան, որքան անհրաժեշտ

---

48 *И. Шопен*, նշվ. աշխ., էջ 979—980։

49 Նույն տեղում, էջ 984—986։

էր, որպեսզի նրանք սովամահ չլինեին։ Նման գյուղերի թիվը մեծ չէր։ Ընդամենը վեց ռանչպարական գյուղեր կային, որոնցից երկուսը պետական, երկուսը մզկիթապատկան և երկուսն էլ մուլքադարական։ Դրանք էին Զանգիբասարի մահալի Զարբախ և Սարվանլար-Սուֆլա մզկիթապատկան գյուղերը, Շարուրի մահալի Զոմախտըր և Կարբիբասարի մահալի Մուղանջիկ պետական գյուղերը, Սուրմալուի մահալի Ջիրախլի և Կարբիբասարի մահալի Ալիբեկլու մուլքադարական գյուղերը։ Սակայն այս գյուղերի հարկավճարումները միատեսակ չէին։ Զարբախ գյուղը վճարում էր չալթուկի և բամբակի բերքի 2/3-ը, իսկ մյուս մթերքների՝ երրորդ մասը։ Զոմախտըր գյուղը տալիս էր չալթուկի բերքի 2/3-ը, բայց մյուս կուլտուրաների բերքի կեսը։ Մուղանջիկ պետական գյուղի վիճակը ավելի ծանր էր՝ վերցվում էր բերքի 4/5 մասը։

Որոշ դեպքերում սարդարը մուլքադարներից վարձով վերցնում էր հարուստ գյուղերից բոլոր հարկերը գանձելու և սեփականացնելու իրավունքը, մուլքադարներին վճարելով որոշ քանակությամբ ցորեն, բամբակ և այլն[50]։

Սահմանված անասնահարկը վերցնելու համար նախապես հաշվում էին անասունների գլխաքանակը։ Ցուլը հավաքվում էր սովորաբար սեպտեմբերին։

Որոշ վայրերի գյուղացիներ կրում էին նաև մի այլ պարհակ, որ փարաքար էր կոչվում։ Լավ հողեր և առատ ջուր ունեցող գյուղերի բնակիչներին սարդարը սերմացու էր տալիս ցանելու համար և բերքահավաքից հետո ցանված յուրաքանչյուր խալվարի դիմաց վերցնում էր հինգ անգամ ավելի ցորեն և գարի, յոթ անգամ ավելի չալթուկ, և 60 բաթման էլ մաքուր զտված բամբակ։ Այդ եղանակով սարդարը տարեկան 89 խալվար 47 բաթմանի զուտ եկամուտ էր ունենում, որ դրամով հաշված կազմում էր 23715 ռուբլի։ Իսկ ընդհանրապես բնամթերային հարկերից ստացված եկամուտը հավասար էր 84435,4 թումանի (337742 ռուբլի արժաթով)։

Այս բոլորից բացի, գյուղացիներից վերցնում էին անասնակեր։ Քոչվոր ցեղերից յուրաքանչյուր հարյուր գլուխ այծի և ոչխարի դիմաց որպես հարկ վերցվում էր մեկ ոչխար և մեկ գառ, կամ յուրաքանչյուր հարյուր հազար գլուխ ոչխարի դիմաց 500 թուման։ Քոչվոր քրդական ցեղախմբերը 251700 գլուխ ոչխարի դիմաց վճարում էին մոտ 1300 թուման հարկ։ Նրանք պարտավոր էին նաև պահել սարդարին պատկանող անասունները դեշպեդեշի և ամանիի հիմունքներով։ Առաջին դեպքում քոչվորները պարտավոր էին պահանջելուն սեստալ նույն տարիքի և քանակի անասուններ։ Յուրաքանչյուր կթի ոչխարի դիմաց նրանք վճարում էին կես բաթման յուղ, իսկ բոլոր ոչխարների համար մեկ ստիլ (խտիլ) բուրդ։ Ոչխարների ծինը պատկանում էր պահողին։ Երկրորդ դեպքում աճեցրած գլխաքանակը և բուրդը պատկանում էր սարդարին, դրա հետ մեկտեղ 7,5 ստիլ յուղ յուրաքանչյուր կթի ոչխարից։ Ոչխարներին դրոշմում էին և 500 գլուխ տալիս երկու հովվի պահելու, որոնց վարձ էր տրվում 20 գառ և 120 բաթման ցորեն։ Դեշպեդեշի հիմունքով սարդարը պահել էր տալիս մոտ 11 հազար գլուխ ոչխար, որոնց դիմաց ստանում էր 5420,5 բաթման յուղ և 504 բաթման բուրդ։ Ամանիի հիմունքով սարդարը պահելու էր տալիս 8425

---

50 И. Шопен, նշվ. աշխ., էջ 988—989։

գլուխ ոչխար և 830 գլուխ խոշոր եղջերավոր անասուն։ Մեկ գոմեշի դիմաց սարդարին վճարվում էր 6 բաթման, իսկ կովի դիմաց՝ 4 բաթման յուղ, ընդամենը 2060 բաթման։ Ոչխարներից ստացվում էր 3154 բաթման յուղ և 3197 բաթման բուրդ։ Քոչվոր քրդերը պարտավոր էին նաև տարեկան մեկ անգամ սարդարին տրամադրել իրենց բեռնակիր անասունները, որպեսզի նա բամբակը, բրինձը և այլ ապրանքներ տեղափոխի Բայազետ, Նախիջևան, Կարս, Խոյ, Ուրմիա, Թիֆլիս և այլուր[51]։

Բնատուրք հավաքելու համար նշանակվում էին սարքյարներ (հարկահավաքներ), ինչպես սարդարի, այնպես էլ միրբոլուքների կողմից։ Սարդարը հաճախ մահալներն էր ուղարկում իր սարքյարներին, եթե նկատում էր, որ տուրքերը պակասում են, իսկ որոշ դեպքերում էլ իր սարքյարների փոխարեն նշանակում էր մահալային սարքյարներ։

Սարքյարները գյուղերում հայտնվում էին սովորաբար մայիս ամսին և հաշվի էին առնում ցանքերը։ Բերքահավաքից հետո հացահատիկը տանում էին կալերը։ Ամեն երեկո, կալսելուց հետո, ցորենի շեղջակույտերի վրա սարքյարը դնում էր իր փայտյա կնիքը, որպեսզի գողություն չկատարվի։ Գողության դեպքում հայտնում էին միրբոլուքին և պահանջում գտնել և պատժել մեղավորներին։ Կալսելուց հետո սարքյարը առանձնացնում էր պետական հարկը և լցնում գյուղական ամբարները, որոնք փակ էին և կնքված, հացահատիկը լցնում էին երդիկից։ Երբ կալսումը ավարտվում էր, բացում էին ամբարի դուռը և տանտիրոջ, քահանայի կամ մոլլայի, իսկ մուլքադարական գյուղերում նաև մուլքադարի ներկայությամբ, չափում էին հացահատիկը, մուլքադարին տալիս իր բաժինը, որից հետո գյուղացիները պարտավոր էին բերքը տեղափոխել պետական ամբարները։ Հանձնելուց հետո նրանք բարաթներ էին ստանում ամբարդարներից։ Պետական ամբարներ կային Երևանում, Սարդարապատում, Թալինի բերդում, Սուրմալուի մահալի գյուղերում։ Շատ դեպքերում բերքը մնում էր գյուղական ամբարներում՝ տնօրինություն սարդարի։ Որոշ դեպքերում էլ, ինչպես Շարուրի մահալում, ստացված տուրք-ընամթերքը տեղնուտեղը վաճառվում էր Ատրպատականից և այլ վայրերից եկած վաճառականներին։

Սարդարի կողմից նշանակված սարքյարներին բնակչությունը ամսական մեկից մինչև երկու թուման էր վճարում և երեք բաթման էլ մթերքներ ամեն մի կալից, բացի բամբակից։ Գյուղացիները միաժամանակ պետք է կերակրեին նրանց և ձիու համար էլ օրական մեկ բաթման գարի տային։ Սարդարական սարքյարների թիվը հասնում էր մինչև 50-ի։

Մահալական սարքյարները ամսական մինչև մեկ թուման էին ստանում և երեք բաթման էլ ընամթերք։ Դրանց թիվը հասնում էր 150-ի։ Բայց նրանք իրավունք չունեին ձիու համար գարի ստանալ։

Նախիջևանի խանությունը գտնվում էր Ատրպատականի կուսակալի անմիջական գերակայության ներքո։ Այստեղ հարկերը հավաքվում էին այնպես, ինչպես որ ընդունված էր ամբողջ Պարսկաստանում։ Նախիջևանի խաները

[51] *Н. Г. Богданова,* К вопросу о феодальной эксплуатации кочевников в Закавказском крае в первой трети XIX в. («Исторический архив», т. 2, М.—Л., 1939), տե՛ս նաև ՍՍՀՄ ԿՊՊԱ, ֆ. 1337, ց. 1, գ. 19, թ. 21բ—26բ։

տարեկան հարկ էին վճարում Աբաս Միրզային։ Այդ հարկի գումարը կազմում էր ավելի քան 30 հազար թուման դրամով և 2424 խալվար 90 բաթման՝ հացահատիկով։

Նախիջևանի խանությունում ուղղակի հարկեր գանձվում էին ինչպես առանձին շնչերից, այնպես էլ ծխերից, նաև բնակչության խմբերից, անասնապահությունից, մեղվաբուծությունից, ջրաղացներից, ջուլհակագործությունից, հայկական եկեղեցիներից, անշարժ կայքից, առևտրից և այլն։

Գլխահարկը կոչվում էր բաշ-փուլի և գանձվում էր յուրաքանչյուր 15 տարին լրացած հողագործից։ Այն գանձվում էր ամուրիներից, հայերից՝ 1 թուման, իսկ ադրբեջանցիներից՝ կես թուման 4 շահի։

Ծխահարկը կամ էվփուլին գանձվում էր յուրաքանչյուր ընտանիքից. հայերից՝ 2 թուման, ադրբեջանցիներից՝ 1 թուման։

Քաղաքային բնակչությունից քյանդարլիցիներին պատկանողները վճարում էին 1260,9 թուման, երկրագործությամբ զբաղվողները՝ 150 թուման։ Օրդուբադ քաղաքը վճարում էր հազար թուման։ Դարալագյազի մահալում հաստատված կարաչոռլու և քյանգարլու ցեղախմբերը միասին վճարում էին 2000 թուման։ Այդ գումարը հատկացվում էր Պարսկաստան փախած վրացական արքայազն Ալեքսանդրին, որին այդ մահալը տրված էր որպես թիուլ։

Անասունների յուրքանչյուր գլխի համար, բացառությամբ եզների, գանձվում էր որոշակի գումար։ Խոշոր եղջերավոր անասունների յուրաքանչյուր գլխից գանձվում էր մոտավորապես կես թուման, մանր եղջերավոր անասուններից՝ 12 շահի, 16 շահի էլ վճարվում էր մեղվի ամեն մի փեթակի համար։

Ջուլհակագործությամբ հայերն էին զբաղվում, որոնք և յուրաքանչյուր դազգահի համար վճարում էին կես թուման, մոտավորապես երկու թուման էլ մետաքսագործական ամեն մի դազգահից։

Հայկական ամեն մի եկեղեցի վճարում էր չորս թուման։ Սակայն որոշ վանքեր ավելին էին վճարում, ինչպես Կարմիր վանքը՝ տարեկան վեց թուման։ Այդ հարկը տրվում էր փաստորեն ազատ ժամասացության իրավունք ձեռք բերելու համար։

Քարավանատների, կրպակների և բաղնիքների տերերը, որպես հարկ, վճարում էին շահույթի քսան տոկոսը։ Այդ հարկի տարեկան ընդհանուր գումարը կազմում էր մոտավորապես 300 թուման։

Առևտրականները վճարում էին յուրաքանչյուր թումանից մեկ շահի, որպես ավայի։ Այդ հարկավճարի տարեկան ընդհանուր գումարը կազմում էր 400 թուման, որը նշանակում էր, թե տարեկան դրամաշրջանառությունը Նախիջևանում հասնում էր 80000 թումանի։

Նախիջևանի խանությունում գանձվում էր կուլլուղ փուլի, թարղի փուլի, ինչպես նաև թերակշռման համար հարկ՝ 2000 դիան յուրաքանչյուր խալվարից։ Օրդուբադի շրջանում բոլոր գնորդներից գանձվում էր նաև ղուլլեկ կոչված տուրքը, որը Պարսկաստանի որևէ մասում գոյություն չուներ։

Հարկեր գանձվում էին նաև այգիներից։ Խաղողի յուրաքանչյուր այգուց գանձվում էր 4,5 թուման, ամեն մի հազար մրգատու ծառից՝ երեք թուման։ Ընկույզի ամեն մի ծառի համար գանձվում էր 20 շահի։ Այդ հարկը կազմում էր բերքի մեկ հինգերորդ մասը։

Մնացած հողերը բաժանվում էին երեք հավասար մասի, մի մասը նախատեսվում էր ցորեն և գարի ցանելու համար, մյուս մասը այլ կուլտուրաների, այն է՝ բամբակ, բրինձ, քունջութ և այլն, որոնցից հարկը դրամով էր գանձվում, իսկ երրորդ մասը հանգստի համար և չէր հարկադրվում։ Հողագործները պարտավոր էին վճարել նաև դարմանի դիմաց՝ կես թուման ամեն մի խալվարից, մետաքսամշակության համար՝ ստացված ամբողջ մետաքսի հինգերորդ մասը, առվույտի ընդհանուր բերքի մեկ հինգերորդ մասը։

Ցորենի և գարու բերքից գանձարանը վերցնում էր ընդհանուր բերքի 3/10-ը, իսկ 1/20 մասը կազմում էր չելյեքը, որը նույնպես խաները սեփականացրել էին։ Մուլքադարական հողերից եկամտի 2/10 գնում էր գանձարանին, իսկ 1/10-ը տրվում էր մուլքադարին։

Հայաստանի հյուսիսային շրջաններում և Արցախում գանձվող հարկերը մեծ մասամբ ըստ էության նույնն էին, բայց կրում էին այլ անվանումներ։

Լոռիում, ինչպես և ամբողջ Վրաստանում գանձվող գլխավոր տուրքերը հետևյալներն էին՝ սուրսաթ, որը հավաքվում էր ինչպես պետական, այնպես էր կալվածատիրական և եկեղեցապատկան գյուղացիներից։ Յուրաքանչյուր ծուխ վճարում էր երեք կոտ հացահատիկ՝ երկու կոտ ցորեն և մեկ կոտ գարի։ Սուրսաթը գանձվում էր պատերազմների ժամանակ՝ զորքը հացով ապահովելու նպատակով։ Եթե բերքառատ տարի չէր լինում, ապա յուրաքանչյուր կոտի դիմաց գանձվում էր մեկ ռուբլի։ Հայկական շրջաններից գանձվող սուրսաթի քանակը կազմում էր 16042 կոտ[52]։

Ղալա (բահրայի տեսակ, որ դրվում էր ըստ հողի բերքատվության) վճարում էին միայն արքունական գյուղացիները, ընդ որում տարբեր վայրերում տարբեր չափով՝ հացահատիկի բերքի 1/7 մինչև 1/10 չափով։ Մաղթան (բահրա) դրամական հարկ էր, որ պետք է վճարեին քաղաքացիները՝ մոքալաքները և արքունական գյուղացիները։ Մաղթա գանձվում էր յուրաքանչյուր շնչից 1 ռուբլի 4 3/4 կոպեկ։ Այսպես կոչված թաթարական սուլթանությունները մաղթա վճարում էին հացահատիկով։ Բնատուրքերից էր կուլուխին՝ գինու հարկը՝ բերքի 1/10 կամ 1/7 չափով. երբեմն այս հարկը գանձվում էր դրամով, յուրաքանչյուր սապալեի (112 թունգու) դիմաց 10 ռուբլի արծաթով։ Մի շարք հարուստ համարված գյուղերից սուրսաթից բացի գանձվում էր կոդիսպուրի։ Կալվածատիրական գյուղացիները վճարում էին դրամական և բնամթերային հարկեր, կատարում էին աշխատանքային պարհակներ և այլն։

Թե պետական և թե կալվածատիրական գյուղացիների համար ամենածանր պարհակներ էին հանքերի մշակման համար կարգախմբեր առանձնացնելը և ճանապարհների վերանորոգումը կամ նորերի շինարարությունը։ Դրանք ծանր էին ոչ միայն այն պատճառով, որ գյուղացիներից մեծ ծախսեր և ուժերի լարում էին պահանջում, այլև խանգարում էին նրանց զբաղվել գյուղատնտեսական աշխատանքներով և շատ դեպքերում ծանր վնասներ էին հասցնում տնտեսությանը։

---

52 Վրացական ՍՍՀ Կենտրոնական պետական պատմական արխիվ (այսուհետև՝ Վրացական ՍՍՀ ԿՊՊԱ), ֆ. 16, գ. 31, էջ 27։

Ուղեմասերի բնակիչները նաև պետք է պահակային ծառայություն կատարեին, հեծյալ (123 մարդ) և հետևակ (500 մարդ) տային լեռնանցքները և ճանապարհները պաշտպանելու ավազակներից և համաճարակային հիվանդություններից[53]։

Ղարաբաղի խանության մեջ նստակյաց բնակչությունից և քոչվորներից տարբեր հարկեր էին գանձվում։ Նստակյաց բնակչությունը վճարում էր հետևյալ հարկերը՝ մալուջահաթ (բահրա)-հացահատիկի և երկրագործական մյուս արդյունքների 1/5-ի չափով, սալյանե (բահրա՝ հօգուտ խանական դիվանի)՝ գանձվում էր նույնպես հացահատիկով, միրզայանե, կոլլուղի, թահվիլանե և դարղալըղ, որոնք գանձվում էին խանական պաշտոնյաների, ծառաների և զորքի վարձատրության համար, ինչպես նաև դրամական հատուկ տուրք, որից կազմվում էր խանի կողմից ռուսական պետությանը վճարվող 8 հազար ռուբլու տուրքը։ Գյուղացիները վճարում էին նաև բայրամլըղ նովրուզ-բայրամի տոնին, հարսանիքի համար, իսկ առանձին գյուղեր նաև փայտ էին տալիս։

Քոչվորներից գանձվում էր սալյանե, օթաղ-խարջի, սիրխանա-խարջի, (խանական խոհանոցի համար գանձվող տուրք)՝ ինչպես նաև բահրա՝ պետական հողի վրա վարուցանք կատարելու իրավունքի համար՝ յուրաքանչյուր արորից 1,5 չետվերտ ցորեն և 1,5 ջվալ գարի, ինչպես նաև դրամական տուրք։

Հարկերի գանձումը ուղեկցվում էր բռնություններով, խժդժություններով, գյուղացիությանը դատապարտելով աղքատության ու թշվառության։ Խիստ բնորոշ է հինավուրց Դվինի ավերակներից հարավ-արևմուտք ընկած Աղբաշ գյուղի թշվառության նկարագրությունը, որ թողել է Մ. Թաղիադյանը։ «Սրա անդաստանները հռչակավոր են բրնձի ընտիր և պատվական բերքով, որ միայն իշխանների ու թագավորների կերակուր է դառնում։ Թեև բոլորի համեմատ շատ առատ էր բերքը, սակայն բնությունից խիստ ընտիր էր, ուստի կրկնապատիկ ավելի գնով էր վաճառվում, քան այդ գավառի այլևայլ արտերի բերքը։ Այսպիսի բարեբեր գյուղի բնակիչները, հարկավ պետք է հարստանային, բայց ընդհակառակը, չքավորության շղթաներով էին կաշկանդված, որովհետև Երևանի կուսակալ Հյուսեին Ղուլի խանը, որպես երկրիս բոլոր գյուղերի, այնպես էլ այս գյուղի բնակիչների բոլոր ցանքսերին բաժնեկից էր դառնում։ Ամեն մի տան տալիս էր մի լուծ եզներ, բրնձի, բամբակի և այլ շահաբեր կուլտուրաների սերմեր։ Նրանք ցանում էին, իսկ հնձի ժամանակ խանը ուղարկում էր (հարկահավաքներ), որոնք կիսում էին բերքը և ապա մնացած մասից էլ վերցնում էին արքունական տուրքը, այնպես որ գյուղացիների ծախսերի համար բավական բան չէր մնում։

Եթե պատահում էր, որ երկնառաք պատուհասից անբերրիանում էին հանդերը և բերք չէին տալիս, խանը, ժողովրդի վրա գցելով մեղքը, անպատմելի խժդժությամբ բռնանում էր նրանց վրա, բռնագրավում էր ինչ որ գտնում էր նրանց տանը՝ կահն ու կարասին և, եթե դա էլ էր պակասում, վերցնում էր նրանց կանանց ու զավակներին՝ իր ընկերաքաժնի դիմաց։ ...Մեծի միջոցով էր նա բազմապատկում յուր ոսկիները և տառապյալ մարդկանց տանջանքների

53 Վրացական ՍՍՀ ԿՊՊԱ, ֆ. 16, գ. 4150, թ. 121։

հաշվին հավաքում էր այն հագեցնելու իր որկորը. ամբողջ երկիրը մաշում էր կեղեքումներով և ժողովրդի քրտինքով կառուցում Ղազվինի իր դաստակերտները, բազմացնում իր գանձերը»[54]։

Հարկային դաժան սիստեմը, իշխանավորների ընչաքաղցությունը, բազմաթիվ ու բազմապիսի հարկերը, կանանց ու երեխաների վաճառքը, ունեցվածքի բռնագրավումը, խեղճ գյուղացիության ստրկացումը վաշխառուներին, որոնք բարձր տոկոսներով և կարճ ժամկետներով գումարներ տալով, հետագայում բազմապատիկ ավելին էին կորզում իրենց ճանկն ընկած զոհերից, գոյության անտանելի պայմաններ էին ստեղծում երկրի ամենաբազմամարդ և առավել շատ շահագործվող դասակարգի՝ գյուղացիության համար։

## 6. ԱԶԳԱՅԻՆ ՃՆՇՈՒՄՆԵՐ

Պարսկական տիրապետության վերջին տարիներին հայ ազգաբնակչության վիճակը գնալով ավելի ծանրացավ։ Սոցիալական դաժան ճնշումներին գումարվում էին ազգային ու կրոնական հալածանքները, որպես պատասխան հայ ժողովրդական զանգվածների ազատագրական ձգտումների, Ռուսաստանի օգնությամբ օտար լուծը թոթափելու նրանց փորձերի։ Հայերի նկատմամբ բռնություններն ու վայրագությունները հասել էին մինչև այդ չտեսնված չափերի. «Մարդ ո՞ր հողը տա գլխին. ինչ ուզում են, էն են անում։ Դատաստան չկա, իրավունք չկա... Աղջիկն ասես, քաշում էին, տղեն ասես՝ տանում, շատ անգամ թուրքացնում, հավատից հանում, շատ անգամ էլ գլուխը կտրում, էրում, նահատակում։ Ո՛չ տունն էր իրանը, ո՛չ մալը, ո՛չ ապրանքը, ո՛չ ջանը՝ ո՛չ օղլուշաղը»[55]։

Նույնիսկ ամենայն հայոց կաթողիկոսությունը և նրա կենտրոն էջմիածինը, որոնք իբր թե գտնվում էին գահաժառանգ Աբաս Միրզայի «հատուկ հովանավորության» ներքո, ենթարկվում էին անլուր հալածանքների ու ահավոր բռնությունների։ Բանը երբեմն այնտեղ էր հասնում, որ նույնիսկ հոգևոր պաշտոնյաներին էին փորձում կրոնափոխ անել, հարկադրում մահմեդականություն ընդունել։

Սարդարական կառավարությունը օգտագործում էր ամեն մի առիթ, որպեսզի կաշառքներ ու կամավոր «նվիրատվություններ» կորզի իր հպատակներից։ «Պատահում էր, որ ոչ միայն սարդարը, այլև մի ինչ-որ խան էր գալիս,— աշտարակցիների պատմածից իր օրագրում մեջ է բերում դեկաբրիստ Ն. Լաչինովը,— և նրա այստեղ մնալու ժամանակը անցնում էր տանջալից սպասումով՝ ոչ-ոք վստահ չէր իր կյանքի ապահովության համար։ Ծանրությունն ընկնում էր մարդու հոգուց միայն այն ժամանակ, երբ նա գնում էր, բայց այն երկյուղը, որ նա հանկարծ չլինի թե վերադառնա, երկար ժամանակ թույլ չէր տալիս բոլորովին հանգստանալ...»[56]։ Մի այլ կապակցությամբ նույն Լաչինովը գրում էր. «...սարդարի գալուստը բոլորին ստիպում էր թպրտալ։ Ամեն րոպե վախենալով զրկվել ողջ կարողությունից, նրանք վստահ չէին կա-

54 Մ. Դ. Թաղիադեանց, Ճանապարհորդութիւն ի Հայս..., հատ. I, էջ 226—227։

55 Խ. Աբովյան, Երկերի լիակատար ժողովածու, հատ. III, էջ 38։

56 Մ. Ներսիսյան, Դեկաբրիստները Հայաստանում, էջ 377—378։

*րող լինել նույնիսկ կյանքի համար»[57]։ Այդպես էր ողջ Պարսկաստանում. իր ձեռքում իշխանություն ունեցող անձի այցելությունը որևէ վայր հաճախ իր ետևից բերում էր շատերի սնանկացում։ Հայ ունևոր դասակարգերը ևս ազատ չէին այդ վտանգից. նրանց կյանքը և ունեցվածքը նույնպես մշտական սպառնալիքի տակ էին։ Հյուսեին-Ղուլի խանի կառավարչության խիստ ցայտուն բնութագիրը տվել է ժամանակակից իրադարձությունների ականատես Մեսրոպ Թաղիադյանը։ Սարդարը, գրում էր նա. «գանակոծությամբ էր ծնեցնում յուր ոսկինները և տառապյալների տանջանքների արյունով էր արբենում. ամբողջ երկիրը մաշում էր կեղեքումներով և [հպատակների] քրտինքով էր կերտում Ղազբինի իր դաստակերտները և մեծացնում հարստությունը»[58]։*

*Խ. Աբովյանը Երևանի բերդի մասին, որպես Արևելյան Հայաստանում պարսկական դաժան տիրապետության հենակետի, գրել է. «Երևանու բերդը՝ ա՜խ՝ աչքս դուս գա, քանի՞ քանի ողորմելի հայի միս ա կերել, քանի՞ քանի անմեղ հոգի՝ տարիքներով չարչարվելուց, տանջվելուց, կենդանի նահատակ ըլնելուց, կրակի, բոցի, երկաթե շամփրի, թոխմախի, կղակած քարփչի տանելուց, համբերելուց եդը, կամ թոփի գյուլլի հետ ա թռել, հազար կտոր էլել, կամ տարաղաջի (կախաղանի) վրա յա՝ գոռալով, երկինք, երկիր աղաչելով, իր միսն իր ատամներովը կծելով, աչքերը դուս տրաքելով, ղովում, ղարղաշ, իրավորի, ազգականի, իր որդոց զավակաց ձենը լսելով, տրորվելով, փոթոթվելով, հոգին ավանդել, երկինքը գնացել, որ պրծնի էս դառն աշխարքիցը, էն կատաղի գազանների ձեռիցը։ Քանի՞ քանի ջահել երիտասարդ՝ մեկ սաղ օջաղի մեն մենակ որդի, մեկ աղքատ, չքավոր տան սին, մխիթարություն, մեկ տասը գլուխ քյուլֆաթի տեր ու ապավեն, իր ծաղկած, դալար հասակին, իր ըմբրի ու արևի նոր բաց էլած ժամանակին՝ կամ սաղ-սաղ քերթվել ա, կամ իր պատվական գլուխը գառան պես թրին դեմ արել...»[59]։ Սա այն համընդհանուր դառն վիճակի վառ նկարագրությունն է, որի մեջ գտնվում էր օտար լծի տակ կեղեքվող հայ ժողովուրդը։*

*Նույնիսկ 1810 թ., երբ շահական ու խանական կառավարությունները կարծես էջմիածինը սիրաշահելու դիրք էին բռնել, դարձյալ շարունակվում էին հալածանքները։ Երբ Փամբակից փախած Նաղի խանի տոմը հրդեհվեց մի մարդու կողմից, որի ընտանեկան պատիվը արատավորել էր այդ նույն Նաղի խանը, սարդարի եղբայր Հասան խանը այդ առիթն օգտագործեց՝ կրկին անգամ կողոպտելու վանքը։ Նաղի խանի եղբայր Հասան բեկը իր մարդկանցով ներխուժում է էջմիածին և սկսում ծեծել ու ջարդել պատահած մարդկանց։ Զինվորներից մեկի հարվածից վախճանվում է զառամյալ Ստեփաննոս եպիսկոպոսը։ Քսան հրացանավոր պարսիկներ դաժանորեն ծեծում էին Ներսիսյան Հովհաննես եպիսկոպոսին և Մայր տաճարից գետնաքարշ տանում մինչև Գայանեի վանքը։ Տեղապահ Բարսեղ եպիսկոպոսին այնպես են հարվածում, որ երկու ժամ ընկած է մնում սառույցի վրա։ Մի քանի օր հետո ձերբակալվում են*

57 *Նույն տեղում*, էջ 383։

58 Մ. Թաղիադեանց, *Ճանապարհորդութիւն ի Հայս*, հատ. I, էջ 227։

59 Խ. Աբովյան, *Երկերի լիակատար ժողովածու*, հատ. III, էջ 59—60։

Ներսես Աշտարակեցին, տնտես Ղուկաս վարդապետը, մեհտար Ավետիսը և ուրիշներ։ Հասան խանը սպառնում է նրանց հրանոթազարկ անել։ Էջմիածնի վանքից 450 թուման դրամ կորզելուց հետո միայն հանգիստ են թողնում միաբանությանը[60]։

Նրանք, ովքեր խանին «զայրացնում էին», պետք է բռնեին փախուստի ճանապարհը։ Հետագայում Շուշիում հաստատված երևանցի հայ մեծահարուստ Ջոհրաբ Թառումյանը, ժամանակին հալածվելով սարդար Մամադ խանից, երեք օր մնացել էր մի արկղի մեջ թաքնված, որից հետո մի կերպ դուրս էր եկել ու փախել խանության սահմաններից[61]։ Վայրագ կամայականությունների և հալածանքների դեպքերը կրկնվել են սարդարական տիրապետության բոլոր ժամանակներում։ 1823 թ., երբ Եփրեմ կաթողիկոսը գտնվում էր փախուստի մեջ, սարդարի պաշտոնյաներից ոմն Միրզա Ջապար, իր ծառաների հետ գալիս է վանք, հյուրընկալվում «անդէն ըմբռնեալ յարբեցութեան»։ Երբ նրանք բավականաչափ գինովանում են, հանում են սրերը և սկսում աջ ու ձախ հարվածել հանդիպած մարդկանց։ Թիկունքից վիրավորում են Ստեփաննոս Գեղամյան և Փիլիպպոս Թոխատցի եպիսկոպոսներին, հյուրընկալ Հակոբ և Գևորգ Տաթևացի վարդապետները վիրավորվում են թևերից։ Անբաժին չի մնում նաև աթոռակալ Եփրեմ Տեղապահյան արքեպիսկոպոսը։ Ժամանակակիցները հետևյալ կերպ են նկարագրում այս դեպքը. «Սարդարի հավատարիմ Միրզա Ջապպարը գնում է աթոռ այն դիտավորությամբ, որ այնտեղ գտնված բարիքները վայելելուց հետո, հրաման տա իր ծառաներին սուր վերցնել և թրատել բոլորին. այդ ժամանակ երկու եպիսկոպոսներից մեկին երկու տեղով և մյուսին երեք տեղով ծանր վիրավորում են, այլև սրով հարվածում են մի վարդապետի գլխին, կտրում վեղարը և նրա գլուխը փրկվում է շնորհիվ վեղարի մեջ եղած քամբակի. վարդապետներից մեկի բազուկը փշրում են փայտի հարվածով, իսկ մի ուրիշ վարդապետի ծեծում են մինչև շնչասպառ լինելը և հետո կամենում են մորթել՝ գետնին տարածելով, երբ հանկարծ վրա է հասնում սարդարի պաշտոնյաներից մեկը և ազատում նրան. հարվածներից մեռնում է միայն դռնապաններից մեկը»[62]։

Տանջանքների նորանոր ձևեր հնարելիս բարբարոսների երևակայությունը կանգ չէր առնում ոչ մի բանի առաջ։ Պատճառաբանելով, որ իբր թե մի շարք արքեպիսկոպոսներ չեն հնազանդվում կաթողիկոսին, Էջմիածին է ժամանում խանի զինվորական պաշտոնյաներից սարհանգ Մահմեդ խանը և հրամայում, որպեսզի վեց արքեպիսկոպոսների և Վաղարշապատի նշանավոր բնակիչներից մի քանի հոգու լցնեն մի սենյակի մեջ և ապա «հիսել զդրունս, զի մեռցին անդէն»։ Այնուհետև «որքան էլ որ չեն աղաղակում պատրիարքն ինքը և առհասարակ մյուսները, թե նման խոսք չի եղել իրենց մեջ, չեն կամենում լսել և ոչ էլ ներում են, մինչև որ սարհանգ Մահմեդ խանը հազար թումանի մուր-

---

60 Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 17, վավ. 46։

61 Մ. Թաղիադեանց, Ճանապարհորդութիւն ի Հայս, հատ. I, էջ 298—299։

62 «Համառօտութիւն անցից Քրիստոսակերտ մայր աթոռոյ սրբոյ էջմիածնի», Տփխիս, 1853, էջ 18—19։

հակ չի վերցնում, այդ գումարը մի ամսում վճարելու պայմանով, բացի նրանից, որ վերցնում են սարհանգն ու նրա հետ եղածները որպես վարձ իրենց պատճառած տանջանքի համար»[63]։

Դրան ավելանում էին նաև պատերազմի առաջացրած ավերները։ Պատերազմական գործողությունների ժամանակ, ինչպես արդեն հիշատակվել է, ժողովուրդը տեղահանվում էր, իսկ նրա ունեցվածքը թալանվում, ոչնչացվում։ Ցնցող է տեղահանության պատկերը «Ղալաբանդըլըղի» (բերդի պաշարման) ժամանակ, որ տալիս է Խ. Աբովյանը. «Զորագեղի ու Կոնդի քուչեքումը որ ասեղ քցեիր, գետինը չէր հասնիլ, էնքան Արախլու, Ղարափափախ, Քուրդ, Սարվաղ էին լցվել, որ գետինը սևացել էր։ Բերդի չորս կողմն էլ տեղ չկար. դուքան էր՝ որ թարաշ էին տալիս, տուն էր, որ թալանում, կրակ տալիս ու տան տիրոնջը չիփ չիփլախ իր ողորմելի օղլուշաղի ձեռը բռնած, դառ ու դարդակ դուս խըռկում, թրի, թվանքի առաջն առնում... Քուչեքանց միջին՝ երեխեքանց, հարսների ու աղջկերանց ձենը՝ քարերը մղկտացնում էր, լացացնում։ Շատը ձիու ոտի տակին էր հոգին տալիս, շատը ահիցն ու դողիցն էր լեղապատառ ըլում, շատին երեսի վրա էին քաշ տալիս, որի մազերիցն էին ձիու եդևիցը սուրումթմիշ անում, քարեքար տալիս, էն օրը գնա, ոչ եդ գա, ինչ Երևանի հալն էր»[64]։

Հաճախ էր պատահում, որ հարկերը և պարտքերը վճարելու կարողություն չունեցողների կայքի հետ վաճառում էին նույնիսկ երեխաներին։ 1810 թ. քառասուն թուման պարտքի դիմաց ցանկանում էին վաճառել քանաքեռցի Հովհաննեսի Ահարոն և Կարապետ որդիներին։ Ճարահատյալ հայրը այդ գումարը վերցնում է Ներսես Աշտարակեցուց և այդպիսով փրկում իր որդիներին՝ ստրուկ դառնալու վտանգից[65]։

Օգտագործելով իր բռնակալական իշխանությունը և բաժնեկից դառնալով բազմաթիվ բերքատու գյուղերի բնակիչների ցանքսերին, բնական պատուհասների և այլ տարերային աղետների դեպքերում խանը պահանջում էր իր բաժինը. «...բռնանայր նոցա անպատմելի խժդժութեամբ, առնոյր գրաւէր իւր զոր ինչ տունս նոցա գտանէր զկահս և զկարասիս, և ի պակասիլ նոցուն զկանայս և զորդիս նոցա՝ առ ի վճար ընկերական բաժնի իւրում»[66]։ Դրանով իսկ նա մշտական աղքատության և իրավազրկության էր դատապարտում երկրի բնակչությանը։

Ահա այսպիսի միջոցների էին դիմում սարդարը և նրա պաշտոնյաները՝ անօգնական ու անզոր հպատակներից նրանց վերջին հյութերը քամելու համար։ Տուգանքները, անասելի տոկոսներով, կարճ ժամանակով դրամ փոխ տալը, ծեծն ու սպառնալիքները, ամենաարժեքավոր մթերքների վաճառքի մենաշնորհ սահմանելը, հպատակներից էժան գնով ապրանքներ գնելը և թանկ գնով նրանց վերավաճառելը, իրենց իսկ շնորհած ռաղամներն ու շնորհագրերը ոտնատակ տալը, կաշառակերությունը, բռնի կրոնափոխությունը, երեխաներին ծնողներից անջատելն ու պարտքերի դիմաց որպես ստրուկներ վաճառելը,

---

63 Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 45, վավ. 142բ։
64 Խ. Աբովյան, Երկերի լիակատար ժողովածու, հատ. 3, էջ 85—86։
65 Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 22ա, վավ. 41։
66 Մ. Թաղիադեանց, Ճանապարհորդութիւն ի Հայս, հատ. I, էջ 226։

*գերեվարությունը և բազմաթիվ նման բնույթի ապօրինի գործողությունները, խժդժությունները ու շարաշահումները հայ ժողովրդական զանգվածների համար գոյության դժոխային պայմաններ էին ստեղծել։ Պարսկական տիրապետության վերջին տարիներին հայ ժողովրդի այդ անտանելի գոյավիճակի կենդանի ու սարսռեցուցիչ պատկերը մեզ թողել է Խաչատուր Աբովյանը «Վերք Հայաստանի» վեպում։ Մեծ հայրենասերի խոսքերով ասած. «էս անօրենքները մեզ հավատից էլ են քցել, հալից էլ, մալ են տեսնում մեզանում՝ խլում են, ղշիկ են գտնում՝ քաշում են, մեզ կրակն են դրել, սաղ սաղ էրում են, փոթոթում, թե մեկ խոսք էլ ասում ես հո՝ վայ քո օրին, արևին՝ գլխիդ էնքան բոնցկում են (մուշտում), որ աչքդ բուռդ ա ընկնում։ Տունդ էլ որ քանդեն ձեն չպետք է տաս. ախր որ մեր միսն էսպես գազանի պես ուտում են, սրա չարեն ի՞նչ կըլի։ Տեղից վեր կենողը ոտը մեզ վրա յա բարձրացնում։ Ջիլում՝ որ մեկ օր գնանք, ջուրը թափինք, պրծնինք։ Ախր էս հո օր չի՝ որ մենք քաշում ենք»*[67]։

*Պարզ է, որ նման պայմաններում, երբ օտար բռնակալության ծանր բըռունցքը անողոքաբար ճնշում էր հայ ժողովրդի բոլոր խավերին, նրանք պետք է փրկության ելք որոնեին։ Այդ ժամանակամիջոցում հասունացող արտաքին քաղաքական իրադարձությունները ինքնըստինքյան թելադրում էին, որ արդեն Անդրկովկասում հիմնավորվող ռուսական զենքն է, որ պետք է ազատի նրանց այդ ծանր վիճակից։ Դեպքերի տրամաբանական զարգացումը օրակարգի մեջ էր դրել Արևելյան Հայաստանի ազատագրումը պարսկական տիրապետությունից։*

67 Խ. Աբովյան, *Երկերի լիակատար ժողովածու, հատ. III, էջ 80։*

ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

# ԱՐԵՎՄՏՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ

## 1. ՔԱՂԱՔԱԿԱՆ ԻՐԱՎԻՃԱԿԸ ԹՈՒՐՔԻԱՅՈՒՄ

XVIII դարի վերջին և XIX դարի սկզբին Թուրքիան ապրում էր տնտեսական ու քաղաքական խոր ճգնաժամ։ Ռազմական նվաճումների ճանապարհով ստեղծված կայսրությունը թուլանում էր, քայլ առ քայլ զիջում երբեմնի դիրքերը, իրար հետևից կորցնում նախկինում բռնագրաված երկրամասերը։ Այս պայմաններում աստիճանաբար ուժեղանում էին կենտրոնախույս ուժերը, հաճախակի դառնում միջֆեոդալական ու միջցեղային բախումներն ու ներքին երկպառակությունները։ Սուլթանների վաղեմի հավատարիմ զորաջոկատները՝ ենիչերիները (ենի-չերի՝ նոր զորք) մեծ մասամբ հավաքվել էին մայրաքաղաքում, մասնակցում էին գահակալական կռիվներին, գահընկեց էին անում անցանկալի վեհապետներին, կառափնարան քշում մեծ վեզիրներին ու բարձրաստիճան այլ անձանց։ Թուրքական հետևակն ու հեծելազորը խիստ թուլացել էին[1]։

Օգտվելով կայսրության ռազմա-քաղաքական ու տնտեսական հզորության թուլացումից՝ Անատոլիայի մեծ մասում սփռված քրդական ցեղապետերն իրենց կապերը խզել էին կենտրոնական կառավարությունից, դարձել անկախ դերեբեյներ (հողատերեր) և ոչ միայն հարկեր չէին վճարում, զինվորական ուժեր չէին տրամադրում գերագույն սյուզերենին, այլև ասպատակում էին նրան հպատակ մնացած երկրամասերը։ Քուրդ խաներին ենթակա շրջանները, Կիլիկիայի մեծ մասը և Եգիպտոսը վերածվել էին շարունակական կռիվների թատերաբեմի... 

Այս ընդարձակ շրջանների վրա պետության գերիշխանությունը թույլ էր։ Բիթլիսի, Վասպուրականի, Մուշի, Խիզանի, Դիարբեքիրի իշխողները, լեռնային ու դաշտային Կիլիկիայի մեծ մասին տեր դարձած Կոզանյան բեկերն ու խաները արգելակում էին թուրքական զորաջոկատների ու հարկահավաքների մուտքն իրենց գավառները։ Եգիպտոսի կառավարիչ Մուհամեդ Ալին և նրա որդի Իբրահիմ փաշան ռազմականապես այնքան էին հզորացել, որ պարտություն էին մատնում թուրքական բանակները։

---

[1] *Д. Г. Розен,* История Турции от победы реформы в 1826 году до Парижского трактата в 1856 году, ч. I, СПб., 1872, стр. 7—8.

Թուրքահպատակ ազգային շրջանների, նրանց Թուրք կառավարիչների ու Բարձրագույն Դռան փոխհարաբերությունները ևս լարված էին։ Ռազմա-ֆեոդալական սիստեմը վաղուց ցույց էր տվել իր սնանկությունը։ Թուրք զինվորականներն, օգտվելով իրենց համար նպաստավոր իրադրությունից, պետական հողերը դարձրել էին մասնավոր, ժառանգական սեփականություն։ Ազատվելով զինվոր տալու պարտականությունից, նրանք այժմ կարող էին տիրել նախկին հողատերերին, հարկը գանձել ու գրպանել։

Ուժեղացել էին ազգային ճնշումները։ Քրիստոնյա այլազգիները զգալով կենտրոնական պետության թուլությունը, տարբերայնորեն ոտքի էին ելնում, դարավոր շղթաները խորտակելու փորձեր անում։

Կայսրության ներքին հակասությունները մեծապես օգտագործում էին եվրոպական մեծ տերությունները, հատկապես Անգլիան, Ֆրանսիան և ցարական Ռուսաստանը, որոնց շահերը խաչաձևվում էին Մերձավոր Արևելքում։ Դարասկզբին Ֆրանսիան կարողացավ սրել Ռուսաստանի և Թուրքիայի հարաբերությունները, որի դերը պակաս կարևոր չէր ռուս-թուրքական 1806—1812 թթ. պատերազմի բռնկման գործում։ Ինչպես այդ, այնպես էլ հետագա իրադարձությունները (հատկապես Տիլզիտի հաշտության պայմանագրի կնքումից հետո) թուլացրին Ֆրանսիայի ազդեցությունը Օսմանյան կայսրության վրա. Անգլիան ստացավ ազդեցության գոտիներ, իսկ Ռուսաստանն իր սահմաններն ընդարձակեց մինչև Պրուտ գետը։ Իրար ետևից կնքվում ու չեղյալ էին հայտարարվում ռուս-թուրքական, թուրք-անգլիական պայմանագրերը, փոխվում էին սուլթանները, բայց եվրոպական վեհապետություններից կախվածությունը նկատելիորեն ուժեղանում էր։

Գիտակցելով կայսրության՝ ներքին ու արտաքին ազդակներով պայմանավորված գահավիժումը, ռազմական հզորության կորուստը, կենտրոնախույս ուժերի զորեղանալը և այլն, Բարձրագույն Դուռը մի շարք ռեֆորմներ էր անցկացնում, որոնք սակայն Թուրքիային աշխուժացման որոշ նշաններ հաղորդելով հանդերձ, այլևս անկարող էին վերադարձնել նրա վաղեմի հզորությունը։

Սելիմ III-ին ու Մահմուդ II-ին ծառայող Մուստաֆա Բայրաքտար ու Ռեշիդ փաշաները Թուրքիայի եվրոպականացման փորձեր արեցին։ Նրանք ջանացին վերակառուցել բանակն ու ոստիկանությունը, առողջացնել պետական ապարատը[2]։ Կայսրության կենտրոնացման ուղղությամբ որոշ քայլեր կատարեց սուլթան Մահմուդ II-ը։ Իրեն գործակից ունենալով Մեհմեդ Ռեշիդ փաշային, նա խորամանկությամբ, տեղական դժգոհ տարրերին օգտագործելով, 1820-ական թվականներին կարողացավ զենքի ուժով փոխել Ուրֆայի, Դիարբեքիրի, Մոսուլի, Բաղդադի, Մարդինի փաշաներին, հպատակեցրեց Ջմյուռնիայում նստած Կարա-օսմանօղլուների դինաստիան, Անգորայի Չապան-օղլուներին։ 1826 թվականի հունիսի 16-ին[3], գրեթե մեկ գիշերվա ընթացքում, ոչնչացվեց ենիչերիների բանակը մայրաքաղաքում, կարճ ժամանակ անց՝ նաև

---

[2] *А. Ф. Миллер,* Мустафа паша Байрактар, М.—Л., 1947, стр. 50—70.

[3] *Д. Г. Розен,* նշվ. աշխ., էջ 7—20, տե՛ս նաև Ա. Պերպերյան, Պատմություն հայոց, Կ. Պոլիս, 1871, էջ 180—181։

ողջ կայսրությունում։ Սակայն ռուս-թուրքական 1828—1829 թվականների պատերազմը, եգիպտացիների ապստամբությունը, ավատատերերի դիմադրությունները և այլն, Մահմուդ II-ին հնարավորություն չընձեռեցին իրագործելու իր մշակած ծրագրերը։

XIX դարի առաջին քառորդում Թուրքիան շարունակում էր մնալ միջնադարյան հետամնաց, մասնատված մի կայսրություն։ Գրեթե անփոփոխ էին մնացել ոչ միայն սոցիալ-տնտեսական կարգերը՝ հողատիրության ձևերն ու հողատիրական հարաբերությունները, այլև վարչակարգը երկրում, առավել ևս նրա անատոլիական մասում։

## 2. ՎԱՐՉԱԿԱՆ ԲԱԺԱՆՈՒՄԸ

Օսմանյան կայսրության մեջ մտնող երկրները բաժանված էին կուսակալությունների, որոնք կոչվում էին էյալեթներ կամ փաշայություններ։ Սրանք իրենց հերթին բաժանվում էին սանջակների (գավառների), իսկ վերջիններս էլ տրոհվում էին վարչական ավելի մանր միավորների։

Թուրքիային հպատակ մյուս երկրների նման Արևմտյան Հայաստանը և հայաբնակ նահանգները բաժանված էին Էրզրումի (Կարին), Բայազետի, Կարսի, Ախալցխայի (Չըլդըր), Վանի, Դիարբեքիրի, Սեբաստիայի (Սվազ), Կեսարիայի փաշայությունների։ Կիլիկիայի հայկական մասն ընդգրկված էր Ադանայի և Մարաշի (Եփրատցիների)[4] փաշայությունների մեջ։

Մինչև Ադրիանապոլսի դաշնագիրը (1829 թ.) Արևմտյան Հայաստանի և Հայկական Կիլիկիայի վարչական բաժանումը հետևյալ պատկերն էր ներկայացնում.

1. Էրզրումի փաշայությունը ընդգրկում էր Կարին, Թեքման, Բասեն, Թորթում, Սպեր, Բաբերդ (Բայբուրդ), Դերջան, Երզնկա, Կամախ (Քեմախ), Քեղիի, Ղուզուչան սանջակները։ Հիշյալ բոլոր սանջակները ենթարկվում էին Կարինում նստած թուրքական սերասքյար փաշային, հետևապես և կենտրոնական կառավարությանը։ Անվանապես փաշայությանը կցված Տուժիկ և Մանազկերտ (Մելազկերտ) գավառները, փաստորեն, կիսանկախ դրություն էին ձեռք բերել և վաղուց ի վեր չէին ենթարկվում Էրզրումի սերասքյարին[5]։ Շապին-Կարահիսարի գավառը մինչև 1806 թվականը Տրապիզոնի փաշայության մեջ էր, իսկ հետագայում կցվեց Էրզրումին։

2. Բայազետի փաշայությունը բաղկացած էր Բայազետ, Դիադին, Խնուս, Ալաշկերտ, Խմուր, Թոփրակ Կալե, Նաճեա կամ Նաճին գավառներից։ Վարչական այս միավորը դարի առաջին քառորդին և հետագայում կառավարվում էր քուրդ փաշաների կողմից և գրեթե կիսանկախ էր։ Փաշայի հպատակությունը կառավարությանն արտահայտվում էր միայն նրանով, որ պատերազմների ժամանակ երկրամասերից զինվորական դրուժինաներ էր կազմում և տրամադրում կենտրոնական կառավարությանը։

---

4 Մանրամասն տե՛ս Ղ. Ինճիճեան, Աշխարհագրութիւն չորից մասանց աշխարհի, մասն Ա, հատ. Ա, Վենետիկ, 1806, էջ 50, 282, 309, տե՛ս նաև Վրացական ՍՍՀ ԿՊՊԱ, ֆ. 2, ց. 1, գ. 2462, թ. 3—5, գ. 2464, թ. 6։

5 Ղ. Ինճիճեան, Աշխարհագրութիւն, մասն Ա, էջ 111—112։

3. Կարսի փաշայության *կազմում էին* Կարս, Կաղզվան, Քեղյան, Զարուշատ, Խոշևան, Արևմտյան Շորագյալ *գավառները։ Կենտրոնը Կարս քաղաքն էր, որի փաշան հպատակվում էր Բ. Դռան։*

4. Ախալցխայի *(Չըլդըրի) փաշայության գավառներն էին* Ախալցխա, Նարիման, Օլթի, Ֆենեսկերտ, Թավըսկերտ, Չըլդըր, Ջավախեթ, Աղշոր, Փոցխով, Վերին *և* Ստորին Իմեր, Արդանուչ, Արդահան, Կիսկիմ, Բերդագարակ *և այլն։ 23 գավառներից բաղկացած վարչամիավորի կենտրոնը Ախալցխան էր։*

5. Վանի փաշայության *գավառներն էին* Վան, Խոշաբ, Ջուլամերկ, Խլաթ, Արծկե, Արճեշ, Բերկրի, Բաղեշ *(Բիթլիս)*, Խիզան, Մուշ, Չըրխա, Էսքաբերդ, Աղիաֆիս, Մոկս:

*6. Անատոլիայում ամենախոշոր ու ամենաբարդ կառուցվածք ունեցող փաշայությունը* Դիարբեքիրն *էր, որն օտարների կողմից անվանվում էր Ամիդ, իսկ հայկական աղբյուրներում Տիգրանակերտ։ Փաշայության կառուցվածքի բարդությունը պայմանավորված էր մի շարք հանգամանքներով։ Նախ, անմատչելի կիրճեր ունեցող անտառաշատ ու լեռնոտ երկրամասը սկզբից ևեթ չնվաճվեց օսմանյան սուլթանների կողմից։ Չալդրանի հայտնի ճակատամարտում (1514) Թուրքիան Մոլլա Իդրիսի գլխավորած քրդական ցեղախմբերի օգնությամբ Պարսկաստանի դեմ հաղթանակ տարավ։ Փոխարենը քուրդ ցեղապետերը արտոնություններ ու առանձնաշնորհումներ ստացան՝ երկրի սահմանները պաշտպանելու պայմանով։ Նստակեցության ու «ազատ ապրելու» պայմաններ ստեղծելով, սուլթան Սելիմ I Յավուզը գայթակղեցրեց Պարսկաստանի քրդերին, նրանց գաղթեցրեց ու բնակեցրեց Տիգրանակերտի շրջանում*[6]*։ Նախքան քրդերի գաղթը, նահանգում ապրում էին հայեր, ասորիներ, փոքր թվով թուրքեր ու հույներ։ Կիսանկախ, նույնիսկ լիովին անկախ գավառների ամենից ստվար թիվը Դիարբեքիրում էր։ Նահանգում կային քրդական իշխանություններ, ասորական ու հայկական անկախ համայնքներ։*

*Դիարբեքիրի փաշայության թուրքահպատակ գավառներն էին.* Ամիդ, Հանի, Միոֆարկին, Խարբերդ, Սինջար, Էսֆերիդ. Սևերեկ, Էրկանի, Անաղե, Հիսնի-Քեոյ, Ճապաղջուր, Սաղման, Ջերմեկ, Կուլբ, Իլֆիս, Բեներբեֆ, Բերդագարակ: *Արևմտյան Հայաստանում եղած հյուքումեթությունները միայն Դիարբեքիրում էին. դրանք էին* Բալու, Գինե, Ջեզիրե, Էգիլ, Հազզո, Թերջիլ, Սավուր *գավառները*[7]*։ Սակայն թուրքահպատակ գավառների մեջ էլ կային համայնքներ, որոնք, օգտվելով Թուրքիայի տնտեսական անկումից, պատեհ առ պատեհ ապստամբում էին, վոնդում պետական պաշտոնյաներին և հրաժարվում հարկատվությունից։*

7. Սվազի *(Սեբաստիայի)* փաշայության *կազմում էին* Սվազ, Ամասիա, Բոզոֆ, Չորում, Ջանիկ, Դիվրիկ, Արաբկիր *գավառները։ Փաշայությունը 30 տարում փոխեց 15-ից ավելի կուսակալներ, որոնցից ամեն մեկը նախորդին գերազանցեց իր վայրագություններով։ Դրանց մեջ ամենադաժանը Չապանօղլու Մուհամեդ փաշան էր (1809—1813), իսկ նրան հաջորդած Իբրահիմ փա-*

---

[6] *В. Никитин*, Курды, М., 1964, стр. 240—247.

[7] «Аграрный строй Османской империи XV—XVII вв.», документы и материалы, составленные *А. С. Тверитиновой*, М., 1963, стр. 95—96.

շան հետամուտ էր հպատակեցնելու քրդական ապստամբ ցեղերը, թեև ապարդյուն: Փաշայությունը մինչև 1834 թ. ապստամբ ցեղապետերի կռիվների ու արյունահեղությունների ասպարեզ էր[8]:

8. Ադանայի փաշայության գավառներն էին՝ Ադանա, Տարսուս (Տարսոն), Ալանիա (Ալայե), Իչիլ, Սիս, Ուզեյր, Բեյլան:

9. Մարաշի փաշայությունն ուներ Մարաշ, Մալաթիա (Մելիտինե), Սամսաթ (Սամուսաթ), Գերգեր գավառները: Սրանցից բացի կային Կոզան-օղլուների հպատակ բազմաթիվ մանր իշխանություններ: Այս նահանգի մեջ էին կիսանկախ Ղփիխսքանը (Ալբիսթան), Զեյթունը՝ իր շրջակայքով:

Հայկական ու հայաբնակ մի շարք գավառներ, գավառակներ մտնում էին Տրապիզոնի, Կեսարիայի, Նիկոսի փաշայությունների մեջ: Դրանց թվում էին Սյուրմենը, Ծոմուրայի և Սև գետի հովտային գյուղերը, Ուրֆան, Կեսարիան և այլ մարզեր:

Ինչպես փաշայությունները, այնպես էլ նրանց փաշաները բաժանվում էին երեք կարգի՝ միհերձանի (մեկդուզ), երկհերձանի, եռհերձանի: Այս կարգը պայմանավորված էր վարչական միավորի ռազմա-ստրատեգիական դիրքով, հզորությամբ ու տնտեսական կարևորությամբ: Հայաստանի մասերը կազմող փաշայությունների մեջ ամենախոշորն էրզրումն էր՝ Կարինը, որի փաշան օժտված էր սերասքյարի (փոխարքայի) իրավունքներով: Ախալցխայի, Կարսի, Բայազետի, Վանի փաշայությունները մինչև 1829 թ. հպատակվում էին Կարինի սերասքյար փաշային, որն ուներ անսահմանափակ իշխանություն: Նա էր նշանակում ու հանում քաղաքացիական ու ռազմական պաշտոնյաներին, հավաքում զորքեր, հաստատում կամ մերժում մահվան դատավճիռներ[9]:

Սերասքյարությանը ենթակա մյուս փաշաները ևս մեծ լիազորություններ ունեին, սակայն մահվան դատավճռի հաստատման կամ մերժման իրավունքը պատկանում էր սերասքյարին: Ակներև է, որ բոլոր փաշաներն, անկախ փաշայության մեծությունից ու փոքրությունից, ունեին ոչ միայն քաղաքացիական, այլև զինվորական իրավունքներ ու պարտականություններ:

Փաշայությունները բաժանվում էին սանջակների (գավառների): Վարչական այս ավելի փոքր միավորները ղեկավարում էին սանջակբեյերը: Եթե փաշաներն առանց միջնորդ օղակի, կապված էին սուլթանի հետ, ապա սանջակբեյերը, ճիշտ է նշանակվում էին Բ. Դռան կողմից, սակայն նրա հետ հարաբերությունների մեջ էին նահանգապետերի միջոցով[10]: Սանջակները բաժանվում էին կազաների (գավառակ), որոնց կառավարիչները կոչվում էին կայմակամներ: Կազաները տրոհվում էին նահիեների (վիճակ), կառավարիչ ունենալով մյուդիրներին:

---

8 «Պատմություն ականավոր քաղաքին Սեբաստիո և սահմանաց նորա կամ արքեպիսկոպոսության նորին, հորինեց գերապատիվ Անդրեաս Աղեքսանդրեան», Վենետիկ, ս. Ղազար, 1911, էջ 341—343:

9 Центральный государственный военно-исторический архив СССР (ЦГВИА СССР), фонд ВУА. ՍՍՀՄ կենտրոնական պետական ռազմա-պատմական արխիվ, ֆոնդ ՌԳԱ, գործ 4643, 1830, թերթ 2—3 (այսուհետև՝ ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. ՌԳԱ):

10 ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. ՌԳԱ, գ. 4643, թ. 1—2:

Կառավարման այս սիստեմը հատուկ էր Թուրքահպատակ փաշայություններին։ Սակայն Թուրքիայի այս մասերում էլ ամեն ինչ այնպես չէր կատարվում, ինչպես գրված էր օրինաթղթերում։ Օրենքն ու իրողությունը XIX դարի առաջին երեսնամյակին դարձել էին իրարամերժ։ Ֆինանսական փակուղու մեջ ընկած այդ երկրում ամեն ինչ կատարվում էր դրամի ուժով, կաշառատվությամբ։ Գնալով ավելի մեծ գումարներ էին պետք փաշա, ինչպես նաև սանջակբեյ դառնալու համար։

Թուրքիայում կաշառքով փաշաներ նշանակելն այնքան սովորական երևույթ էր դարձել, որ պաշտոնները նույնիսկ աճուրդի էին հանվում։ «Ով պաշտոնյան, մի անգամ կատարելով իր հավատարիմ հպատակության պարտքը, չէր կարող ապահով լինել, թե երկար կպաշտոնավարե։ Ամեն տարի, բայրամի տոնին, նա պարտավոր էր վերանորոգել իր լիազորությունը, և եթե շատ էր սակարկություն անում, նրա պաշտոնն անցնում էր մի ուրիշին, որն ավելի առատաձեռն էր հանդիսանում»[11]։

Քրիստոնյաները զրկված էին իրենց երկրում պաշտոններ վարելու իրավունքից։ Փաշա կամ այլ կառավարիչ էին նշանակվում միայն մահմեդականները, որոնք, սակայն, անկարող էին անձնական կալվածներից ստացված եկամուտներից հատուցել այդ հսկայական գումարները։ Ուստի և նրանք դիմում էին Ղալաթիայում նստած ամիրաներին ու սարաֆներին (սեղանավորներ), որոնցից բարձր տոկոսներով դրամ էին վերցնում, վճարում պետական գանձարանին և ապա մեկնում երկրամասը, բնական է ոչ թե կառավարելու, այլ կողոպտելու։ Սուլթանի գանձարանը, ամիրայի ու փաշայի գրպանը լցվում էին, գյուղացիության, հատկապես քրիստոնյաների անտանելի շահագործման ու կեղեքման հաշվին։

Պաշտոնյաներ նշանակելու համար կաշառք էին վերցնում ոչ միայն սուլթանները, մեծ վեզիրները, վալիդե (մայր) սուլթանը, այլև փաշաները, նրանց ստորադրյալները, ամեն մեկը ինչքան կարող էր շատ, որպեսզի նախ գոհացներ արքունիքին, ապա և իրեն էլ «քաժին թողներ»։ «Անիրավությունները և կաշառակերությունը Թուրքիայում առասպելական չափերի էին հասնում։ Բոլոր պաշտոնները գնվում և վաճառվում էին և յուրաքանչյուր ենթակա պարտավոր էր որոշակի գումար հատուցել իր պետին։ Պետական բարձր պաշտոնյաները տարբերվում էին մանր աստիճանավորներից նրանով, որ ավելի շատ էին ըստանում և եթե ինչ-որ մի մուդիր ստանում էր տարեկան 60 հազար ղուրուշ (մեկ ղուրուշը հավասար էր 40 փարայի, իսկ 100 ղուրուշը մեկ Թուրքական ոսկյա լիրայի—խմբ.), ապա մուշիրը կամ փաշան բավարարվում էին ոչ քիչ, քան տարեկան 4 միլիոն ղուրուշ եկամտով։ Նման կարգերի պայմաններում ցածր աստիճանավորները ձգտում էին պակասը լրացնել ժողովրդի հաշվին և ծծել այն ամենը, ինչ կարելի էր»[12]։

XIX դարի առաջին երեք տասնամյակներին ոչ միայն շարունակում էին իրենց կիսանկախ գոյությունը պահպանել, այլև ձգտում էին լիովին անկա-

---

11 Լեո, Երկերի ժողովածու, հատ. 3, Երևան, 1969, էջ 58։

12 «Дело», № 4, 1867, *Н. Радюкин*, Турция, стр. 190—192. *տե՛ս նաև* Ա. Ներսիսյան, *Արևմտահայերի տնտեսական և քաղաքական վիճակը և նրանց ռուսական օրիենտացիան, Երևան, 1962, էջ 10—11։*

խանալ քրդահպատակ Բաղեշի, Ջուլամերկի, Ջիզիրեյի, Սուլեյմանիեի, Ոստանի, Բերկրիի, Դերսիմի, Խոշաբի (Մահմուդիե), Հեքյարիի, Բալուի և այլ իշխանապետություններ։

Քրդահպատակ իշխանապետությունների մեջ ամենախոշորը Բաղեշն (Բիթլիս) էր։ XVIII դարի կեսերից Բաղեշը կովախնձոր էր դարձել տարբեր իշխանապետերի ձեռքին։ Գործին միշտ էլ միջամտում էր կենտրոնական կառավարությունը, սակայն արդյունքի չէր հասնում։ XIX դարի ողջ առաջին կեսին այն «հանձնված» էր Շերեֆների տոհմի ժառանգական կառավարմանը և ընդգրկում էր Բաղեշի, Մուշի, Սասունի, Ջրտըգանի, Խիզանի և այլ շրջանները[13]։ Բաղեշի քուրդ խանը տիրապետում էր Վանից մինչև Դիարբեքիր ձգվող մի ընդարձակ երկրամասի, որտեղ նստած ցեղապետերը հպատակվում էին նրան[14]։ Չնայած գլխավոր խանը չէր կարողանում անմիջապես իրեն ենթարկել իշխանապետության մեջ մտնող բոլոր մանր ու խոշոր բեկերին, սակայն XVIII դ. վերջին և XIX դարի առաջին կեսին ռազմական մեծ հզորության էր հասել։ «Բաղեշի էմիրները դարերե ի վեր,—գրում է Կ. Բասմաջյանը,—ինքնիշխան կառավարություն մը կազմած էին, անառիկ դիրքերու և ամրոցներու մեջ հաստատված։ Ասոնք դրամ տպած են անշուշտ։ Ինձ ծանոթ են միայն երկու էմիրի դրամներ»[15]։

Բաղեշի խանը հաստատվում էր սուլթանի կողմից և անպայման ազգությամբ քուրդ պիտի լիներ։ Հաստատվելով գահի վրա, քուրդ խանը այլևս ոչ ոքի առջև հաշվետու չէր։ Ժամանակակիցները նրա ուժի ու հզորության մասին վկայում են, թե նա պատերազմի դաշտ կարող էր հանել 20—25 հազար ձիավոր, «առանց հաշվելու մեծ թվով հետևազորքը»։ Բաղեշի իշխանության մեջ օրենք սահմանողը խանն էր։ Նա փաստորեն սուլթանն էր իր տիրապետության սահմաններում, իսկ գավառը պետություն էր պետության մեջ։ Անվանապես Բաղեշի խանին էին ենթարկվում Մուշն ու Ջուխուրը, սակայն իրականում սրանք ևս արդեն անկախացել էին։

Երկակի կառավարման տակ էր Վանի փաշայությունը։ Այստեղ նստում էին միաժամանակ և՛ Թուրք փաշա, և՛ քուրդ խան։ Թուրքական պետությունն անկարող էր ոչնչացնել քրդական խաների իշխանությունը, ուստի քաղաքում տեղավորել էր բերդապահ զորք, որը կոչվում էր վան-կուլիներ (վանի ղուլեր—ծառաներ)։ Այս պայմաններին փաշայի իշխանությունը ձևական էր և նա չէր կարող երկար կառավարել, եթե հաշվի չնստեր քուրդ խանի հետ, որի թիկունքում կանգնած էին մանր բեկերն՝ իրենց զինախմբերով, ռազմատենչ խուժաններով։ «Բայց միշտ եռացող կաթսա մըն էր Վանը, ուր ո՛չ կյանքի, ո՛չ ինչքի և ո՛չ ալ պատվի ապահովություն գոյություն ուներ»[16]։

Խոշաբի գավառը կամ Մահմուդիե իշխանությունը ևս քուրդ բեկերի ձեռքում էր։ XVIII դարի երկրորդ կեսին այնտեղ տիրում էին Զապան օղլու

---

13 Ղ. Ինճիճեան, Աշխարհագրութիւն, մասն Ա, էջ 52։

14 Х. Ф. Б. Линч, Армения. Путевые очерки и этюды, Тифлис, 1910, стр. 191—193.

15 Կ. Յ. Բասմաջյան, Հայկական ընդհանուր դրամագիտություն, Վենետիկ, 1936, էջ 119։

16 Ա. Ալպոյաճյան, Պատմական Հայաստանի սահմանները, Գահիրե, 1950, էջ 451, տե՛ս նաև Թ. Խ. Հակոբյան, Ուրվագծեր Հայաստանի պատմական աշխարհագրության, Երևան, 1960, էջ 368—371։

բեկերը, որոնք մերթ ընդ մերթ կրելով Վանի կուսակալի հարվածները, քաշվում էին Մահմուդիե անառիկ բերդը և ապա կրկին տիրում գավառին։

Անվանապես Վանի փաշայության մեջ մտնող Ջուլամերկի կամ Հեքյարիի (Աղբակ) գավառը բնակեցված էր հայերով, ինչպես նաև քրդերով ու ասորիներով։ Այն վաղուց ի վեր անկախ իշխանություն էր և շարունակում էր իր իրավունքները պաշտպանել նաև այս ժամանակաշրջանում։

Քրդահպատակ ընդարձակ ու հզոր իշխանություններ կային նաև Հարավային Հայաստանում։ Դրանց մեջ ամենաուժեղը Ջեզիրեն էր, Դիարբեքիրի փաշայության մեջ մտնող մի ճյուղումեթ (իշխանություն), որը «վաղուց դարձել էր քրդերի սեփականություն. ունի ինքնագլուխ ու հզոր բեյ, որի տիրապետության տակ են ոչ միայն բազմաթիվ գյուղեր, այլև վիճակներ (նահիե)։ Այստեղի բնակիչները հիմնականում քրդեր են և կարող են մինչև 70 հազար զորք հանել»[17]։ Ջեզիրեն կառավարում էին Բեդեր-խանի տոհմի ներկայացուցիչները։ Սրանք, փաստորեն, իրենց էին ենթարկել քրդահպատակ ու քրդաբընակ շրջանների մեծ մասը։

Մեծաքանակ զինվորներ ունեցող Բոհտանի անառիկ բերդում նստած Բեդեր-խան բեյը դարձել էր մի այնպիսի հզոր ֆեոդալ, որը պետության հետ բնավ հարաբերությունների մեջ չէր մտնում և մտադրություն ուներ համահավաքել քրդաբնակ շրջանները, ստեղծել քրդական ֆեոդալական պետություն[18]։ 1830-ական թթ. նա իր տիրապետության տակ էր առել Վանից մինչև Բաղեշ ընկած քրդական մանր ու խոշոր իշխաններին, ջանում էր ընկճել ասորական ըմբոստ համայնքը։

XIX դարի առաջին քառորդին Բայազետում դեռևս շարունակվում էր քուրդ ֆեոդալների տիրապետությունը՝ հանձին Բայլուլների տոհմի։ Օգտվելով պետության թուլացումից, փաշայությունն անկախացել էր, և նահանգը դրվել էր քուրդ տիրակալների գերիշխանության տակ։ Քրդահպատակ իշխանություններ էին նաև Դերսիմը, Զարսանջակը, Շիրո և Աղճատաղ գավառները։

Ապստամբ ու կիսանկախ իշխաններ կային նաև Կիլիկիայում։ Նրանք, այսինքն Կոզան-օղլու դերեբեյները, Կիլիկիայի լեռնային մասերում (Սսից մինչև Հաճըն) հաստատվեցին XVI դարից սկսած, սակայն հետագայում իրենց տիրապետությունը ընդարձակեցին։

Վիկտոր Լանգլուան հաստատում է, թե XIX դարակեսին Սիսը, Հաճընը և այլ մարզեր կառավարվում էին Կոզան-օղլուների կողմից[19]։

Այս ցեղապետերի իրավունքները ճանաչվել էին սուլթանական կառավարության կողմից։ Նրանք պարտավոր էին հարկերը հավաքել և հանձնել պետական պաշտոնյաներին, հարգել գավառապետի և նայիբի հանած վճիռները, վերջիններիս միջոցով գործադրել պետական հրամանագրերը։ XIX դարի առաջին կեսին Կոզան-օղլուները, օգտվելով Օսմանյան կայսրության տկարա-

---

17 Ղ. Ինճիճեան, Աշխարհագրութիւն, մասն Ա, էջ 349։

18 Բարունակ Պէյի Ֆէրուխեան, Ճանապարհորդութիւն ի Բաբելոն ընդ Հայաստան յամի տեառն 1847, Արմաշ, 1876, էջ 62—63։

19 Մանրամասն տե՛ս V. Langlois, Voyage dans la Cilicie et les montagnes de Taurus en 1852—1853, Paris.

ցումից, դադարեցրին կանոնավոր հարկատվությունը և շարունակեցին ավելի վայրագ ձևով վարվել հպատակների հետ։

Այսպիսով, 1800—1830-ական թթ. Արևմտյան Հայաստանում և Հայկական Կիլիկիայում Թուրքահպատակ նահանգների կողքին տակավին հարատևվում էին ֆեոդալական կիսանկախ իշխանապետություններ՝ քուրդ, թուրքմեն ցեղապետեր, որոնց սանձարձակությունը չափ չուներ։ Դարասկզբին կայսրության հպատակությամբ ապրող հայությունը տեղաբաշխված էր Արևմտյան Հայաստանում, շերտընդմեջ բնակվում էր հայաբնակ նահանգներում, Հայկական Կիլիկիայում, ինչպես նաև ծովամերձ գաղութահայ օջախներում։

XIX դարի առաջին քառորդին Թուրքահպատակ երկրամասերում ապրող արևմտահայերի և ընդհանրապես կայսրության ենթակա ազգերի ճշգրիտ մարդահամար գոյություն չի ունեցել[20]։ Սակայն կան առանձին ուղեգրողների տվյալներ, հետազոտողների հրապարակած թվեր։

Գերմանացի վիճակագիր Գ. Հասելը 1822 թ. հրատարակած «Եվրոպական երկրների վիճակագրական տարեգիրք-վիճակացույց» աշխատության մեջ Թուրքիայում հաշվում է 12 միլիոն 920 հազ. բնակիչ, որից հայեր՝ 1 միլիոն 690 հազ.[21]։ Այս թվերը խիստ պակասավոր են։ 1836 թ. գրված մի վավերագրում ասվում է, թե երեք միլիոն հայեր էին ապրում Արևմտյան Հայաստանի, Փոքր Ասիայի զանազան գավառներում, Կ. Պոլսում և Զմյուռնիայում[22]։ 1844 թ. անցկացված մարդահամարի տվյալներն ամփոփելով, ֆրանսիացի քաղաքագետ-պատմաբան Մ. Ա. Ուբիչինին գտնում էր, որ Թուրքիայում ապրում էին 35,350 հազ. մարդ՝ պատկանելով 14 ազգության և ցեղերի։ Հայերի թիվը 2 միլիոն 400 հազար էր, որից երկու միլիոնն ապրում էին եվրոպական, 400 հազարը՝ ասիական Թուրքիայում[23]։ Այս մարդահամարը ևս պակասավոր էր, քանի որ Թուրքիայում ապրող քրիստոնյաները, զինվորական հարկ վճարելու պարտականությունից ազատվելու նպատակով թաքցնում էին իրենց թվաքանակը[24], վիճակագրական ոչ լրիվ տվյալներ հաղորդում ինչպես պետական պաշտոնյաներին, այնպես էլ հոգևոր առաջնորդներին, Կ. Պոլսի հայոց պատրիարքարանին։ Այսպիսով, XIX դարի առաջին երեսնամյակին Թուրքիայում ապրում էր շուրջ երեք միլիոն հայ։

Դարասկզբին Կոստանդնուպոլսում ապրում էր 222 հազար հայ, Զմյուռնիայում՝ 12 հազար[25], Կիլիկիայում՝ 414 հազար մարդ, որից հայեր՝ 200 հազար, քրիստոնյա այլազգիներ՝ 16 հազար, մահմեդականներ՝ 198 հազար[26]։

---

20 Եվրոպացիների օգնությամբ Թուրքիայում առաջին մարդահամարի փորձ է եղել միայն 1844 թ., դրա համար էլ հայերի թիվը բերվում է մոտավոր ճշտությամբ՝ բազմաթիվ աղբյուրների համադրությամբ։

21 Տե՛ս Ն. Խարաճայան, Հայոց թիվը, Բոստոն, 1965, էջ 7։

22 Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 88, վավ. 105ա։

23 Տե՛ս M. A. Ubicini, Lettres sur le Turquie, էջ 22—23, տե՛ս նաև «Եվրոպա», 1850, № 16։

24 Տե՛ս Е. К. Саркисян, Политика османского правительства в Западной Армении, Ереван, 1972, стр. 25.

25 Հ. Հակովբ վ. Քոսյան, Հայք ի Զմյուռնիա և ի շրջակայս, Վիեննա, 1899, էջ 43—44։

26 Տե՛ս Գր. Գալուստյան, Մարաշ կամ Գերմանիկ և հերոս Զեյթուն, Նյու-Յորք, 1934, էջ 16—17։

Հետևաբար շուրջ կես միլիոն հայ էր ապրում Կիլիկիայում ու Թուրքիայի հայ գաղթօջախներում, իսկ երկուս և կես միլիոնը միայն Արևմտյան Հայաստանում ու հայաբնակ հարևան շրջաններում։

XIX դարի առաջին քառորդում Արևմտյան Հայաստանում, ծովային անցուղիներով Եվրոպային կամրջվող Հայկական Կիլիկիայում, հարևան նահանգներում տակավին կանգուն էին 40-ից ավելի հայկական քաղաքներ, ուր ապրում էին մոտավորապես 670 հազար քաղաքացիներ, դրանց թվում շուրջ 365 հազար հայ։ Գաղութահայ օջախներում ապրում էին շուրջ 234 հազար հայեր։

Ակնառու է, որ այս տասնամյակներին 600 հազար հայեր էին կենտրոնացել քաղաքներում և կազմում էին Թուրքիայի հայ ազգաբնակչության շուրջ 20 տոկոսը։ Մնացած 80 տոկոսը ապրում էր գյուղերում[27]։

## 3. ՀԱՅԿԱԿԱՆ ԿԻՍԱՆԿԱԽ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Հայաստանը նվաճած օսմանյան հորդաները, ասպատակելով ու հպատակեցնելով դաշտային երկրահատվածները, երկար ժամանակ չկարողացան բարձրանալ բազմաթիվ լեռնագավառներ և ծնկի բերել ազատատենչ հայ համայնքներին։ Հարյուրամյակներ շարունակ իրենց կիսանկախ, հաճախ և անկախ գոյությունը պաշտպանեցին հայկական մի շարք լեռնային մանր իշխանապետություններ։

Արևմտյան Հայաստանում հարատևող կիսանկախ համայնքներից ամենաուժեղը Սասունն էր։

Լեռնագավառը հպատակեցնելու Թուրքիայի անհամար փորձերը մատնվել էին անհաջողության։ 1806 թ. Ղ. Ինճիճյանը գրում էր, թե Սասունի «բնակիչները քրդերն ու հայերն են, որոնք երկուսն էլ միևնույն ազատությունն ունին։ Տղամարդիկ հաղթանդամ են, քաջասիրտ, երևելի իրենց մարմնի կորովությամբ։ Նրանք պատերազմի ժամանակ ահեղ են... Սրանք ի սկզբանե եղել են անկախ, ոչ ոքի չեն ենթարկվել. ոչ մի փաշա կամ բեյ չի կարողացել իրեն ենթարկել սրանց. իրենց հզոր ուժի և ապաստանած վայրերի անմատչելիության շնորհիվ ոչ ոքի չեն թողել մուտք գործել իրենց երկիրը։ Սրանք ունեն իրենց մասնավոր, ինքնուրույն բեյը»[28]։

Սասունի անկախության երկարատև պահպանման գրավականներից էր և այն, որ տեղի հայ և քուրդ ազգաբնակչությունը բարեկամական հարաբերությունների մեջ էր, ընդհանուր անվամբ կոչվում էր սասունցի, ամիզադե (հորեղբորորդի)։ «Շատ առաջներ, այս շրջանի հայերն ու քյուրդերը միություն կազմելով միշտ կռվեր են թուրք բռնապետական ռեժիմին դեմ ու մնացեր են կիսանկախ՝ դաշտայիններու նման չենթարկվելով թուրք իշխանության»[29]։

Ինքնուրույն համայնքի իր իրավունքը պահպանելով, Սասունը 1800—1830 թթ. կառավարվում էր մնացած գավառներից տարբերվող, յուրահատուկ սկզբունքներով։ Քուրդ բեկը կամ հայ իշխանը, ընտրովի ավագանին տնօրինում էին երկրամասի գործերը, պատերազմի ժամանակ ժողովրդին մեկ մար-

---

27 Հայկ Ղազարյան, *Արևմտահայերի սոցիալ-տնտեսական և քաղաքական կացությունը 1800—1870 թթ.*, Երևան, 1967, էջ 162—170։

28 Ղ. Ինճիճեան, *Աշխարհագրութիւն*, մասն Ա, էջ 200։

29 Հ. Շահպազյան, *Քյուրդո-հայ պատմություն*, Կ. Պոլիս, 1911, էջ 107—108։

դու նման հանում մարտադաշտ։ Կռվում էին և՛ տղամարդիկ, և՛ կանայք, նույնիսկ անչափահասները։ Զինադադարի կնքման, հարկերի վճարման, օտարների հետ փոխհարաբերությունների մեջ մտնելու պահին ավագանին վճիռները կայացնում էր բոլոր համայնապետերի մասնակցությամբ։ Թուրքական կառավարիչներ կամ հարկահաններ մուտք չէին գործել այս գավառը։

Սասունից բացի, Դիարբեքիրի փաշայության մեջ մտնող հայկական ազատ համայնքներ էին մնում Սավուրը և Իսյանը (իսյան բառացի նշանակում է ապստամբություն, որը և բնորոշում է գավառի ազգաբնակչության իրավական դրությունը)[30]։ Նրա կազմում մըտնող գյուղերում բնակվում էին քրդեր ու քրդախոս հայեր, որոնք լավ հրաձիգներ էին։ Պատերազմի փողը հնչելիս. մարտունակ ազգաբնակչությունն իր ունեցվածքը թաքցնում էր գաղտնարաններում, կանանց ու երեխաներին պատըսպարում ամրացված, պարսպապատ ավաններում, իսկ ինքը շարժվում էր դեպի լեռնանցքներն ու կիրճերը, դիմագրավելու արշավող հակառակորդին։



Սասունցի հայ

Դիարբեքիրի փաշան 4500 զորքով գավառի վրա արշավեց 1782 թ., սակայն 500 զինվոր կորցնելով ունայնաձեռն վերադարձավ։ 1785 թ. Իսյան շարժվող թուրքական բանակը գավառցիներից վախեցած, կրկին ապարդյուն ետ դարձավ։ Թուրքերը 1789 թ. սպանեցին գավառապետին։ Հորը հաջորդեց որդին։ Նա շարունակեց կռիվները և պաշտպանեց Իսյանի անկախությունը մինչև 1834 թվականը։

Շատախի անկախության, Մոկսի դրության մասին Ղ. Ինճիճյանը 1806 թ. գրում էր, թե այստեղ. «...նստում է հայազգի մելիքը և գործադրում է ամեն տեսակի իշխանություն, դատավորի պաշտոն, քանի որ քուրդ բեկին չեն թողնում նստի այստեղ, ինչպես նաև Մոկսում»[31]։ «Սավուր գավառի ինքնուրույն և անկախ բնակիչները, որոնք մեծ մասամբ հայեր են, հզոր են և պատիկ կռվողներ, իսկ քրդերը՝ սակավաթիվ են»[32]։

Մուշ գավառի մեջ մտնող Ճապաղջուրի հայերն, «անվանի իրենց քաջությամբ», XVIII դարի երկրորդ կեսին զենքի ուժով անկախություն էին վերանվաճել։ Քրդական իշխանության ծանր հարվածներից խուսափելով, Ճապաղ-

38 Լեո, Հայոց պատմություն, հատ. 3, էջ 149։

31 Ղ. Ինճիճեան, Աշխարհագրութիւն, մասն Ա, էջ 163։

32 Նույն տեղում, էջ 230։

ջուրցիները հետագայում ստիպված էին զիջումներ անել, խանին որոշ հարկեր տալ, սակայն պաշտպանելով իրենց անկախությունը, շարունակում էին «զինված խաղաղության մեջ ապրել»[33]։

Գրեթե կիսանկախ վիճակում էր Խնուս գավառը։ Այն անվանապես մըտնում էր Բայազետի փաշայության մեջ և ուներ հայկական տասնյակ գյուղեր, սովար բնակչությամբ։ Կենտրոնը Բյուրակնյա լեռների արևելյան ստորոտում, ձորի երկայնքով ձգված բերդաքաղաքն էր՝ 4—5 հազար բնակիչներով։ Խնուսի մասին Ժոբերը 1805 թվականին գրում էր. «...սակայն Հայաստանի այս մասում, կառավարության իշխանությունը համարյա թե չնչին է։ Գյուղացիք զինված են և պատրաստ կռվելու քրդերի հարձակումների դեմ, որոնց հետ հաճախակի կռիվներ են մղում և չեն վախենում ո՛չ մպառնալիքից, ո՛չ նախատինքից և ո՛չ էլ մահից»[34]։

Էրզրումի փաշայության մեջ էին Տուժիկ և Մանազկերտ (Մելազկերտ) գավառները, ուր ապրում էին քրդացած, ինչպես նաև լուսավորչական կրոնը պահպանող քրիստոնյա հայեր և շեյխհասանցի քրդեր։ Երկիրը հարուստ էր, հողը՝ բերրի, պտղատու այգիներով ու ծառաստաններով ծածկված։ Բնակիչներն արտադրում էին այն ամենն, ինչ անհրաժեշտ էր իրենց։ Դրսաշխարհի հետ նրանք քիչ էին առնչվում. «ապա յավելցուք զՏուժիկ զՄալազկերտ, որք են անկախ ի փաշայեն Էրզիռումա»[35]։

Անկախ և կիսանկախ համայնքներ, Թուրքիայի գերիշխանությունը չճանաչող մի շարք գավառներ էին մնացել նաև Լեռնային Կիլիկիայում, հատկապես Տավրոսի լեռնակրծքին՝ Մարաշի փաշայությունում։ Դրանց մեջ ամենաուժեղը Ուլնիան էր՝ Զեյթունը։

Զեյթուն գյուղաքաղաքը գտնվում էր Մարաշ քաղաքից 38 կմ հյուսիսարևմուտք, Ջիհան գետից 13 կմ արևմուտք և շրջապատված էր լեռներով։ Քաղաքը հիմնվել էր տակավին 1375—1409 թթ. Զյուլ-կադիրների իշխանության շրջանում։ 1626 թ., Մուրադ IV-ը տվեց Զեյթունի կիսանկախության ֆերման և գավառը ճանաչեց իբրև հրովարտակ (ֆերման) ունեցող վակըֆ[36]։

Սուլթանը միաժամանակ մահմեդական պաշտոնյաներին արգելում էր մուտք գործել գավառ, բնակչությանն ազատում էր գլխահարկ-ջիզիեից, սակայն պարտադրում՝ տարեկան 15000 դահեկան հարկ վճարել Կ. Պոլսի թուրքական մզկիթներին, հատկապես Այա-Սոֆիային։ «Բաց յայսմանե սույն գավառի մեջ Թուրք պաշտոնյա չպիտի գտնվի... այնպես որ բնավ մեկ կողմե մը վնաս չհասնի այս բացառիկ ու ինքնավարական դրության, զոր շնորհած եմ անոնց՝ ինքզինքնին կառավարելու, առանց արտաքին միջամտության»[37]։

Բարություն անելու միտումով չէ, որ Մուրադ IV-ը շնորհում էր այս ինքնավարությունը, այլ զեյթունցին իր ինքնապաշտպանության ուժով էր նվաճում այն։ Հետագա սուլթանները մոռացության տվեցին հրովարտակի գոյու-

---

33 Լ. Անեմյան, Պատմություն հայոց, Գահիրե, 1936, գիրք Գ, էջ 37։

34 Հովհ. Հակոբյան, Ուղեգրություններ, հատ. Ջ, ԺԹ դար, էջ 208։

35 Ղ. Ինճիճեան, նշվ. աշխ., էջ 65։

36 Զեյթունցի [Մ. Սեմերճյան], Զեյթունի անցյալեն ու ներկայեն, մասն Ա, Վիեննա, 1900, էջ 31։

37 Նույն տեղում, էջ 31—32։

*թյունը, ուստի Տավրոսի քաջ Դելի Քեշիշը (տեր Օհանը) 1835 թ. Պոլիս է մեկնում և վերավավերացնել տալիս փաստաթուղթը*[38]։

*Ինքնավարության հրովարտակ ստանալով, սակայն, Զեյթունը չփրկվեց նոր աղետներից։ Սուլթանները նորանոր բանակներ էին ուղարկում Ուլնիա, ջանում ծնկի բերել ըմբոստ լեռնականներին, բայց միշտ ջարդված և ամայնաձեռն ետ էին վերադառնում։ Թուրքական տիրապետության ընթացքում իր ազատությունն ու անկախությունը պահելու համար Զեյթունը մղել է 36, թուրք գրիչների կարծիքով նույնիսկ 42 պատերազմներ։ Կես հազարամյակում 42*



Զեյթունցիներ

*պատերազմ*[39]*, ամեն 10—12 տարին մեկ պատերազմ։ 1782—1808 թթ. Զեյթունը հրաժարվեց նույնիսկ հրովարտակով նախատեսված հարկատվությունից և, օգտվելով ծայր առած գահակալական կռիվներից, ամրացրեց իր դիրքերը, ապրեց «ապստամբական դրության» մեջ։ Իշխանության գլուխն անցնելով, Մահմուդ II-ը զորք ուղեց Մարաշի Կալանդեր փաշային և հրահանգեց նվաճել Զեյթունը։ Թուրքական բանակը 1808 թ. պաշարեց բերդաքաղաքը և ինն ամիս շարունակ այն կտրեց շրջապատից։ Սով սկսվեց, ծայր առան հիվանդություններ։ Գավառի բնակչությունը կանգնել էր ոչնչացման վտանգի առաջ։ Ավագ-*

38 Հարություն Ս. Նաշալեան, *Զեյթունի քաջամարտիկ Տեր-Օհանի քաջագործությանց դրվագներեն, Պեյրութ, 1958, էջ 48—50։*

39 *Esat Uras*, Tarihte Ermeniler ve Ermeni meselesi, Ankara, 1950, էջ 491—494։

ների խորհուրդը որոշեց բանակցությունների մեջ մտնել Թուրք փաշայի հետ։ Նրանք համաձայնություն եկան Մարաշի կառավարչին հարկ տալ, սակայն օսմանյան բանակն անմիջապես պետք է հեռանար գավառից և հարգվեին իշխանապետության նախկին արտոնությունները։ Զեյթունի վճարած հարկաքանակը բարձրացավ, հասավ 60 հազար դահեկանի, որը, սակայն, վճարվեց մի քանի տարի միայն։ 1818 թ. Զեյթունը կրկին ապստամբեց և հրաժարվեց հարկատվությունից։



Շատախցի հայեր

Զեյթուն գավառը կառավարվել է սկզբում երկու, ապա չորս իշխանական տների կողմից՝ Սուրենյանների, Յաղուբյանների, Ենիտունյանների և Շովրոյանների։ Իշխանների իրավունքները ժառանգական էին։ Ընդհանուր գավառին վերաբերող խնդիրները լուծելիս, իշխանները հավաքվում էին Զեյթունի խորհրդարան, արքեպիսկոպոսի ու քեհյաների (տեղական գյուղապետեր՝ նույնպես ընտրովի) հետ, վիճաբանությունից հետո վճռական խոսքի իրավունքը վերապահելով իշխանապետին կամ հոգևոր առաջնորդին, վճիռ էին կայացնում։

Ցեղական իշխաններից, շահագործող գյուղատեր վերնախավից կազմված այս վարիչների կառավարման ձևը, որի պայմաններում գնալով խորանում էր դասակարգային տարբերակումը[40], զարմանք էր պատճառել Թուրքիա այցելած եվրոպացի ուղեգիրներին։ Վ. Լանգլուայի կարծիքով այն «հանրապետա-

40 Տե՛ս Մ. Գ. Ներսիսյան, Հայ ժողովրդի ազատագրական պայքարը Թուրքական բռնապետության դեմ, Երևան, 1955, էջ 111։

կան»[41] բնույթ ուներ։ Էլիզե Ռեկլյուն ավելացնում է. «Մի հայկական դաշնակցություն՝ բաղկացած վեց փոքրիկ հասարակապետական հասարակություններից»[42]։ Հիշյալ դաշնակցությունը արտահայտվում էր հետևյալում. Զեյթուն գավառը բաղկացած էր 29 գյուղերից, ուներ 27460 հայ ազգաբնակչություն, 8334 մահմեդականներ կամ թուրքմեններ։ Այս «...գյուղերը կազմում են մեկ դաշնակցություն, որոնց մեջ կան զեյթունցի հայեր և Կոզան-օղլու ցեղի թուրքմեններ»[43]։

## 4. ՀՈՂԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Ֆեոդալական տնտեսակարգի վրա խարսխված Թուրքիայում դեռևս գործածության մեջ էին ավելի քան երկու հարյուրամյակ առաջ հրապարակված հողատիրության օրենքները, հարկահավաքման երբեմնի չափերն ու հարկապահանջության ձևերը։

XVIII դարի վերջին ու XIX դարի սկզբներին էլ Թուրքիայում շարունակում էր գոյություն ունենալ հողատիրության ռազմա-ֆեոդալական սիստեմը։ Սուլթանապատկան հողերի մեծ մասը կոչվում էր միրիե (պետական) և տրվում էր օգտագործման՝ պայմանով, որ օգտագործողները ոչ միայն հարկեր վճարեին, այլև արքունիքում ու բանակում ծառայություններ կատարեին։ Հողը հատկացվում էր սրանց իբրև վարձատրություն, իրավունք ստացողները հարկեր էին գանձում գյուղացիներից, մի մասը պահելով իբրև պարտավորության վարձ, մի մասը հատուցելով Բ. Դռանը։ Միրիե կոչվող հողերն էլ տարատեսակ էին լինում։ Կային խասեր, զեամեթներ, թիմարներ:

Խասերը հողատիրական խոշոր միավորներ էին և տարածվում էին Արևմտյան Հայաստանի մի քանի նահանգներում։ Խաս էր կոչվում հողային այն միավորը, որից ստացված եկամուտը կազմում էր 100 հազար ակչեից ոչ պակաս։ Օգտագործման իրավունքով և ծառայության պայմանաժամանակով այն տրվում էր վեզիրներին, բեյլերբեյերին, սանջակբեյերին։ Ծառայությունը լրանալուց հետո, խասատերը կորցնում էր իր իրավունքը և հայտնվում նոր տեր, այսինքն հաջորդ պաշտոնյան։ Օրենքով խասերը մասնավոր սեփականություն դառնալ կամ ժառանգական իրավունքով փոխանցվել չէին կարող։ Մեռնում էր մեծ վեզիրը, հաջորդն ստանում էր նրա խասերը, փոխվում էր նահանգապետ փաշան, նորը՝ փադիշահական արտոնագրով ներկայանում էր էյալեթ և ստանում ռազմա-քաղաքական իշխանությունը, նախորդին պատկանած հողատարածությունների եկամուտը վայելելու իրավունքները։

Պետական հողերի մյուս մասը տրվում էր մահմեդականներին՝ զինվորական ծառայություն կատարելու կամ զինվոր տալու պայմանով։ Այստեղ էր, որ ի հայտ էր գալիս կայսրության ռազմա-ֆեոդալական բնույթը, որովհետև զորամիավորումները պահվում էին ոչ թե պետական գանձարանի հաշվին, այլ զինվոր տվողին հողեր տրամադրելով։ Զորամիավորման պետը ցեղի առաջ-

41 «Մասյաց աղավնի», 1856, № 6։

42 Էլիզե Ռեկլյու, Լազիստան, Հայաստան և Քուրդիստան..., Վաղարշապատ, 1893, էջ 95։

43 [Գաբրիել Պատկանյան], Հայոց ազգի պատմություն,. Ս. Պետերբուրգ, 1863, էջ 265։

նորդ խոշոր հողատեր ֆեոդալի արտոնություն էր ստանում, բայց ոչ թե ժառանգաբար, այլ ծառայության տարիներին միայն։

Սուլթանական բանակին զինվորներ տրամադրող Թուրք հողատեր ազնվականները կոչվում էին սիպահիներ, նրանց ծառայության համար հատկացված հողակտորները՝ զեամեթ և թիմար։ Հողի օգտագործման իրավունք ստացող մահմեդական զինվորականները ագարակները հանձնում էին գյուղացիներին մշակելու, գանձում էին հարկեր, դրա դիմաց պարտավորվելով պահել հեծելազոր ու հետևակ, ծառայել սուլթանին, պաշտպանել երկրի ու պետության անվտանգությունը, արշավանքներ կատարել, ավար ու կողոպուտ ձեռք բերել։ Ղ. Ինճիճյանը գրում է. «Սիպահի անվանումը պարսկերենում նշանակում է զորական, մինչդեռ տաճկերենում սեփականացված է հեծելազորի յուրաքանչյուր գնդի կողմից, որոնք երևելի ու բազմաթիվ են, որոնց անվանում են զիամեթլի և թիմարլի զաիմ. սրանք թոշակավորված են և վերցնում են իրենց համար ապրելու միջոց երկրի կալվածքներից, որոնք կոչվում են զեամեթ և թիմար, որովհետև օսմանցիների նախկին թագավորները օրըստօրե իրենց իշխանության տակ գցելով զանազան երկրներ, յուրաքանչյուր գավառի մի որևէ մասը (մանավանդ դրանք էին եկեղեցական, վանական և առանձին իշխանների կալվածքներ) որոշյալ կարգեցին հեծելազորների թոշակ... Այդպիսի կալվածներ թագավորը հաճախ ձրի նվիրում էր զինվորական ծառայություն կատարողներին կամ իր պաշտոնյաներին, իսկ մյուսներն արքունիքում վաճառքի էին հանում առավել վճարողին»[44]։

Սիպահիներին տրվող հողամիավորներից ամենափոքրը թիմարն էր։ Ամեն մի թիմարից ստացված տարեկան նվազագույն եկամուտը 3000 ղուրուշ էր, առավելագույնը՝ 20 հազար ղուրուշ։ Զեամեթից ստացված նվազագույն եկամուտը 20 հազար ղուրուշ էր, առավելագույնը՝ 99.999 ղուրուշ։

Օրենքով թիմարներին և զեամեթներին տիրապետելու իրավունք ստացած սիպահիները դրանք գնել, վաճառել կամ ժառանգել չէին կարող։ Նրանք օգտագործում էին կալվածները այնքան ժամանակ, քանի դեռ ծառայության մեջ էին։ Ծառայության ժամկետը լրանալու դեպքում սիպահին կորցնում էր հողատիրական նախկին իրավունքները։

Խասերից բացի, որոնք մեծ թիվ չէին կազմում Արևմտյան Հայաստանում, մշակելի հողի գերակշռող մասը թիմարները և զեամեթներն էին։ Միջնադարի մասին Կ. Մարքսը գրում է. «Փոքր Ասիան և Հայաստանը այն շտեմարաններն էին, որոնք մշտապես համալրում էին Թուրքական բանակները, սկսած նըրանցից, որոնք կանգնած էին Վիեննայի պարիսպների տակ, վերջացրած նըրանցով, որոնք ջախջախվեցին Կուլևչի մոտ»[45]։ XIX դարի սկզբին վիճակը քիչ էր փոխվել։

Կարինն ուներ 122 զեամեթ, 5548 թիմար և տալիս էր 11584 ջերելու զինվոր։ Վանը՝ 185 զեամեթ, 826 թիմար, 2392 զինվոր, Դիարբեքիրը՝ 106 զեամեթ, 540 թիմար, 1504 զինվոր, Չըլդըրը՝ 106 զեամեթ, 695 թիմար, 1804 զինվոր։ Սեբաստիայի փաշան իր խասերից տարեկան ստանում էր 900000 ակչեի

---

[44] Ղ. Ինճիճեան, Աշխարհագրութիւն, մասն Բ, հատ. Ե, էջ 80—81։

[45] *К. Маркс и Ф. Энгельс,* Сочинения, т. 9, стр. 5.

եկամուտ։ Փաշայության 8 սանջակներն ունեին 108-ը զեամեթներ, 3022 թիմարներ և տալիս էին 6490 զինվոր, որոնց հողատարածություններից ստացած հասույթը կազմում էր 13087327 ակչե[46]։ 1830 թ. Բայազետի փաշայության պետական հողերն ամբողջապես փաշայի խասերը, զեամեթներն ու թիմարներն էին։ Սուլթանն այստեղից ոչինչ չէր ստանում[47]։ Մարաշի փաշայությունն ուներ 2869 կըլըչ*, պետական օգտագործելի, լավորակ հողեր և տալիս էր 6500 զինվոր։ Այսպիսով, անվանապես Արևմտյան Հայաստանում հողերի մեծ մասը պետական-միրիե տեսակին էին պատկանում և տրվում էին մահմեդական զինվորականներին՝ օգտագործման իրավունքով։

Հողակտորի անցումը մեկ գյուղացուց մյուսին կարող էր տեղի ունենալ միայն ֆեոդալի թույլտվությամբ, որի համար վերջինս տալիս էր արտոնագիր, դրա դիմաց ստանալով սահմանված քանակի գումար։ Իսկ ֆեոդալներն էլ փաշայի կամ սուլթանի առաջ պարտավորված էին հողից ստացած հարկ-ռենտայի հաշվին պահել հեծելազոր և պատերազմի պահին այն առաջնորդել ռազմադաշտ։

XIX դարի սկզբներին հողատիրական նախկին օրենքները, խասերին, զեամեթներին ու թիմարներին տիրապետելու իրավունքները, դրա դիմաց սուլթանին ծառայելու պարտավորությունները, փոխվել էին։ Այժմ արդեն սուլթանի խստաբարո գրություններն այնքան էլ դեր չէին կատարում։ Քայքայման եզրին հասած կայսրության մեջ էականը ուժն ու հարստությունն էր։

Հողատեր զինվորականների մեծ մասը, օգտվելով պետության թուլությունից, ժամանակի ընթացքում ամրապնդվել էր իր կալվածներում, դիզել հսկայական հարստություն, սեփականացրել, երբեմն էլ ժառանգական դարձրել հողերը, նույնիսկ քաղաքական իշխանությունը։ Նրանցից շատերն ապրում էին ոչ միայն գավառական քաղաքներում, այլ ապարանքներ էին կառուցել ու հիմնավորվել սուլթանի նստավայրում, փաշայանիստ քաղաքներում։ Ռազմա-ֆեոդալական հողատերերն աճել էին, դարձել հողային արիստոկրատներ, զինված ջոկատների ղեկավարներ։ Սուլթանները վաղուց էին նկատել, որ թուրքական ֆեոդալների աճող ազդեցությունը, կենտրոնախույս ձգտումները վըտանգավոր կերպարանք էին ստանում կենտրոնական պետության համար, սակայն առայժմ լռում էին, քանի որ անկարող էին պայքարել այդ երևույթի դեմ։

Պետական գանձարանի աղքատացման պատճառով կառավարությունը պակասեցրեց ենիչերիների ռոճիկները, փոխարենը շնորհեց հողեր։ Իբրև անբարեհույս, ենիչերիական գնդերի մեծ մասը տեղափոխվեց ծայրամասերը՝ Կարին, Կարս, Ախալցխա։ Արևմտյան Հայաստանը սուլթաններից նոր պատուհաս ստացավ։ Ենիչերիները խլեցին քրիստոնյաների, նույնիսկ մահմեդականների հողատարածությունները, սկսեցին կեղեքել ռայային։

Արևմտյան Հայաստանի հողերի մյուս մասը վակուֆային անունն էր

46 «Պատմություն ականավոր քաղաքին Սեբաստիո և սահմանաց նորա...», հորինեց Անդրեաս Աղեքսանդրյան, էջ 220։

47 Վրացական ՍՍՀ, ԿՊՊԱ, ֆ. 2, գ. 2646, թ. 9։

* Բառացի նշանակում է սուր, որի իրավունք. այդպիսի անուն ունեին ռազմիկ, հողատեր ֆեոդալի եկամուտները, հողակտորները։

կրում և պատկանում էր մահմեդական ու հայ հոգևորականությանը։ Հոգևոր ֆեոդալների տնօրինությանն հանձնված վակուֆները ևս բաժանվում էին երեք խմբի։ Առաջին խմբի վակուֆներն էին շարժական ու անշարժ այն գույքերը, որոնցից ստացված եկամուտներով վերանորոգվում էին մզկիթները, կերակրվում էր հոգևոր դասը։ Սուլթան Մուստաֆա II-ը մալիքիանե կոչվող հիշյալ վակուֆներից, որոնք տրվում էին ժառանգաբար, հարկ էր գանձում ոչ միայն միանվագ, այլ նաև ամեն տարի[48]։ Մուստաֆա III-ը փոխեց մալիքիանեների կառավարման ձևը և դրանք դարձրեց պետական սեփականություն, գանձվող հարկագումարը լցնելով իր գանձարանը։

Երկրորդ կարգի վակուֆներից ստացված եկամուտներն անվանապես ծախսվում էին աղքատներին ու կարիքավորներին օգնելու նպատակով, սակայն իրականում դրանք խժռում էին կառավարիչ նազիրները։ Երրորդ խմբին էին պատկանում սովորական վակուֆները[49]։ Սրանք նվիրվում էին մզկիթներին, իբրև սեփականություն՝ առհավետ օգտագործելու, բայց ոչ օտարելու իրավունքով։

Խոշոր հողատարածություններ՝ վակուֆներ ստանալու իրավունք վերապահվեց նաև Կ. Պոլսի Հայոց պատրիարքարանին և թվով 200-ից անցնող հայկական վանքերին։ Հաշվի առնելով ամենայն Հայոց կաթողիկոսի ազդեցությունը, սուլթանները հողեր, զանազան նվերներ, դրամական միջոցներ, արտոնություններ էին բաշխում կաթողիկոսին, Կ. Պոլսի Հայոց պատրիարքին, նրանց սիրաշահելու քաղաքականություն վարում դեռևս միջնադարում։ Գնալով ստվարանում էին վակուֆային հողերը, մանավանդ էջմիածնապատկան կալվածները։ XIX դարի սկզբներին էջմիածնի կաթողիկոսությունը հողային կալվածներ, ջրաղացներ, ձիթհաններ, այգիներ, պարտեզներ ուներ Արևմտյան Հայաստանի գրեթե բոլոր փաշայություններում, այդ թվում և Եվդոկիայում, Զմյուռնիայում և Հայկական Կիլիկիայում։ Կաթողիկոսի նշանակած մարդիկ վարձակալության էին տալիս այդ կալվածները, արդյունքից գանձված հարկը ստանում դրամով կամ բնամթերքով, ապա տեղափոխում էջմիածին։

Հողային կալվածներ ունեին Արևմտյան Հայաստանի վանքերը, ինչպես և մի քանի տասնյակ եկեղեցիներ՝ Վարագա ս. Նշանի վանքը, Մուշի ս. Կարապետը, Ախթամարի ու Սսի կաթողիկոսությունները և շատ այլ վանքեր, որոնցից յուրաքանչյուրն ուներ 300 հեկտարից ավելի հողեր, անասունների հոտեր ու նախիրներ։ Նրանք հողերը մշակելու համար աշխատեցնում էին վանքապատկան գյուղացիներին, վարձակալող մարաբաներին (կիսարարներ, վարձու մշակներ), հարստություն դիզում։ Սակայն այդ հարստությունն ապահով չէր։ Ամեն րոպե ունեցվածքի հետ միասին, վանականները կարող էին կորցնել իրենց կյանքը։ Քուրդ և թուրք ասպատակողների, ավազակների արշավանքները մի հարվածով կարող էին ծայրահեղ խեղճության հասցնել ամենահարուստ վանքը։ Վանական հողատիրությունը ֆեոդալական բնույթ ուներ։ Գյուղացիության շահագործման ճանապարհով մշակվող վանքապատկան հողե-

---

[48] *Дм. Бакрадзе*, Исторический очерк турецкой системы землевладения, Тифлис, 1889, стр. 10.

[49] *И. Соколов*, Земельные отношения в Турции до Танзимата («Новый восток», 1924, № 6, стр. 100—102).

*րից ստացված եկամտով սնվում էր հնազանդություն քարոզող հայ հոգևորականությունը։ Վանքապատկան կալվածների հաշվին պահվում էին նաև դըպրոցներ։*

*Արևմտյան Հայաստանում տակավին հարատևում էին մասնավոր սեփականատիրական հողեր՝* մյուլքեր: *Առք ու վաճառքի, տնօրինության ժառանգական իրավունքով արտոնված այս հողերը Թուրքահպատակ հայկական շրջաններում քանակապես մեծ թիվ չէին կազմում, սակայն XIX դարի սկզբներին դրանք ավելացան։ Խասերի, Թիմարների ու զեամեթների մի մասը դարձավ մահմեդական ֆեոդալների ձևակերպված կամ չձևակերպված ժառանգական սեփականությունը։ Մյուլքեր ունեին նաև հայ հողատերերը Վանի, Արճեշի, Դիարբեքիրի գավառներում, Ակնում և Սեբաստիայում[50]։ Հայերը մյուլքեր էին ձեռք բերել, Թարխանության իրավունք ստացել սուլթաններին մատուցած հատուկ ծառայությունների, կամ ցուցաբերած խիզախության համար։ Սակայն մյուլքերի թիվը Թուրքահպատակ նահանգներում ավելի քիչ էր, քան քրդահպատակ խանություններում ու գավառներում։*

*Ժառանգական հողատիրության ձևն ավելի տարածված էր Հարավային Հայաստանի կիսանկախ համայնքներում և Կիլիկիայի լեռնագավառներում։ Վարչական իշխանության անունն այստեղ անուղղակիորեն փոխանցվում ու դրոշմվում էր հողատիրության ձևերի վրա։ Մասնավոր հողեր էին* հյուքյումեթ, օջաքլըք *(օջախ),* դերեբեյություն *(ձորապետություն),* յուրդլուկ *(հայրենի վայր) կոչված գավառների հողատարածությունների գերակշռող մեծամասնությունը։ Դրանք պատկանում էին քուրդ խաներին, բեկերին, ցեղապետերին, հայ մելիքներին, իշխաններին։*

*Այդ նույն ժամանակաշրջանում սուլթանական կառավարությունն ընդլայնեց սահմանապահ գավառների իրավունքները, բաշխելով հողատիրական արտոնություններ և անկախության ֆերմաններ։ Բացառապես քրդական ավագանուն հանձնված «օջաքլըքներն այն երկրամասերն էին, որոնց խասը (հարկի տեսակ) կամ ամբողջովին, կամ մասամբ հատկացվում էր քաղաքի սահմանագլուխը պահպանող զորքերին, որպես ռոճիկ»[51]։*

*Օջաքլըքի, հաճախ և նրա հետ հավասարեցվող յուրդլուկի անուն կրող գավառները, փավառատերերը, որոնք կոչվում էին էմիրներ, ունեին դրոշակներ և Թմբուկներ։ Նրանց մեջ կային այնպիսիները, որոնք սուլթանի կողմից նշանակման բարաթ էին ստացել։ Կային, սակայն, դարեր առաջ սուլթաններից ստացված այնպիսի բարաթներ, որոնք օջաքլըքի նախկին տերերին իրավունք էին տալիս ժառանգաբար կառավարելու՝ առանց որևէ մեկի նշանակման կամ հաստատման։ Քաղաքական իշխանությունը, դրան սերտորեն առնչվող հողային տիրույթները փաստորեն, երբեմն էլ իրավական առումով, վերածվում էին նման էմիրների ժառանգական սեփականության։*

*Արևմտյան Հայաստանի քրդաբնակ մասերում՝ Բալուի, Գենջի, Էգիլի, Դարուի, Եկրադի, Միհրիվանի, Ուշտյուի, Ումադիեի գավառները ճանաչվել էին իբրև հյուքյումեթություններ. փաստորեն այստեղի հողերի ճնշող մասը ժա-*

---

50 Հ. Շահպազյան, *Քյուրդո-հայ պատմություն, էջ 70—71, 72։*

51 Ղ. Ինճիճեան, *Աշխարհագրութիւն, հատ. Ե, էջ 97։*

ռանգական սեփականություն էր։ Սուլթանը կամ թուրք զինվորական ավագանին հյուքյումեթությունների տերիտորիայում ոչ մի կտոր խաս, զեամեթ կամ թիմար չուներ։ Փադիշահի ստորագրած մի հրովարտակում ասվում է, թե հյուքյումեթները. «...որպես սեփականություն հանձնվեցին նրանց տիրակալներին՝ ծառայությունների և հնազանդության դիմաց։ Նրանք տիրակալում են այնտեղ սեփականատիրական իրավունքներով։ Նրանց մարզերն ենթակա չեն անգամ մարդահամարի և վերաբաժանման։ Նրանց եկամուտները չեն մտցվում պետական ցուցակների մեջ։ Այնտեղ չկա օսմանյան ոչ մի էմիր, չկան սուլթանական զորքեր։ Այդ բոլոր պարտականությունները նրանք՝ իրենք են կատարում։ Եվ նրանք (դրանց տիրակալները), ըստ համաձայնագրի, ապագայում ենթակա չեն ո՛չ հեռացման և ո՛չ էլ նշանակման»[52]։ Հյուքյումեթությունները գնալով ուժեղացան։

Ղ. Ինճիճյանը պարզաբանում է, թե XIX դարի սկզբին հյուքյումեթություն էր կոչվում այն գավառը, որին տիրապետողների ունեցվածքը «սեփականություն է. նրա տերերը իշխաններ են, որոնք նույն տոհմից ժառանգաբար իշխում են որդոց որդի... Անատոլիայի քրդերի մեջ այդպիսի բազմաթիվ իշխանություններ կան»[53]։

Մասնավոր հողատիրական իրավունքով էին օժտված Արևմտյան Հայաստանի դերեբեյությունները, Կիլիկիայի Կոզան-օղլու ցեղապետերը։ Տարբերությունը, սակայն, այն էր, որ պետությունը ճանաչել էր հյուքյումեթների, օջաքլըքների տիրակալների ժառանգական իրավունքները, սակայն սուլթանից ապըստամբ դերեբեյները Բ. Դռան հետ գրեթե ոչ մի պարտավորությամբ կապված չէին։ Նրանց արտոնագրեր տրվեցին 1830-ական թվականներին միայն և ետ վերցվեցին 1840-ականներին։

Հայկական աղբյուրները, եվրոպացի ուղեգրողները, նույնիսկ թուրքական կանուն-նամեները միաբերան վկայում են, թե Արևմտյան Հայաստանի և Կիլիկիայի կիսանկախ գավառների, մասնավորապես Զեյթունի, Սասունի, Մոկսի, Շատախի, Սավուրի և Խույանի հողատարածությունները հայերի և փոքրաքանակ քրդերի ժառանգական սեփականությունն էին։ Այստեղ դասային ու դասակարգային տարբերակում կար, սակայն դեռևս այնքան չէր խորացել, ինչպես մյուս նահանգներում։ Հայ և քուրդ գյուղացիները, քանի որ հողակտորներ ունեին, դրա համար էլ անձնազոհ պայքար էին մղում թուրքական նվաճողների դեմ։ Հող և քաղաքական ազատություն, ահա երկու զորեղ գործոններ, որոնք կիսանկախ համայնքների ազգաբնակչությանը մղում էին ինքնապաշտպանության։

* * *

Արևմտյան Հայաստանն ու հարևան նահանգները XIX դարի սկզբներին էլ հետամնաց ագրարային երկրամասեր էին, որտեղ երկրագործությամբ ու անասնապահությամբ պարապող ազգաբնակչությունը երկփեղկված էր հողատեր ֆեոդալների և աշխատավոր գյուղացիության։ Սրանք իրենց հերթին տրոհ-

---

52 «Аграрный строй Османской империи...», стр. 93.

53 Ղ. Ինճիճեան, *Աշխարհագրութիւն*, հատ. Ե, էջ 97։

վում էին սոցիալական, ունեցվածքային, ինչպես նաև իրավական տարբեր դրություն ունեցող դասերի։

Արևմտյան Հայաստանում խոշոր հողատերեր էին թուրք, քուրդ, մասամբ և ասորի ու հայ ֆեոդալները։ Երկրի ամենախոշոր ֆեոդալը, թուրքահպատակ շրջանների հողային կալվածքների զգալի մասի տերը սուլթանն էր։ Նրանից հետո, ըստ պաշտոնի ու ունեցվածքի, խոշոր հողատերեր էին մեծ վեզիրը, բեյլերբեյերը, միրմիրանները, սանջակբեյերը։

XIX դարի սկզբին Էրզրումի Ահմեդ փաշան 1200 հոգուց բաղկացած իր զորաջոկատը պահում էր նահանգում «ունեցած» հողերից ստացվող եկամուտների հաշվին։ Էրզրումի, Կարսի, Ախալցխայի, Սեբաստիայի, Ադանայի, Տրապիզոնի փաշայություններում հողատեր ֆեոդալները թուրք զինվորականներն էին՝ սիպահիները, ենիչերիները, առևտրա-վաշխառուական ճանապարհով կամ բռնությամբ հողեր ձեռք գցած թուրք ավատատերերը։ Քրդական տարրը տարածում հիմքեր էր գցել Էրզրումի, Կարսի, Ախալցխայի գավառներում, զենքի ուժով խլել հայերի հողերը, անցել նստակյաց կյանքի։ Սակայն, ընդհանուր առմամբ, այս նահանգներում հողերի տերը թուրք վերնախավն էր։

Ախալցխայի սանջակի հողատարածությունների մեծ մասը, Մահմուդ II-ի ֆերմաններով ամրացված էր թուրք թիմարլիներին։ 1822 թ. տրված, ապա 1823 և 1827 թթ. վերահաստատված մի ընդարձակ հրամանագրով, սանջակի հողերից 10250 ակչե տրվում էր թուրք իշխանավոր Սուլեյմանի որդի Ահմեդին, իսկ վերջինիս մահվանից հետո՝ փոխանցվում նրա ազգականներին։ Սանջակի 41 հազար ակչե մշակելի պետական հողերը 1827 թ. արդեն դարձել էին թուրք կալվածատերերի սեփականությունը, որի մասին Մահմուդ II-ը բանակցում էր Սեյիդ Ահմեդ փաշայի հետ, ջանում գոնե հարկեր գանձել դրանցից[54]։

Զըլդըրի սանջակի խոշոր հողատեր-կալվածատերերը նույնպես թուրքերն էին։ Նաղի բեկը, Թուրսում աղան, Օսման աղան, Հուսեյին աղան և մի քանի այլ թուրք ֆեոդալներ իրենց մեջ էին բաժանել գրեթե ողջ սանջակի մշակելի հողերը, անտառները, արոտավայրերը և հարկեր էին գանձում գյուղացիներից։ Նրանք հողեր էին ձեռք բերել նաև Կարսի փաշայության մեջ և, նստած կենտրոնական քաղաքներում, վայելում էին հարկահանների բերած եկամուտները։ 1828 թ. Նաղի բեկին էին «պատկանում» նաև Զըլդըրի և Կարսի օգտագործելի հանքերը, որոնք կապալով շահագործման էին տրվում հայերին ու հույներին։ Փոցխովի սանջակի խոշոր հողատեր կալվածատերերն էին Ալայ բեկը, Գադա բեկը, Մադադ բեկը, Մուստաֆա բեկը, Իսմայիլ բեկը։ Սրանցից ամեն մեկը երկու գյուղից ոչ պակաս հողային կալվածներ ուներ։ Հատկանշական է, որ սրանց շարքումն էր Մուղդուսի Հարություն անունով մի հայ հողատեր, որն ուներ «անբավ» հարստություն, հողեր, անասունների նախիրներ, ջրաղացներ ու ձիթհաններ։ 1827—1828 թթ. Փոցխովի սանջակում կային 7 խոշոր և 13 միջակ կալվածատեր, 148 ունևորներ։ Կալվածատիրական գյուղերը 210-ն էին, պետականը՝ միայն 133[55]։ Այստեղ և մյուս շրջաններում պետական հողերը

54 Վրացական ՍՍՀ ԿՊՊԱ, ֆ. 17, ց. 57, թ. 13—15։

55 Նույն տեղում, ֆ. 47, գ. 75, թ. 21—22։

նվազում էին, դրանց հաշվին ուռճանում էին Թուրք կալվածատերերի տնտեսությունները։

Հարավային Հայաստանի քրդահպատակ ու մասամբ քրդաբնակ շրջաններում՝ Դիարբեքիրի, Վանի, Բայազետի փաշայություններում կային քուրդ խոշոր այնպիսի հողատեր ֆեոդալներ, որոնց հզորությունը, հողային կալվածները զարմանք են պատճառել եվրոպացի ուղևորներին, առիթ տվել նրանց համեմատելու միջնադարի արևմտաեվրոպական կալվածատերերի հետ։ Բիթլիսի իշխանության գլուխ կանգնած քուրդ Շերեֆների տոհմը ուներ հողային հսկայական կալվածներ, բերդեր, ամրոցներ, պահում էր մինչև 50 հազարանոց զորք։ Հայերի հողերը իշխողները սեփականացրել էին և հաճախ տերերին վռնդում էին քաղաքներից, խլում ու տիրանում վերջիններիս կալվածներին, նույնիսկ բնակելի տներին։ Սովից, սրից ու հալածանքներից ոչնչացող կամ խույս տվող հայերի կայքին անմիջապես տիրում էին քրդական բեկերը։

Դերսիմում ու Չարսանջակում «հողերը, ջրերը, տները, մալերն ու միլքերը պիթունն ալ տարապակիններունն էր։ Տարապակին թե օր ուզեր մեզի (հայերին) կը պեյեր (պահեր), թե օր չուզեր՝ չէր պեյեր, ինչպես հիմա ըլ. թե օր ուզեր՝ կը մորթեր, թե օր չուզեր՝ չէր մորթեր»[56]։ Վանի շրջակայքի հողային կալվածքներն անցնում էին ձեռքից-ձեռք։ Դրանց մերթ տիրում էին Թուրքերը, մերթ՝ քրդերը։ 1808 թ. Վանի քրդերի գլխավոր Դերվիշ բեկը խեղդամահ արեց Ցեյզուլլահ փաշային, և «քուրդերը կրկին անգամ տեր դարձան քաղաքին և Վանի հողամասին»[57]։ Նույն տարում Բայազետի Աբդուլա քուրդ փաշան հենված վրանաբնակ խուլամների վրա, «..հափշտակել էր բոլոր հողերը...»[58]։ Մուշի, Հեքյարիի, Ջուլամերկի հողերը նույնպես կենտրոնացված էին քրդական հովտատերերի, խաների, բեկերի, Թոռանների ձեռքում։

XIX դարի առաջին երեսնամյակում Հարավային Հայաստանի նահանգներում քրդական վերնախավը հզփացել էր և, օգտվելով պետության Թուլությունից, քրիստոնյա ու մահմեդական աշխատավորության անպաշտպան դրությունից, խլել էր նրանից հողատարածությունները, գյուղացիներին դրել ծանր հարկերի տակ։ Հատկանշական է նաև այն, որ քրդական Թափառաշրջիկ, վրանաբնակ ցեղերի մի մասն այս ժամանակահատվածում անցնում էր նստակյաց կյանքի, զբաղվում հողագործությամբ։ Ազատ հողատարածություններ չկային։ Նրանք այդ բանն անում էին հայերի ունեցվածքի հաշվին, բռնության ու բիրտ ուժի միջոցով, խլում ռայայի հողերը, երբեմն էլ տներն ու այգիները։

Արևմտյան Հայաստանում և Կիլիկիայում, վանական ու եկեղեցական հողատիրության կողքին, գոյացել էին աշխարհիկ հայ հողատերեր, որոնք կալվածները ձեռք էին բերել գնման, այս կամ այն փաշային, քուրդ խանին ծառայելու և այլ միջոցներով։ Վասպուրականում Դանկովյանների հայտնի տոհմն ուներ հողային ընդարձակ կալվածներ։ Արճեշի մեջ կար բարխանության իրավունք ստացած մի մեծ գերդաստան, որը ազատ էր հարկատվու-

56 Անդրանիկ, *Տերսիմ*, Թիֆլիս, 1901, էջ 50—51։
57 Հովհ. Հակոբյան, *Ուղեգրություններ*, հատ. Ձ, էջ 219։
58 Նույն տեղում, էջ 271։

*թյունից, տիրում էր յոթը գյուղերի։ «Օսմանյան սուլթան մը ֆերմանով ճանչըցեր էր անոնց թարխանությունը»[59]։ Վանի սանջակումն էր Գործոթ գյուղի հայ մելիքը, իսկ քաղաքումն էին նստում իշխանաց իշխան խոջա Ախիջան Գարաւեֆերյանը, Մկրտիչ իշխան Գասպարյանը, Գրիգոր աղան, Հակոբ իշխան Սաֆարյանը։ Մասնավոր սեփականատիրական հողերից բացի, Այգեստան ու Արարոց թաղերում սրանք ունեին այգիներ, տներ, ձիթհաններ, խանութներ։*

*Ջարսանջակի վրա բռնացող դերեբեյների կողքին կային հայ մելիքներ, իշխաններ։ Բայազետի փաշայության մասերին տիրող Բեդեր-խան բեյի, Մահմուդ և Ավդալ խաների խորհրդականները հայ իշխաններն էին։ Քուրդ բռնատերերի տնտեսությունը վարող, քաղաքականությանն ուղղություն տվող Միր Մարտո Բաշկալեցին, Հովհաննես Մանոդյանը և շատ ուրիշներ նվաճել էին «տերերի» համակրանքը և նրանց գյուղերը, ագարակները ազատ էին հարկերից ու պարհակներից։*

*Սասունում, Տարոնում, Հաճընի շրջանում հողատեր ֆեոդալների գերակշռող մասը հայեր էին։ Զեյթունի չորս իշխանական տներն իրենց մեջ էին բաժանել հայ և թուրքմեն գյուղերը և գյուղացիներից հարկ էին ստանում։*

*Այսպիսով, Հայաստանի ու հայաբնակ նահանգների հողատեր ֆեոդալների դասակարգը բազմատարր էր ըստ ազգության, ապրում էր աշխատավոր գյուղացիության, նրանից գանձած հարկերի, ունեցվածքի կողոպտման, անտանելի ճնշումների ու խոշտանգումների միջոցով կորզած եկամուտների հաշվին։*

*Թուրքիայի ազգաբնակչության գերակշռող մասը, արտադրող դասը, աշխատավոր գյուղացիությունն էր, որը սոցիալական դրությամբ միատարր չէր։ Գավառահայության ամենաստվար զանգվածը համարվում էր իրավականորեն* (de jure) *ազատ գյուղացիությունը, սակայն փոքր մասն ուներ սեփական հողեր, մյուս մասը նստած էր պետական հողերի վրա, մի հատվածն էլ ապրում էր վակուֆային հողեր մշակելով։ Եթե հայկական կիսանկախ համայնքների գյուղացիության դրավիճակը որոշ չափով կայուն էր, ապա քրդապատկան շրջաններում այն չափազանց հեղհեղուկ էր, երբեմն էլ հավասարվում էր ճորտերի իրավիճակին։*

*Կիսանկախ հայկական գավառներում՝ Զեյթունում, Սասունում, Մոկսում, Սավուրում, Ճապաղջուրում և այլ գավառներում գյուղացիությունը իրավականորեն ազատ էր ճորտական կապանքներից։ Տեղի իշխաններից, մելիքներից, հաճախ և կառավարիչ դարձած քուրդ բեկերից նրա կախվածությունը արտահայտվում էր ոչ այլ կերպ, քան հարկատվությամբ, կարիքի դեպքում գավառի անկախության պաշտպանությամբ։*

*Սուլթանահպատակ շրջաններում գյուղացիության իրավական դրությունն այլ էր։ Այստեղ սփռված պետական ու կալվածատիրական հողերի վրա նստած երկրագործները բաժանվում էին ազատների և կախյալների։ Ծայր էր առել նաև մարաբայության (կիսրարության) ինստիտուտը։*

---

59 Հ. Շահպազյան, *Քյուրդո-Հայ պատմություն*, էջ 71—72։

Թուրքական պատմագրությունը այսօր էլ անհարկի ջանում է ապացուցելու, թե կայսրության մեջ ընդհանրապես գյուղացու կախվածություն, ճորտություն գոյություն չի ունեցել, իսկ եթե փաստականորեն եղել է, ապա այն սուլթանների կողմից իրավականորեն չի ձևակերպվել։ Սակայն իրենց իսկ հրապարակած փաստերը հակառակն են ապացուցում։ Էրզրումի փաշայության կանուն-նամեն գյուղացուն օրենքով պարտադրում էր հողից չհեռանալ։ Սիպահուն իրավունք էր տրվում փախչող գյուղացուն ետ վերադարձնել[60]։ Սուլեյման Կանունիի հրատարակած օրենքով «թիմարից փախած ռայաթի հավաքելը օրենք էր»[61]։ Պայմանաժամանակը սահմանվում էր 10—15 տարի, միաժամանակ ասվում էր, թե «ըստ արևելյան սովորության՝ հին դաֆթարում նյոքար արձանագրվածի որդին նոր դաֆթարում նյոքարի որդի պիտի արձանագրվի»[62]։ Ակնհայտ է, որ դեռևս միջնադարից օրենսդրությունը գյուղացու կախվածության իրավագրկության վերաբերյալ հոդվածներ էր հրապարակել։ Հետևաբար, շարիաթի հայտարարությունը գյուղացու անձնական ազատության մասին միայն ձևական էր։ Հրապարակված հատուկենտ փաստերը հիմք չեն տալիս եզրակացնելու, թե Արևմտյան Հայաստանի թուրքահպատակ նահանգների գյուղացիները կախման մեջ չեն եղել հողատերերից։ Այլ բան էր թուրքական օրենսդրությունը, ուրիշ բան՝ փաստացի իրավիճակը։

XVIII դարի վերջից կենտրոնական պետության թուլացման հետևանքով ուժեղացան հողատեր-ֆեոդալները, գրեթե գործադրությունից հանվեցին նախկինում հռչակված օրենքները, սկսեց մոլեգնել ֆեոդալի կամայականությունը։ Վատթարացավ գյուղացու իրավա-քաղաքական և տնտեսական կացությունը։ Փաստապես կախյալ վիճակի մեջ ընկած գյուղացիների մի մասը Հարավային Հայաստանում էր, դերեբեյությունների, հյուքյումեթությունների և օջաքլըքների տարածքում։ Ճիշտ է միայն, որ գյուղացիների, մասնավորապես քրիստոնյաների ճորտացման ու նրանց կախյալ վիճակի մեջ դնելու մասին պետական օրենքներ չեն հրապարակվել, գյուղացիների ճորտացումը իրավաբանորեն չի ձևակերպվել։ Սակայն իրավունքն այստեղ ուժեղինն էր, թուրք ու քուրդ ավատատերերինը, որոնք գյուղացու հետ վարվում էին այնպես, ինչպես ցանկանում էին։ Ակներև է, որ գնալով փոքրանում էր Հարավային Հայաստանում հայ ազատ գյուղացիության թիվը։

Ռազմատենչ քուրդ ավագանին ապրում էր նահապետականից ֆեոդալական հարաբերությունների անցման ճանապարհին և աստիճանաբար քոչվորական կյանքը փոխում նստակյացի, բռնագրավում հողեր, դարձնում իր սեփականությունը և սահմանում ֆեոդալական կախվածության կամ հարկատվության անտանելի ձևեր։ Այս գավառներում հայ և քուրդ գյուղացին օրենքով չէր ճորտացված, իսկ իրականում նրանց վիճակը ոչնչով չէր տարբերվում ճորտերի դրությունից։ Իրավա-տնտեսական կախման ամենացայտուն արտահայտու-

---

60 «Օսմանյան օրենքները Արևմտյան Հայաստանում», կազմեցին և ծանոթագրեցին՝ Ա. Խ. Սաֆրաստյանը, Մ. Կ. Զուլալյանը, էջ 22։

61 «Аграрный строй Османской империи...», стр. 30—31.

62 «Օսմանյան օրենքները Արևմտյան Հայաստանում», էջ 30—31։

թյունը խաֆիրության (բառացի, արաբերեն նշանակում է պահապան) ինստիտուտն էր, որը ծագել էր վաղուց ի վեր, սակայն ավելի տարածում ու տիրապետող դարձել XIX դարի առաջին կեսին։

Նկարագրելով քուրդ ցեղապետերի վայրագ կամայականությունները, Խ. Աբովյանը գրում է. «Քրիստոնյաները, հատկապես հայ դժբախտ ժողովուրդը և նեստորականները նրանց ստրուկներն էին բառիս բուն իմաստով։ Խոտառատ լեռներից և հովիտներից իջնելուց հետո, նրանք իրենց անհամար ոչխարների և եղջերավոր անասունների հոտերը ձմռան խիստ և երկարատև ամիսներին պատսպարում էին հայերի մոտ, առանց որևէ վարձատրության։ Դրա համար էլ սրանք ստիպված էին տարվա պատշաճ եղանակին անչափ կեր ու ձըմեռվա պաշար պատրաստ պահելու, որպեսզի ազատ մնային նրանց զարհուրելի վրեժխնդրությունից։ Ո՛չ մի օրենք, ո՛չ մի իշխանություն չէր կարող պաշտպանել սրանց այդ ճնշումից։ Ամենաթեթև դիմադրությունը հատուցվում էր ամենավայրագ դաժանությամբ։ ...Հարևան երկրների թագավորները և իշխանները դողում էին նրանց վրեժխնդրությունից»[63]։



Տեսարան Մուշ քաղաքից

Կան նաև բազմաթիվ այլ փաստեր, որոնք վավերականորեն հաստատում են Բայազետի, Վասպուրականի, Տարոնի, Բիթլիսի, Զարասնջակի գյուղացիության՝ ցեղապետերից կախվածության բազմազան ձևերը։ Նույն կացության մեջ էին ոչ միայն հայ աշխատավորները, այլև սրանց հետ բարեկամորեն ապրող քուրդ ներքնախավերը՝ անպաշտպան գյուղացիները, նստակեցության անցած ռայաթը։

Բացի փաստական կախյալ վիճակում գտնվող գյուղացիներից ու դաժան

---

63 Խ. Աբովյան, Երկերի լիակատար ժողովածու, հատ. 8, Երևան, 1958, էջ 248 (ընդգծումները մերն են—խմբ.)։

*ճնշումների ենթարկվող ազատներից՝ կային նաև ստրուկներ, որոնց վաճառքը թույլատրվում, նույնիսկ խրախուսվում էր պետության կողմից։*

*Միջնադարից սկսած ստրուկներ կային Արևմտյան Հայաստանի գրեթե բոլոր փաշայություններում։ Էրզրումի կանոն-նամեն ստրուկներ գնողին պարտադրում էր բերել և հանձնել կայսերական խասերի էմիրներին, իսկ Ամիդին վերաբերող օրենքը սպիտակամորթ վաճառողից պահանջում էր 50 դուրուշ հարկ տալ, սևամորթ վաճառողից՝ 25 դուրուշ։*

*Թավրիզից վերադառնալիս անգլիացի դիվանագետ Վիլյամ Աուզլին 1812 թ. Կարինում ականատես է լինում հետևյալ տեսարանին. Թուրք ենիչերին վրացուց հափշտակել էր նրա աղջկան և ցանկանում էր վաճառքի հանել շուկայում։ Հայերը փող են հավաքում աղջկա փրկագինը տալու, սակայն ենիչերու պահանջած գումարը մեծ էր։ Նա ավելացնում է «...այս տեղերից մեկում բազմաթիվ վրացի աղջիկներ ցուցադրված էին հրապարակային վաճառքի, ինչպես նաև մի քանի տղաներ, որոնց վերջերս Թուրքերը ձեռք էին բերել ռուսական ճակատից, ուրիշ կողոպուտների հետ»[64]։ Ստրկավաճառները դործելու ազատ իրավունք ունեին Թուրքիայում, իսկ Կ. Պոլսի շուկաներում մունետիկների օգնությամբ անարգել կատարում էին գործարքներ, նույնիսկ խաներից, փաշաներից պատվերներ ստանում աղջկա կամ տղայի տարիքի, արտաքինի, հասակի, գույնի, դրանով իսկ պայմանավորված գնի վերաբերյալ։ Ապա կարճ միջոցում, փողով թե մարդորսությամբ, կատարում էին նրանց պահանջները։*

*Բռնությունն ու աղքատությունը շատերին ստիպում էին վաճառել իրենց զավակներին։ Ականատեսը պատմում է, թե ինչպես Դիարբեքիրում քուրդ մայրը սակարկում էր երկու չքնաղ, փոքրահասակ աղջիկներ վաճառելիս, իսկ գնորդն էլ արժաթե 25 մեճիտիեով գնելով «ղանոնք, պիտի կրթե ու իր մոտիկ ազգականներուն կնության տա»[65]։ Թուրքիայի քաղաքներում կարելի էր հանդիպել մարդավաճառության շատ դեպքերի։ Ստրկությունը, սակայն, ոչ մի դեր չէր խաղում կայսրության սոցիալ-տնտեսական կյանքում։*

## 5. ԳՅՈՒՂԱՑԻՈՒԹՅՈՒՆ. ՀԱՐԿԵՐ ԵՎ ՏՈՒՐՔԵՐ

*XIX դարի սկզբին ինչպես սուլթանական Թուրքիայի, այնպես էլ նրա տիրապետության տակ ընկած Արևմտյան Հայաստանի ժողովրդական տնտեսության հիմնական ճյուղը հետամնաց գյուղատնտեսությունն էր։ Արդյունաբերական ձեռնարկությունները քիչ եկամուտ էին բերում պետությանը։ Դեռևս ազգաբնակչության ոչ մեծ տոկոսն էր ընդգրկված արտադրության այդ բնագավառում։ Մինչև դարակեսը արևմտահայության շուրջ 80 տոկոսը զբաղվում էր գյուղատնտեսությամբ։*

*Գյուղատնտեսության զարգացման համար Արևմտյան Հայաստանն ուներ լայն հնարավորություններ։ Երկիրը հարուստ էր լավորակ վարելահողերով, անտառներով և արոտավայրերով։ Արևմտյան Հայաստանում մշակում էին գյուղատնտեսական բազմաթիվ կուլտուրաներ, որոնց մեջ իրենց տեսա-*

---

64 Հովհ. Հակոբյան, *Ուղեգրություններ*, հատ. Ձ, էջ 485—486։

65 Հ. Շահպազյան, *Քյուրդո-հայ պատմություն*, էջ 115։

կարար կշռով մեծ տեղ էին գրավում հատիկային կուլտուրաները, հատկապես ցորենը, գարին, մասամբ էլ բրինձը։

Հացահատիկ էին ցանում Արևմտյան Հայաստանի և հայաբնակ նահանգների գրեթե բոլոր շրջաններում, սակայն բերրիությամբ հայտնի էին Կարինի, Կարսի, Վանի, Սեբաստիայի, Ջըլդըրի փաշայությունները, որտեղի հացը ոչ միայն բավարարում էր տեղի բնակչության պահանջները, այլև արտահանվում էր։ Ցորենի և գարու արտադրությամբ աչքի էին ընկնում Էրզրումի էյալեթի Խըզնկա գավառը, Բասենի դաշտը, Դերջանի լայնարձակ հովիտը, Ղուզուջանը։ Բայազետի փաշայության Խնուս և Դիադին գավառները կուտակում էին ցորենի, բայց հիմնականում գարու մեծ պաշարներ, իսկ Ալաշկերտի հովտի ընտիր ցորենով կերակրվում էր ողջ նահանգի ազգաբնակչությունը։ Կարսի փաշայության մեջ մտնող Արևմտյան Շիրակի, Կաղզվանի դաշտերը ցորենի լավագույն ցանքատարածություններ էին։ Վանի փաշայության Խլաթի, Բերկրիի, Արծկեի, Արճեշի գավառներում հողը շատ բերրի էր, և այնտեղ աճեցվում էր լավորակ ցորեն։ Սեբաստիան հայտնի էր կարմիր և սպիտակ ընտիր ցորենով։ Սվազ, Ամասիա, Արաբկիր գավառներն իրենց արտադրած հացահատիկով բավարարում էին Փոքր Ասիայի բնակչության գրեթե մեծ մասի պահանջները։

XIX դարի առաջին կեսին Ադանայի ու Մարաշի փաշայություններում ընդարձակվում էին բամբակի ցանքատարածությունները։ Գյուղատնտեսության այս ճյուղն աստիճանաբար իրենց տնօրինության տակ էին վերցնում ֆրանսիացիները, որոնք աշխատում էին բարելավել բամբակի տեսակները, կազմակերպելով ընդարձակ պլանտացիաներ։ Եղավ մի ժամանակ, երբ Ադանայի արտադրած բամբակով սնվեց Ամերիկայից հումք ստանալու մերժում ստացած ֆրանսիական տեքստիլ արդյունաբերությունը։ Սակայն այդ կուլտուրայի արտադրությունը չէր կարգավորված, քանի որ պետությունը ոչ միայն չէր խրախուսում բամբակագործությունը, այլ սահմանած մաքսային տարիֆներով, արտադրողի վրա դրած ծանր հարկերով քայքայման եզրին էր հասցնում այն։ Տեխնիկական կուլտուրաներից տարածված էին ափիոնի, ծխախոտի արտադրությունը, շերամապահությունը։ Ողջ Տրապիզոնի փաշայությունը ծխախոտի «Սամսոն», «Դիշկուլաղ» տեսակները արտահանում էր Ռուսաստան և իր ծխախոտի արտադրությամբ բավարարում ասիական Թուրքիայի պահանջները։ Դարասկզբին ծխախոտ էր ցանվում նաև Ադանայի նահանգի ծովամերձ լավորակ հողամասերում։

Մետաքսագործությունը կենտրոնացած էր հայերի ու հույների ձեռքում։ Սկյուտարի ու Թըրնովոյի մետաքսագործական հազարավոր դազգահները բանեցնելու համար նրանք հումքն ստանում էին Արևմտյան Հայաստանից (հատկապես Դիարբեքիրից) ու Հայկական Կիլիկիայից։ Քանի դեռ եվրոպական կապիտալը մուտք չէր գործել Թուրքիա, բոժոժի արտադրությունը մեծ համարում ուներ թե՛ տեղացիների և թե՛ եվրոպացի վաճառականների աչքում։

Արևմտյան Հայաստանը համարվում էր այգեգործության երկիր։ Կիլիկիան տալիս էր բազմատեսակ մրգեր, միջերկրածովյան այնպիսի պտուղներ, որոնք թարմ կամ չորացած վիճակում վաճառվում էին ներքին ու արտաքին շուկաներում։ Վանի վիլայեթի Շատախ, Արճեշ, Ջուլամերկ և Ոստան գավառներում, հատկապես քաղաքում աճեցվում էին խաղող, խնձորի ու տանձի բազ-

մաթիվ տեսակներ։ Դիարբեքիրի մեջ մտնող Արղանա-մադենի և Բալուի սանջակներում բնակիչներն արտադրում էին տարբեր տեսակի խաղողներ։

Եվդոկիայի բնակչությունը երկրագործությանը զուգընթաց զբաղվում էր նաև այգեգործությամբ։ Այստեղ աճեցվում էին բոլոր տեսակի պտուղները, նույնիսկ ձիթապտուղ, և առատ բերք ստանում։ Դարասկզբին Եվդոկիա քաղաքի շրջակայքում կային շուրջ 10.000 այգիներ և «կարտադրեին տեսակ-տեսակ պտուղներ, որոնք նույնիսկ կարտածվեին»[66]։ Ամենից գեղեցիկ պարտեզները գտնվում էին քաղաքի հարավային մասում։ Բազմատեսակ խաղողը աճում էր որթատունկերի վրա, սակայն օգտագործվում էին նաև ձողաբարձերը։ Հայտնի էին Եվդոկիայի «Համով-հոտով», «Ջավուշ», «Ֆեներիտ», «Կելին-Փարմաղը» և այլ խաղողատեսակներ[67], որոնցից «Թանձրամաշկն» ընտիր էր։ Այսպիսով այգեգործությունը տարածված էր Արևմտյան Հայաստանի գրեթե բոլոր նահանգներում, սակայն հարկ է հիշատակել, որ թուրքական վերնախավը տեր էր դարձել այգիների զգալի մասին։

Արևմտյան Հայաստանը իր խոտառատ արոտավայրերի շնորհիվ անասնապահության զարգացման բոլոր հնարավորություններն ուներ։ Խաշնարածությունը զարգացած էր Կարինի, Վանի, Բայազետի, Դիարբեքիրի փաշայություններում, Սասնո և Զեյթունի լեռներում, Բիթլիսի խոտավետ վայրերում։ Սեբաստիայի վիլայեթը բուծում էր ոչխարների մի քանի տեսակներ, արտադրում ընտիր բուրդ։ Վանը արտահանում էր նաև այծի մազ՝ կապերտներ գործելու, փափուկ՝ դիֆտիկ գլխարկներ և կանանց վերնազգեստներ պատրաստելու համար։ Սակայն անասնապահությունը աստիճանաբար կենտրոնանում էր քոչվոր քրդական ցեղախմբերի ձեռքում, որոնք բռնությամբ խլել էին հայերին պատկանող արոտավայրերը, սեփականացրել, իսկ շատ տեղերում էլ հաստատելով խաֆիրության իրավունք, իրենց անասուններին հետ միասին ձմեռում էին քրիստոնյաների տներում, ստիպելով նրանց անվճար հոգ տանել անասունների և իրենց ուտեստի մասին։

Թուրքիայում և Արևմտյան Հայաստանում ցածր էր գյուղատնտեսության եկամտաբերությունը, որը պայմանավորված էր երկրագործության ծայրահեղ հետամնացությամբ։ Հողը դեռևս մշակում էին հասարակ արորներով, քիչ էին ոռոգման սիստեմները։ Խոսք չէր կարող լինել հողի պարարտացման մասին։ Կանոնավոր փոխադրամիջոցների բացակայության պատճառով թույլ էր ապրանքափոխանակությունը, արտաքին շուկայից կտրված լինելը վերացնում էր երկրագործի նախաձեռնությունն ու շահագրգռվածությունը։ Նույն վիճակում էր գտնվում նաև անասնապահությունը։

Աշխատանքի ցածր արտադրողականությունը համընդհանուր երևույթ էր Թուրքիայի ու նրա տիրապետության տակ գտնվող Արևմտյան Հայաստանի գյուղատնտեսության համար։ Այն պայմանավորված էր ոչ միայն արտադրամիջոցների հետամնացությամբ, այլև արտադրահարաբերություններով, առա-

---

66 Ա. Ալպոյաճյան, Պատմություն Եվդոկիո հայոց, Գահիրե, 1952, էջ 28։

67 Նույն տեղում, էջ 28, գյուղատնտեսության մասին տե՛ս նաև Ա. Համբարյան, Ագրարային հարաբերությունները Արևմտյան Հայաստանում, Երևան, 1965, էջ 151 և հետո։

վել ևս երկրագործի անձնական շահագրգռվածության, նրա ունեցվածքի ու կյանքի ապահովության բացակայությամբ, պարբերական թալանի առկայությամբ, ավազակախմբերի անարգել գործունեությամբ։ Եթե սրան ավելացնենք բազմաթիվ հարկերը, պաշտոնյաների ընչաքաղցությունն ու կաշառակերությունը, ապա պարզ կդառնան գյուղատնտեսության հետամնացության պատճառները։

Արևմտյան Հայաստանի թուրքահպատակ շրջաններում գյուղացին հարկեր էր վճարում պետությանը, թուրք հողատերերին՝ զաիմներին ու թիմարլիներին, խասատերերին։ Քրդապատկան մարզերի աշխատավորությունը վճարում էր քուրդ խաներին, բեկերին, պետությանը, խաֆիրներին։ Գավառահայությունը հարկեր ու տուրքեր էր տալիս հայ եկեղեցուն ու վանքերին։

Արևմտյան Հայաստանի գյուղացիության վճարած հարկերից ամենածանրը աշարն էր։ Հարկը կազմում էր հողից ստացված տարեկան եկամտի 1/10 մասը, դրա համար էլ կոչվում էր նաև տասանորդ, որի փաստացի չափի և գանձման եղանակների ու տարատեսակների պատկերն իրականության մեջ ավելի բարդ էր, քան թղթի վրա ու օրենսդրական ակտերում։

Ախալցխայի փաշայության պետական հողերը մշակող գյուղացիները 1828—1829 թթ. աշար էին վճարում բերքի 20 տոկոսի չափով[68]։ Պոնտոսի դաշտավայրի, Տրապիզոնի նահանգի, Շապին Կարահիսարի գյուղացիները 1807—1808 թթ. ցանում էին դարի. «...վճարում հողի արտադրության մեկ հինգերորդը»[69]։ Բայազետի փաշան 1827—1828 թթ. թուրք ու քուրդ գյուղացիներից աշար էր հավաքում եկամտի տասից մեկը, հայերից յոթ մասից մեկը[70]։ Նա միաժամանակ գյուղացուց գանձում էր թոփրակ-խարաջ անունով հարկ։ Այն երկրագործները, որոնք գութան ունեին, պարտավոր էին հատուկ հարկ տալ՝ տասանորդից բացի։ Հատկանշական է, որ տասանորդը տարբեր նահանգներում, նույնիսկ տարբեր գավառներում տարբեր չափեր է ունեցել, ինչպես նաև գանձման անհամանման եղանակներ։ Ըստ որում, միշտ էլ քրիստոնյաներից հարկը գանձել են ավելի, քան մահմեդականներից։ 1830 թ. Էրզրումի փաշայության Դերջան գավառում Իզմայիլ բեկը հայերից աշարը վերցնում էր մահմեդականների վճարածի կրկնակի չափով։ Աշարը այստեղ կազմում էր եկամտի 25 տոկոսը[71]։

Արևմտահայ ազգաբնակչության համար և՛ ծանր և՛ անպատվաբեր հարկ էր ջիզիեն (գլխահարկը), որը գանձվում էր քրիստոնյաներից ու հրեաներից իբրև փրկագին, գլխագին, սկզբում ընդհանուր գերդաստանից, իսկ հետո ամեն մի արու չափահասից։ Ջիզիեն ամենամյա հարկ էր և իր չափերով անընդհատ փոփոխության էր ենթարկվում։ 1800 թ. գլխահարկը գանձվում էր ըստ ունեցվածքի՝ հարուստից 48 ղուրուշ, միջակից՝ 24, աղքատից՝ 12, ընդհանուր գումարը կազմում էր 4000 քսակ։ Հարկաչափը 1803 թ. ավելանում է։ Այժմ այն գանձվում էր ոսկով։ Հարուստը տալիս էր 4 շերիֆլի ոսկի, միջակը՝ 2, աղքա-

---

68 Հայկական ՍՍՀ ԿՊՊԱ, Քաղվածքների ֆոնդ, գ. 49, 1830, թ. 34։

69 Հ. Հակոբյան, Ուղեգրություններ, հատ. Զ, էջ 94։

70 Վրացական ՍՍՀ ԿՊՊԱ, ֆ. 2, ց. 1, գ. 2462, թ. 3—4։

71 ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. ՌԳԱ, գ. 1046, 1830, թ. 1—2։

րը՝ 1, դրա հետ միասին «վասն հարկապահանչացն» 10, 8 և 4 փարա։ 1804 թ. հարկապահանչների վարձը և ընկալագրերի գինը միացվեցին և հարկաչափը սահմանվեց 12 ղուրուշ[72]։

Հետագա տասնամյակներին գլխահարկն անընդհատ ավելանում էր, կրկնապատկվում, նույնիսկ քառապատկվում, որը պայմանավորված էր կայսրության տնտեսական քայքայումով։ 1815 թ. այն 15 ղուրուշից բարձրացավ 16-ի, 1824 թ. դարձավ 24 ղուրուշ, 1827 թ.՝ 36 ղուրուշ, 1829 թ.՝ 48 ղուրուշ, 1834 թ.՝ 60 ղուրուշ։ Ընդ որում, 1840 թ. փետրվարի 28-ի հրովարտակով «Հարկ իւրաքանչիւր հարկատու ազգաց՝ հանձնվեցավ՝ ի ձեռս ազգապետաց նոցին՝ հաւաքել յազգէն եւ հատուցանել արքունի գանձարանին»[73]։

Եթե հոգևոր դասը, անկախ կամ կիսանկախ գավառների հայ գյուղացիությունը գլխահարկից «ազատ էին», ապա Արևմտյան Հայաստանի «այլահավատները» սահմանված գումարը վճարելով չէին ազատվում։ Հայկական աղբյուրներում եղած բազմաթիվ հիշատակությունների համաձայն Վասպուրականում, Տարոնում, Դերսիմ-Չարսանչակում քուրդ խաներն ու թուրք փաշաները գլխահարկը գանձել են տարվա մեջ երկու, երեք անգամ և հասցրել մինչև 150—200 ղուրուշի։ Գ. Սրվանձտյանցը գրում է, թե Վանի կուսերը խարաջն ավելացրել են, նրանք «...Բ. խարաջ առին ի Հայոցս և կես ղուռուշ էլ հարամ խարաջ»[74]։ Գլխահարկ էր գանձվում պանդխտից, գաղթողից, պանդխտության մեջ մահացածի ընտանիքից։ Պետությունը, մահմեդական մոլեռանդ կրոնավորները շահագրգռված էին գլխահարկի անընդհատ ավելացմամբ։ Դրանով իսկ նրանք նյութական հսկայական միջոցներ էին կորզում այլազգի հպատակներից, և մյուս կողմից՝ «խաղաղ մեթոդներով» վերջիններիս կրոնափոխ անում։

Մահմուդ II-ը վերակենդանացրեց միջնադարում գործող մանկահավաքը։ Այդ տասնամյակներին կայսրությունը գլխահարկ հավաքելուց բացի, արհեստ սովորեցնելու պատրվակով, քրիստոնյա մանուկներ էր հավաքում, բռնությամբ տարագրում մայրաքաղաք, առանց վարձի, անտանելի պայմաններում աշխատեցնում Իփլիկ խանե անվանված նավարանում։ 1830 թ. Սվազի Հաջի Հասան փաշան, միացած Էրզրումի սերասքյարին, 200 զինվոր էր առանձնացրել, նրանց տրամադրության տակ դրել զինված քրդեր, որոնք հայերից «մանկահավաքություն» պիտի անեին։ Ապրիլի վերջին արդեն Կ. Պոլիս էին ուղարկվել Կարա-Հիսարի և Երզնկայի գավառների 40 հայ[75] երիտասարդներ։ 1832 թ. Կարինից, Սեբաստիայից, Վանից և «այլոց քաղաքաց Անատոլուի» հավաքեցին 6000 երիտասարդների և տեղափոխեցին Իփլիկ խանե աշխատելու։ 1844 թ.[76], սրանց մոտ 2/3-ը արդեն զոհվել էին նավերի ընկղմվելու պատճառով, մի մասն էլ փախուստի էր դիմել։ Ոչնչացվածների տեղը լրացնում էին «նորահավաքները»։ Գրեթե ամեն տարի յուրաքանչյուր գավառից հավաքում էին 20-ական հոգի, իսկ Արևմտյան Հայաստանից ամենապակասը՝ 300—400 երիտասարդներ։

---

72 Ղ. Ինճիճեան, Աշխարհագրութիւն, հատ. Ե, էջ 46—47։

73 Ա. Պերպերյան, Պատմութիւն հայոց, էջ 452, 469, 475, 480, 500։

74 Գ. Սրվանձտյանց, Մանանա, Կ. Պոլիս, 1876, էջ 393։

75 ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. ՌԳԱ, գ. 1046, թերթ 16—18։

76 Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 110, վավ. 51, 1844, թ. 1—2։

Թուրքիայի գանձած ծանր հարկերից էր ավարիզը կամ ավարիզ-դիվանիյեն («պատահական» հարկ)։ Այն մտցվում էր պատերազմների ժամանակ և չէր վերացվում նույնիսկ խաղաղ ժամանակաշրջանում։ Այս տասնամյակներում ավարիզը դարձել էր կանոնավոր հարկ և ամեն մի գերդաստանից գանձվում էր մինչև 300 ղուրուշի չափով։ 1807—1808 թթ. Տրապիզոնի նահանգի ամեն մի տնտեսություն տալիս էր 300 ղուրուշ ավարիզ, բացի այդ, նաև աշար և այլ տուրքեր։ 1830 թ. ռուսական հյուպատոսը վկայում է, որ «եթե այս հարկերը շարունակվեն ևս որոշ ժամանակ, ապա անմարդաբնակ կդառնան ոչ միայն գյուղերը, այլև ամբողջական սանջակներ»[77]։

Թուրքահպատակ մարդերի բնակիչները պարտավոր էին վճարել նաև հողային հարկ, որը միավորում էր մի քանի անուններ։ Պետական հողերի համար գանձվող հողահարկը կոչվում էր թափու (հողային տուրք, որը գյուղացին հողակտոր ստանալիս վճարում էր ֆեոդալին)։ Հարկը, սակայն, ամենամյա չէր, այլ փաստորեն հանդիսանում էր պետական հողերի վարձավճար։ Հարկաչափը պայմանավորված էր հողի որակով։ Լավ հողակտորի համար վճարում էին 50 ղուրուշ, միջակի՝ 20—30, վատի՝ 15—20։ Թափուն վճարվում էր միանվագ։ Հոր մահվանից հետո վարձաթուղթը որդու անունով փոխանցվելու դեպքում, ամբողջովին կրկնվում էր հարկահանման արարողությունը, որը և կոչվում էր հակկի կարար։

Մասնավոր սեփականատիրական կալվածների, տների, խանութների, ջրաղացների, ձիթհանների, տնամերձ ագարակների համար հողատերերը վճարում էին հողային հարկ՝ էմլաք (կալվածք)։ Թուրքիայում էմլաքը ևս ուներ իր տարատեսակը, որը գանձվում էր միայն հողերից, հաշվի առնելով ոչ թե եկամուտը, այլ տարածությունը։ Ամեն մի ջրաղացից տարեկան գանձում էին 120 ղուրուշ, կես տարի գործող ձիթհանից՝ 60 ղուրուշ, բնակելի տներից՝ 15 ղուրուշ, խանութներից՝ 150 ղուրուշ։

Արոտների հարկ կամ ղամճուռ էին գանձում անասնատերերից։ Հարկվում էին թե՛ խոշոր և թե՛ մանր եղջերավոր անասունները։ Ախալցխայի փաշայության մեջ 1800—1830 թթ. գյուղացիները պարտավոր էին գարնանը վճարել ինակ-յագ։ Ամեն մի կովի համար վերցվում էր 1/2 հոկա յուղ, 40 ոչխարից՝ մեկ հոկա յուղ և մեկ ոչխար, 20 այծից՝ մեկը[78]։ Տավար ռեսմին (անասնահարկը) վերցվում էր ամեն մի հարյուր անասունից մեկը, օճուս-ռեսմին՝ յուրաքանչյուր զույգ ցուլ ունեցողից 32 ղուրուշ։ Սեբաստիայի փաշայության մեջ սրանց զուգահեռ վճարվում էր նաև ջանավար փարասի (անասունները գազանների հարձակումներից պաշտպանելու հարկ)։ Դիարբեքիրի փաշայության հայ գյուղերից ջբրև ղշլաղի (ձմեռանոցի) հարկ վերցնում էին 300 ոչխարից մեկը։

Թուրքիայում կար հարկերի մի ամբողջ խումբ, որոնք ստացել էին քաղաքացիական տուրքեր անվանումը։ Դրա մեջ էին մտնում ամուսնության տուրքը՝ առաջին ամուսնության դեպքում 100 փարա, երկրորդ ամուսնության ժամա-

---

77 Архив внешней политики России (АВПР) (այսուհետև՝ ՌԱՔԱ, Ռուսաստանի արտաքին քաղաքականության արխիվ), Գլխավոր արխիվ 1—9, գործ 13, մասն 17, թերթ 30։

78 Հայկական ՍՍՀ ԿՊՊԱ, Քաղվածքների ֆոնդ, գ. 49, թ. 34—35։

նակ իգական սեռից՝ 100 ղուրուշ և ավելին։ Դրանից բացի, պետական հողերի վրա նստած գյուղացիների մահվան դեպքում նրա ունեցվածքի մեկ տասներորդը գրավվում էր արքունիքի օգտին, միաժամանակ, մահացած բոլոր քրիստոնյաներին հողում ամփոփելու թույլտվության համար գանձվում էր 50—100 ղուրուշ հարկ։

Թուրքական կառավարության պետական հարկերի ցանկը սրանով չէր ավարտվում։ Տարբեր նահանգներում կային՝ փեթակի հարկ, տոնախմբության համար վճարվող հարկ, նովրուզի հարկ, կեֆենդուզի հարկ (ամեն մի կոշկակարից 25 ակչե), յուղի հարկ (ամեն մի ծխից 1200 դիրհեմ յուղ), ջրելու վարձ (տրվում էր միրաբին), գիշերապահության (քաղաքներում խանութներ պահելու համար գանձվում էր խանութպաններից) և այլ հարկեր։

Սակայն նշված հարկերը բոլոր տնտեսությունները չէ, որ վճարում էին։ Հարկերի գանձումը կատարվում էր ըստ զբաղմունքի տեսակների, հողատարածությունների կամ ստացված եկամուտների։ Միայն ջիզիեն էր, որ պարտադիր էր բոլոր քրիստոնյաների համար։

Վերոհիշյալ հարկերն իրենց տարատեսակներով ու անհամաչափությամբ գրեթե պարտավոր էին Արևմտյան Հայաստանի՝ Էրզրումի, Սեբաստիայի, Ջըլդըրի, Կարսի ողջ էյալեթների, Բայազետի, Վանի, Դիարբեքիրի միայն թուրքահպատակ շրջանների ազգաբնակչության համար։ Քրդահպատակ մարզերը «ազատ էին» պետական մի շարք հարկերից։ Դարասկզբին սուլթանական ֆերմաններն արդեն ուժ չունեին։ Ստեղծվել էին, սակայն, հարկային այնպիսի խճճված ցանցեր, որոնցում բեկերն ու ցեղապետերը, բազմաստիճան ու հարափոփոխ իշխանավորներն արյունաքամ էին անում ժողովրդին, սոցիալական ծանր շահագործման ենթարկում հպատակներին։ Քրդահպատակ ոչ բոլոր վայրերն էին սուլթանին հարկատու։ Նրանց գերակշռող մասը հարկեր էր տալիս քուրդ փաշաներին, քուրդ ու թուրք բեկերին, երբեմն էլ հայ իշխաններին։

Հարկային բեռը անհամեմատ ծանր էր Վանի փաշայության մեջ։ Նահանգի ու առավելապես քաղաքի ազգաբնակչության քրիստոնեական հատվածըն իր ունեցվածքով պահում էր բերդապահ վան-կուլիներին, հոգում նրանց ուտեստն ու հանդերձանքը, վճարում կոշիկների, զենքի գինը, միաժամանակ, ամեն մի տնտեսություն պարտավոր էր 30—40 դահեկանի դրամահարկ տալ։ 1800—1806 թթ. քուրդ փաշան քաղաքի ամեն մի տնտեսությունից պահանջում էր տարեկան 100 ղուրուշ։ Իմդադիյե և յայլըկ հարկը զենքի սպառնալիքով գանձվում էր տարվա սկզբին, ամբողջ տարվա համար, իսկ երեք կամ չորս ամիս հետո պահանջվում էր մյուս «տարվա հարկը»։

Բիթլիսի քուրդ խանը բնակչությունից, հատկապես քրիստոնյաներից, գանձում էր այնքան, որքան ուզենար։ Այստեղ տասանորդը հասնում էր մինչև 20 տոկոսի, դրանից բացի, կային տան հարկ՝ 4,5 ակչեով ավելի քան թուրքահպատակ շրջաններում, ջուլհակի հարկ՝ 4,5 ակչե, կերի հարկ՝ ամեն մի ձիուց 2 ակչե, տոնական հարկ՝ ամեն մի գյուղից երկու ոչխար, նովրուզի հարկ՝ ամեն մի ծխից 7 ակչե, հողն անմշակ թողնելու հարկ՝ յուրաքանչյուր գյուղից 50 ակչե։ Գանձվում էին նաև կեֆենդուզի, ղշլաղի, յուղի հարկեր։ Բաղեշցին եթե ցանկանար գավառից դուրս գալ, պարտավոր էր ներկայացնել բոլոր հար-

կերի գանձման «ընկալագրեր», դրան զուգընթաց 20—30 փարա տալով «ազատության թուղթ» ստանալ՝ տեղից բացակայել կարողանալու համար։ Օտարականը վճարում էր դշլա կոչվող տուրքը՝ 60—80 փարա[79]։

Դրությունը ավելի քան անմխիթարական էր քրդական խաներին ենթակա Տարոնում, Դիարբեքիրի փաշայության հայկական շրջաններում, Բեդեր-խան բեյի, Նուրալլահի, Մահմուդ խանի տիրակալության սահմաններում։ Սեբաստիայի տիրող, Կեսարիան, Մարաշը միշտ ասպատակող ապստամբ Չապանօղլուները հպատակ գավառներից տարին երեք-չորս անգամ հարկ էին պահանջում, ամեն անգամ էլ յուրաքանչյուրից բռնագրավում 30 դահեկան։ Դրամն այստեղ այնքան հազվագյուտ էր դարձել, որ 1808—1809 թթ. վճարում էին «հարյուրին հարյուր տոկոս»[80]։ Դրանից բացի, հպատակները անասուններով, ձիերով, հագուստով, պարենով, փայտով ապահովում էին Չապան-օղլուի զինվորներին։

Քրիստոնեական վանքերն ու եկեղեցիները դրվում էին ծանր հարկերի տակ։ Սուլթանի 1800 թ. հրամանագրով Կ. Պոլսի պատրիարք ընտրվողը հրովարտակ ստանալիս 140 հազար ակչե հարկ պիտի վճարեր։ Նոր վեզիրի իշխանության գլուխն անցնելու ժամանակ պատրիարքը տալիս էր 500 ղուրուշ, վեզիր քեհյասուն՝ 250 ղուրուշ, չավուշ բաշուն՝ 200 ղուրուշ, դրամի հետ նաև մետաքսյա հագուստներ, ճոքավոր կարմիր կոշիկներ պիտի նվեր ուղարկեր բարձրաստիճան պաշտոնյաներին։

Կ. Պոլսի պատրիարքն այդ գումարները գանձում էր հայկական վանքերից, եկեղեցիներից, հոգևոր առաջնորդներից՝ միրի մուկաթա անունով և իր բաժինը վերցնելով, վերոհիշյալ հարկագումարը հանձնում էր Բ. Դռանը։ 1817 թ. Հասան Ղալեի վանքը տվել է 150, Կարմիր վանքը՝ 50, Խաչկանց վանքը՝ 50, իսկ 1812 թ. Կարինի ու շրջակա գյուղերի մուկաթան (արաբերեն մակթու բառից՝ գինը որոշված հողամաս) կազմել է 1222 ղուրուշ[81]։

Ըստ օրենքի, այս հարկից բացի, արևմտահայ վանքերն ու եկեղեցիները ուրիշ տուրքեր չէին տալու։ Սակայն իրականում այդպես չէր։ Փաշաներն ու խաները ամենածանր հարկեր էին դնում գրեթե բոլոր վանքերի, վանական կալվածների, ուխտավորներից ստացված հասույթի վրա։ Դարասկզբին Վարագա ս. Նշան վանքը քուրդ խանին այնքան էր վճարել, որ տնտեսապես բոլորովին քայքայվել էր։ Մուշի ս. Կարապետ վանքից ստացվում էր մեծագումար հարկ։ Ս. Կարապետ այցելող թուրքահպատակները խանին հարկ պիտի տային, իսկ ռուսահպատակները, անցաթուղթ ստանալու համար, մեծագումար «թղթագին»։ Հարկվում էին, սակայն, ոչ միայն երկրորդական ու տեղական համբավ ունեցող վանքեր, այլև Երուսաղեմի ս. Հակոբյանց վանքը։ 1800 թ. և դրանից հետո Երուսաղեմի Պետրոս պատրիարքը տարին 4195,5 րուպիե ոսկի էր վճարում Դամասկոսի փաշային։

Արևմտահայ աշխատավորության ուսերին ծանր բեռի նման նստած էր նաև եկեղեցու, հայ հոգևորականության հարկապահանջությունը։ Այս դեպքում

79 Ա. Ալպոյաճյան, Պատմական Հայաստանի սահմանները, էջ 444։

80 Հովհ. Հակոբյան, Ուղեգրություններ, հատ. Ջ, էջ 89։

81 Մատենադարան, Կարապետ արքեպիսկոպոսի արխիվ, թղթ. 163ա, վավ. 12բ։

կառավարական զափթիան, անխնա թուրք աղան կամ քուրդ բեկը չէ, որ կողոպտում էր հայ գյուղացուն, շողացող սրի սարսափը չէ, որ դատարկում էր անպաշտպան ռայայի գրպանը, այլ՝ եկեղեցու «քաղցրաքարոզ» սպասարկուները, վանահայրերը, կաթողիկոսի ու պատրիարքի հաճախակի առաքած նվիրակները։

Դարի առաջին քառորդին, ավելի քան երբևէ Արևմտյան Հայաստան ու հայ գաղթօջախներ էին սփռվել էջմիածնի, Երուսաղեմի, Կ. Պոլսի պատրիարքի նվիրակները։ Միայն Կ. Պոլսի հայերից էջմիածինը 1818 թ. նվիրատվություն է ստացել 559735 ղուրուշ[82], Կարինից՝ 1814 թ.՝ 10000 ղուրուշ[83]։ 1818—1823 թթ. Արաբկիրի, Ակնի, Եվդոկիայի, Կեսարիայի հոգևոր վիճակներից 51001 ղուրուշ նվիրատվություն էր հավաքվել։ 1840 թ. Հովհաննես կաթողիկոսը, Կ. Պոլսի պատրիարքի միջնորդությամբ, մեկ տարում թուրքահպատակ հայերից «գանձանակել» էր 66976 ղուրուշ դրամ[84]։

Արևմտահայությունը եկեղեցուն տալիս էր աջհամբույր, խաչհամբույր, գավազանապտուղ, նորածնի մկրտության, նորահարսի ու նորափեսայի պսակադրության վարձ, հանգուցյալի թաղման արարողությունը կատարելու գին, հոգեբաժին։ Ջատկի տոնակատարության նպատակով եկեղեցականները գանձում էին յուղ կամ յուղագին, նույնիսկ ընկալագրեր բաժանում դրա համար։ Վանականները վանքի վիճակի գյուղացիներից պտղի էին հավաքում։ Նրանք շահագործում էին հավատացյալների ֆիզիկական ուժը, վերակառուցել տալիս վանքերը, աշխատեցնում իրենց ագարակներում և փոխարենը, իբրև վարձ, բաժանում «մեղաց թողություն» կոչվող օրհնագրեր։ Դրամավճարից ու բնամթերք տալուց բացի, գյուղացիությունը կոռային աշխատանք էր կատարում հայ հոգևորականության համար։

Արևմտյան Հայաստանի աշխատավորությունը կեղեքվում ու թալանվում էր սուլթանական կառավարության, թուրք փաշաների, քուրդ խաների ու բեկերի, հայ հոգևոր ու աշխարհիկ վերնախավի կողմից։

## 6. ՔԱՂԱՔՆԵՐ, ԱՐՀԵՍՏՆԵՐ, ԱՌԵՎՏՈՒՐ

Արևմտյան Հայաստանում և հարևան նահանգներում XIX դարի առաջին երեք տասնամյակներին կանգուն էին շուրջ 40 հայկական ու հայաբնակ քաղաքներ, որտեղ հայերի ձեռքին էին կենտրոնացած արհեստագործությունը և առևտուրը։

Ազգաբնակչության ստվարության, առևտրի ու արհեստագործության աշխուժության տեսակետից աչքի էին ընկնում Կարինը, Սեբաստիան, Կեսարիան, Եվդոկիան։ Սահմանամերձ Կարինը դարի սկզբներին ասիական նահանգների կենտրոնն էր, ազգաբնակչությամբ ամենամեծ քաղաքը։

Մինչև Ադրիանապոլսի պայմանագիրն ու արևմտահայության զանգվածային գաղթը, Կարինն ուներ 130 հազար բնակիչ[85], Եվդոկիան (Թոքաթ)՝ 80,

82 Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 29, վավ. 133։

83 Նույն տեղում, թղթ. 25, վավ. 6։

84 Վրացական ՍՍՀ ԿՊՊԱ, ֆ. 11, գ. 1120, թ. 1—2։

85 Հայկական ՍՍՀ ԿՊՊԱ, ֆ. 57, վավ. 624, թ. 7, տե՛ս նաև Հովհ. Հակոբյան, նշվ. աշխ., էջ 96։

*Դիարբեքիրը՝ 40, Սեբաստիան՝ 40, Վանը՝ 45—50, Ակնը՝ 20, Ադանան՝ 12, Ամասիան՝ 30 հազար*[86]*։ Արևմտյան Հայաստանի քաղաքներն այս տասնամյակներին արդեն կորցրել էին իրենց ազգային միատարրությունը և վերածվել բազմազգ քաղաքների, ուր հայերենի կողքին ամենուր լսվում էր թուրքերեն, քրդերեն, հունարեն, ասորերեն և այլն։*

*Համեմատաբար հայաշատ էին Արաբկիրը, Ակնը, Հաճընը, Մարաշը և հայարնակ Եվդոկիան, Կեսարիան, այսինքն՝ այն քաղաքները, որտեղ հույների հետ հայերը մեծամասնություն էին կազմում։ Առևտրի ու արհեստագործության զարգացման համար եկամուտներ, մեծագումար հարկեր գանձելու շահից դրդված, պետությունն ավելի «հնարավորություն» էր տալիս քաղաքների զարգացմանը։ Ակնհայտ էր, որ Թուրքահպատակ նահանգներում, ծովամերձ Կիլիկիայում արհեստագործությունը շարունակում էր զարգանալ։*



Տեսարան Բիթլիս (Բաղեշ) քաղաքից

*Կայսրության արդյունաբերության ու վաճառականության մենաշնորհը, ընդհուպ մինչև դարակեսը, պատկանում էր Թուրքահպատակ քրիստոնյա ազգերին՝ հայերին, հույներին, բուլղարներին ու սերբերին։*

*«Քաղաքներում,— գրում է Ի. Գոլոբորոդկոն,— առանց հայերի չէր կարող գոյություն ունենալ տեխնիկայի, արվեստի, գիտության, արհեստագործության որևէ ճյուղ»*[87]*։*

---

86 Հայկ Ղազարյան, *Արևմտահայերի սոցիալ-տնտեսական և քաղաքական կացությունը 1800—1870 թթ., Երևան, 1967, էջ 162։*

87 *И. И. Голобородько* (И. Южанин), Старая и новая Турция, М., 1908, стр. 221.

Քաղաքաբնակ հայ ազգաբնակչության գերակշռող մեծամասնությունը պարապում էր բազմաճյուղ արհեստագործությամբ։ Այդ արհեստաճյուղերի մեջ առաջնակարգ տեղ ուներ մետաղագործությունն՝ իր տարատեսակներով։ Մետաղագործության հանրաճանաչ կենտրոններ էին Եվդոկիան, Վանը, Երզնկան, Կարինը, Ադանան, Զեյթունը։ Մետաղագործության մեջ առաջնությունը տրված էր պղնձագործությանը։ Այս ճյուղն ամենից ավելի զարգացած էր Եվդոկիայում։ Հումքի բազային մոտ լինելը, արհեստագործության արտադրանքից ստացած եկամուտները հնարավորություն էին ընձեռում և շահագրգռում հայ պղնձագործներին արտադրելու ապրանքներ, քանակով շատ՝ գնորդին բավարարելու, որակով լավ՝ մրցությանը դիմանալու համար։ Ինճիճյանի վկայությամբ. «Արհեստավորների առումով Թոխաթը պետք է կոչել քաղաք պղնձագործների կամ ղազանչիների, որոնց արտադրածը համբավավոր է և ընտիր է համարվում, քան օսմանյան տերության բոլոր վայրերինը։ Թոխաթի պղնձե գեղեցիկ ամանները, սեղանի սպասքը, կրակարանները, կաթսաները և այլն, տարածված էին Էրզրումում, Կոստանդնուպոլսում, Ամասիայում և ավելի հեռու՝ Սամսոնում և այլ նահանգներում»[88]։ Այս քաղաքում հայ պղնձագործների արհեստն առանց վերապահության, զարգացել և արվեստի էր վերածվել։ Եվդոկիան դարձել էր հանուր Թուրքիայի մետաղագործության կարևոր ու մեծ ապագա խոստացող կենտրոններից մեկը։

Պղնձագործությունը զարգացած էր նաև Կարինում, որտեղ 1818 թ. կային պղնձագործական 29 արհեստանոցներ։ Սրանք գործում էին միավորված և 1826 թ. մշակել էին «Գիր ուխտադրության և պայմանի»[89] նշանավոր կանոնադրությունը, մի փաստաթուղթ, որը կասկած չի թողնում Կարինում եղած պղնձագործության բարձր մակարդակի մասին։

Պղնձագործները Երզնկայում պատրաստում էին կաթսաներ, թասեր, ափսեներ, ինքնաեռներ, գեղեցիկ ու նուրբ ջրամաններ։ Նրանց արտադրանքը հետագայում ցուցադրվում էր Փարիզի, Վիեննայի, Ֆիլադելֆիայի ցուցահանդեսներում և նույնիսկ մրցանակներ շահում։

Խարբերդում, Կարինում, Սեբաստիայում, Դիարբեքիրում զարգացած էր նաև երկաթագործությունը։ Պատրաստում էին երկաթյա գործիքներ. կողպեքներ, մանկական օրորոցներ, անիվներ, կառքեր, մկրատներ, դանակներ, բազմատեսակ սառը զենքեր և հրազեն։ Սակայն մետաղամշակության ճյուղերում ոսկերչության մենաշնորհն էլ մնում էր հայերին։

Ոսկերչությունը լայն տարածում ուներ Կարինում, Ախալցխայում, Սեբաստիայում, իսկ Արևմտյան Հայաստանում զարգացած այդ արհեստի հռչակված հայրենիքը Վանն էր։ Վանում «ոսկերչական արհեստը մյուս արհեստներու նման սահմանափակ չէ, որոնցմէ արտադրված ապրանքներու տեսակները գրեթե 30-ը չեն անցնիր. ան կընդարձակվի այնքան՝ որքան կզորին արհեստավորի միտքն ու կարողությունը»[90]։

Թուրքիայում ապրող քրիստոնյաներին արգելված էր զենք կրել։ Հայը

88 Ղ. Ինճիճեան, Աշխարհագրութիւն, մասն Ա, էջ 290։

89 Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 258, վավ. 130, թ. 1—5։

90 Հայկական ՍՍՀ ԿՊՊԱ, ֆ. 227, գ. 346, թ. 1։

զրկված էր սառը զենք կրելու և հրազեն գործածելու իրավունքից, սակայն նրան «արտոնված» էր դրանք արտադրելը։ Սասունցի և զեյթունցի քաջակորով լեռնականները զենքեր էին արտադրում իրենց համար։ Հրացանը հարազատ մանկան հավասար դասելով, նրանք «դողում էին զենքի վրա», որովհետև դրանով էին պաշտպանում իրենց գոյությունն ու անկախությունը։ Զինագործության օջախներ էին ոչ միայն Զեյթունն ու Սասունը, այլև արհեստաշատ Կարինն ու Վանը։ Կարինի զինագործները դարերով զենք են մատակարարել թուրքերին, մերձակայքում ապրող քրդերին։ Կայսրությունով մեկ հռչակված էին Կարինի «Եդի կարդաշ» ընտանիքը, Վեմյան գերդաստանը։

Կաշեգործության, կոշկակարության, թանկարժեք մորթիներից մուշտակներ պատրաստելու արհեստանոցներ կային Ադանայում, Մարաշում, Բաղեշում, Կարինում, Դերսիմում և այլ քաղաքներում։ Արհեստի այս մարզը, սակայն, էական տեղ չէր գրավում հայ արհեստագործության բնագավառում։

Արևմտյան Հայաստանի քաղաքներում և գյուղերում գոյություն ունեին արհեստի բազմաթիվ այլ տեսակներ։ Կային թիթեղագործներ, մսագործներ, հյուսներ, վարսավիրներ, հացագործներ, թաղիքագործներ, պայտառներ, որմնադիրներ, կավագործներ, համետագործներ։ Արհեստագործության թվարկված ճյուղերի մեջ ներգրավված մարդիկ, չնչին բացառություններով արտադրում էին պարզունակ արտադրամիջոցներով, բավարարում միայն տեղական կարիքները։ Փոքր էր սրանց տեսակարար կշիռը Թուրքիայի ընդհանուր արտադրության, առավել ևս առևտրի հաշվեկշռում։

Ավելի զարգացած էին բրդե և բամբակե գործվածքների արտադրությունը, ջթագործությունը, կտավագործությունը։ Սրանց առաջընթացին նպաստում էին բրդի ու բամբակի, մետաքսահումքի, ինչպես նաև կարմիր տորոն կոչվող ներկանյութի առատությունն Արևմտյան Հայաստանում։ Անասնապահները ու երկրագործներն արհեստավորին տալիս էին բուրդ, բամբակ, մետաքս, վուշ և կանեփաթել, սակայն վերջիններս դրանով չբավարարվելով, Եվրոպայից ներմուծում էին կիսապատրաստ հումք, մշակում արհեստանոցներում, գեղեցիկ տեսք ու ձևավորում տալիս, ներկում չգունաթափվող ներկով, վաճառահանում հայրենական և օտար շուկաները։

Կարինում արտադրում էին ջիթ, մետաքսյա գործվածքներ, ընտիր շալեր, քիլիմ կոչվող գորգեր, բրդյա աբաներ։ 1818 թ. Կարինի ջթագործ արհեստագործների թիվը հասնում էր 100-ի[91], որոնք աշխատում էին 50-ից ավելի արհեստանոցներում։ Աբաճիներն ունեին շուրջ 31 արհեստանոց, քյուրքճիները՝ 15 արհեստանոց, իսկ մահուդագործներն հայտնի էին ամբողջ կայսրությունում։ Այնքան էր տարածվել սրանց հռչակը, որ հեռավոր քաղաքներից արհեստավոր վարպետներ էին գալիս այստեղ՝ տեղի արդյունագործությանը ծանոթանալու, հայերի մոտ կատարելագործվելու։ 1837 թ. հուլիսի 5-ի կառավարության հրահանգով Սլիվենի (Բուլղարիա) մահուդագործները[92] գալիս են Կարին կատարելագործման։ Նման խմբեր էին ընդունում նաև կարնեցի պըղընձագործները և դերձակները։

---

91 Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 53, վավ. 263, 1818, թ. 6—7։

92 А. Косев, Новая история Болгарии, М., 1952, стр. 87.

Կարինի դերձակությունն առաջնակարգ էր Թուրքիայում։ Նրանք կատարում էին օտար վաճառականների, նույնիսկ կառավարության պատվերները։ Դերձակների թիվն անցնում էր 300-ից։ Հիշատակվում են «Բեզազ օղլի խան»-ում նստած 45 դերձակները, «Թոփխանեի դերձակներ»՝ 10 արհեստանոց, «Թրուփ չարշավչիներ»՝ 50 արհեստանոց, «Դաշխանեի դերձակներ»՝ 15 արհեստանոց և այլն[93]։

Որակյալ կտավ՝ կարմիր շիլա էին արտադրում Բաղեշում։ Կային 100-ի չափ կտավագործներ, որոնք «կարմիր ներկով ներկված պատվական կտավ մը կշինեն, որ բոլոր Քրդստանի մեջ կգործածվի»[94]։ Վանի ջուլհակները հնամենի գործիքներով արտադրում էին տարատեսակ կտավեղեն։ Ակնի հայ արհեստավորներն արտադրում էին բամբակյա և մետաքսյա հյուսվածքներ, ինչպես նաև տպածո և ձեռքով ներկված «յազմայի վարշամակներ»։

Խարբերդում գործում էին «ասուրաց չիթ» կոչվող կտավեղենը, որը դիմացկունության ու չգունաթափման շնորհիվ մեծ հաջողությամբ վաճառվում էր քրդերի մեջ։

Մարաշում զարգացած էր ջուլհակությունը (ջուլֆալըգ)։ Առևտրականները գործարքի մեջ մտնելով արհեստագործ վարպետների հետ, հավաքագրում էին ջուլհակություն իմացող տղամարդկանց ու կանանց, թելեր բաժանում, գործել տալիս ալաջա կոչվող քաթանամման չիթը։ Քաղաքում պատրաստում էին աբաներ՝ մետաքսաթել սըրման, բրդյա պետեն։ Մարաշի արտադրանքը վաճառվում էր Փոքր Ասիայի քաղաքներում, Սիրիայում։ Մեծ հաջողություն ուներ ավեղենը՝ ղումաշը։ Պասմախաճաներն ընտրում էին դրսից բերված գործվածքները, նրանց վրա «տպածո գեղեցիկ դաճեր» հանում և ստացված եկամուտով բազմաթիվ գերդաստաններ պահում։

Թուրքերի կողմից լավորակ հողերը զավթելու հետևանքով մշակելի հողատարածությունների պակասը պատճառ դարձավ, որպեսզի հաճընցի հայը իր գոյությունը պահպանելու համար զբաղվեր արհեստով ու առևտրով։ Քաղաքի խաղախորդարանի (թաղարանոցի) շուրջը համախմբված 20—25 տնակներում աշխատող արհեստավորները ծանր պայմաններում մշակում էին անասունների մորթիները, բուրդը կամ մազը, ապա ուղարկում արտադրության այլ ճյուղերին։ Բուրդն օգտագործում էին լայն շալվարներ գործելու համար։ Արտադրանքի մի մասը վաճառում էին Հաճընի շրջակա գյուղերում, մեծ մասը արտահանում Մարաշի, Բիթլիսի, Այնթափի, Հալեպի, Ալեքսանդրիայի և մանավանդ Ադանայի շուկաները։ Նշանավոր արհեստագործներ էին Մըխեյան, Աշըգյան, Պեկյան, Ղարիբյան և այլ գերդաստանները։ Հաճընցիները և մարաշցիները հայտնի գուլպայագործներ էին։ Արտադրած բրդյա գույնզգույն գուլպաներով նրանք բավարարում էին Կիլիկիայի ազգաբնակչության գրեթե մեծ մասի պահանջները։ Արհեստի այս ճյուղում աշխատում էին բացառապես կանայք, որոնք զբաղվում էին նաև ձեռագործով։

Դարի առաջին կեսի Արևմտյան Հայաստանի, Կիլիկիայի և Փոքր Ասիայի քաղաքներում բամբակագործությունը և բրդե կտորեղենի, աբաների, մուշտակ-

93 Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 33, վավ. 263, թ. 7—15։

94 Բարունակ Պէյի Տէրունիան, նշվ. աշխ., էջ 149։

ների արտադրությունը դեռևս գտնվում էր ծայրաստիճան ցածր մակարդակի վրա. սակավաթիվ էին մանուֆակտուրաները։ Արհեստագործները, ճիշտ է, կապված էին արտաքին շուկայի հետ, սակայն հիմնականում սահմանափակվում էին միջնադարյան արհեստանոցներով, լավագույն դեպքում պահում էին աշակերտներ։

Սվազի և Կեսարիայի նահանգներում գտնվող Սվազ, Եվդոկիա, Ամասիա, Կեսարիա, ինչպես նաև Ուրֆա քաղաքները արդյունագործության մարզում ստեղծել էին մանուֆակտուրաներ։ Նրանք հումքը ստանում էին Եվրոպայից՝ մշակված կամ կիսամշակ ձևով, դրանից գործվածքներ էին պատրաստում և վաճառքի հանում անգլիական, ֆրանսիական շուկաներում։ Արհեստանոցներում աշխատողների թիվը գնալով ավելանում էր, գործադրվում էր վարձու աշխատանք, արտադրողը կախման մեջ էր ընկնում գնորդ-վաճառականից, որը թելադրում էր իր կամքը ոչ միայն գների, այլև ապրանքների տեսակների, գույնի ու ձևի վերաբերյալ։



Ամասիա քաղաքի ընդհանուր տեսքը

Բամբակագործության և մետաքսագործության մարզերում մանուֆակտուրաներ էին առաջացել Ուրֆայում, Դիարբեքիրում, Բրուսայում, Հալեպում և այլ քաղաքներում, որտեղ արտադրանքը, մինչև եվրոպականի ներմուտը Թուրքիա, արտադրության կազմակերպման իր ձևով, ընդգրկման շրջանակներով, վաճառահանման շուկաներում խաղացած դերով հազիվ թե հնարավոր լիներ տեղակայել ֆեոդալական արտադրաեղանակի սահմաններում։ 1800—1805 թթ. 12 հազար տուն ունեցող Ուրֆան բանեցնում էր կտավագործական

400 դազգահ, որոնք կենտրոնացված էին արդեն վաճառորդներին ենթարկվող երկու տասնյակ արհեստանոցներում, աշխատում էին բերված հումքով և արտադրանքի դիմաց ստանում միայն աշխատավարձ։ Շահագործվում էր հիմնականում կանանց և երեխաների աշխատանքը։

Մ. Ա. Ուբիչինին վկայում է, թե դարակեսի Դիարբեքիրը և Բրուսան տարեկան արտադրում էին 400.000 ղուրուշի արժողությամբ մետաքսյա կտորեղեն, այսինքն 1812 թ. արտադրանքի 1/10-ը[95]։ Սրեմն, դարի առաջին քառորդին այս քաղաքները միջին ու մոտավոր հաշվով արտադրել են 4 միլիոն ղուրուշի արժողությամբ կերպասեղեն։ Արտադրողներն ու հատկապես վաճառողները հիմնականում հայերն էին։ Բրուսայի (Բուրսայի) հայ մետաքսագործները 1830-ական թթ. տարեկան արտադրում էին 100 հազար թոփ մետաքսյա գործվածքներ։

Արևմտահայ արհեստագործության բնագավառում առաջացել էին մի շարք նոր ու հատկանշական երևույթներ։ Հումքի բազային մոտ լինելով, վաճառահանման շուկաների հետ կապված միջնորդ առևտրականների թելադրանքով, գնորդների պահանջարկով, պետության ուղղակի ու անուղղակի միջամտությամբ խմբավորում էր կատարվել արհեստատեսակների մեջ, ոչ միայն ըստ ճյուղերի, այլև ըստ քաղաքների։ Միևնույն ապրանքի արտադրման համար գործադրվող աշխատանքը բաժանվում էր, տրոհվում տարբեր քաղաքների միջև։ Այսպես, օրինակ, պղինձը հանվում էր Արղանա-մադենի և այլ հանքերից, հալվում Եվդոկիայի ղալ-խանե կոչված պղնձահալ հնոցներում, դարձվում պղնձյա ձողեր կամ թիթեղներ և ապա նորից վերադարձվում Թուրքիայի ամենատարբեր քաղաքները։ Օտար շուկաներում վաճառելու համար պատրաստված պղնձե ամանեղենը երկրի ասիական մասի գրեթե բոլոր քաղաքներից բերվում էր Եվդոկիա, արտաքնապես ձևավորվում, անագապատվում և նոր միայն արտահանվում։

Նման պրոցեսն ավելի էր խորացել գործվածքեղենի արտադրության մեջ։ 1830-ական թթ. վերջերին Ամասիայում և Մալաթիայում արտադրվում էր մեծաքանակ բեզ կամ բոգազ կոչվող բամբակյա կտորեղենը։ Արտադրանքի մի մասը արհեստագործների ձեռքով ներկվում ու վաճառվում էր տեղական շուկաներում։ Սակայն դա փոքր քանակ էր կազմում։ Վաճառականների պատվերով, դեռևս չգունավորված հիմնական արտադրանքը հանձնվում էր սրանց, որոնք այն տանում էին Հալեպ և Եվդոկիա, ներկել տալիս ներկատուն-բոյախանաներում, ապա տեղափոխում Մոսուլ, տալիս պասմաճիներին՝ տպահանման, զարդանկարման համար, երբեմն էլ ձևելու և բաճկոններ կարելու, նոր միայն հանում երկրի և դրսի առևտրահրապարակները, վաճառում թանկ գներով, ստանում անհամեմատ բարձր շահույթ։ Աստառը գործում էին Զիլեյում և շրջակա հայկական գյուղերում, ապա տեղափոխում Ամասիա և Եվդոկիա՝ ձևավորման։

Սակայն սրանք դարաշրջանի տիրապետող կացութաձևեր չէին։ Դարի առաջին քառորդին մանուֆակտուրայի ստեղծման նախնական քայլեր էին արվում միայն, հիմնականում իշխում էր ֆեոդալական հետամնաց արտադրա-

---

95 M. A. Ubicini, նշվ. աշխ., էջ 357։

եղանակը։ Գյուղատնտեսության նման արդյունագործությունը ևս գտնվում էր ծայրաստիճան հետամնաց վիճակում։

* * *

Ջնայած ռազմա-ֆեոդալական բռնատիրության բնորոշ խանա-փաշայական սիստեմի ստեղծած արգելքներին, ավազակախմբերի ձեռարձակ գործունեությանը, Թուրքիայի արտաքին ու ներքին առևտուրը XIX դարի առաջին քառորդին բավական աշխուժացել էր։ Կայսրությունը առևտրական սերտ փոխհարաբերությունների մեջ էր Եվրոպայի, Ասիայի, նույնիսկ Ամերիկայի երկրների հետ, ներմուծում էր ոչ-մեծ քանակությամբ գործարանային ապրանքներ, միաժամանակ արտահանում գյուղատնտեսական մթերքներ, հացահատիկ, մրգեր, ինչպես նաև արհեստագործական արտադրանք։

Թուրքիայի արտաքին առևտուրը կենտրոնացված էր քրիստոնյա վաճառականների ձեռքում։ «...Ո՞վ է առևտուր անում Թուրքիայում,—գրում էր Ֆ. Էնգելսը,—համենայն դեպս ոչ թուրքերը։... Հույները, հայերը, սլավոնները, արևմտաեվրոպացիները, հիմնավորվելով ծովային նավահանգիստներում, իրենց ձեռքում են պահում ամբողջ առևտուրը...»[96]։

Թուրք-եվրոպական առևտրի մեջ գլխավոր բաժինը թուրքահայ վաճառականներինն էր։ Սրանք էին ներմուծում եվրոպական ապրանքներ, որոնք տարածվում էին Պարսկաստանից մինչև Աֆղանստան, առևտրական կետեր ստեղծում Մարսելում, Հոլանդիայում, Վենետիկում, Անգլիայում, հասնում Հնդկաստան, Ֆիլիպինյան կղզիներ, սահմանամերձ ու հեռավոր ռուսական քաղաքները, Ամերիկա, որտեղից և ներմուծում էին բամբակ։

Հայ միջնորդ վաճառականները վաղուց էին հիմնավորվել Կ. Պոլսում, Զմյուռնիայում, Տրապիզոնում, սակայն դարասկզբին նրանց շարքերը համալրվում էին Ակնից եկած սեղանավորներով, Կեսարիայի բաղաղներով, կարնեցի վաճառականներով, եվդոկիացի ու սեբաստացի դրամատերերով։

Միջնորդ վաճառականների մի ստվար խումբ մշտական բնակություն էր հաստատել Լիվոռնոյում, Մարսելում, Մանչեստրում, Հոլանդիայում, Վենետիկում, Ամստերդամում։

Մինչև 1830-ական թթ. Թուրքիայի վաճառաշահ ներքին, մասամբ էլ արտաքին առևտուրը հիմնականում ցամաքային էր և երկաթուղիների բացակայության պատճառով քարավանային առևտրի բնույթ ուներ։ Մեծահարուստ կոմպրադորները Արևմտյան Հայաստանից ու հայաբնակ նահանգներից արտահանվող ապրանքները քարավաններով տեղափոխում էին Պարսկաստանի վրայով, կապվում Բաղդադի ու Բասրայի հետ։ Նրանք Սև ծովով ապրանքներ էին տեղափոխում Տրապիզոն, Ղրիմ, Կ. Պոլիս ու Զմյուռնիա, ապա Արևմտյան Եվրոպա։

Այդ կապակցությամբ Ֆ. Էնգելսը գրել է. «Կ. Պոլիսը և մանավանդ, ասիական Թուրքիայում գտնվող Տրապիզոնը հանդիսանում են ներքին Ասիայի, Տիգրիսի և Եփրատի հովիտների, Պարսկաստանի և Թուրքեստանի քարա-

---

96 *К. Маркс* и *Ф. Энгельс*, Сочинения, т. 9, стр. 25.

վանային առևտրի գլխավոր կենտրոնները։ Եվ այդ առևտուրը նույնպես արագորեն աճում է ...իր դիրքի շնորհիվ Տրապիզոնն ավելի է համակերպված այդ առևտրին, քան որևէ այլ կետ։ Նրա հետնախորքի վրա գտնվում է Հայկական բարձրավանդակը, որն ավելի հեշտ անցանելի է, քան սիրիական տափաստանը և բավականաչափ մոտ է գտնվում Բաղդադին, Շիրազին ու Թեհրանին։ Վերջինս առևտրական միջանկյալ կետի դեր է կատարում Խիվայից ու Բուխարայից եկած քարավանների համար։ Մանչեստրի բորսայում կարելի է ակնհայտորեն տեսնել, թե ինչ մեծ նշանակություն է ստանում այդ առևտուրը և Սև ծովի առևտուրն առհասարակ...»[97]։

Թուրքիայի հայ գաղթօջախներում հասունանում էր Եվրոպայի հետ կապված կոմպրադորական-առևտրական դասը, որն իր գործարքներից խնայած գումարները պահում էր արտասահմանյան բանկերում։

Նոր կազմավորվող այս դասը, չնայած իր վիճակի անկայունությանը, չէր մտածում գոյություն ունեցող կարգերը փոխելու, Արևմտյան Հայաստանն ազատագրելու մասին և, խուսափելով դիմադրական պայքարից, անցնում էր արտասահման։

Արևմտյան Հայաստանի առևտուրը կատարվում էր քաղաքներում, գերազանցապես փաշայանիստ մեծ շահաստաններում։ Առևտուրը ծաղկել էր այնտեղ, որտեղ դրա համար քիչ թե շատ հնարավորություններ կային, իսկ Հարավային Հայաստանում կորցրել էր իր նախկին նշանակությունը։ Երբեմնի վաճառաշահ Բիթլիսում, Մուշում, Բայազետում, Վանում, Դիարբեքիրում այլևս չկար նախկին եռուզեռը, որն ստեղծում էին գլխավորապես հայ վաճառականները։ Բացի Դիարբեքիրից, մյուս կենտրոնները վերածվում էին գավառական հետամնաց քաղաքների, բավարարվում միայն տեղական արտադրանքի վաճառքով կամ անցորդ քարավաններին հանգրվան տալով։

Բաղեշի վիճակը քիչ այլ էր։ Այն միակ կենտրոնն էր, որի վրայով Վանի հյուսիսային շրջանները կապվում էին Դիարբեքիրի և Միջագետքի հետ։ Քաղաքի փոքրաքանակ հայ վաճառականներն ընկերանում էին Հալեպից Թավրիզ գնացող քարավաններին և արտահանում գյուղատնտեսական արտադրանք։ Շուրջ 300 խանութներ վաճառում էին անցորդ վաճառականներից գնած ապրանքներ, սակայն հայերը, չկարողանալով վճարել Շերեֆների տոհմի սահմանած ծանր հարկերը, անընդհատ կողոպտվելով, հարստության հետ վտանգի տակ դնելով կյանքը, ստիպված էին լքել հայրենի բնօրրանը և սփռվել Թուրքիայով մեկ։

Գրեթե նույն վիճակում էր հայկական 1487 գերդաստան ունեցող Բայազետը։ Քաղաքում կար 331 խանութ, իսկ Դիադինում՝ 22, երկու քարվանսարա[98]։ Առևտուրը խղճուկ վիճակում էր, արհեստավորը տալիս էր 650 ղուրուշ հարկ, խանութպանները՝ մինչև 1100 ղուրուշ։ Քուրդ խանի և ցեղապետերի վերցրած ապրանքների դիմաց առևտրականը ոչինչ չէր ստանում։

Մուշը, Սղերդը, Բալուն, Դերսիմը, Չարսանջակը ունեին միայն մանրավաճառներ։ Վանն ուներ երեք փայտաշեն «բեզեստաններ», շուրջ 500 խանութ։

---

97 *К. Маркс и Ф. Энгельс*, Сочинения, том 9, стр. 12.

98 Վրացական ՍՍՀ ԿՊՊԱ, ֆ. 21, գ. 2462, թ. 3, գ. 2646, թ. 9, 1829 թ.։

Հայտնի առևտրական էր Ավետիս Փիրղալեմյանը, որն իր շուրջը համախմբած մի խումբ հայ վաճառականների հետ գնում էր Թավրիզ, Թիֆլիս, Կ. Պոլիս, Ռուսաստան, արտահանում Վանի «շատխու շալը», ոսկյա ապարանջաններ, գյուղատնտեսական արտադրանք, ներմուծում՝ գործվածքեղեն, մետաղ, սառը զենք ու հրազեն։ Վանի Թամուր փաշան բանտարկեց վաճառական Ավետիսին, օսմանյան հազար ոսկու տուգանք առավ և սնանկացրեց նրան[99]։ Հարուստ վաճառականներ էին Ախիջան Ղարասեֆերյանը, Մահտեսի Գալուստ Շաշկատրյանը, Մարտիրոս աղան։ Սակայն վաշխառու ցեղապետերը սրանց ամբողջ ունեցվածքը խլեցին ու իրենց էլ հալածեցին։



Կարին քաղաքի ընդհանուր տեսքը

Դրությունը որոշ չափով այլ էր այնպիսի քաղաքներում, ինչպիսիք էին Կարինը, Սեբաստիան, Եվդոկիան, Տրապիզոնը, Մարաշը, Ադանան։ Սրանք դառնում էին ներքին ու արտաքին առևտրի նշանակալից շուկաներ, ներմուծում, վաճառում ամենատարբեր ապրանքներ։ Եվրոպայից, Պարսկաստանից Ռուսաստանից ներմուծում էին արդյունաբերական ապրանքներ, մասնակցում համաշխարհային շուկաներում կատարվող առևտրին։ Տրապիզոնի, Կ. Պոլսի, Զմյուռնիայի հայ վաճառականները առևտրական լայն կապեր ունեին Մոսկվայի, Նիժնի-Նովգորոդի, Աստրախանի, Մանչեստրի, Լիվոռնոյի, Վենետիկի, նույնիսկ հեռավոր Հնդկաստանի շուկաների հետ։ Նրանք արտահանում էին Հալեպի փարչա՝ ոսկեդաճ մետաքսյա կտորեղեն, Դամասկոսի մետաքսյա և բամբակյա գործվածքներ, Մարաշի, Կարինի բրդյա աբաներ, Սեբաստիայի,

---

99 Մատենադարան, ձեռագիր 6237, թերթ 347 ա, 348 բ։

Կեսարիայի գեղեցիկ ձևավորված մեծածավալ ու փոքրիկ գորգեր, Թաշկինակներ, լուսամուտի վարագույրներ, Բաղեշի ոսկեթել մետաքսյա դիպակներ։ Ռուսաստան արտահանած արդյունաբերական ապրանքների մեջ հայտնի էին Արղվինի և Երզնկայի ղումաշը, Վանի, Կարինի, Մարաշի ալաջան, Տրապիզոնի մահուդը, Կարինի ֆեսերը, Դամասկոսի մետաքսյա և բամբակյա գործվածքներ և այլն[100]։

Արտահանվում էին նաև տորոն, ծխախոտ, բամբակ, խեժ, բուրդ, մորթիներ, մեղրամոմ, չորացրած մրգեր, ընկուզենու կոճղեր, հացահատիկ, մանր ու խոշոր եղջերավոր անասուններ։ Ներմուծում էին երկաթեղեն, շաքար, օճառ, չիթ, մահուդ, ապակի, թել, արհեստագործական ու գյուղատնտեսական գործիքներ, ոգելից խմիչքներ, մշակված ծխախոտ։ Ներմուծած ապրանքները, տեղական արտադրանքի մի մասի հետ, վաճառում էին հայկական ու հայաբնակ քաղաքներում, նույնիսկ հեռավոր գյուղերի խանութներում։



Արհեստավորների հավաք Կարին քաղաքում

Կարինը վաղուց ի վեր հռչակված էր իբրև առևտրի խոշորագույն կենտրոն, տարանցիկ առևտրական ուղիներ հանգուցող, եվրոպական ու ասիական ապրանքներ մթերող, անցորդ առևտրականներին հանգրվանելու հնարավորություն ընձեռող քաղաք, որը դարասկզբին գրեթե ողջ Արևմտյան Հայաստանի տնտեսական կենտրոնի և խոշոր շուկայի դեր էր ստանձնել։ Ի տարբերություն մյուս քաղաքների, Կարինի առևտուրը սեզոնային չէր։ Ամբողջ տարին 2 խոշոր, 10-ից ավելի մանր շուկաները, շուրջ 50 խաները, 1500 խանութները լիքն

100 Վրացական ՍՍՀ ԿՊՊԱ, ֆ. 11, ց. 1, գ. 1986, թ. 4—11։

*էին ապրանքներով։ Ամեն ամիս ուղտերով անցնող, Եվդոկիայից եկող ու Թավրիզ գնացող քարավաններ կային այնտեղ*[101]։

*Կարինի հայ վաճառականները Պարսկաստանից բերում էին շալեր, «գալիփախցու մորթիներ», ալաճա կտորեղեն, բամբակ, մուշտակներ։ Թուրքիայի այլ վայրերից Կարին էին ներմուծում սպիրտ, երկաթ, պղինձ, կտավեղեն, բամբակ, ատլաս, չուխա, սուրճ, շաքար և այլն։*

*Կարինի էսնաֆություններում համախմբված արհեստավորների մեծ մասը արտադրանքն իրենք էին վաճառում, իսկ բազազները կամ սրանցից էին գնում, կամ խոշոր վաճառականներից, կամ էլ քաղաքով անցնող քարավաններից, երբեմն էլ ներմուծում էին երկրի մյուս շրջաններից։*

*Եվդոկիան «Փոքր Ասիայի վաճառականության կենտրոնն էր.. Այնտեղ հաճախ երթևեկում էին ամեն կողմերի քարավանները»*[102]։ *Քաղաքում եղած չորս շուկաների 551 խանութներում վաճառվում էր տեղական արհեստավորների արտադրանքը, ինչպես նաև Կեսարիայից բերած տորոնը, դեղին ներկը, Ջմյուռնիայի չուխան, համեմը, շաքարը, թուղթը, Այտընի բամբակը, Կարինի պղինձը, երկաթը, Դիարբեքիրի կտավը, Մոսուլի կտավե գործվածքները, փունավոր թաշկինակներ։ Եվդոկիան ամեն տարի արտահանում էր 500 հազար թուրքական ոսկու արժողությամբ ապրանքներ, շուրջ այդքանի էլ ներմուծում։*

*Սեբաստիայի առևտուրը շատ աշխույժ էր XVIII դարի վերջերին. քաղաքը տարեկան արտահանում էր 475 հազար ոսկու արժողությամբ աստառացու, ներմուծելով եվրոպական ու ասիական ապրանքներ։ Սեբաստիայում կային մինչև 50 հազար ոսկի դրամագլուխ ունեցող հայ վաճառականներ։ Սակայն դարասկզբին Չապան-օղլուների գործած վայրագությունների հետևանքով երկրում ստեղծված անիշխանական դրության պատճառով առևտուրը նվազել էր։ Քաղաքը տնտեսական զարգացման նոր թափ ստացավ 1830-ական թթ., երբ հայերի ձեռքում կենտրոնացվեց Սամսոնի, Զիլեի, Մարզվանի, Արաբկիրի, Մալաթիայի առևտուրը։*

*Կեսարիայում ապրում էին խոշոր առևտրականներ, հարուստ դրամատերեր, ամիրաներ ու սեղանավորներ։ Կեսարացի առևտրականները հասնում էին մինչև Բոսֆոր, Լամանշ, հիմնվում Լոնդոնում ու Մանչեստրում, Լիվոռնոյում ու Փարիզում։ Սակայն կեսարացի հայ վաճառականները գերազանցապես կոմպրադորներ էին, երկրին քիչ առնչված։*

*Կեսարիայի հետ ընդհանրություն ուներ Ակնը։ Այս քաղաքը Թուրքիայի տնտեսական կյանքում մեկ դար շարունակ խոշոր դեր խաղաց, ամիրայական գերդաստաններ տվեց Կ. Պոլսին, Ջմյուռնիային։ Դարասկզբին ամիրաներն իրենց ձեռքն էին վերցրել կայսրության տնտեսության հիմնական ճյուղերը։ Թուրք փաշաները նրանց էին հանձնարարում հարկերի գանձումը Փոքր Ասիայում։ Կեսարացի ամիրաները շահագործում էին Կապան-մադենի հանքերը, կազմակերպում պղնձի, ձեռագործ արհեստների արտադրանքի վաճառքը և դիզում հարստություն։*

*Այսպիսով, XIX դարի առաջին երեսնամյակին Արևմտյան Հայաստանի*

---

101 *Տե՛ս ՌԱՔԱ, Գլխավոր արխիվ, ց. 8, գ. 13, մ. 15, թ. 2—3։*

102 Ղ. ԻՆՃԻՃԵԱՆ, *Աշխարհագրութիւն, մասն Ա, էջ 291—292։*

և Փոքր Ասիայի հայաբնակ քաղաքների առևտուրը որոշ աշխուժություն էր ապրում։ Սակայն վաճառականությունը կանգնած էր բազմաթիվ դժվարությունների առաջ։ Առևտուրը գտնվում էր անապահով վիճակում, չկար անձի ու գույքի պաշտպանության երաշխիք։ Երկրի համար ողբերգական էր կապիտալի օտարումը, այսինքն տնտեսված, շահած գումարները եվրոպական բանկերին պահ տալը։ Վաճառականները վախենում էին ունեցվածքի հետ միասին կորցնել նաև կյանքը։ Այդ պատճառով դրամը փոխանակ շրջանառության մեջ դնելու, այն վերածում էին ոսկու կամ դնում օտար բանկերում կամ էլ պահում թաքստոցներում։

Այս տասնամյակներին դրամի կարիքի պատճառով բարձրանում էին մաքսային տարիֆները, մաքսատների աշխատողների բռնությունն ու կամայականությունը սահման չուներ, ծանրանում էին անընդհատ ավելացվող պետական հարկերն ու տուրքերը, հաճախակի էին դառնում բռնագանձումները, վաճառականի ողջ ունեցվածքի պետականացումը։ Բնական է, որ գավառահայ վաճառականությունը նման պայմաններում չէր կարող ավելի ընդլայնել իր գործարքները։ Ի տարբերություն կոմպրադորական բուրժուազիայի, կապված լինելով բնաշխարհին, նեղվելով Թուրքիայի վարած մաքսային քաղաքականությունից ու անիշխանությունից, նա ընդդիմադիր դիրք էր գրավում և ջանում ազատվել տիրող կարգերից։

## 7. ԱԶԳԱՅԻՆ ՃՆՇՈՒՄՆԵՐԸ ԵՎ ՀԱԼԱԾԱՆՔՆԵՐԸ

Թուրքահպատակ քրիստոնյա ժողովուրդները ենթարկվում էին ազգային ու քաղաքական բիրտ ճնշումների, կրոնա-բարոյական անարգանքի։ Ոտնահարվում էր նրանց մարդկային արժանապատվությունը։ Հայերը, հույները, սլավոնները զրկված էին ամենատարրական իրավունքներից։ Անկախ դասային և ունեցվածքային տարբերություններից, ոչ մահմեդական ժողովուրդները կոչվում էին ռայա, զիմմի, գյավուր (անհավատ)։

«Ղուրանը և դրա վրա հիմնված մուսուլմանական օրենսդրությունը ,—գրում է Կ. Մարքսը,— աշխարհագրությունը և տարբեր ժողովուրդների ազգագրությունը հանգեցնում է նրանց՝ երկու երկրների և երկու ազգությունների՝ ուղղահավատների և անհավատների բաժանելու հասարակ և հարմար բանաձևմանը։ Անհավատը դա գյավուրն է, թշնամին։ Իսլամն օրենքից դուրս է դնում անհավատներին և անընդհատ թշնամության վիճակ է ստեղծում մահմեդականների և անհավատների միջև»[103]։

Հայերի իրավազրկությունը առավել դաժան կերպարանք ստացավ XVIII դարի վերջին և XIX դարի առաջին քառորդին։ Քաղաքական ճնշումների խըստացումը պայմանավորված էր նաև նրանով, որ ռազմատենչ թուրքական հորդաները և արյունածարավ ենիչերիներն այլևս անկարող էին նոր արշավանքներ կատարել, նոր ժողովուրդներ ստրկացնել, նախկինի պես անհամար ավար ու ռազմագերիներ ձեռք բերել։ Թուրքական երբեմնի ահարկու յաթաղանը Արևմուտքում դեմ էր առել Եվրոպայի, Արևելքում՝ Ռուսաստանի ամրակուռ վահանին, փշրվել ու ետ էր շպրտվել։ Սուլթաններն այժմ ստիպված էին

---

103 *К. Маркс и Ф. Энгельс,* Сочинения, том 10, стр. 167.

մտածել ձեռք-բերած երկրները պահպանելու, հուսահատորեն պայքարի հրապարակ նետվող ժողովուրդների ազգային շարժումներն արյան մեջ խեղդելու և այդ միջոցով իրենց տիրապետությունը երկարաձգելու մասին։ Քրիստոնյա հպատակները լիովին անբարեհույս էին սուլթանների աչքում։ Մահմեդական մոլեռանդ վերնախավը, նրա հոգևոր ու աշխարհիկ պետերը միջոցների մեջ խտրություն չդնելով, գերադասում էին համաձուլել այլահավատ հպատակներին։

Արևմտյան Հայաստանի ծայրագավառներում, Թուրքահպատակ մի քանի շրջաններում XIX դարի սկզբներին հայերի նկատմամբ արդեն կիրառվում էր զանգվածային, բռնի կրոնափոխության քաղաքականություն։ Բազմահազար հայեր մահմեդականացվեցին Կարինի և Տրապիզոնի փաշայություններում։ Սև դետ կոչվող ձորերի, Համշեն գավառի, Սյուրմենի լեռնահովտի քրիստոնյաները բռնադատվեցին մահմեդականության։ Նրանց թիվը հասնում էր մոտ 10.000 մարդու, որոնք բնակվում էին շուրջ 100 գյուղերում[104]։ Մահմեդականության բռնադատվեցին Խոտուրայի շրջանի հայկական շատ գյուղերի բնակիչներ։

Հայերի համաձուլումը բավական լայն չափերի էր հասնում Վասպուրականում և Բիթլիսում։ Տակավին XVIII դարում Բաղեշի մոլլան հրաման արձակեց, թե երբ որևէ քրիստոնյա մահմեդականություն ընդունի, ապա նրա բոլոր ազգականները պարտավոր են իրենց արու զավակներին հանձնել վերջինիս խնամակալությանը։ Հրամանագիրը ցնցեց Բաղեշի ու Վանի հայերին, որոնք մեծ կաշառքներով միայն կարողացան վերացնել հայաջինջ վերոհիշյալ որոշումը։ Սակայն մոլլան այնպիսի ազգային թշնամանք սերմանեց Բաղեշի հայերի, քրդերի ու թուրքերի միջև, որ կարճ ժամանակամիջոցում քաղաքի մեծաթիվ քրիստոնյա բնակիչներից միայն 1500-ը կարողացան մնալ տեղում։

Բռնությամբ թե կամովի մահմեդականություն ընդունած այլահավատը զրկված էր կրկին հայրենի համայնքը վերադառնալու իրավունքից։

Թուրքիայում, շարիաթի համաձայն, այլազգիները զրկված էին ձի հեծնելու, կարմիր գլխաշոր կրելու, շքեղ հագնվելու և տարրական այլ իրավունքներից։ Հրամանագրերից մեկում ասված էր. «Հրամայեցի ... Շերիի օրենքին համաձայն, նախատելով և նվաստացնելով, անհավատներու դասակարգին՝ ձի նստեցնել, սամույր մուշտակ, սամույր գլխանոց (գալփակ) գործածել չտալ. մետաքսե և մետաքսե ծաղկենկար կերպասե շինված զգեստներ՝ իրենց կիներուն ալ բարձր գդակներ և եզերքները ծոպավոր զարդարանքներով պատրաստված չուխա հագցնել չտալ, որպեսզի իսլամներու հատուկ զգեստներու տարազով չպտտին...»[105]։

XIX դարի սկզբներին վերակենդանացվում էին, լրացվում ու գործողության մեջ դրվում խալիֆ Օմարի հռչակած օրենքները։ 1808 թ. Յուսուֆ փաշան հրապարակեց հպատակ այլազգիներին ավելի նվաստացնող մի ֆերման[106],

---

104 Հ. Հակովբոս վ. Տաշյան, Հայ բնակչությունը Սև ծովէն մինչև Կարին, Վիեննա, 1921, էջ 34։

105 «Բազմավեպ», 1934, № 1, էջ 32—33։

106 *Лорд Кокрин,* Новейшие сведения о Турецкой империи, ч. 1, перевод с английского, М., 1828. стр. 150—153.

ըստ որի 1. քրիստոնյաներին և հրեաներին արգելվում էր նոր եկեղեցիներ ու վանքեր կառուցել, 2. քրիստոնյաներն իրավունք ունեին իրենց բնակարանները վերակառուցել ծայրահեղ կարիքի դեպքում, հատուկ թույլտվությամբ, 3. նրանց երեխաները չպետք է ղորան սովորեին, 4. մոտեցող մահմեդականի առաջ բոլոր այլահավատները պետք է ոտքի կանգնեին, ճանապարհ տային նրան, գլուխ խոնարհեին, 5. քրիստոնյաները և հրեաները մահմեդականի տարազ չպետք է հագնեին, արաբերեն լեզու չպետք է սովորեին, թամբած ձի չպետք է հեծնեին, սուր չպիտի կրեին, 6. նրանք իրավունք չունեին գինի վաճառել, մազեր սանրել ու կոկել, կարմիր շորեր հագնել, լայն գոտիներ կապել, 7. այլահավատները տնից դուրս գալիս պետք է հանեին կրած խաչերը, եկեղեցու զանգերը հնչեցնեին հնարավորին չափ ցածր, հանգուցյալի վրա լաց լինեին կամ թաղման թափորին մասնակցեին լուռ կամ կիսաձայն, 8. մահմեդականներին իրավունք էր վերապահվում վարելահողերի վերածել քրիստոնեական այն գերեզմանատները, որոնք այլևս չէին գործում, 9. քրիստոնյաներն իրավունք չունեին ստրուկներ գնելու կամ տնային ծառաներ պահելու, 10. եթե մահմեդականը սպաներ քրիստոնյայի, տուգանք վճարելով ազատվում էր, իսկ եթե քրիստոնյան նման հանցանք գործեր, անպայման կգլխատվեր։ Ճիշտ է նկատում անգլիացի պատմաբանը, որ «մահմեդական օրենսդրության ոգին միշտ էլ նույնն է եղել, այն է՝ արհամարհանք ու թշնամանք դեպի անհավատները»[107]։

Այդ բնույթի բազմաթիվ այլ հրամանագրեր անխաթար գործադրվեցին Թուրքահպատակ բոլոր գավառներում։ Պետք է արձանագրել, սակայն, առանձին սուլթանների կամ փաշաների արած «բարերարությունները» հայ վերնախավին, ամիրաներին ու սարաֆներին։ Վերջիններս, եթե Բ. Դռան պաշտոնեության կողմից ճանաչված էին, գործով ապացուցել էին իրենց հավատարմությունն ու նվիրվածությունը Թուրքիային, միայն սուլթանի ստորագրությամբ տրվող ֆերմաններով կարող էին ձի նստելու թույլտվություն ստանալ։ Անկախ հարստության ու դիրքի, ձի նստող հայը բոլոր դեպքերում պետք է տարբերվեր մահմեդականից։ «Խուդավերդի օղլու Մանուկ Օսմանյան պետության ավագանիին պաշտոնատուներուն մեջ իր ծառայությամբ հայտնի սարաֆներու դասակարգեն հիշյալը՝ հիվանդ, կաղ և ծեր ըլլալով՝ սույն թեզքերեն տրվեցավ, որպեսզի իսլամներու ձի նստելու կերպին չնմանվելու պայմանավ ինք երբ որ ձի նստի և ոչ մեկու մը կողմեն իրեն դեմ արգելք չհարուցվի»[108]։

Սոսկալի էին մահմեդական պաշտոնյաների կողմից քրիստոնյաներին տրված պատիժները։ Օրենքով սահմանված էր և արդեն սովորություն էր դարձել, որ ամեն մի քրիստոնյա ընտանիք պարտավոր էր տարվա մեջ երեք օր հյուրընկալել մահմեդական ճանապարհորդներին, պետական պաշտոնյաներին, ըստ որում քրիստոնյա հյուրընկալողը պարտավոր էր «իրեն պատիվ արած», իր օջախը ոտք դրած մահմեդականի բոլոր քմահաճույքները կատարել։

Թուրք վերնախավի ներկայացուցիչները քմահաճորեն դաժան պատիժներ էին կիրառում քրիստոնյաների, հատկապես հայերի նկատմամբ։ Բանտե-

---

107 Նույն տեղում, էջ 153։
108 «Բազմավեպ», 1934. № 1, էջ 32։

րում տարածված էր «չխոստովանող» քրիստոնյային խաչ հանելու սովորությունը։ «Հային ձեռքերն ու ոտքերը իրարից հեռացնելով, մարմնին խաչի ձև տալով բարձրացնում էին վերև, ձեռքերից ու ոտքերից մեխում պատին և այդպես տանջամահ անում»։ Հարկատվությունից խուսափող հայերին խարանում էին շիկացած երկաթով, կտրում ականջները, փորում աչքերը, իսկ հանցանքը մեծ ՝լինելու դեպքում, մանավանդ մահմեդական կրոնը անարգելու պարագայում ներքինիացնում էին, հաճախ էլ շիկացած երկաթով պայտում էին «հանցագործ անհավատին», կտրում լեզուն։

Քրիստոնյա հպատակների համար Թուրքիայում դատարան գոյություն չուներ։ Հայերը զրկված էին դատարանում վկայություն տալու իրավունքից։ Լավագույն դեպքում քրիստոնյա երկու ականատեսների ներկայությունը հավասարեցվում էր մեկ ականջալուր մահմեդականի վկայության։ Շարիաթի այս կետը հայերի համար ունենում էր աղետաբեր հետևանքներ։ Մահմեդականը կարող էր առևանգել, թալանել, սպանել քրիստոնյային և մնալ անպատիժ։ Հանցագործի հավատակիցները դատարանում վկայություն չէին տալիս։ «Ավելորդ է ընել, թե այս պատճառով որչափ առևանգություններ, հափշտակություններ, գողություններ, նամանավանդ սպանություններ անպատիժ մընացած են կամ անհայտ, նույնիսկ կառավարության ջանիցն հակառակ»[109]։

Քրդահպատակ հայկական գավառներում ամենօրյա սպանությունները սովորական երևույթ էին։ Դատարանը կամ զափթիեները հազվադեպ էին զբաղվում սպանվողի ու սպանողի ինքնությամբ։ Բողոքող քրիստոնյան արժանանում էր մահմեդականի վրեժխնդրությանը։ Խիստ տարածված էր կաշառակերությունը։ Այդ էր պատճառը, որ երբ քրիստոնյաներն իրար դեմ դատ էին սկսում, եկամտի առատ աղբյուր էր ստեղծվում դատական պաշտոնյաների համար։ Հաճախ վերցվում էին «օրինական» կաշառքներ. մարմնական ծանր վնասվածք հասցնողը տալիս էր 3000 փարա, աչք հանողը՝ 1500, գլուխ ջարդողը՝ 30 փարա և ազատվում պատժից։

Օսմանյան կայսրության մեջ գոյություն ունեցող քաղաքական, ազգային ճնշումների, կրոնական խտրականության այս ամբողջ սիստեմը նմանը չուներ ոչ մի երկրում։ Բնական է, որ նման պայմաններում գնալով ավելի պիտի ուժեղանար հայ ժողովրդի ազատագրական պայքարն իր հարստահարիչների՝ սուլթանական միահեծանության, դերեբեյական սիստեմի, քրդական վերնախավի դեմ և ժողովրդական զանգվածներին մղեր դեպի ազատություն, որքան էլ այն թանկ նստեր նրան։

109 Մատենադարան, Մ. Իզմիրլյանի արխիվ, թղթ. 14, վավ. 616։

# ԲԱԺԻՆ Բ

# ԱՐԵՎԵԼՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԻԱՑՈՒՄԸ ՌՈՒՍԱՍՏԱՆԻՆ

ԳԼՈՒԽ ԵՐՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀՅՈՒՍԻՍ-ԱՐԵՎԵԼՅԱՆ ՇՐՋԱՆՆԵՐԻ ՄԻԱՑՈՒՄԸ ՌՈՒՍԱՍՏԱՆԻՆ

## 1. ՄԵԾ ՏԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹՅՈՒՆՆԵՐՆ ԱՆԴՐԿՈՎԿԱՍՈՒՄ

*XIX դարի շեմին նպաստավոր իրադրություն էր ստեղծվել Անդրկովկասը Ռուսաստանին միացնելու համար։ Ուստի ցարիզմը չհապաղեց ձեռնամուխ լինել նրա իրագործմանը։*

*Հայ ժողովրդի նախորդ դարաշրջանի ողջ պատմական կյանքի ընթացքը նրան հանգեցրեց այն հաստատ համոզման, որ ստեղծված կոնկրետ պատմական իրադրության պայմաններում թուրքական և պարսկական կործանարար լուծը նա կարող է թոթափել ու իր ազգային գոյությունը հարատևել միայն Ռուսաստանի օգնությամբ, ռուսական զենքի միջոցով։ Սրանով է պայմանավորված XIX դարի սկզբներին ռուս-պարսկական և ռուս-թուրքական պատերազմների ժամանակ հայերի՝ ռուսական բանակներին ցույց տված ռազմական, նյութական ու բարոյական գործուն օգնությունը։*

*Ռուսական զենքի օգնությամբ թուրքական ու պարսկական տիրապետությունից ազատագրվելու հայերի ակնկալությունները առավել ուժեղացան XIX դարի սկզբներին, երբ ռուսական զորքերը մտան Վրաստան։ Ալեքսանդր I-ի 1801 թ. սեպտեմբերի 12-ի մանիֆեստով պաշտոնապես ձևակերպվեց Արևելյան Վրաստանի միացումը Ռուսաստանին[1], որը կարևոր նշանակություն ունեցավ ոչ միայն վրաց, այլև Անդրկովկասի մյուս ժողովուրդների համար։*

*Հայերը բուռն խանդավառությամբ ընդունեցին Վրաստանի միացումը Ռուսաստանին։ Դրա շնորհիվ Ռուսաստանի հպատակության տակ անցավ Վրաստանում բնակվող հայությունը, որը բավական մեծ թիվ էր կազմում։ Ռուսաստանին միացվեց նաև Լոռին, Փամբակը, Շամշադինը և Հայաստանի հյուսիսային մի քանի այլ շրջաններ։ Եվ, վերջապես, այս պատմական ակտով հայ ժողովրդի համար ստեղծվեցին Ռուսաստանի օգնությամբ պարսկական և*

---

*[1] 1803 թ. Ռուսաստանին միացվեց նաև Մեգրելիան, 1804 թ.՝ Իմերեթը և Գուրիան, 1810 թ.՝ Աբխազիան։*

թուրքական տիրապետությունից ազատագրվելու առավել իրական պայմաններ։ 1804 թ. հունվարին Գյանջայի խանության գրավումով այստեղ բնակվող հայերը նույնպես անցան ռուսական հպատակության ներքո։

Անդրկովկասը Ռուսաստանին միացնելու ցարիզմի շահագրգռվածությունն ամենևին էլ չի բխել անդրկովկասյան ժողովուրդների նկատմամբ Ալեքսանդր I-ի և Նիկոլայ I-ի «մարդասիրությունից» ու «ողորմածությունից», ինչպես փորձել են ներկայացնել ցարական պաշտոնական պատմագրության ներկայացուցիչները (Ն. Սուխոտին, Վ. Պոտտո, Ն. Դուբրովին, Վ. Բուտկով, Ա. Շչերբատով և ուրիշներ)։ Ցարիզմին չի մտահոգել բռնապետական Թուրքիայի ու Պարսկաստանի կողմից խոշտանգված անդրկովկասյան ժողովուրդների ճակատագիրը, նրանց մղած ազատագրական պայքարի ելքը։ Հանդես գալով անդրկովկասյան ժողովուրդների «ազատարարի» ու «փրկարարի» դիմակի տակ, ցարիզմի բուն նպատակն է եղել ընդարձակել կայսրության սահմանները և Անդրկովկասը ծառայեցնել իր գաղութատիրական շահերին։

Անդրկովկասի գրավումը շահավետ հեռանկարներ էր բացում տնտեսական, մասնավորապես պարսկական շուկաներում ռուսական առևտրի համար։ Մեծ տերությունների հակամարտությունների կիզակետ Մերձավոր Արևելքում Անդրկովկասը Ռուսաստանի համար ուներ նաև ռազմա-քաղաքական կարևոր նշանակություն։ Սև ու Կասպից ծովերը, Կուր, Արաքս և Ախուրյան գետերը բնական սահմանագիծ էին՝ Ռուսաստանի հարավային սահմանները Պարսկաստանից, Թուրքիայից և նրանց «հովանավորներ» Անգլիայից ու Ֆրանսիայից անխոցելի դարձնելու համար։ Միաժամանակ Անդրկովկասն այն հարմարավետ հիմնակետն էր, որ նպաստելու էր ռուսական ազդեցության տարածմանը Մերձավոր Արևելքում։

Անդրկովկասի միացումը Ռուսաստանին օբյեկտիվորեն համապատասխանում էր Թուրք փաշաների և պարսիկ խաների ստրկությունից ազատագրվելու հայ ժողովրդի վաղեմի ձգտումներին։

Վրաստանի և Գյանջայի խանության միացումը Ռուսաստանին էլ ավելի սրեց ռուս-պարսկա-թուրքական և ռուս-անգլո-ֆրանսիական հակասությունները։ Շահական Պարսկաստանը թեպետ արդեն դառնում էր Անգլիայի ու Ֆրանսիայի գաղութային կեղեքումների ու հարստահարումների առարկա, բայց իր հերթին նա էլ նվաճողական ձգտումներ ուներ Կովկասի նկատմամբ։ Ուստի Պարսկաստանը ոչ միայն չէր հանդուրժում Վրաստանի և Գյանջայի խանության միացումը Ռուսաստանին, այլև ծրագրում էր զավթողական գործողությունների ընդարձակ պլան։ Ֆաթհ-Ալի շահը ձգտում էր ռուսներին դուրս մղել Վրաստանից ու Գյանջայից և հնազանդեցնել Անդրկովկասի բոլոր այն խաներին, որոնք դադարել էին ենթարկվել Պարսկաստանի կենտրոնական կառավարությանը։ Այդ նպատակով 1804 թ. գարնանը ավելի քան 40 հազարանոց պարսկական բանակը, գահաժառանգ Աբաս-Միրզայի գլխավորությամբ, կազմ ու պատրաստ սպասում էր շահի հրամանին՝ Անդրկովկաս ներխուժելու համար։ Իսկ Ֆաթհ-Ալի շահը Թիֆլիս ժամանած իր ներկայացուցչի միջոցով Վրաստանի կառավարչապետ ու ռուսական զորքի հրամանատար գեներալ

Ցիցիանովից[2] պահանջում էր անհապաղ հեռանալ Վրաստանից, հակառակ դեպքում սպառնալով ռազմական գործողություններ սկսել Ռուսաստանի դեմ։

Պատերազմական նախապատրաստություններ էր տեսնում նաև Երևանի Մամադ խանը։ Նա արագորեն ամրացնում էր Երևանի բերդը, կուտակում զենք ու զինամթերք։ Քաջ գիտենալով ռուսների նկատմամբ հայերի ջերմ վերաբերմունքի մասին, Մամադ խանը Արարատյան դաշտից տեղահանում էր նրանց, արտաքսում Պարսկաստան ու Կարսի փաշայության սահմանները, իսկ շատ ազդեցիկ հայերի փակում Երևանի բերդում՝ իբրև պատանդներ։ Պարսիկ խանը դրանով փորձում էր խափանել հայերից օգնություն ստանալու ռուսների ակնկալությունները։ Այդ ամենի հետ միասին, ժամանակ շահելու և Երևանի բերդն էլ ավելի ամրացնելու նպատակադրումով, խանը փորձում էր խաբել Ցիցիանովին՝ հավաստիացնելով, թե ինքը «ռուսների բարեկամն է»։ Պարսկաստանի և Ռուսաստանի միջև Մամադ խանի վարած խուսանավման քաղաքականությունը որոշ ժամանակ մոլորեցրեց Ցիցիանովին և Աբաս-Միրզային հնարավորություն տվեց ժամանակ շահել ու իր ուժերը կենտրոնացնել Երևանի շրջակայքում։ Սուլթանական Թուրքիան նույնպես ակտիվացնում էր իր նվաճողական քաղաքականությունը, նպատակ ունենալով զավթել Անդրկովկասը, Դաղստանը, գրավել ողջ Կովկասը։

Անդրկովկասի համար մղվող պայքարը սրվում էր ոչ միայն Ռուսաստանի, Պարսկաստանի և Թուրքիայի, այլև Ռուսաստանի, Անգլիայի ու Ֆրանսիայի միջև[3]։ Անգլիան և Ֆրանսիան եռանդուն կերպով պաշտպանում էին Պարսկաստանի ու Թուրքիայի բոլոր ձեռնարկումները՝ ուղղված ռուսական առաջխաղացման, ինչպես և անդրկովկասյան ժողովուրդների ազատագրության դեմ։ Մերձավոր Արևելքում իրենց տնտեսական ու քաղաքական ազդեցությունն ուժեղացնելու համար նրանք առանձին-առանձին օգնում էին Պարսկաստանին ու Թուրքիային, ամեն կերպ աշխատում թուլացնել Ռուսաստանի ռազմական հզորությունը և նրան հեռու պահել Անդրկովկասից։

Պարսկաստանի հետ պայմանագիր կնքելու նպատակով 1800 թ. նոյեմբերին Թեհրան էր ժամանել Մալկոլմի դեսպանությունը։ Իր առաքելության հաջողության համար առատորեն բաժանելով անգլիական ոսկին, Մալկոլմը «գնում է ամեն ինչ, սկսած շահից մինչև ուղտապանը»[4]։ 1801 թվականի հունվարին նրան հաջողվեց Պարսկաստանի հետ քաղաքական և առևտրական պայմանագրեր կնքել, որոնց հետևանքով Անգլիան Պարսկաստանում ձեռք բերեց ինչպես քաղաքական, այնպես էլ տնտեսական, թեև կարճատև, բայց մեծ ազդեցություն։

1801 թ. անգլո-պարսկական դաշնակցային պայմանագրով Անգլիան խոստանում էր ֆինանսական ու ռազմական օգնություն ցույց տալ Պարսկաս-

---

2 Ցիցիանովը կովկասյան զորքերի գլխավոր հրամանատար ու Վրաստանի կառավարչապետ նշանակվեց 1802 թ. սեպտեմբերի 11-ին և ժամանեց Թիֆլիս 1803 թ. փետրվարի 1-ին։

3 Տե՛ս *А. Р. Иоаннисян,* Присоединение Закавказья к России и международные отношения в начале XIX столетия, Ереван, 1958; *З. Т. Григорян,* Борьба Англии и Франции против освобождения Армении из-под ирано-турецкого ига («Вопросы истории», 1952, № 3).

4 *К. Маркс,* Хронологические выписки по истории Индии, М., 1947, стр. 105.

տանին՝ նրա իշխանությունը Անդրկովկասում վերականգնելու և ամրապնդելու նպատակով, իսկ Պարսկաստանը պիտի նպաստեր Անգլիայի արևելյան քաղաքականությանը։ Պայմանագիրն ուղղված էր ինչպես Ֆրանսիայի, այնպես էլ Ռուսաստանի դեմ։ Քանի որ այն գալիս էր ուժեղացնելու Պարսկաստանի տիրապետությունն Անդրկովկասում, ուստի ուղղված էր նաև անդրկովկասյան ժողովուրդների ազատագրական ձգտումների դեմ։

Նապոլեոն Բոնապարտն իր հերթին Ֆրանսիայի քաղաքական ու տնտեսական ազդեցությունն ուժեղացնելու նպատակով դիմեց ակտիվ գործողությունների՝ Թուրքիայում, Պարսկաստանում և ամբողջ Մերձավոր Արևելքում։ Այդ դիտավորությամբ Կոստանդնուպոլիս ժամանեց ճարպիկ ու խորամանկ դիվանագետ գնդապետ Սեբաստիանիի գլխավորած պատվիրակությունը։ 1802 թ. հունիսի 26-ին Ֆրանսիայի ու Թուրքիայի միջև Փարիզում կնքվեց հաշտության պայմանագիր։ Այնուհետև Նապոլեոնն իր ուշադրությունն ուղղեց դեպի Պարսկաստան։ Մեկը մյուսի ետևից Պարսկաստան ուղարկվեցին ֆրանսիական գործակալներ՝ անգլո-պարսկական 1801 թ. դաշնակցային պայմանագիրը չեղյալ դարձնելու, Ֆրանսիայի ազդեցությունը տարածելու և Պարսկաստանն ինչպես Անգլիայի, այնպես էլ Ռուսաստանի դեմ օգտագործելու նպատակով։ Իր գործակալների միջոցով Նապոլեոնը շահին հավաստիացնում էր, թե ֆրանսիական ու պարսկական բանակների համատեղ ջանքերով ռուսները դուրս կմղվեն Վրաստանից և գրավված երկրամասերը կբաժանվեն պայմանավորվող կողմերի միջև։ Ֆրանսիայի կառավարող շրջանների թելադրանքով էր, որ 1803 թ. Կոստանդնուպոլիս ժամանած պարսկական գործակալները ձգտում էին սուլթանական կառավարությանը համոզել՝ համատեղ ուժերով ելնելու Ռուսաստանի դեմ։

Անգլիայի և Ֆրանսիայի հակառուսական քաղաքականությունը նպաստեց XIX դարի սկզբին Պարսկաստանի զավթողական տրամադրությունների սանձազերծմանը և նրան մղեց Կովկասի վերանվաճման իր ծրագիրն իրականացնելու ակտիվ գործողությունների։ Անդրկովկասի նկատմամբ պարսկական կառավարող շրջանների վարած զավթողական քաղաքականությունը համապատասխանում էր Անգլիայի և Ֆրանսիայի հակառուսական տրամադրություններին։ Ուստի վերջիններս ընդառաջում էին բռնապետական Պարսկաստանի նվաճողական ձգտումներին՝ նպատակ ունենալով նրան օգտագործել Մերձավոր Արևելքում իրենց քաղաքական ու տնտեսական ազդեցությունը տարածելու և ամրապնդելու համար։

Ներհակ ու իրարամերժ շահերի այս խաչաձևումը հղի էր մեծ բախումներով և արյունալի պատերազմներով։ Գյանջայի խանությունը Ռուսաստանին միացնելուց անմիջապես հետո ռուսական հրամանատարությունն սկսում է եռանդուն նախապատրաստություններ տեսնել իր ձեռքը վերցնելու նախաձեռնությունը, գրավելու ռազմա-ստրատեգիական կարևոր նշանակություն ունեցող Երևանի ու Նախիջևանի խանությունները և Շիրակը։ Սակայն դեպի Արևելյան Հայաստան արշավանք սկսելու համար պատրվակ էր պետք։ Այդպիսի մի պատրվակ եղավ Էջմիածնի կաթողիկոսական գահի թեկնածուների միջև այդ ժամանակ սկսված աթոռակռիվը։

Կաթողիկոս Հովսեփ Արղությանի 1801 թ. մարտի 9-ին Թիֆլիսում հանկարծամահ լինելուց հետո էջմիածնի միաբանությունը, Երևանի սարդարի գործուն միջամտությամբ, ապրիլի 28-ին շտապեց կաթողիկոս ընտրել արքեպիսկոպոս Դավթին։ Իսկ 1802 թ. մայիսի 25-ին նրա հակառակորդները Բագրևանդի գավառի Ուչքիլիսա վանքում կաթողիկոս օծեցին Դանիել արքեպիսկոպոսին, որը տակավին Հովսեփ Արղությանի հետ ընտրված կաթողիկոսական առաջին թեկնածուն էր։ Դրանով իսկ ծայր առավ էջմիածնի կաթողիկոսական աթոռի համար «Դավիթ-Դանիելյան» կռիվը։

Ռուսական, պարսկական և թուրքական կառավարությունները չհապաղեցին իրենց շահերին ծառայեցնելու «Դավիթ-Դանիելյան» կռիվը։ Միջամտելով էջմիածնի կաթողիկոսության ներքին գործերին, նրանցից յուրաքանչյուրն աշխատում էր այն օգտագործել Հայաստանում իր ազդեցությունն ամրապնդելու համար։ Դանիելը և նրա համախոհները Հայաստանը Ռուսաստանին միացնելու ջերմ կողմնակիցներ էին։ Իսկ Դավիթն ու իր համախոհները արտահայտում էին անձնական շահերով Պարսկաստանի հետ կապված սակավաթիվ այն հայ հոգևորականության և ֆեոդալների կամքը, որոնք տվյալ հարցում պասիվ դիրք էին գրավում, իսկ երբեմն էլ հակառակ հայ ժողովրդի ազգային շահերի, բախում էին պարսկական շահի ու Երևանի խանի դռները, ստորաքարշություն անում նրանց առաջ։

Երբ ռուսական կառավարությանը հայտնի դարձավ Դավթի այս վարքագիծը, նա անվերապահորեն կողմնորոշվեց դեպի Դանիելը։ Գեներալ Ցիցիանովը Երևանի Մամադ խանից պահանջեց էջմիածնի կաթողիկոս ճանաչել Դանիելին[5], իսկ Դավթին ուղարկել Թիֆլիս։ Խանը մերժեց Ցիցիանովի պահանջը, որը և Կովկասում գտնվող ռուսական զորքերի հրամանատարությանը առիթ ծառայեց 1804 թ. գարնանը արշավանք սկսելու Երևանի վրա։

## 2. 1804—1813 ԹԹ. ՌՈՒՍ-ՊԱՐՍԿԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ

Շորագյալը, Երևանի ու Նախիջևանի խանությունները գրավելու և հարավում Արաքս գետը ռուս-պարսկական սահմանագիծ հաստատելու ցարական կառավարության մտադրություններն իրականացնելու համար 1804 թ. մայիսի 29-ին ռուսական առաջապահ զորամասերը գեներալ-մայոր Լեոնտևի հրամանատարությամբ շարժվեցին դեպի Արևելյան Հայաստան։ Անցնելով Լոռի-Փամբակով, հունիսի սկզբներին նրանք հասան Գյումրի (Լենինական) և ճամբար դրեցին պարսկական զորքից 18 կիլոմետր հեռավորության վրա։ Հունիսի 9-ին սրանց միացավ գեներալ-մայոր Տուչկովը՝ Կովկասյան գրենադերական գնդի երկու գումարտակներով և հինգ թնդանոթով։

---

5 «Դավիթ-Դանիելյան վեճը» մերթ ավարտվում էր Դավթի, մերթ էլ՝ Դանիելի հաղթանակով։ Մինչև 1807 թ. ապրիլը շահի և Երևանի խանի կամքով էջմիածնում կաթողիկոս էր Դավիթը, իսկ Դանիելը որպես գերի պահվում էր Մարաղայում։ 1807 թ. ապրիլին ռուսական կառավարության միջամտության շնորհիվ էջմիածնի կաթողիկոսական գահը ստանձնեց Դանիելը։ 1808 թ. հոկտեմբերի 9-ին վախճանվեց Դանիելը և 1809 թ. կաթողիկոս ընտրվեց Ռուսաստանի հայոց հոգևոր թեմի առաջնորդ արքեպիսկոպոս Եփրեմը։

Ռուսական կորպուսի առաջապահ ուժերի և պարսկական զորքերի միջև առաջին լուրջ ճակատամարտը տեղի ունեցավ հունիսի 10-ին Արփաչայի (Ախուրյան) ափին, Փոքր Ղարաքիլիսա (Ազատան) գյուղի մոտ։ Թեպետ պարսիկներն ունեին 8000 սարբազ ու թվով զգալիորեն գերակշռում էին հակառակորդին, բայց շնորհիվ ռուսական հրետանու եռանդուն գործողությունների, ռուս զինվորների և նրանց օգնող հայ աշխարհազորայինների անձնազոհության ու խիզախության, ճակատամարտն ավարտվեց ռուսական զորագնդի փայլուն հաղթանակով։ Ռուսական կորպուսի առաջապահ ուժերի տարած այս հաղթանակի շնորհիվ պարսկական գերությունից ազատվեցին 400 հայ ընտանիք։ Բացի այդ Երևանի խանի կողմից Կարսի փաշայություն արտաքսվող 7000 հայ ընտանիքի համար էլ ճանապարհ բացվեց անցնելու Փամբակ-Լոռի, ապաստան գտնելու ռուսական հպատակության տակ։

Ռուսական և պարսկական բանակների միջև տեղի ունեցած այս զինաբախումով էլ սկսվեց ռուս-պարսկական առաջին պատերազմը:

Հունիսի 12-ին Գյումրի են հասնում ռուսական կորպուսի գլխավոր ուժերը՝ գեներալ Ցիցիանովի հրամանատարությամբ և եռանդուն նախապատրաստություններ տեսնում արշավելու Երևանի վրա։ Հունիսի 15-ին 4370 զինվորից, 20 դաշտային թնդանոթից և հայ-վրացական աշխարհազորային ջոկատից կազմված ռուսական կորպուսը, դուրս գալով Գյումրիից, Ապարանի վրայով շարժվում է դեպի Երևան[6]։ Հունիսի 19-ին ռուսական զորաբանակը մոտենում է էջմիածնին։ Գեներալ Ցիցիանովը ծրագրում էր գրավել էջմիածինը, հանգիստ տալ զորքին և ապա բանակցություններ սկսել Մամադ խանի հետ՝ Երևանի բերդը առանց դիմադրության իրեն հանձնելու համար։ Սակայն Աբաս-Միրզայի հրամանատարությամբ գործող պարսկական 20 հազարանոց բանակը ռուսական զորքից առաջ հասել էր էջմիածին և ամուր դիրքեր գրավել։

Հունիսի 20-ին էջմիածնի մատույցներում մարտեր են սկսվում ռուսական կորպուսի և Աբաս-Միրզայի բանակի միջև։ Պարսկաստանի գահաժառանգը հույս ուներ էջմիածնի մերձակայքում ջախջախել ռուսական կորպուսը, սրընթաց գրոհով գրավել Թիֆլիսը և իրագործել պարսկական կառավարող շրջանների ծրագիրը՝ Վրաստանն ու ամբողջ Կովկասը նվաճելու վերաբերյալ։ Սակայն հունիսի 21-ին և 22-ին ռուսական դիրքերի վրա պարսկական զորքերի բոլոր գրոհներն ապարդյուն անցան։ Ռուսական կորպուսի հրամանատարությունն իր հերթին զգալով, որ ուժերն անհավասար են և անարդյունավետ կլինի էջմիածնի համար ռազմական գործողությունների հետագա շարունակումը, որոշում է շրջանցել էջմիածինը, շարժվել Քանաքեռ՝ այնտեղից գրոհել Երևանի վրա և հակառակորդին հարվածել թիկունքից, համոզված լինելով, որ այդ դեպքում Աբաս-Միրզան հարկադրված կլինի կամովին թողնել էջմիածինը։ Այդպես էլ եղավ։

Ռուսական կորպուսի զորամասերը հունիսի 25-ին գրավեցին Քանաքեռը։ Շրջապատման վտանգից վախենալով, Աբաս-Միրզայի զորաբանակը Երևանով նահանջեց և ճամբար դրեց քաղաքից մոտ 8 կիլոմետր դեպի հյուսիս-արևելք՝ Գառնի-չայ (Ազատ) գետի ափին։

---

6 Տե՛ս ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. ՌԳԱ, գ. 4258, մ. II, թ. 1—41։

*Հունիսի 27-ին Քանաքեռի ռուսական ճամբարը եկած մի քանի հայեր հայտնեցին Էջմիածնից պարսկական բանակի նահանջի լուրը։ Նրանք միաժամանակ հաղորդեցին, որ Էջմիածնի վանքի պահեստներում սննդամթերքի խոշոր պաշարներ են պահվում, որոնք կտրամադրվեն ռուսական զորքին։ Այդ լուրը մեծ ուրախություն պատճառեց, քանի որ ռուսական կորպուսը արդեն պարենի կարիք էր զգում։ Գեներալ Ցիցիանովը մի ջոկատ է ուղարկում տիրելու Էջմիածնին, իսկ ինքը կորպուսի գլխավոր ուժերով հունիսի 29-ի լույս 30-ի գիշերը անցնում է Հրազդանի ձախ ափը և գրոհում Աբաս-Միրզայի ճամբարի վրա։ Պարսկական թագաժառանգը, պարտություն կրելով, խուճապահար նահանջում է Արաքսի աջ ափը, իսկ Ցիցիանովը հուլիսի 2-ին պաշարում է Երևանի բերդը[7]։*

*Ռազմական գործողությունների այդպիսի հաջող ընթացքից հետո գեներալ Ցիցիանովը հաշվի չառավ, որ Երևանի երկարատև պաշարման համար ռուսական զորքն ապահովված չէ անհրաժեշտ քանակությամբ զինամթերքով ու պարենով և նման պայմաններում ինքը հաջողության կարող է հասնել միայն հարձակողական սրընթաց գործողությունների միջոցով։ Պաշարելով բերդը, վճռական գրոհի անցնելու փոխարեն, նա սկսեց բանակցություններ վարել Երևանի խանի հետ՝ բերդը առանց դիմադրության իրեն հանձնելու մասին։ Մինչդեռ Մամադ խանը դիտավորյալ ձգձգում էր բանակցությունները, որպեսզի ժամանակ շահի և պարսկական բանակներից օգնություն ստանա։ Օգտագործելով Ցիցիանովի տակտիկական սխալը, Աբաս-Միրզան հնարավորություն ունեցավ կարգի բերել խուճապի մատնված բանակը և վերստին ճամբար դըրեց Գառնի-չայի ափին։ Հուլիսի 14-ին Աբաս-Միրզային օգնության հասավ Ֆաթհ-Ալի շահը՝ 15 հազար զորքով։ Իսկ Մամադ խանը այդ ժամանակամիջոցում հիմնականում ավարտեց բերդի պաշտպանական կառուցումները[8], կայազորը (բաղկացած էր յոթ հազար սարբազներից, ուներ 60 թնդանոթ և երկու հրասանդ) համալրեց շահի ուղարկած 800 զինվորներով և ակտիվ գործողություններ սկսեց ռուսական կորպուսի դեմ։*

*Երևանի մոտ կենտրոնացնելով շուրջ 35 հազարանոց բանակ, հուլիսի 15-ին պարսկական զորագնդերն անցնում են հակահարձակման, նպատակ ունենալով ոչնչացնել Ցիցիանովի կորպուսը և ներխուժել Վրաստան։ Պարսկական մի խոշոր զորամիավորում հարվածն ուղղում է ռուսական զորքերի ձախ թևի՝ գեներալ-մայոր Լեոնտևի ջոկատի դեմ։ Հակառակորդի երկրորդ խոշոր զորախումբն անցնելով Հրազդանը, գրոհում է գնդապետ Ցեխանովսկու զորակետի վրա։ Իսկ մի երրորդ զորախումբ էլ արշավում է գեներալ-մայոր Պորտնյագինի դիրքերի վրա։ Այդ նույն միջոցին պարսկական միացյալ բանակին ակտիվորեն օգնում էր Մամադ խանը։ Նրա արագաշարժ ջոկատները*

---

7 *Տե՛ս ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. ՌԳԱ, գ. 4258, մ. III, թ. 154—157։*

8 *Երևանի բերդը կառուցվել է 1582 թ. Հրազդան գետի ժայռապատ ափին։ Նա մի կողմից պաշտպանվում էր Հրազդանի խոր կիրճով, իսկ մյուս երեք կողմերից՝ աղյուսից կառուցված կրկնաշար պարիսպներով, որոնք ունեին 17 աշտարակներ։ Աշտարակներին ամրացված էր 22 թնդանոթ։ Նրա կայազորը հասնում էր 5—7 հազար մարդու, որը պատերազմների ժամանակ ավելացվում էր։ Ռուս-պարսկական առաջին և երկրորդ պատերազմների ընթացքում այն ավելի ամրացվեց ֆրանսիական, ապա անգլիական ինժեներների օգնությամբ։*

դուրս գալով բերդից, թիկունքից հարձակումներ էին կատարում ռուսական զորքի վրա, իսկ հրետանին ռմբակոծում էր նրանց դիրքերը։

Թեպետ պարսկական ուժերը քանակապես մոտ տասն անգամ գերազանցում էին, բայց շնորհիվ ռուսական զորքի ցուցաբերած բացառիկ կայունության ու խիզախության, ինչպես նաև հրետանու գերազանց գործողությունների, հուլիսի 15-ի ութ ժամից ավելի տևած ճակատամարտը դարձյալ ավարտվեց պարսիկների պարտությամբ ու նահանջով։ Ոգևորված այդ հաջողություններով, հուլիսի 23-ին Ցիցիանովի կորպուսն սկսեց Երևանի բերդի գրոհը, սակայն համառ դիմադրության հանդիպելով, հարկադրված եղավ դադարեցնել կրակը։

Ռուսական կորպուսի վիճակը գնալով ծանրանում էր։ Ռազմամթերքի ու պարենի խիստ պակաս էր զգացվում։ Լարված մարտերի, ինչպես նաև Արարատյան դաշտի շոգերի հետևանքով նոսրանում էին առանց այդ էլ սակավաթիվ զորաբանակի շարքերը։ Շուտով հայտնի դարձավ, որ խռովություններ են սկսվել Օսեթիայում։ Այդ օրերին դեպի Փամբակ էր շարժվում պարսկական մի զորաբանակ՝ վրաց արքայազն Ալեքսանդրի հրամանատարությամբ, որն արտահայտելով վրաց փոքրաթիվ հետադիմական ազնվականության և պարսկական նվաճողների կամքը, փորձում էր վերանվաճել Վրաստանը և այնտեղից դուրս մղել ռուսներին։ Այդ իրավիճակը գեներալ Ցիցիանովին հարկադրեց սեպտեմբերի 3-ին դադարեցնել Երևանի բերդի պաշարումը և նահանջել Էջմիածին, իսկ սեպտեմբերի 7-ին՝ ուղղություն վերցնել դեպի Թիֆլիս։

Որքան էլ ծանր էր ռուսական զորքերի Երևանյան առաջին արշավանքի անհաջողությունը, այնուամենայնիվ, այն չվհատեցրեց հայերին։ Նրանք ոչ միայն չկորցրին իրենց մոտալուտ ազատագրության հույսը, այլև տարբեր ձևերով ու եղանակներով շարունակելով պայքարը պարսիկ բռնակալների դեմ, եռանդագին նախապատրաստվում էին դարձյալ օգնելու ռուսական բանակներին, դրա մեջ տեսնելով իրենց փրկությունը։ Երևանի հայերը անհամբերությամբ սպասելով ռուսական կորպուսի նոր արշավանքին՝ մեկը մյուսի ետևից նամակներ էին գրում Ցիցիանովին, նկարագրում ռուսական զորքի նահանջից հետո իրենց նկատմամբ առավել սաստկացած բռնությունները և խնդրում նորից վերադառնալ ու գրավել Երևանի բերդը։ Միաժամանակ նրանք ռուսական հրամանատարությանը հավաստիացնում էին, որ տեղի հայերը և ադրբեջանցիները կօգնեն ռուսական զորքին։ Երևանից տարագրված և ռուսական հովանու տակ ապաստան գտած Մելիք Աբրահամը և յուզբաշի Գաբրիելը Ցիցիանովին ուղղված նամակներից մեկում գրում էին. «... տեղեկացնում ենք, որ այժմ Երևանում գտնվում է շատ քիչ թվով զորք՝ 3000-ից ոչ ավելի հետևոտն մարդ, իսկ Երևանի բնակիչները, թաթարները, որոնք ապրում են բերդում և նրանից դուրս, բոլորը մեզ հետ խոսել են և խոսք են տվել, որ եթե կարճ ժամանակաընթացքում Ձեր զորքը գա Երևան, ապա նրանք բոլորը կնեթարկվեն և առանց դժվարության կգրավեք բերդը՝ նրա բոլոր ունեցվածքներով հանդերձ...»[9]։

---

[9] «Акты, собранные Кавказской археографической комиссиею...» (այսուհետև՝ АКАК), т. II, Тифлис, 1868, стр. 605.

Ռուսական կորպուսի երևանյան առաջին արշավանքը թեպետ չպսակվեց Երևանի գրավումով, բայց և անհետևանք չմնաց։ Այդ արշավանքը արագացրեց Երևանի սարդարի հպատակության տակ գտնվող Շորագյալի շրջանի (Արևելյան Շիրակ) միացումը Ռուսաստանին։

Երևանյան առաջին արշավանքի ժամանակ Շորագյալի Բուդաղ սուլթանը ռուսների նկատմամբ վերապահ դիրք էր բռնել։ Ռուսական զորքերի նահանջից հետո, սարդարի թելադրանքով, նա հարձակումներ սկսեց Վրաստանի սահմանակից շրջանների վրա։ Չնայած դրան, Շորագյալի հայ բնակչությունը շարունակում էր գործել ռուսների օգտին։ Ստեղծված նպաստավոր իրավիճակում՝ 1805 թ. մարտի 30-ին գեներալ Նեսվետաևի գլխավորած զորագունդը գրավեց Շորագյալի սուլթանության կենտրոն Արթիկը։ Բուդաղ սուլթանը հոկտեմբերին ընդունեց ռուսական հպատակություն։

Ռուսաստանի համար Շորագյալը ունեցավ ինչպես տնտեսական, այնպես էլ ռազմա-ստրատեգիական կարևոր նշանակություն։ Հացառատ այդ շրջանը Հայաստանում գործող զորաբանակին, անհրաժեշտության դեպքում, կարող էր պարեն մատակարարել, միաժամանակ նաև միջնապատի դեր խաղալ մի կողմից՝ Վրաստանի, մյուս կողմից՝ Թուրքիայի ու Պարսկաստանի միջև։

Շորագյալին նախորդել էր Ղարաբաղի խանության միացումը։ Գեներալ Ցիցիանովը 1805 թ. սկզբներին ուժեղացնում է ճնշումը Ղարաբաղի Իբրահիմ խանի վրա՝ պահանջելով ընդունել ռուսական հպատակություն։ Խանի փորձերը՝ ձգձգել այդ նպատակով Շուշի ժամանած մայոր Լիսանևիչի հետ բանակցությունները, անցան ապարդյուն։ Ցիցիանովը Ղարաբաղի տիրակալին զգացնել է տալիս, որ բանակցությունների հետագա ձգձգումը կարող է հանգեցնել զենքի միջամտության։ Միայն դրանից հետո, 1805 թ. փետրվարի 21-ին, Իբրահիմ խանը Լիսանևիչի միջոցով հայտնում է իր համաձայնությունը՝ գործին դրական ընթացք տալ։ 1805 թ. մայիսի 14-ին Քյուրակչայ գետի ափին խփված վրանում, հանդիսավոր իրադրության պայմաններում գեներալ Ցիցիանովը և Իբրահիմ խանը պայմանագիր ստորագրեցին Ղարաբաղի ռուսական հպատակություն ընդունելու մասին։ Մայիսի 21-ին Քյուրակչայի ափին նույնպիսի պայմանագիր ստորագրեց նաև Շաքիի Սելիմ խանը։

Ղարաբաղի հետ միասին Քյուրակչայի պայմանագրով Ռուսաստանի տիրապետության տակ անցան միաժամանակ Ղափանի, Գորիսի և Սիսիանի շրջանները։ 1805—1806 թթ. Ռուսաստանին միացվեց նաև հյուսիսային Ադրբեջանի՝ Շիրվանի, Բաքվի ու Դերբենդի խանությունները։ Այս ամենը Ռուսական կայսրությանը հնարավորություն ընձեռեց զգալիորեն ամրապնդելու իր դիրքերը Անդրկովկասում։

* * *

Ռուս-պարսկական առաջին պատերազմը ընթանում էր այնպիսի պայմաններում, երբ Ռուսաստանը և Ֆրանսիական նորաստեղծ կայսրությունը թշնամաբար էին տրամադրված իրար նկատմամբ։ Նապոլեոնը ջանում էր Ռուսաստանի ուշադրությունը գամել Պարսկաստանի հետ մղվող պատերազմական գործողություններին, որպեսզի կարողանար ձեռարձակ իրագործել իր նվաճողական ծրագրերը Եվրոպայում։ Մյուս կողմից՝ նրա նպատակն էր Պարսկա-

տանի և Թուրքիայի համատեղ ջանքերով թուլացնել Ռուսաստանը և դրանով իսկ իշխող դիրք ստանալ Մերձավոր Արևելքում, որը միաժամանակ շարունակում էր մնալ նաև Ֆրանսիայի ու Անգլիայի միջև եղած հակամարտությունների ընդհանուր շղթայի գլխավոր օղակներից մեկը։

Մեծ տերությունների միջև բորբոքված հակամարտությունների բովում առժամանակյա խոշոր հաջողությունների հասավ Ֆրանսիան։ 1806 թ. հունիսին Թեհրան ժամանած Նապոլեոնի գործակալ Ժոբերին հաջողվեց շահի հետ նախնական համաձայնության գալ՝ երկու երկրների միջև ռազմական դաշինք կնքելու մասին։ Նապոլեոնը միաժամանակ ուժեղացնում էր իր դիվանագիտական խարդավանքները Թուրքիայում՝ ջանալով նրան պատերազմի մեջ ներքաշել Ռուսաստանի դեմ։ Ֆրանսիայի հակառուսական քաղաքականությունը համընկնում էր թուրքական կառավարող շրջանների տրամադրություններին, որոնք առավել ակնհայտ դարձան, երբ Կոստանդնուպոլիս ժամանեց Ֆրանսիայի դեսպան, գեներալ Սեբաստիանին (1806 թ. օգոստոս)։ Ժամանելով Թուրքիա, Սեբաստիանին գործում էր Նապոլեոնի գաղտնի հրահանգով, որի համաձայն պետք է ամեն ինչ աներ, որպեսզի Թուրքիան պատերազմ սկսեր Ռուսաստանի դեմ[10]։

Նապոլեոնի անունից Սեբաստիանին սուլթանին խոստանում էր օգնել զենքով, պարենով և անգամ ռազմական ուժով։ Շուտով Կոստանդնուպոլիս են ժամանում ֆրանսիական բազմաթիվ զինվորական հրահանգիչներ, խորհրդականներ, ռազմական ամրություններ կառուցելու համար համապատասխան մասնագետներ։ Նապոլեոնը նույնիսկ ծրագրում էր հաշտեցնել Թուրքիային և Պարսկաստանին (որոնց հարաբերությունները սրված էին սահմանային տերիտորիալ վեճերի հետևանքով) և ռազմական դաշինք ստեղծել ընդդեմ Ռուսաստանի։ Այսպիսով, Թուրքիան դարձյալ կանգնեց Ռուսաստանի նկատմամբ բացահայտ թշնամական քաղաքականության ուղու վրա և կրկին հայտնվեց նրա հակառակորդների բանակում։ Կամայականորեն խախտելով 1791 թ. կնքված Յասսի հաշտության պայմանագիրը, Թուրքիան արգելեց ռուսական ռազմական նավերին անցնել Բոսֆորի և Դարդանելի նեղուցներով, սկսեց խոշոր ռազմական ուժեր կուտակել Դանուբի և Ախուրյանի ափերին, զգալիորեն ամրացրեց սահմանային բերդերը և 1806 թ. դեկտեմբերի 18 (30)-ին պաշտոնապես պատերազմ հայտարարեց Ռուսաստանին։ Սկիզբ առավ 1806—1812 թթ. ռուս-թուրքական պատերազմը, որի ժամանակ սուլթանական կառավարությունն իր առջև խնդիր էր դրել ամրապնդել թուրքական տիրապետությունը նվաճված երկրների ու ժողովուրդների վրա, գրավել ամբողջ Կովկասը և Ռուսաստանից զավթել տնտեսական ու ռազմա-ստրատեգիական կարևորություն ներկայացնող այլ շրջաններ։

Թուրքիայի հետ սկսված պատերազմը (այն տեղի էր ունենում երկու ճակատով՝ Դանուբում և Կովկասում) առավել բարդացրեց ռուսների դրությունն Անդրկովկասում։ Կամենալով թեթևացնել Կովկասում գործող ռուսական զոր-

---

10 Տե՛ս «История XIX века», под редак. *Лависа* и *Рамбо*, т. II, М., 1937, стр. 123—124.

քերի վիճակը, Ցիցիանովին փոխարինած[11] գեներալ Ի. Վ. Գուդովիչը բանակցություններ է վարում պարսկական արքունիքի հետ՝ հաշտություն կնքելու համար։ Որպես հաշտության նախապայման նա պահանջում էր Երևանի ու Նախիջևանի խանությունների միացումը Ռուսաստանին և Քուռ ու Արաքս գետերի ճանաչումը իբրև ռուս-պարսկական պետական սահմանագիծ։

Հակառակ դրան, ֆրանսիական դիվանագիտությունը Պարսկաստանում նոր հաջողությունների հասավ։ 1807 թ. մայիսի 4-ին Ֆրանսիայի ու Պարսկաստանի միջև Ֆինկենշտեյնում կնքվեց դաշնակցային պայմանագիր, որով Նապոլեոնը խոստանում էր իր օգնությունը՝ ռուսներին դուրս մղելու Վրաստանից ու Անդրկովկասի մյուս մարզերից, զենք տրամադրել Պարսկաստանին, ինչպես նաև բանակը վերակառուցելու և վարժեցնելու համար ռազմական հրահանգիչներ ուղարկել։ Պարսկաստանն իր հերթին պարտավորվում էր խզել կապերն Անգլիայի հետ, Անգլիայի ու Ֆրանսիայի միջև պատերազմ սկսվելու դեպքում զորք ուղարկել Հնդկաստան, միաժամանակ ֆրանսիական բանակին հնարավորություն տալ Պարսկաստանի վրայով անցնել Հնդկաստան։ Ֆինկենշտեյնի պայմանագիրը նախ և առաջ ուղղված էր Անգլիայի ու Ռուսաստանի շահերի դեմ։ Նա միաժամանակ ուղղված էր Անդրկովկասի ժողովուրդների ազատագրական շարժումների դեմ, որովհետև այդ պայմանագրով Նապոլեոնը «երաշխավորում էր» Պարսկաստանի տիրապետությունը Անդրկովկասում։

Ֆինկենշտեյնի պայմանագրի կնքումը ավելի թևավորեց պարսկական կառավարող շրջաններին։ Թեհրան ժամանած ֆրանսիական դեսպան գեներալ Գարդանի աջակցությամբ Ֆաթհ-Ալի շահը և Աբաս-Միրզան նախապատրաստվում էին ներխուժել Վրաստան ճիշտ այն պահին, երբ թուրքական բանակը հարձակման անցներ կովկասյան ճակատում։

Անդրկովկասում ռուսական բանակների համար ստեղծված այսպիսի աննպաստ պայմաններում գեներալ Գուդովիչը թուրքերի դեմ ռազմական ակտիվ գործողություններ սկսելու հրաման է ստանում, որպեսզի նրանց թույլ չտա Վրաստան ներխուժել։ Դրա նպատակն էր նաև թշնամուն խանգարել իր ուժերը կուտակելու պատերազմի Դանուբյան գլխավոր ռազմաճակատում։

Գործող կորպուսի հիմնական ուժերով 1807 թ. ապրիլի սկզբներին գեներալ Գուդովիչը շարժվում է դեպի Ախալքալաք-Ախալցխա, իսկ գեներալ Նեսվետաևին հրամայում է անցնել Ախուրյան գետը և գրոհել Կարսի վրա։ Նեսվետաևի զորախումբը կատարելով այդ հրամանը, մեկ շաբաթից հետո, ապրիլի 7-ին մոտենում է Կարսին։ Էրզրումի սերասքյար Յուսուֆ փաշան իր հերթին խոշոր ուժեր կուտակելով, ծրագրում է՝ սեպի պես խրվել Գուդովիչի ու Նեսվետաևի գլխավորած զորախմբերի միջև, նրանց անջատ-անջատ ջախջախել և ապա Թիֆլիս ներխուժելու ճանապարհ բացել։ Թուրքական հրամանատարության պլանը խափանելու համար գեներալ Գուդովիչը Նեսվետաևին հրամայում է նահանջել Ախուրյանի սահմանագիծը։ Ինքը ևս դադարեցնելով ռազմական գործողությունները Ախալքալաք-Ախալցխայի շրջաններում, շտապում է Ախուրյան-Գյումրի՝ միանալու Նեսվետաևին, որպեսզի միացյալ ուժերով

11 Գեներալ Ցիցիանովը սպանվեց 1806 թ. փետրվարին՝ Բաքվում։

պատնեշեն թուրքական բանակի առաջխաղացումը։ Այդ ժամանակ ռուս-թուրքական սահմանին է մոտենում նաև Աբաս-Միրզան իր 12 հազարանոց զորքով՝ նպատակ ունենալով միանալ թուրքական բանակին, համատեղ ուժերով ոչնչացնել Գուդովիչի գլխավորությամբ Գյումրի հասած ռուսական զորաբանակը և շարժվել դեպի Թիֆլիս։

Թուրքական բանակին միանալու Աբաս-Միրզայի մտադրությունը խափանելու և հակառակորդի ուժերը անջատ-անջատ ջախջախելու նպատակով հունիսի 18-ին Գուդովիչի գլխավորած զորքերը հարձակվում են թուրքական բանակի վրա։ Ախուրյանի ափին, Փոքր Ղարաքիլիսա գյուղի մոտ, տեղի է ունենում արյունալի ճակատամարտ, որին ռուսներից մասնակցում էր 7 հազար, իսկ թուրքերից՝ 20 հազար զինվոր։ Հակառակ հաղթանակի հասնելու թուրքական բանակի գործադրած բոլոր ճիգերին, ճակատամարտն ավարտվեց ռուսական կորպուսի փայլուն հաղթանակով։ Մեծ կորուստներ կրելով, թուրքական բանակը փախուստի դիմեց, իսկ դարան մտած Աբաս-Միրզան, լսելով թուրքերի պարտության լուրը, առանց մարտի մեջ մտնելու, նահանջեց դեպի Նախիջևան։ Դրանից հետո ռուս-թուրքական պատերազմը կովկասյան ճակատում գերազանցապես դիրքային բնույթ ստացավ։ Հունիսի 18-ի ճակատամարտում ռուսական կորպուսի տարած հաղթանակի շնորհիվ ոչ միայն ձախողվեց Վրաստան ներխուժելու հակառակորդի պլանը, այլև ի չիք դարձավ թուրք-պարսկական ռազմական դաշինքի կնքումը, որը բացահայտորեն խրախուսում էին Նապոլեոնի գործակալները։

Ֆրանսիայի և Ռուսաստանի միջև 1807 թ. հուլիսի 8-ին կնքված Տիլզիտի պայմանագրից հետո՝ օգոստոսին, թեպետ Ռուսաստանի և Թուրքիայի միջև կնքվեց ժամանակավոր զինադադար, սակայն Նապոլեոնի դիվանագետները Թուրքիայում շարունակում էին իրենց հակառուսական գործունեությունը և ոգեշնչում թուրքական կառավարող շրջաններին շարունակել պատերազմը։ Դրանով Նապոլեոն Բոնապարտը ձգտում էր խոչընդոտել Մերձավոր Արևելքում Ռուսաստանի ազդեցության ուժեղացմանը և թուլացնել նրա ռազմական հզորությունը։

Տիլզիտի պայմանագրի կնքումից հետո ֆրանսիական դիվանագետներն իրենց հակառուսական գործունեությունը շարունակում են նաև Պարսկաստանում։ Թեհրանում Գարդանի միսիան օգնում էր Պարսկաստանին՝ պատերազմը Ռուսաստանի դեմ շարունակելու համար։ Ֆրանսիական զինվորական ինժեներ Վերդեյը և ուրիշներ մեծ դեր խաղացին Երևանի բերդի ամրացման և նոր ամրություններ կառուցելու գործում[12]։ Այդ միսիայի վարած հակառուսական քաղաքականության արտահայտությունն էր և այն, որ 1808 թ. մարտին, երբ Գուդովիչը փոխգնդապետ Վրեդեին ուղարկեց Պարսկաստան՝ Ֆաթհ-Ալի շահի և Աբաս-Միրզայի հետ վերսկսելու հաշտության բանակցությունները, Գարդանը բացահայտորեն սկսեց գործել հօգուտ Պարսկաստանի։ Նա առաջարկում է ժամանակավոր զինադադար կնքել, իսկ հաշտության բանակցությունները փոխադրել Փարիզ և որպես բանակցությունների վերսկսման նախապայման, կողմերից պահանջում էր իրենց զինված ուժերը ետ քաշել մինչպատե-

---

[12] Տե՛ս АКАК, т. III, 1869, стр. 254.

բաղմյան սահմանագիծը։ Օգտվելով Ֆրանսիայի բռնած դիրքից, պարսկական կառավարությունը մերժեց ռուսների հաշտության առաջարկը և, պատերազմական գործողությունները Վրաստան փոխադրելու համար, սկսեց եռանդուն նախապատրաստություններ տեսնել։

Դիվանագիտական ճանապարհով ռուս-պարսկական սահմանագծի հարցը լուծելու բոլոր հույսերը սպառված համարելով, ռուսական հրամանատարությունը որոշում է նոր արշավանք կազմակերպել, գրավել Երևանի ու Նախիջևանի խանությունները և պարսկական արքունիքին հարկադրել Արաքս ու Քուռ գետերը ճանաչել իբրև ռուս-պարսկական սահմանագիծ։ Այդ խնդրի իրագործման նպատակով որոշ զորամասեր թողնելով Շորագյալի ու Փամբակի գավառների պաշտպանության համար, կորպուսի հիմնական ուժերով (6000 զորքով և 12 դաշտային թնդանոթներով) 1808 թ. սեպտեմբերի 25-ին ֆելդմարշալ Գուդովիչը Ապարանի վրայով շարժվեց դեպի Երևան։

Սեպտեմբերի 26-ին ռուսական զորաբանակը գրավում է Ապարանը և փախուստի մատնում պարսկական առաջապահ ուժերին։ Ստանալով այդ լուրը, Երևանի նոր սարդար Հյուսեին-Ղուլի խանը չորս հազար հեծյալներով դուրս է գալիս Գուդովիչի գլխավորած զորքերին ընդառաջ։ Ռուսական կորպուսի և Հյուսեին-Ղուլի խանի հեծելազորի միջև Աշտարակի մոտ սեպտեմբերի 29-ին տեղի է ունենում կատաղի ճակատամարտ, որն ավարտվում է ռուսների հաղթանակով։ Պարսկական հեծելազորը, կրելով խոշոր կորուստներ, նահանջում է դեպի Երևան, իսկ Գուդովիչի զորաբանակը սեպտեմբերի 30-ին գրեթե առանց դիմադրության հանդիպելու գրավում է Էջմիածինը։ Ռուսական զորքին ջերմ ընդունելություն են ցույց տալիս տեղի հայերը։ Հոկտեմբերի 3-ին ռուսական զորաբանակը շարժվում է առաջ և ճամբար դնում Երևանի բերդից մոտ երեք կիլոմետր հեռավորության վրա։ Իսկ Հյուսեին-Ղուլի խանը Երևանի բերդի պաշտպանությունը հանձնելով եղբորը՝ Հասան խանին, ինքը հեծյալ մի ջոկատով հեռանում է Գառնի-չայի շրջակայքը, թիկունքից ռուսական զորքերին հարվածելու նպատակով։ Կոտրելով հակառակորդի դիմադրությունը, ռուսական առաջապահ զորամասերը հոկտեմբերի 9-ին մոտենում են Երևանին և պաշարում բերդը[13]։

Դեռևս Երևանյան արշավանքի սկզբին Ղարաբաղում գտնվող գեներալ-մայոր Նեբոլսինի գլխավորած զորագունդը Գուդովիչի հրամանով շարժվում է դեպի Նախիջևան, խնդիր ունենալով գրավել այն և փակել Երևան տանող ճանապարհը, Ֆաթհ-Ալի շահին և Աբաս-Միրզային զրկելով Երևանի սարդարին օգնական ուժեր ուղարկելու հնարավորությունից։ Նեբոլսինի զորագունդը հաջողությամբ կատարեց այդ առաջադրանքը։ Հոկտեմբերի 28-ին, Նախիջևանից 18 կիլոմետր հեռավորության վրա, Ղարաբաբա գյուղի մոտ, ռուսական զորագունդը հաղթական ճակատամարտ տվեց Աբաս-Միրզայի զորքերին։ Այդ հաղթանակը նրա առաջ բացեց Նախիջևան տանող ճանապարհը։ Ղարաբաբայի ճակատամարտից երեք օր հետո, նոյեմբերի 1-ին գեներալ Նեբոլսինի զորագունդը, առանց լուրջ դիմադրության հանդիպելու, գրավում է Նախիջևանը։ Երևանի մոտ Գուդովիչի և Նախիջևանում Նեբոլսինի գլխավորած զորքերի հա-

13 Տե՛ս ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. ՌԳԱ, գ. 4265, թ. 4—16։

ջողությունները նպաստավոր պահ ստեղծեցին Երևանը գրավելու համար։ Սակայն պաշարելով Երևանի բերդը, Գուդովիչը թանկագին ժամանակը վատնեց Հասան խանի հետ վարած անօգուտ գրագրության վրա՝ հույս ունենալով, որ կհաջողվի բերդին տիրել առանց արյունահեղության։

Ձեռքից բաց թողնելով նպաստավոր պահը, Գուդովիչը միայն նոյեմբերի 17-ին գրոհեց Երևանի բերդի վրա։ Սակայն հանդիպելով հակառակորդի համառ դիմադրությանը, նա համոզվեց, որ այլևս անկարող է շարունակել բերդի պաշարումը։ Դրությունն ավելի էր լրջանում այն պատճառով, որ Փամբակի լեռնանցքն արդեն ծածկվել էր ձյունով և Վրաստանից կտրվելու իրական վտանգ էր ստեղծվել։ Բացի այդ, արդեն սպառվում էին անհրաժեշտ զինամթերքի, հանդերձանքի ու սննդամթերքի պաշարները։ Այս ամենը հարկադրեցին ֆելդմարշալ Գուդովիչին նոյեմբերի 30-ին նահանջի հրաման արձակել։ Դեկտեմբերի 1-ին գեներալ Նեբոլսինի զորագունդը նույնպես թողեց Նախիջևանը։

Այսպիսով, 1808 թ. սեպտեմբեր—նոյեմբեր ամիսներին ռուսական կորպուսին հաջողվեց գրավել Երևանի ու Նախիջևանի խանությունների գրեթե ողջ տերիտորիան, բացառությամբ Երևանի բերդի, որը մոտ երկու ամիս մնաց պաշարված։ Սակայն կռվող կողմերի ուժերի անհավասարությունը, Երևանը Թիֆլիսին կապող ճանապարհների փակման սպառնալիքն ու Վրաստանը երկար ժամանակ անպաշտպան թողնելու վտանգը կորպուսի հրամանատարությանը հարկադրեց առժամանակ հրաժարվել Երևանյան երկրորդ արշավանքի ընթացքում ձեռք բերած հաջողություններից։

Երևանի գրավման անհաջողությունը թանկ նստեց Գուդովիչին։ Նա հեռացվեց Վրաստանի կառավարչապետի և Կովկասում ռուսական զորքերի հրամանատարի պաշտոնից։ Նրան փոխարինեց գեներալ Տորմասովը։

## 3. ՀԱՅԵՐԻ ՄԱՍՆԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՏԵՐԱԶՄԱԿԱՆ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՆ

Ռուս-պարսկական առաջին պատերազմում ռուսական զորքերին ռազմական, նյութական ու բարոյական զգալի օգնություն ցույց տվեց հայ ժողովուրդը, որն իր ազատագրման հեռանկարները կապում էր ռուսական զենքի հաղթանակի հետ։ Հայերը ռուսական բանակներին օգնություն էին ցույց տալիս տարբեր ձևերով ու մեթոդներով։ Նախ և առաջ կարևոր նշանակություն ունեցավ հայերի ռազմական օգնությունը։ Պատերազմի հենց սկզբից, սեփական նախաձեռնությամբ, նրանք կազմակերպեցին աշխարհազորային ջոկատներ, որոնք պաշտպանում էին իրենց բնակատեղերը, ինչպես նաև մասնակցում ռուսական զորքերի հարձակողական մարտերին։

1804 թ., երբ սկսվեց ռուսական զորքերի արշավանքը դեպի Երևան, նրանց միացավ 100 հեծյալներից կազմված հայկական աշխարհազորային մի ջոկատ։ Սա մասնակցեց 1804 թ. հունիսի 10-ին պարսկական բանակի դեմ Ախուրյանի ափին մղված ճակատամարտին։ Այդ ջոկատը մնաց ռուսական առաջապահ զորքերի շարքում և մասնակցեց Երևանի առաջին պաշարմանը։

Երևանի 1804 թ. պաշարման ժամանակ ռուսական կորպուսին մեծ օգնություն ցույց տվեց Գյուլիստանի (հետագայում Բոլնիսում հաստատված)

Մելիք-Աբովի որդու՝ Ռոստոմ բեկի գլխավորած հայկական հեծյալ ջոկատը։ Նրա օգնությունը մեծ եղավ հատկապես Երևանի բերդի պաշարման օրերին՝ Փամբակ-Ապարանի վրայով զինամթերքով բարձած ռուսական գումակները անվտանգ Երևան հասցնելու գործում։ Այդ մասին ռուսական կորպուսի 1804 թ. հուլիսի 14-ի ռազմական գործողությունների օրագրում ասված է. «Այսօր Փամբակից տեղ հասավ գումակը՝ արկերով. կապիտան Ստեպկովը վրկայում է, որ իր արշավախմբի հաջողության մեջ գլխավոր օգնական է եղել Մելիք-Աբովի որդի հայ իշխան Ռոստոմ բեկը»[14]։ Ռոստոմ բեկի ջոկատը հետագայում ևս մի քանի անգամ նույնպիսի օգնություն ցույց տվեց Երևանը պաշարած ռուսական զորամասերին՝ Փամբակ—Ապարանի վրայով զենք ու զինամթերք փոխադրող գումակների պահակախմբերին։ Վերջին անգամ, նույնպիսի հանձնարարություն կատարելու ժամանակ, Փամբակի կիրճերում նա ենթարկվեց պարսկական մի խոշոր զորախմբի հանկարծակի հարձակմանը։ Ռոստոմ բեկի ջոկատը մի ամբողջ օր հերոսական կռիվ մղեց թշնամու գերակշռող ուժերի դեմ։ Անհավասար մարտում ընկավ հայ աշխարհազորայինների մեծ մասը։ Ջոկատի հրամանատար Ռոստոմը մի քանի տեղից վիրավորվեց, բայց շարունակեց անձնազոհ կռվել։ Ծանր վիրավոր վիճակում նա գերվեց և շղթայակապ ուղարկվեց Թավրիզի բանտը, որտեղ և դաժան խոշտանգումներից հետո սպանվեց Աբաս-Միրզայի դահիճների ձեռքով[15]։

Ռուս-պարսկական պատերազմի առաջին իսկ օրերից Բորչալուում, Ղազախում և Շամշադինում պարսիկ խաների հրոսակախմբերի դեմ քաջաբար կռվում էր Գրիգոր Մանուչարյանի գլխավորած՝ 500 հայ հեծյալներից կազմված աշխարհազորային ջոկատը[16]։ Նա մեծ դեր խաղաց Ղազախ—Շամշադինի և Բորչալուի շրջանների հայկական ու ադրբեջանական շատ գյուղեր պարսկական հրոսակախմբերի հարձակումներից ու ավարառություններից պաշտպանելու գործում։ Գ. Մանուչարյանի ջոկատը հաճախ խոր անցումներ էր կատարում հակառակորդի թիկունքը, մարտի բռնվում նույնիսկ պարսկական կանոնավոր բանակի զորամասերի հետ և գերությունից ազատում բազմաթիվ հայ ընտանիքներ։ Աշխարհազորային այդ ջոկատն իր մասնակցությունը բերեց նաև ռուսական բանակի հարձակողական գործողություններին։ Նա մասնակցեց Գյանջայի գրավմանը, ինչպես նաև գեներալներ Ցիցիանովի ու Գուդովիչի գլխավորած Երևանյան արշավանքներին։ Այս արշավանքների ժամանակ ռուսական զորքերին ցույց տված օգնության համար Գ. Մանուչարյանը պարգևատրվեց Գեորգիևյան խաչով և Վլադիմիրի ու Աննայի շքանշաններով[17]։ 1804 թ. աշնանը, երբ պարսկական զորամիավորումները փորձում էին ներխուժել Փամբակ-Լոռի, տեղի հայերը կազմում են աշխարհազորային ջոկատներ, միանում ռուսական կայազորներին և անձ-

14 Տե՛ս ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. ՌԳԱ, գ. 4258, մ. II, թ. 56։

15 Տե՛ս Լեո, Նոր նյութեր 19-րդ դարու պատմության համար («Նոր ուղի» հանդես, գիրք 1, Երևան, 1932, էջ 127—128)։

16 ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. ՌԳԱ, գ. 894, թ. 39։

17 Տե՛ս Ա. Երիցյան, Ամենայն հայոց կաթողիկոսությունը և Կովկասի հայք XIX դարում, մասն Ա, Թիֆլիս, 1894, էջ 244—245։

նազոհ դիմագրավում պարսկական զորքերի առաջխաղացմանը։ 1804 թ. նոյեմբերին Փամբակի ավելի քան 13 հայկական գյուղերի շատ բնակիչներ միանում են ռուսական զորամասերին և ձախողում Ղարաքիլիսան գրավելու թշնամու բոլոր փորձերը։ Այդ նույն ամիսներին Լոռի-Փամբակում աչքի ընկավ նաև 50 հեծյալ հայերից կազմված մի այլ ջոկատ, որի հրամանատարությունը զոհված որդու փոխարեն իր ձեռքն էր վերցրել քաջակորով ծերունի Մելիք-Աբովը[18]։

Հայ աշխարհազորային ջոկատները ռուսական զորամասերին օգնում էին նաև Ղարաբաղում։ 1806 թվականին Ղարաբաղում պարսկական բանակների դեմ մղվող կռիվներում աչքի ընկավ Մելիք-Ջումշուդ Շահնազարյանի և Մեհտի-Ղուլի խանի գլխավորած հեծյալ հայերից և ադրբեջանցիներից կազմված ջոկատը[19]։ Մինչև պատերազմի վերջը նա մնաց գեներալ-մայոր Ներոլսինի զորագնդի կազմում և մասնակցեց Ասկարանի ու մի շարք այլ հաղթական ճակատամարտերի։

Բարձր գնահատելով Մելիք-Ջումշուդ Շահնազարյանի հրամանատարական հմտությունն ու մատուցած ծառայությունները, ֆելդմարշալ Գուդովիչը ռուսական բանակի գլխավոր շտաբին զեկուցագիր է ներկայացնում նրան փոխգնդապետի աստիճան շնորհելու մասին։

1811—1812 թթ. Զանգեզուրում նույնպես կազմակերպվում են աշխարհազորային ջոկատներ, որոնք ոչ միայն պարսկական զորախմբերի հարձակումներից արիաբար պաշտպանում էին իրենց գյուղերը, այլև հաճախ մասնակցում ռուսական զորքերի գործողություններին։ Այսպես, գեներալ Տորմասովը 1811 թ. մարտի 3-ին ռազմական մինիստրին ուղարկած զեկուցագրով հաղորդում է, որ Մեղրիի մոտ տեղացի հայ աշխարհազորայինները Եգերական 17-րդ գնդի վաշտերից մեկի ու 27 հեծյալ կազակների հետ համատեղ մարտեր մղեցին գյուղը ներխուժելու փորձ կատարող պարսկական զորախմբի դեմ։ Կռվի ժամանակ ռուսներից սպանվում է 25, իսկ հայերից՝ 8 մարդ, բայց թշնամին հարկադրված է լինում դիմել փախուստի[20]։ 1812 թ. հունիսին Զանգեզուրում՝ Խնձորեսկ գյուղի մոտ, հայերից և ադրբեջանցիներից կազմված աշխարհազորային ջոկատը, միանալով ռուսական զորագնդին, հաղթական ճակատամարտ մղեց երկու հազար պարսիկ զինվորների դեմ։ Գեներալ Ռտիշչևը 1812 թ. հուլիսի 27-ին իշխան Գորչակովին ուղարկած զեկուցագրում հաղորդում էր, որ հուլիսի 12-ին Եգերական 17-րդ գնդի ջոկատին միանալով՝ 65 զինված հայեր Խնձորեսկ գյուղի մոտ մարտ մղեցին գյուղը կողոպտելու փորձ կատարող սարբազների դեմ՝ հարկադրելով նրանց դիմել փախուստի[21]։ Կան բազմաթիվ ուրիշ փաստեր ևս, որոնք վկայում են այդ տարիներին Զանգեզուրում պարսկական զորքերի դեմ հայ աշխարհազորայինների և ռուսական զորամասերի համատեղ ռազմական գործողությունների մասին։

---

18 Տե՛ս ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. ՌԳԱ, գ. 4259, մ. V, թ. 53—54։

19 Նույն տեղում, գ. 4263, թ. 61։

20 Տե՛ս նույն տեղում, գ. 4258 (B), էջ 374—375։

21 Նույն տեղում, գ. 4259, մաս II, թ. 100—102։

Շատ հայեր, որպես ռազմական հետախույզներ ու կապավորներ, օժանդակում էին ռուսական զորքերին։ Հայ սուրհանդակների միջոցով կապ էր հաստատվում հակառակորդի կողմից պաշարված ռուսական կայազորների և մոտակա զորամասերի միջև։ Հաճախ էլ նրանց ուղեկցությամբ ռուսական զորամասերը հայտնվում էին պարսկական զորաբանակների թիկունքում և հանկարծակի գրոհում վերջիններիս վրա։ Ռուս-պարսկական առաջին պատերազմի ժամանակ հայ սուրհանդակներից իրենց համարձակությամբ ու խիզախությամբ աչքի ընկան Երևանում՝ Հարություն Բաբիջանյանը, Ղարաբաղում՝ Մելիք-Վանի ու Հակոբ-յուզբաշի Աթաբեկյան եղբայրները և ուրիշները։

Աբաս-Միրզայի մեծաքանակ բանակի առաջապահ ուժերը (10 հազար սարբազ) Փիր-Ղուլի խանի գլխավորությամբ 1805 թ. հունիսին, անցնելով Արաքս գետը, շարժվում են դեպի Շուշի, որի պաշտպանությունը հանձնված էր Լիսանևիչի սակավաթիվ գումարտակին։ Շուշիի պաշտպաններին օգնության է շտապում գնդապետ Կարյագինի 400 մարդուց կազմված գումարտակը։ Սակայն հունիսի 24-ին, Շուշիից 25 վերստ հեռավորության վրա, Ասկարանի կիրճում, Կարյագինի գումարտակի ճանապարհը փակում է պարսկական բանակը։ Կողմերի ուժերը խիստ անհավասար էին։ Փիր-Ղուլի խանին օգնության է հասնում Աբաս Միրզայի 30 հազարանոց բանակը, և Կարյագինը շտապում է իր գումարտակի ծանր վիճակի մասին տեղյակ պահել Շուշիի կայազորին։ Այդ պարտականությունն իր վրա է վերցնում ռուսական գումարտակում կամավոր ծառայության մտած ղարաբաղցի Վանի Աթաբեկյանը։ Հունիսի 25-ի գիշերը, պարսիկներից աննկատ, նա հեռանում է ռուսական ճամբարից և, հասնելով մոտակա հայկական գյուղը, տեղի հայերի միջոցով Կարյագինի նամակը ուղարկում է Լիսանևիչին, իսկ ինքը նույն գիշերը վերադառնում գումարտակ։ Այնուհետև Վանի Աթաբեկյանի առաջնորդությամբ ռուսական գումարտակը թշնամուց գաղտնի հեռանում է և ամրանում Շահ-Բուլաղ բերդում։ Շահ-Բուլաղը գրավելու Աբաս-Միրզայի բոլոր փորձերն ապարդյուն են անցնում, ուստի նա որոշում է երկար ժամանակ պաշարել բերդը և, սովի մատնելու սպառնալիքի տակ, ռուս զինվորներին հարկադրել անձնատուր լինել։ Ստեղծված այս ծանր պայմաններում ռուսական գումարտակին դարձյալ օգնության է գալիս Վանի Աթաբեկյանը։ Վերցնելով գեներալ Ցիցիանովին հասցեագրված Կարյագինի նամակը, նա դարձյալ հաջողությամբ դուրս է գալիս թշնամու օղակումից և հասնում Շահ-Բուլաղից 20 վերստ հեռավորության վրա գտնվող իր հայրենի Կուսապատ գյուղը։ Կրտսեր եղբոր՝ Հակոբ Աթաբեկյանի միջոցով Վանին այդ նամակն ուղարկում է Ելիսավետպոլ, իսկ հաջորդ գիշերը վերադառնում գումարտակ, սովի մատնված զինվորների համար տանելով հաց և այլ սննդամթերքներ[22]։

Հույսը կտրելով օժանդակ ուժեր ստանալուց և մերժելով անձնատուր լինելու մասին պարսկական հրամանատարության առաջարկը, հուլիսի 7-ի

[22] *В. Потто*, Первые добровольцы Карабага в эпоху водворения русского владычества (*այսուհետև՝ В. Потто,* Первые добровольцы Карабаха...), Тифлис, 1902, стр. 24.

գիշերը, Վանի Աթաբեկյանի ուղեկցությամբ, Կարյագինի գումարտակը թըշնամուց աննկատ հեռացավ Շահ-Բուլաղից և դուրս եկավ պարսկական զորաբանակի շրջապատումից։

Վանի Աթաբեկյանի ծառայությունների մասին գնդապետ Ասեևի տված 1811 թ. հունիսի 16-ի վկայականում ասված է. «Տրվում է սույնը Ղարաբաղի տիրույթի հայերից յուզբաշի Ավանեսին առ այն, որ նա իմ նախորդի՝ գնդապետ Կարյագինի, նույնպես և մինչև իմ ժամանումը... գնդապետ Լիսանևիչի հրամանատարության օրոք... Ինչպես և Կոտլյարևսկու օրոք, և ապա՝ 1807 թ. մինչև սույն 1811 թվականը, իմ օրոք, ի պաշտոնե նրա վրա դրված... հանձնարարությունները կատարել է իբրև անձնուրաց հպատակ՝ գերազանց եռանդով ու ջերմեռանդությամբ։ Շատ անգամ է նա իր ստորադրյալներին ուղարկել Պարսկաստանի խորքը՝ իմանալու թշնամու բոլոր մտադրությունների և ուժգնությունների մասին և այդպիսով, ինձ միշտ բերել է ճշգրիտ տեղեկություններ։ Հատկապես ամենավտանգավոր ժամանակներին նա օժանդակում էր հրամանատարությանը՝ գրություններ տանելու և բերելու գործում»[23]։

Երևանյան առաջին և երկրորդ արշավանքների ժամանակ ռուսական զորքը շարունակ պարենի և կենսամթերքի պակաս էր զգում։ Դա պետք է բացատրել ոչ միայն ցարական բանակի հրամանատարության ապաշնորհությամբ, այլև Թիֆլիսից Երևան տանող ճանապարհների ու փոխադրամիջոցների անկանոնությամբ։ Բացի այդ, պատերազմական գործողությունների ամբողջ ընթացքում պարսկական զինված հրոսակախմբերը հետապնդում էին Թիֆլիսից Երևան շարժվող ռուսական գումակներին և կողոպտում նրանց։ Այս ամենի հետևանքով պարենային ծանր վիճակի մեջ ընկած ռուսական զորքերի բախտը մեծապես մտահոգում էր տեղի հայերին։ Ժամանակակից Ե. Խուբովը գրել է. «Ռուսները պաշարեղենի պակաս էին զգում... Ձիերը մնում էին առանց կերի։ Հայերը անհանգստանում էին իրենց կրոնակիցների այդ դժբախտությունից»[24]։ Եվ չնայած պարսիկ խաները կողոպտել էին հայերին, բայց նրանք իրենց վերջին պաշարից անգամ բաժին էին հանում ռուս զինվորներին։ Նյութապես նրանց օգնելու ցանկությունն այնքան մեծ էր, որ նույնիսկ Երևանի բերդում որպես պատանդներ պահված հայերը սուրհանդակների միջոցով գաղտնի նամակներ էին գրում ռուսական կորպուսի հրամանատարությանը, հայտնում էջմիածնում և Երևանում պահած հացահատիկի սեփական հորերի տեղը և հոժարակամ այն դնում ռուսական զորքի տրամադրության տակ։

Ռուսական զորամասերին պարենային զգալի օգնություն ցույց տվեց նաև էջմիածնի վանքը։ Ըստ արխիվային փաստաթղթերի վկայության, վանքը միայն 1804 թ. Երևանի բերդը պաշարած ռուսական զորքերին իր միջոցներից տվել է՝ 2175 սոմար ցորեն, 1000 սոմար ալյուր, 300 սոմար ձավարեղեն[25] և այլ կենսամթերքներ։

---

23 Նույն տեղում, էջ 38—39։

24 *Е. Хубов*, Описание достопамятных происшествий в Армении с 1779 до 1809 года, СПб., 1811, стр. 60.

25 ՏԵ՛ս Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 15, վավ. 85։

Արարատյան դաշտի, Շորագյալի ու Փամբակի գյուղացիները, նույնիսկ պատերազմական գործողությունների ամենաթեժ պահին դուրս էին գալիս դաշտ, հնձում հացահատիկի արտերը, հավաքում այգիների բերքը և առատ բաժին հանում ռուսական զորամասերին։ Շամշադինի, Բորչալուի, Ղազախի, Լոռու, Փամբակի և Շորագյալի շրջանների գյուղացիները մեծ սիրով ռուսական հրամանատարությանը տրամադրում էին սայլեր, ձիեր, եզներ և այլ փոխադրական միջոցներ՝ դեպի Երևան զենք, զինամթերք և պարեն փոխադրելու համար։ Շատ հայեր պատերազմի դաշտից հավաքում, իրենց տներն էին տանում ռուս վիրավոր զինվորներին և սպաներին ու հոգատարությամբ ապաքինում նրանց վերքերը։

Ռուսական զորքերին հայերի ցույց տված բազմակողմանի օգնությունը պետք է դիտել որպես հայ ժողովրդի ազատագրական շարժման արտահայտություններից մեկը։ Այդ միաժամանակ վկայում է, որ իրենց ազատագրության համար մարտնչող հայ ժողովրդական զանգվածները լուրջ ակնկալություններ ունեին Ռուսաստանից և ձգտում էին թշնամու դեմ իրենց մղած պայքարը միաձուլել ռուսական զենքի հաղթանակին։

## 4. ԳՅՈՒԼԻՍՏԱՆԻ ՀԱՇՏՈՒԹՅՈՒՆԸ

Տիլզիտի պայմանագրի կնքումից հետո Թուրքիայում և Պարսկաստանում սկսեց փոխվել մեծ տերությունների ուժերի հարաբերակցությունը։ Հետզհետե ի չիք դարձավ 1807 թ. Ֆինկենշտեյնում կնքված պարսկա-ֆրանսիական դաշինքի նշանակությունը։ Անգլիան Թուրքիայում և Պարսկաստանում աստիճանաբար ուժեղացրեց իր ազդեցությունը։ Անգլո-թուրքական մերձեցումն ավարտվեց նրանց միջև «հաշտության և բարեկամության» պայմանագրի կնքումով (1809 թ. հունվարի 5)։

Ի հաշվեկշիռ Ֆրանսիայի, Անգլիայի ազդեցությունը գնալով ուժեղացավ նաև Պարսկաստանում։ 1809 թ. մարտի 12-ին Անգլիայի և Պարսկաստանի միջև կնքվեց դաշնակցային «նախնական պայմանագիր»։ Այդ պայմանագրով Անգլիան Պարսկաստանին խոստանում էր ֆինանսական ու ռազմական օգնություն և հրահրում էր շարունակել Ռուսաստանի դեմ մղվող պատերազմը։ Անդրադառնալով այդ շրջանի անգլո-պարսկական հարաբերություններին, Վ. Ի. Լենինը գրել է. «...Անգլիան մի հատուկ դեսպան է ուղարկում Պարսկաստան. նա Պարսկաստանին օգնում է Ռուսաստանի դեմ նրա վարած պատերազմում»[26]։ Նույնիսկ անգլիական բուրժուական պաշտոնական պատմագրության ներկայացուցիչները, որոնք միտումնավոր կերպով են ներկայացրել ռուս-պարսկական հարաբերությունների պատմությունը, երբեմն հարկադրված են եղել խոստովանել, որ Անգլիան ֆինանսական ու ռազմական օգնություն խոստանալով Պարսկաստանին՝ պատերազմի է հրահրել Ռուսաստանի դեմ[27]։ Այսպիսով, 1809 թ. հունվարին կնքված անգլո-թուրքական և 1809 թ. մարտին

---

[26] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 39, էջ 889։

[27] *P. Sykes*, A History of Persia, vol. II, London, 1951, էջ 405։

կնքված անգլո-պարսկական պայմանագրերը մեծապես ուժեղացրին Անգլիայի ազդեցությունը Թուրքիայում և Պարսկաստանում։

Անգլիայի վարած հակառուսական քաղաքականությունը հանգեցրեց այն բանին, որ Թուրքիան, խախտելով 1807 թ. օգոստոսին կնքած զինադադարը, 1809 թ. ապրիլի վերջերին վերսկսեց պատերազմը Ռուսաստանի դեմ։ Պարսիկներն իրենց հերթին 1809 թ. ամռանը մեծ չափով ակտիվացրին ռազմական գործողությունները։

Ստեղծված ծանր պայմաններում ռուսները փորձեցին վերսկսել բանակցությունները Պարսկաստանի հետ հաշտություն կնքելու համար (1810 թ. փետրվարին՝ Թավրիզում և ապրիլին՝ Ասկարանում)։ Սակայն անգլիական դիվանագետները դարձյալ միջամտեցին և ձախողեցին դրանք։ Զենքի և զինամթերքի լրացուցիչ պաշարներ ուղարկելով Պարսկաստան, Անգլիան նրան մղեց հարձակողական նոր գործողությունների։ Երևանի սարդար Հյուսեին-Ղուլի խանը տասը հազարանոց զորքով շարժվում է դեպի Ախալքալաք, որպեսզի միանա թուրքական բանակին՝ Վրաստան ներխուժելու համար։ Պարսկական մի այլ բանակ շարժվում է Շորագյալ—Փամբակ, իսկ Աբաս-Միրզայի մեծաքանակ զորքը բռնեց Ղարաբաղի ճանապարհը։

Չնայած Պարսկաստանին ցույց տված Անգլիայի ֆինանսական օգնությանը, տրամադրված զենքին ու զինամթերքին, ինչպես նաև պարսկական բանակը վարժեցնող անգլիական հրահանգիչների ջանքերին, ռազմական գործողությունները կրկին ընթացան հօգուտ ռուսական կորպուսի։ 1810 թ. ամռանը Պ. Ս. Կոտլյարևսկու զորագունդը գրավեց Մեղրին, ապա, հանկարծակի գրոհելով Աբաս-Միրզայի ճամբարը, նրան պարտության մատնեց և հարկադրեց զորքերը դուրս բերել Ղարաբաղից։ 1810 թ. սեպտեմբերի 5-ին գեներալ Պաուլուչչիի զորագունդը Ախալքալաքի մոտ սրընթաց գրոհով մխրճվեց Երևանի Հյուսեին-Ղուլի խանի զորաբանակի շարքերը, պարտության մատնեց նրան և ստիպեց նահանջել։ Շիրակում և Փամբակում սահմանապահ ռուսական զորքերը, հայկական աշխարհազորային ջոկատների հետ միասին, նույնպես հաջողությամբ ետ մղեցին պարսկական զորախմբերի բոլոր գրոհները։

Պարսկական բանակի 1810 թ. անհաջողություններից հետո Անգլիան էլ ավելի է ուժեղացնում օգնությունն իր դաշնակցին։ Պարսկաստան են ուղարկվում 12 հազար հրացան, 22 թնդանոթ և այլ սպառազինություններ[28]։ Անգլիական սպաները վերակազմում և վարժեցնում են պարսկական բանակը, նրան նախապատրաստում հարձակողական նոր գործողությունների համար։ Անգլիական դիվանագետները կապեր են հաստատում նաև Պարսկաստանում գտնվող վրաց արքայազն Ալեքսանդրի և Անդրկովկասում իշխանությունները կորցրած ու Պարսկաստանում ապաստանած խաների հետ, հրահրում նրանց ապստամբություններ սկսելու ռուսական բանակի թիկունքում։ Վրաստանի կառավարչապետ և զորքերի հրամանատար գեներալ Տորմասովը 1811 թ. ռազմական գործերի մինիստրին հաղորդում էր, որ ռուսական թիկունքում անդրկովկասյան զանազան մանր-մունր իշխաններին «...պարսկական կառավարությունը,

[28] АКАК, т. IV, Тифлис, 1870, стр. 761, т. V, стр. 177.

*անգլիական ոսկու օգնությամբ, դրդում է խռովությունների և ապստամբությունների...»*[29]։ *Այս ամենից ոգեշնչված, պարսկական բանակները 1811 թ. ամռանը նորից ներխուժեցին Ղարաբաղ, սակայն հանդիպելով ռուսական զորքերի և տեղի բնակչության համառ դիմադրությանը, նահանջեցին դեպի Նախիջևան։*

*Ռուսական զորքերը խոշոր հաջողության հասան նաև թուրքական ճակատում։ 1809 թ. նրանք գրավեցին Փոթին, 1810 թ. Սուխումը, իսկ 1811 թ. դեկտեմբերի 8 (20)-ին Կոտլյարևսկու զորագունդը կայծակնային գրոհով գրավեց Ախալքալաքի բերդը։ Ռազմական այս գործողությունների ժամանակ ռուսական զորքերին մեծ օգնություն ցույց տվեցին հայ, վրացի, ադրբեջանցի և աբխազ աշխարհազորայինները։*

*Ռուսները առավել խոշոր հաջողությունների հասան Դանուբյան ռազմաճակատում։ Մ. Ի. Կուտուզովի գլխավորությամբ ռուսական բանակը 1811 թ. հունիսի 22-ին Ռուշչուկի տակ հաղթական ճակատամարտ տվեց թուրքերի դեմ, ապա դիմեց ռազմական խորամանկության։ Կուտուզովը թողեց Ռուշչուկը և իր բանակը ետ քաշեց Դանուբի ձախ ափը, որպեսզի թուրքական գլխավոր ուժերը դուրս բերի Դանուբի ձախ ափը, ապա շրջապատի և ոչնչացնի։ Թուրքական բանակի գլխավոր հրամանատար Ահմադ-բեյը ռուսական բանակի անցումը Դանուբի ձախ ափը համարեց նրա թուլության արդյունք և, Ռուշչուկի ճամբարում թողնելով 20 հազար զորք, մնացած 35 հազարով անցավ Դանուբը՝ ռուսական բանակը ջախջախելու ակնկալությամբ։ Կուտուզովն անհապաղ ձեռնամուխ եղավ իր պլանի իրագործմանը։ Նա 20 հազար զորքով պաշարեց թուրքական գլխավոր ուժերը, իսկ 7 հազար արագաշարժ զորք գեներալ Մարկովի հրամանատարությամբ աննկատ անցկացրեց Դանուբի աջ ափը։ Հոկտեմբերի 2-ին Մարկովի զորաբանակը թիկունքից հարձակվելով թուրքական ճամբարի վրա, նրան կտրեց արտաքին աշխարհից։ Նոյեմբերի 26-ին թուրքական այդ խմբավորումը անձնատուր եղավ։ Կուտուզովն իր հերթին անցնելով հարձակման, ջախջախում է Դանուբի ձախ ափն անցած 35 հազարանոց թուրքական խմբավորումը։ Զրկվելով Դանուբյան բանակից, Թուրքիան այլևս անկարող էր շարունակել պատերազմը, ուստի հաշտություն խնդրեց։*

*Ռուսական կառավարությունը նույնպես շահագրգռված էր հաշտություն կնքելու ինչպես Թուրքիայի, այնպես էլ Պարսկաստանի հետ, որովհետև ռուսֆրանսիական հարաբերությունները մեծապես լարվել էին և մոտալուտ էր նապոլեոնյան բանակի ներխուժումը Ռուսաստան։ Թուրքիայի և Պարսկաստանի հետ հաշտության կնքումը Ռուսաստանին հնարավորություն կտար իր բոլոր ուժերն ուղղել Ֆրանսիայի դեմ՝ դիմագրավելու նապոլեոնյան ագրեսիային։*

*Թուրքիայի հետ սկսված հաշտության բանակցությունները հաջողությամբ պսակվեցին։ 1812 թ. մայիսի 16 (28)-ին Բուխարեստում հաշտության պայմանագիր ստորագրվեց*[30]։ *Ռուս-թուրքական պետական սահման ճանաչվեցին*

---

[29] АКАК, т. IV, стр. 756.

[30] *Տե՛ս* «Договоры России с Востоком, политические и торговые», собрал и издал Т. Юзефович, СПб., 1869, стр. 49—58. *(Այսուհետև՝* „Договоры России с Востоком..."*)*;

Արևմուտքում՝ Պրուտ, Անդրկովկասում՝ Ախուրյան գետերը։ Ռուսաստանին միացվեց Բեսարաբիան՝ Խոտին, Բենդեր, Աքքերման, Կիլյա և Իզմայիլ բերդերով, իսկ Կովկասում Ախալքալաքը վերադարձվեց թուրքերին։ Բուխարեստի պայմանագրով իրավունք վերապահվեց ռուսական առևտրական նավերին ազատ նավարկելու Դանուբի ամբողջ հոսանքով։ Թուրքիան պարտավորվեց պահպանել Յասսի պայմանագրով Մոլդավիային և Վալախիային տրված արտոնությունները, իսկ Սերբիային ինքնավարություն տալ ներքին կառավարման հարցերում։ Բուխարեստի պայմանագրի ստորագրումով Թուրքիան այլևս չէր կարող դաշնակցել Ֆրանսիային։

Հաշտություն կնքելու մասին ռուսների առաջարկությունն այլ ընդունելություն գտավ շահական կառավարության կողմից։ Օգտվելով ժամանակավոր զինադադարից, պարսկական զորքը ներխուժեց Թալիշի խանություն։ Չնայած դրան, Կովկասում ռուսական զորքերի նոր հրամանատար Ն. Ֆ. Ռտիշչևի առաջարկությամբ սեպտեմբերին Ասլանդուզ ամրոցում (Արաքսի աջ ափին) վերսկսվեցին հաշտության բանակցությունները։ Նապոլեոնի բանակների ներխուժումը Ռուսաստան և պատերազմի առաջին շրջանում նրանց հաջողությունները վերստին աշխուժացրին պարսիկներին։ Նրանք սկսեցին ուժեղացնել ճնշումը և ռուսներից պահանջեցին հաշտություն այն սահմաններով, որ եղել էին մինչև Վրաստանի Ռուսաստանին միանալը։ Բնական է, ռուսները չէին կարող ընդունել այդ պահանջը, և բանակցություններն ընդհատվեցին։

Ռուսական հրամանատարությունը հարկադրված եղավ դիմել վճռական հակագործողությունների։ 1812 թ. հոկտեմբերի 19/31-ին գեներալ Պ. Ս. Կոտլյարևսկու զորախումբը համարձակ անցում կատարելով Արաքսի աջ ափը՝ Ասլանդուզի մոտ պարտության մատնեց Աբաս-Միրզայի 30 հազարանոց բանակին, որը նախապատրաստվում էր ներխուժել Ղարաբաղ։ Դրան հաջորդեց 1812 թ. դեկտեմբերի 31-ի—1813 թ. հունվարի 1-ի ռուսական բանակի նոր, փայլուն հաղթանակը, որը նշանավորվեց Լենքորանի նորակառույց բերդի գրավումով։ Ռուսական զորքերի այս հաղթանակների հետ միասին պատերազմի նկատմամբ շահական կառավարության հետագա դիրքորոշման հարցում կարևոր նշանակություն ունեցավ և այն, որ 1812 թ. վերջերին ռուսական զինված ուժերը լիովին ջախջախեցին Նապոլեոնյան բանակը և երկիրն ազատագրեցին ֆրանսիական զավթիչներից, իսկ վերջինս մեծ չափով բարձրացրեց Ռուսաստանի ռազմական հեղինակությունը։

Այս ամենը շահին հարկադրեց հաշտություն խնդրել ռուսներից։ Հաշտության բանակցություններն սկսվեցին 1813 թ. սեպտեմբերին Ղարաբաղում՝ Գյուլիստան փոքրիկ բերդավանում։ Հոկտեմբերի 12/24-ին կնքվեց հաշտության պայմանագիր[31], որով և ավարտվեց 1804—1813 թթ. ռուս-պարսկական

---

Բուխարեստի պայմանագիրը ռուսների կողմից ստորագրեց Դանուբյան բանակի գլխավոր հրամանատար Մ. Ի. Կուտուզովը, իսկ թուրքերի կողմից՝ մեծ վեզիր Ահմեդ փաշան։

31 Տե՛ս «Договоры России с Востоком...», стр. 208—214. Գյուլիստանի պայմանագիրը Ռուսաստանի կողմից ստորագրեց գեներալ Ն. Ֆ. Ռտիշչևը, իսկ Պարսկաստանի կողմից Միրզա Աբդուլ-Հասան խանը։

պատերազմը։ Գյուլիստանի պայմանագրով Պարսկաստանը ճանաչեց Դաղստանի ու Վրաստանի, ինչպես և Գյանջայի, Ղարաբաղի, Շաքիի, Շիրվանի, Դերբենդի, Ղուբայի, Բաքվի, Թալիշի խանությունների, Լոռու, Փամբակի, Շամշադինի, Զանգեզուրի և Շորագյալի գավառների միացումը Ռուսաստանին։ Վրաստանի և Հյուսիսային Ադրբեջանի հետ միասին, Արևելյան Հայաստանի այդ գավառների միացումով սկիզբ դրվեց նաև հայկական հողերի միացմանը Ռուսաստանին։

ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

# ԱՐԵՎԵԼՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱԶԱՏԱԳՐՈՒՄԸ ՊԱՐՍԿԱԿԱՆ ԼԾԻՑ

## 1. ՌՈՒՍ-ՊԱՐՍԿԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ. ՌԱԶՄԱԿԱՆ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ 1826 ԹՎԱԿԱՆԻՆ

*Պարսկական կառավարող շրջանները, շարունակելով իրենց նվաճողական քաղաքականությունը, հարմար առիթի էին սպասում չեղյալ համարելու Գյուլիստանի պայմանագիրը և վերսկսելու պատերազմը Ռուսաստանի դեմ՝ Անդրկովկասը զավթելու համար։*

*Անգլիան, օգտվելով պարսկական արքունիքում տիրող նվաճողական տրամադրություններից, Պարսկաստանում հետզհետե աշխուժացնում էր իր հակառուսական քաղաքականությունը։ 1814 թ. նոյեմբերի 25-ին Անգլիան Պարսկաստանի հետ կնքում է նոր՝ «վերջնական» դաշնակցային պայմանագիր, որը գրականության մեջ հայտնի է «Թեհրանի պայմանագիր» անունով։*

*Անգլո-պարսկական 1814 թ. պայմանագիրը աներկբայելիորեն ուղղված էր Ռուսաստանի դեմ, ակնարկում էր Գյուլիստանի պայմանագրով սահմանված ռուս-պարսկական սահմանագծի վերանայման անհրաժեշտությունը և վկայում Պարսկաստանում Անգլիայի ազդեցության ուժեղացումը։*

*Սուլթանական Թուրքիան նույնպես Անդրկովկասը զավթելու պլաններ ունենալով, թշնամաբար է ընդունում Գյուլիստանի հաշտության պայմանագիրը և Անգլիայի հետ միասին Պարսկաստանին հրահրում Ռուսաստանի դեմ։ Անգլիան ձգտում էր Ռուսաստանի ուշադրությունը շեղել մերձավոր արևելյան, բալկանյան և միջին ասիական պրոբլեմներից, ապա նաև ժամանակ շահել՝ վերակազմելու և վերազինելու թուրքական բանակը՝ հարձակողական ակտիվ գործողությունների համար։*

*Ցարիզմն իր հերթին, օգտվելով ռուս-պարսկական առաջին պատերազմում ձեռք բերած հաջողություններից, հետևողականորեն շարունակում է իր նվաճողական քաղաքականությունը, ամեն ջանք գործ դնում հաստատորեն ամրապնդվելու Անդրկովկասում։ Դրա համար նա ձգտում էր գրավել նաև Երևանի ու Նախիջևանի խանությունները և ռուսական պետական սահմանը հասցնել մինչև Արաքս գետը։ Որպես օրվա հրատապ խնդիր, նա կամենում էր Պարսկաստանի հետ առժամանակ պահպանել խաղաղ հարաբերու-*

թյուններ և իր ուշադրությունը բևեռել Թուրքիայի վրա, որովհետև Արևելյան հարցը գնալով սրվում էր։ Ռուս-պարսկական հարաբերությունների կարգավորման նպատակով Կովկասի կառավարչապետ, Կովկասյան հատուկ կորպուսի հրամանատար գեներալ Ա. Պ. Երմոլովի գլխավորությամբ 1817 թ. ապրիլի վերջին Պարսկաստան մեկնեց հատուկ դեսպանություն (կազմված 203 մարդուց)[1]։ Ա. Երմոլովը սկզբում բանակցություններ էր վարում Թավրիզում՝ Աբաս-Միրզայի, ապա Սուլթանիեում՝ Ֆաթհ-Ալի շահի հետ։ Ա. Երմոլովի առաքելության նպատակն էր Թավրիզում ունենալ մշտական դիվանագիտական միսիա, իսկ Ռեշտում՝ առևտրական գրասենյակ, դրականորեն լուծել Պարսկաստանում գտնվող ռուս ռազմագերիներին հայրենիք վերադարձնելու հարցը, ստանալ շահի հավաստիացումները՝ ռուս-թուրքական պատերազմի դեպքում չեզոքություն պահպանելու մասին, ապա նաև ջանալ, որ Պարսկաստանում թուլանա Անգլիայի և ուժեղանա Ռուսաստանի ազդեցությունը։ Այս ամենի հետ, Երմոլովը հանձնարարություն ուներ նաև կարգավորելու Գյուլիստանի պայմանագրի կնքումից հետո Ռուսաստանի ու Պարսկաստանի միջև առաջացած տերիտորիալ-սահմանային վիճելի հարցերը։

Աբաս-Միրզան և Ֆաթհ-Ալի շահը, մի կողմ թողնելով Երմոլովի դեսպանությանը հետաքրքրող հիմնական հարցերը, պահանջում էին վերանայել Գյուլիստանի պայմանագրով նախատեսված ռուս-պարսկական սահմանագիծը և, մասնավորապես, Պարսկաստանին վերադարձնել Թալիշն ու Ղարաբաղի մի մասը։ Մերժելով պարսիկների այդ պահանջը, Երմոլովն իր հերթին հարց է հարուցում կայսրությանը վերադարձնել Մեղրիի գավառի այն մասը, որ ռուսական բանակը գրավել էր մինչև Գյուլիստանի հաշտությունը։ Բանակցություններն ընթացան ռուսների համար չափազանց աննպաստ ու լարված պայմաններում։ Երմոլովի գործադրած ջանքերը դրական արդյունքի չհանգեցին, և նա ձեռնունայն վերադարձավ Թիֆլիս։ Ա. Երմոլովի դիվանագիտական քայլը անհաջողության մատնվեց, որովհետև պարսկական արքունիքում իշխում էին զավթողական ու ռևանշիստական տրամադրություններ ունեցող տարրերը և քաղաքական թելադրող դիրք գրաված անգլիական դիվանագետները։

1825 թ. վերջերից պարսկական բանակներն աստիճանաբար մոտենում են ռուսական սահմանին, ունենալով անգլիական ռազմական խորհրդականների ձեռքով մշակված՝ Անդրկովկաս ներխուժելու ռազմա-ստրատեգիական պլան։ 1826 թ. սկզբին, անգլիացիները պարսկական արքունիք հասցրին դեկաբրիստների ապստամբության լուրը։ Նրանց հորդորանքները շահին բերին այն համոզման, որ հասել է հարմար պահը՝ հրաժարվելու Գյուլիստանի պայմանագրից և վերստին նվաճելու Անդրկովկասում կորցրած հողերը։ Այդ մասին ռուս-պարսկական երկրորդ պատերազմի մասնակից գեներալ Դենիս Դավիդովը գրում է. «Դեկտեմբերի 14-ի օրը Պետերբուրգում էր գտնվում անգլիական գնդապետ Շիլը, որը վայելում էր Աբաս-Միրզայի անսահմանափակ վստահությունը։ Հետևյալ օրը Շիլը մեկնեց Պետերբուրգից։ Ժամանելով Թավրիզ, նա հավատացնում էր Աբաս-Միրզային, թե Ռուսաստանում երկպառակտ-

---

1 *А. Ермолов*, Алексей Петрович Ермолов, СПб., 1912, стр. 84—88.

չական պատերազմ է բռնկվել երկու կայսր-եղբայրների միջև... Ցիլի կարծիքով պարսիկների համար եկել էր ամենանպաստավոր պահը՝ Վրաստան ներխուժելու համար, ուր ռուսների ուժերը խիստ թույլ էին։ Պարսիկները շարժվեցին... Աբաս-Միրզան, առանց նախապես պատերազմ հայտարարելու, ներխուժեց Փամբակի և Շիրակի մարզերը»[2]։

Ռուսաստանի դեմ պատերազմ սկսելու շահի որոշմանը նպաստեց նաև Ռուսաստանի հարաբերությունների սրումը Թուրքիայի ու Արևմտյան մեծ տերությունների հետ, ինչպես նաև Կովկասում լեռնականների սկսած շարժումը։ Ռուս-պարսկական հարաբերությունների այդ լարված օրերին՝ 1826 թ. փետրվարին Պետերբուրգից Թեհրան է մեկնում Նիկոլայ Առաջինի լիազոր ներկայացուցիչ իշխան Ա. Ս. Մենշիկովը։ Նրան հանձնարարված էր շահին հավաստիացնել, որ ռուսական կառավարությունը ցանկանում է Պարսկաստանի հետ բարի-դրացիական հարաբերություններ ունենալ և խաղաղ ճանապարհով կարգավորել սահմանային ու տերիտորիալ վիճելի հարցերը։ Սակայն Աբաս-Միրզան և Ֆաթհ-Ալի շահը Ա. Մենշիկովին ոչ միայն շատ սառը ընդունեցին, այլև նրան պահում էին յուրօրինակ տնային կալանքի տակ, ձախողելով բանակցություններ վարելու նրա բոլոր փորձերը։ Ա. Մենշիկովը Պարսկաստանում ականատես եղավ պատերազմի տենդագին նախապատրաստություններին և, համոզվելով, որ աննպատակ է Պարսկաստանում իր մնալը, հուլիսի 5-ին շահից պահանջեց իրեն թույլ տալ վերադառնալու Ռուսաստան։

1826 թ. հուլիսի 16-ին Երևանի սարդարի զինված ուժերը Ապարանում հարձակվեցին Միրաքի ռուսական պահակակետի վրա, իսկ հուլիսի 17/18-ին պարսկական 60 հազարանոց բանակը Աբաս-Միրզայի հրամանատարությամբ ներխուժեց Ղարաբաղ և հուլիսի 25-ին պաշարեց Շուշի բերդը[3]։ Աբաս-Միրզան գլխավոր ուժերով մնալով Շուշիի տակ, 12 հազար մարդուց կազմված մի զորաբանակ շարժեց դեպի Ելիսավետպոլ (Գյանջա)։ Նա ծրագրում էր գրավել Շուշին ու Ելիսավետպոլը, ամրապնդել իր բանակի թիկունքը, ապա պարսկական միացյալ ուժերով գրոհել Թիֆլիսի վրա։ Նույն օրերին Երևանի Հյուսեին-Ղուլի խանի և նրա եղբայր Հասան խանի զինված ուժերը, կոտրելով ռուս փոքրաթիվ սահմանապահների ու հայ աշխարհազորայինների դիմադրությունը, ներխուժեցին Փամբակի և Շիրակի գավառները։ Իսկ 25 հազար հեծյալներից կազմված պարսկական մի այլ բանակ էլ Թալիշից շարժվեց դեպի Մուղանի հարթավայրը՝ խնդիր ունենալով գրավել Հյուսիսային Ադրբեջանի գավառները և ներխուժել Դաղստան։ Օգտվելով անակնկալ հարձակման առավելությունից, պարսկական բանակներին հաջողվեց գրավել Ելիսավետպոլ, Շամախի, Նուխի քաղաքները, Թալիշի, Շաքիի, Շիրվանի և Շորագյալ-Փամբակի որոշ գավառներ։ Այսպես սկսվեց ռուս-պարսկական երկրորդ պատերազմը (1826—1828)։

Պարսկական բանակները նորից ավերեցին հայկական տասնյակ գյուղեր, հազարավոր հայեր սրի քաշվեցին, իսկ շատերն էլ գերվեցին։ 1826 թ.

---

2 Դենիս Դավիդով, Ռազմական հուշեր, Երևան, 1942, էջ 532։

3 Տե՛ս ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. ՌԳԱ, գ. 4290, թ. 53—54։

*ամռանը Շիրակի ու Փամբակի գավառներում պարսկական զորքերի կատարած ավերածությունների ու ոճրագործությունների մասին Վ. Պոտտոն գրում է. «Այսպես, վրա հասավ 1826 թվականի ամառը, երբ պարսկական հրոսակախմբերն անսպասելի կերպով, առանց պատերազմ հայտարարելու, ներխուժեցին մեր սահմանները և ամպրոպը նախ ճայթեց անպաշտպան հայ բնակչության գլխին։ Երևանի խանի առաջին հարվածը կրեցին Փամբակի և Շորագյալի շրջանները։ Գյուղերն ամայացրին, երեխաների ու կանանց մեծ մասը տանջամահության ենթարկեցին, հարյուրավոր ընտանիքներ գերության քշեցին»[4]։ Շիրակում Հասան խանի կատարած չարագործությունների, հայկական գյուղերի ավերման, բնակչության զանգվածային գերեվարության ու ոչնչացման ցնցող պատկերները սրտի կսկիծով ու խորը ցասումով է պատկերել Խ. Աբովյանն իր «Վերք Հայաստանի» վեպում։ Նկարագրելով Շիրակում Փոքր Ղարաքիլիսայի աղետը, նա գրում է. «Ղլղարաքիլիսեն մխումը կորավ. հենց բռնես՝ երկինքն հանկարծ փուլ էկավ, ամպ ու կայծակով քանդեց սար ու ձոր. էսպես էր նրանց խեղճ հալը էս օր։ Տավարը մեկ կողմից քշեցին, տարան. գեղը մեկ կողմից կրակ տվին, առան»[5]։ Փոքր Ղարաքիլիսայի աղետավոր բախտին արժանացան նաև Ապարանի, Շիրակի, Փամբակի, Զանգեզուրի և Ղարաբաղի բազմաթիվ գյուղեր։*

*Սակայն պարսկական խաներն անկարող եղան ընկճել հայ ժողովրդի ազատագրական ոգին։ Ամենուրեք կազմակերպելով աշխարհազորային ջոկատներ ու միանալով ռուսական սահմանապահ զորքերին, հայերը հերոսաբար մարտնչում էին թշնամու բանակների դեմ։ Պատերազմի առաջին շրջափուլում (1826 թ. հուլիս—օգոստոս) Կովկասյան կորպուսի հրամանատարությունը հարկադրված եղավ դիմել ակտիվ պաշտպանության, մինչև Ռուսաստանից կստանար լրացուցիչ ուժեր՝ հակահարձակման անցնելու համար։ Հակառակորդի առաջխաղացումը կասեցնելու նպատակով, ռուսական սահմանապահ կայազորները տեղական բնակիչներից կազմված աշխարհազորային ջոկատների օգնությամբ դիմում են ռազմաստրատեգիական կարևորություն ներկայացնող բերդերի ու անցումների պաշտպանությանը։*

*Այդպիսի կարևոր նշանակություն ունեցող ամրություն էր Շուշիի բերդը։ Տեղի ռուսական կայազորը (բաղկացած 1700 զինվորից) և շրջակայքի 22 հայկական գյուղերից նրան օգնության եկած 1500 աշխարհազորայիններ ձեռնամուխ եղան Շուշիի հերոսական պաշտպանությանը[6]։ Ավելի քան վեց շաբաթ բերդը պաշտպանվեց Աբաս-Միրզայի մեծաքանակ բանակի անընդմեջ հարձակումներից։*

*Շուշիի պաշտպանության գործում հայերի խաղացած դերը շատ բարձր է գնահատել բերդապահ կայազորի պետ գնդապետ Ռեուտը։ Գեներալ Երմոլովին ներկայացրած իր զեկուցագրերից մեկում նա գրել է. «Բերդը պաշտպանող հայերի վերաբերյալ պարտքս եմ համարում բացատրել, որ նրանց ծառայությունը արժանի է ուշադրության, որովհետև նրանք բոլորը գործում էին գերազանց քաջությամբ, դիմացան բազմաթիվ գրոհների, եւ մղեցին*

---

4 *В. Потто,* Первые добровольцы Карабага..., стр. 58.

5 Խ. Աբովյան, *Երկերի լիակատար ժողովածու, հատ. III, էջ 99։*

6 *ՏԵ՛ս ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. ՌԳԱ, գ. 4291, թ. 61։*

թշնամուն խոշոր կորուստներով, արհամարհում էին պարենի պակասը և բնավ չէին մտածում բերդը հանձնելու մասին, թեև վրա էր հասել կատարյալ սովը»[7]։

1826 թ. հուլիսի 25-ից մինչև սեպտեմբերի 10-ը տևած Շուշու հերոսական պաշտպանությունը ունեցավ այն կարևոր նշանակությունը, որ իրեն գամեց հակառակորդի գլխավոր ուժերը, իսկ դա հնարավորություն ընձեռեց ժամանակ շահել, կենտրոնացնել կովկասյան կորպուսի ցրված ուժերը, լրացուցիչ օգնական ուժեր ստանալ Ռուսաստանից և ջախջախիչ հարված հասցնել Անդրկովկաս ներխուժած պարսկական բանակներին։

Եթե Շուշի բերդի պաշտպանությունը փակեց Աբաս-Միրզայի բանակի ճանապարհը Ղարաբաղից դեպի Կովկասի վարչական կենտրոնը՝ Թիֆլիս, ապա նույն խնդիրը մյուս ճակատում հաջողությամբ կատարեցին Շիրակի և Լոռի—Փամբակի ռուսական կայազորները և նրանց օգնության եկած հայ աշխարհազորային ջոկատները՝ Երևանի սարդարի և նրա եղբոր՝ Հասան խանի զորքերի դեմ մղած համառ պաշտպանական մարտերում։ Հասան խանը, կենտրոնացնելով խոշոր ուժեր, ձգտում էր գրավել Արևելյան Շիրակը, Լոռի—Փամբակը և շարժվել դեպի Թիֆլիս։ 1826 թ. հուլիս—օգոստոս ամիսներին արյունալի մարտեր տեղի ունեցան Շիրակում։ Դրանցից հատկապես նշանավոր էին Փոքր Ղարաքիլիսայի (Ղըղարաքիլիսա, այժմ Ազատան) համար մղված մարտերը։ Հասան խանի հրոսակախմբերից հայրենի գյուղը պաշտպանելու համար փոքր ղարաքիլիսցիները զինվեցին ինչով կարող էին և, միացած ռուսական փոքրաթիվ ջոկատին, մինչև արյան վերջին կաթիլը հերոսաբար կռվեցին թշնամու դեմ։ Այդ մասին Խ. Աբովյանը գրում է. «...քաջ Հայկազունք սիրտ սրտի տվին... իրար կանչեցին... ընկերք՝ մի վախիք, դուք ղոչաղ կացեք, քամակ քամակի տվեք, միացեք, թող՝ մեկ հող, մեկ սուր փըրթի, մեզ թաղի, մինչև եդին մարդն, մեկն էլա չփախչի»[8]։ Այսպիսի վճռականությամբ ու հաստատակամությամբ նրանք ոտքի կանգնեցին թշնամու դեմ։

Հասան խանի զորաջոկատները մի քանի անգամ գրոհեցին գյուղի վրա, բայց, հանդիպելով հայ և ռուս պաշտպանների դիմադրությանը, կրելով խոշոր կորուստներ՝ ետ շպրտվեցին։ Հակառակորդին հաջողվեց Փոքր Ղարաքիլիսան գրավել միայն այն ժամանակ, երբ անհավասար մարտում ընկան գյուղի հայ և ռուս վերջին քաջարի պաշտպանները։

Լոռի—Փամբակի և Շամշադին—Ղազախի պաշտպանական մարտերում աչքի ընկավ Գրիգոր Մանուչարյանի 500 հեծյալներից կազմված աշխարհազորային ջոկատը, որը մարտական հարուստ փորձ էր կուտակել դեռևս ռուս-պարսկական առաջին պատերազմի ժամանակ պարսիկ զավթիչների դեմ մղած հերոսամարտերում։ Իսկ պատերազմի երկրորդ էտապում, երբ կովկասյան կորպուսն անցավ հակահարձակման, հայկական աշխարհազորային այդ ջոկատը մարտական ակտիվ գործողություններ է ծավալում սկսած Ղազախ—Շամշադինից մինչև Սևանի ափերը։ Նա պարսկական հորդաների դեմ շարունակեց իր պայքարը մինչև պատերազմի ավարտը։

---

7 *В. Потто,* Первые добровольцы Карабага..., стр. 62.

8 Խ. Աբովյան, *Երկերի լիակատար ժողովածու, հատ. III, էջ 99։*

Հակառակորդի դեմ ռազմական գործողություններ մղելուց բացի, Գ. Մանուչարյանի գլխավորած ջոկատի օգնությունը կովկասյան հատուկ կորպուսին արտահայտվում էր նաև այլ ձևերով։ Հարկ եղած դեպքում նա հաջողությամբ պաշտպանում էր Թիֆլիս—Երևան ռազմա-ստրատեգիական կարևոր նշանակություն ունեցող ճանապարհները, կապավորի դեր խաղում ռուսական զորամասերի և գլխավոր հրամանատարության միջև, իսկ երբ Հայաստանում գործող զորամասերը նեղվում էին պարենի պակասից, Գ. Մանուչարյանի ջոկատն իր վրա էր վերցնում նրանց համար պարեն հայթայթելու դժվարին գործը։

Ստրատեգիական լուրջ հաջողությունների հասնելու համար պարսկական բանակները չկարողացան օգտագործել ոչ իրենց թվական գերակշռությունը, ոչ էլ հանկարծակի հարձակման առավելությունները։ Կովկասյան հատուկ կորպուսի զորամասերը և տեղական ժողովուրդներից ձևավորված աշխարհազորային ջոկատները, սերտ համագործակցելով, կարողացան կասեցնել պարսկական զորքերի առաջխաղացումը և ձախողել նրանց ռազմաստրատեգիական ծրագրերի իրականացումը։

1826 թ. օգոստոսի վերջերին Կովկասյան հատուկ կորպուսը Ռուսաստանից օգնական ուժեր ստացավ։ Կովկաս ուղարկվեցին 20-րդ հետևակային և 2-րդ ուլանական դիվիզիաները՝ ձիաքարշ հրետանիով, ու մի քանի կազակային գնդեր։ Կովկասյան կորպուսի շարքերը համալրեցին նաև 1825 թ. դեկտեմբերի 14-ին Պետերբուրգում դեկաբրիստների ապստամբությանը մասնակցած գվարդիական գնդերի վաշտերից ձևավորված լեյբ-գվարդիական համաքական գունդը (կազմված 1287 մարդուց, որից 38-ը սպաներ էին), Չերնիգովյան գնդի ապստամբությանը մասնակցած 1527 զինվորները, դեկաբրիստների գործով մեղադրված շուրջ յոթ տասնյակ աստիճանազրկված դեկաբրիստ սպաներն ու նրանց «մեղսակիցները»։ Կովկասյան հատուկ կորպուս ուղարկվեցին նաև մի շարք գեներալներ ու բարձրաստիճան սպաներ։ Զգալիորեն փոխվեց կռվող ուժերի հարաբերակցությունը, որը Կովկասյան հատուկ կորպուսի հրամանատար գեներալ-ադյուտանտ Ա. Երմոլովին և նրա օգնական գեներալ-լեյտենանտ Վ. Մադաթովին[9] հնարավորություն տվեց հարձակում սկսել թշնամու դեմ։

1826 թ. սեպտեմբերից ռուս-պարսկական պատերազմը թևակոխեց իր երկրորդ շրջափուլը, որը նշանավորվեց Կովկասյան հատուկ կորպուսի զորամասերի մղած մի շարք հաղթական ճակատամարտերով։ Դրանցից առաջինը Շամքորի նշանավոր ճակատամարտն էր, որը վճռական բեկում առաջ բերեց պատերազմական գործողությունների մեջ՝ հօգուտ Կովկասյան հատուկ կորպուսի։ Ռուսական մի զորագունդ, կազմված 2000 զինվորներից, գեներալ Վ. Մադաթովի հրամանատարությամբ, սեպտեմբերի 3-ին Շամքոր գետի ափին ջախջախեց Ամիր-խանի հրամանատարությամբ գործող պարս-

---

9 Վալերիան (Ռոստոմ) Մադաթովը ծնվել է Ղարաբաղում, Վարանդայի Ավետարանոց (Չանախչի) գյուղում։ Նա աչքի ընկավ դեռևս 1812 թ. Հայրենական պատերազմում։ Վ. Մադաթովը 1812 թ. Հայրենական պատերազմի սկզբում ծառայում էր 3-րդ բանակում՝ փոխգնդապետի աստիճանով, իսկ ռուսական բանակի 1813—1814 թթ. արտասահմանյան արշավանքից վերադարձավ գեներալ-մայորի աստիճանով։

կական 10 հազարանոց բանակը և ետ գրավեց Ելիսավետպոլը։ Լսելով Ամիրխանի պարտության լուրը, Աբաս-Միրզան, շուրջ 25 հազարանոց բանակով Քյուրակ-չայից շարժվեց Ելիսավետպոլ, նպատակ ունենալով ջախջախել ռուսական կորպուսի գլխավոր ուժերը և առաջանալ դեպի Թիֆլիս։ Ելիսավետպոլի մոտ պարսկական բանակի դեմ դուրս եկավ գեներալ Պասկևիչի հրամանատարությանը հանձնված մի հատուկ զորաբանակ, որի կազմում էր նաև լեյբ-գվարդիական հավաքական գունդը։ Սեպտեմբերի 13-ին տեղի ունեցավ արյունալի ճակատամարտ, որն ավարտվեց Աբաս-Միրզայի ջախջախիչ պարտությամբ։ Ռազմի դաշտում թողնելով մոտ 2000 սպանված, պարսկական բանակը փախուստի դիմեց։ Ռուսներն այդ ճակատամարտում վերցրին ավելի քան 1000 գերի, գրավեցին երկու թնդանոթ, չորս զինադրոշ և այլ ռազմավար։

Շամքորի և Ելիսավետպոլի ճակատամարտերը վճռական նշանակություն ունեցան պատերազմական գործողությունների հետագա ամբողջ ընթացքի համար։ Կորցնելով մարտական հիմնական ուժերը, հակառակորդն այլևս անկարող եղավ լուրջ դիմադրություն։ Կովկասյան կորպուսի հարձակողական գործողությունների ծավալման շնորհիվ պարսկական ջախջախված բանակները սեպտեմբերի վերջին դուրս մղվեցին Ղարաբաղից և շպրտվեցին Արաքսի աջ ափը։

Նույն ժամանակամիջոցում ռուսական կորպուսի զորամասերը հաղթական մարտեր են վարում նաև Փամբակում, Շիրակում և Ապարանում։ Այդ գավառների ազատագրումը Երևանի սարդարի զորքերից իրագործեց 1812 թ. Հայրենական պատերազմի քաջակորով պարտիզան-հրամանատար գեներալ-մայոր Դենիս Դավիդովի զորագունդը։ Այն կազմված էր երեք հետևակային գումարտակներից ու 900 հեծյալներից և ուներ 12 դաշտային թնդանոթ։ Դուրս գալով Ջալալօղլուց (Ստեփանավան), սեպտեմբերի 19-ին զորագունդը հասավ Փամբակ և դիմեց հարձակողական մարտերի։ Սեպտեմբերի 20-ին Դավիդովի զորամասը թշնամուց ետ խլեց Համամլու գյուղը։ Հակառակորդը, խոշոր կորուստներ կրելով, նահանջեց դեպի Ապարան։ Սեպտեմբերի 21-ին Դենիս Դավիդովի զորագունդը Ապարանում, Միրաք գյուղի մոտ, հաղթական ճակատամարտ մղելով Հասան խանի չորս հազար հեծյալների դեմ, վերջիններիս հարկադրեց նահանջել դեպի Երևան։ Հյուսեին-Ղուլի խանը, լսելով Միրաքի ճակատամարտում եղբոր կրած պարտության լուրը, շտապեց հեռանալ Սևանի հյուսիսային ափերից և ապաստանել Երևանի բերդում։ Ոգեշնչված այդ հաջողություններով, Դենիս Դավիդովը առաջ է շարժվում, նպատակ ունենալով սրընթաց գրոհով գրավել նաև Երևանը։ Սակայն սեպտեմբերի վերջերին, կես ճանապարհին, Դավիդովն ստացավ գեներալ Երմոլովի հրամանը՝ վերադառնալ Ջալալօղլի։ Նա միաժամանակ հայտնում է, որ Երևանյան արշավանքը հետաձգվում է մինչև 1827 թ. գարունը, որովհետև արդեն ձմեռնամուտ է և Երևանի գրավման համար անհրաժեշտ նախապատրաստությունները դեռևս չեն ավարտվել։

Չնայած թշնամու ուժերի գերակշռությանը, Կովկասյան կորպուսին հաջողվեց 1826 թ. աշնան վերջերին Գյուլիստանի պայմանագրով ճանաչված Անդրկովկասի ռուսական տիրապետության սահմանները լիովին մաքրել

*պարսկական բանակներից և ձախողել Անդրկովկասը զավթելու նրանց պլանները։ Այդ գործում նշանակալից ներդրում արեցին անդրկովկասյան ժողովուրդները։*

*1826 թ. աշնանը գեներալներ Երմոլովի, Մադաթովի, Պասկևիչի, Դենիս Դավիդովի զորաբանակների կազմում անմոռաց քաջության ու խիզախության օրինակներ ցույց տվեցին հայ, վրաց և ադրբեջանական աշխարհազորային ջոկատները։ Ռուսական կորպուսի հակահարձակողական գործողություններին լայնորեն մասնակցեցին տակավին պատերազմի սկզբում ձևավորված և պաշտպանողական ծանր մարտերի բովով անցած հայկական աշխարհազորային ջոկատները։ Սրանցից մեկն էր էրզրումցի քաջակորով երիտասարդ Մարտիրոս Վեքիլյանի գլխավորած հեծյալ ջոկատը, որը մտնում էր Դենիս Դավիդովի զորագնդի մեջ։ Այդ ջոկատն իր բարձր մարտունակությամբ աչքի ընկավ Գյումրիի մոտ տեղի ունեցած մարտերում։ Վեքիլյանի ջոկատի աշխարհազորայիններն իրենց սխրանքներով հատկապես փայլեցին Միրաքի նշանավոր ճակատամարտում։*



Դենիս Դավիդով

*Այնուհետև, հայկական այդ ջոկատը 1827 թ. արիաբար մասնակցեց Հայաստանում Կովկասյան կորպուսի մղած մի շարք ճակատամարտերին։ Մ. Վեքիլյանի ինչպես 1826, այնպես էլ 1827 թթ. ծառայությունների մասին Կովկասյան կորպուսի հրամանատար գեներալ Պասկևիչը 1827 թ. մայիսի 30-ին իր զեկուցագրերից մեկում գրում էր. «Մարտիրոս Վեքիլովն անցյալում երկար ժամանակ օգտագործվելով ըստ ծառայության զանազան հանձնարարությունների համար, անցյալ՝ 1826 թ. գտնվում էր Գյումրիում, գլնդապետ Ֆրեդերիքսի մոտ, որտեղ շատ ընդհարումների ժամանակ գերազանց քաջություն ցուցաբերեց։ Ապա լինելով Ղարաքիլիսայի և Ջալալօղլու զորքի մեջ, որպես հայկական հեծելազորի հրամանատար, աննկուն ջանքերով պաշտպանեց սահմանը և, թշնամուն Ջալալօղլուց ու Միրաքի մոտ հետապնդելու ժամանակ, գտնվում էր գեներալ-մայոր Դավիդովի ջոկատում։ Ընթացիկ տարում գտնվում էր գեներալ-ադյուտանտ Բենկենդորֆի մոտ և օգտագործվում էր թշնամու հետ բանակցություններ վարելու համար. Հասան խանի պարտության ժամանակ գտնվում էր Սարդարապատում. մասնակցում էր մայիսի 9-ի մարտերին։ Մայիսի 21-ին գտնվելով զորային ավագ Վերբիցկու էքսպեդիցիայում՝ Կրխբուլաղում, համոզեց ձորակում ամրացած և ի-*

րենց շրջապատած կազակների վրա ուժեղ կրակ բացած 90 պարսիկներին անձնատուր լինել»[10]։

Հայկական աշխարհազորային ջոկատի քաջակորով հրամանատար Մ. Վեքիլյանն իր «ցուցաբերած գերազանց հերոսության» համար արժանացավ պարգևի և ստացավ պրապորշչիկի աստիճան։

1826 թ. Շամքորի նշանավոր ճակատամարտում գեներալ-լեյտենանտ Վ. Մադաթովի զորաբանակում բազմաթիվ հայ աշխարհազորայիններ աչքի ընկան իրենց անձնազոհությամբ և հերոսությամբ։ Նրանք շարունակեցին մնալ Մադաթովի զորաբանակում և մասնակցություն ունեցան Ղարաբաղում մղված մարտերին։

Շիրակում ու Փամբակում, Զանգեզուրում ու Ղարաբաղում և այլուր թըշնամու դեմ անձնազոհ կերպով կռվում էին նաև շատ հայ կանայք։ Երկար ժամանակ Փամբակ—Լոռիում ժողովրդի մեջ տարածված ավանդազրույցը պատմում է Հասան խանի հրոսակախմբերի դեմ համամլեցի գեղջկուհի Մանուշակի մղած անձնազոհ կռվի և հերոսական մահվան մասին։ Ղարաբաղում թըշնամու դեմ մղված մարտերում ցուցաբերած հերոսության համար համաժողովրդական սիրո ու հարգանքի արժանացավ հայ գեղջկուհի Հաթային։ Վ. Պոտտոն նկարագրելով 1826 թ. Ղարաբաղի հայերի անձնուրաց պայքարը թշնամու դեմ, գրում է. «...Նույնիսկ նրանց կանայք հանդիսանում էին հերոսուհիներ, և նրանցից մեկի, Հաթայիի անունը, գիտեր այն ժամանակ ամբողջ Ղարաբաղը[11]»։

Այսպիսով, որքան մոտենում էր Արևելյան Հայաստանի ազատագրումը պարսկական խաների լծից, այնքան ավելի էր զանգվածային դառնում և ուժեղանում հայերի օգնությունը ռուսական բանակներին։ Ընդհանուր թըշնամու դեմ մղված կռիվներում կոփվում ու ամրապնդվում էր հայ աշխարհազորայինների ու ռուս զինվորների զինակցությունը։

## 2. ԵՐԵՎԱՆԻ ԳՐԱՎՈՒՄԸ

Կովկասյան հատուկ կորպուսի հրամանատարությունը 1826—1827 թթ. ձմռանը լարված նախապատրաստություն էր տեսնում Երևանի վրա արշավելու համար։ Մշակվում և ռուսական բանակի գլխավոր շտաբի կողմից հաստատվում է երևանյան արշավանքի ռազմական գործողությունների պլանը։ 1827 թ. գարնան սկզբներին ավարտվում են արշավանքի նախապատրաստությունները։ Սակայն, գեներալ Երմոլովին չվիճակվեց գլխավորել Երևանյան արշավանքը։ Դեկաբրիստների ապստամբությունից հետո Նիկոլայ I-ը անվստահությամբ էր վերաբերում Երմոլովին և առիթներ էր որոնում նրան ավելի վստահելի մարդով փոխարինելու համար[12]։ Եվ ահա 1827 թ. մարտի 28-ին Նիկոլայ I-ի հրամանով Երմոլովը ազատվում է Կովկասի կառավարչապետի և Կովկասյան հատուկ կորպուսի հրամանատարի պաշտո-

---

10 ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. ՌԳԱ, գ. 6218, թ. 19։

11 В. Потто, նշվ. աշխ., էջ 64։

12 М. В. Нечкина, А. С. Грибоедов и декабристы, М., 1947, стр. 187, 189, 202.

նից ու նրա փոխարեն նշանակվում է գեներալ-ադյուտանտ Ի. Ֆ. Պասկևիչը։

Տեղեկություն ունենալով ռուսական կորպուսի՝ երևանյան արշավանքի նախապատրաստությունների մասին, Ֆաթհ-Ալի շահը և Աբաս-Միրզան անգլիացիների օգնությամբ արագորեն վերակազմում ու վերազինում են իրենց բանակները և պատրաստվում դիմադրելու ռուսներին։ Դիմադրության էր նախապատրաստվում նաև Երևանի սարդար Հյուսեին-Ղուլի խանը, որն իր իշխանության տարիներին (1807—1827) մեծ ազդեցություն էր ձեռք բերել պարսկական կառավարող շրջաններում և դարձել էր լիովին ինքնիշխան[13]։ Հայերին համարելով ռուսների դաշնակից, նա առավել սաստկացրեց հալածանքներն ու բռնությունները։ Պատերազմի ժամանակ խանն իր տիրապետության տակ եղած հայերին զանգվածորեն տեղահան արեց և քշեց Պարսկաստանի խորքերը, իսկ շատերին էլ փակեց Երևանի բերդում՝ կողոպտելով նրանց ունեցվածքը, ավերելով պապենական բնակավայրերը։

Երևանի սարդարը համառ ու երկարատև պաշտպանության վճիռ ընդունելով, արագորեն ամրացնում է Երևանի ու Սարդարապատի բերդերը, նրանց կայազորները համալրում Պարսկաստանից ուղարկված սարբազների թարմ ուժերով և կուտակում զենքի, զինամթերքի ու պարենի մեծ պաշարներ։

1827 թ. սկզբին Կովկասյան հատուկ կորպուսը սկսում է երևանյան երրորդ և վերջին արշավանքը։ Մինչև կորպուսի գլխավոր ուժերի Երևան հասնելը, էջմիածնում զենքի-զինամթերքի ու պարենի անհրաժեշտ պաշարներ կուտակելու և Երևանի գրավումը հաջողությամբ նախապատրաստելու նպատակով, ապրիլի 2-ին Կովկասյան կորպուսի մի զորաբաժին (որի կազմում կար 3200 հետևակ, 1200 հեծյալ զինվոր և 16 դաշտային հրանոթ)[14] գեներալ Կ. Բենկենդորֆի հրամանատարությամբ ու Ներսես Աշտարակեցու ուղեկցությամբ, դուրս գալով Բորչալուից, մի քանի օրում հասնում է Ջալալօղլի, ապա ապրիլի 7-ին Փամբակ—Ապարանի վրայով շարժվում դեպի էջմիածին ու Երևան։ Բենկենդորֆի զորախումբը, դիմադրության չհանդիպելով, ապրիլի 13-ին գրավում է էջմիածինը, որովհետև պարսկական փոքրաթիվ կայազորը, լսելով ռուսական զորքերի մոտենալու լուրը, վաղօրոք հեռացել էր այնտեղից։

էջմիածնի հայերը ռուսական զորքին խանդավառ ընդունելություն ցույց տվեցին։ Ապրիլի 23-ին Բենկենդորֆի զորախումբը, դուրս գալով էջմիածնից, շարժվում է առաջ և չորս օր տևող մարտերից հետո, ապրիլի 27-ին պաշարում Երևանի բերդը։ Գեներալ Բենկենդորֆի գլխավորած զորքերի ռազմական գործողություններով սկիզբ դրվեց ռուս-պարսկական պատերազմի նոր էտապին։

---

13 И. Шопен, նշվ. աշխ., էջ 449, Հովհ. Հակոբյան, Ուղեգրություններ, հատ. Զ, էջ 313։

14 Տե՛ս А. Щербатов, Генерал-фельдмаршал князь Паскевич, его жизнь и деятельность, т. II, СПб., 1890, стр. 269, 270.

* * *

Ռուսական բանակի երևանյան այս արշավանքը հայ ժողովրդական զանգվածներին պարսկական խաների տիրապետությունից ազատագրվելու նոր, իրական հույսեր ներշնչեց։ Հայ առաջավոր մարդիկ եռանդուն գործունեություն ծավալեցին ուժեղացնելու հայերի օգնությունը Կովկասյան կորպուսին։ Դրանցից մեկն էր արքեպիսկոպոս Ներսես Աշտարակեցին, որը 1814 թ. վարում էր Վրաստանի հայոց հոգևոր թեմի առաջնորդի պաշտոնը։ Նա դեռևս Դավիթ—Դանիելյան պայքարի տարիներին աչքի ընկավ որպես Դանիելի ազդեցիկ կողմնակից և ռուսական կողմնորոշման ջերմ պաշտպան։ Որպես Վրաստանի հայոց հոգևոր թեմի առաջնորդ, Թիֆլիս գալուց հետո նրա առջև բացվում է ազատ ու համարձակ գործունեության ասպարեզ։

Գործելով Կովկասի հասարակական-քաղաքական կյանքի խոշոր կենտրոն Թիֆլիսում, Ներսես Աշտարակեցին մեծ հեղինակություն է վայելում։ Եվ դա ոչ միայն նրա անձնական ընդունակությունների, եռանդի ու կազմակերպչական մեծ կարողությունների շնորհիվ, այլև այն բանի, որ նա անմիջական շփման մեջ էր ու սերտ կապեր ուներ Կովկասի ռուսական զինվորական և քաղաքացիական իշխանությունների ու ղեկավար գործիչների հետ։ Բացի այդ, Թիֆլիսում գործելը մեծապես նպաստում է Ներսեսի հեղինակության բարձրացմանը նաև այն պատճառով, որ տեղի հայաբնակ գաղութը ձեռք էր բերում խոշոր ազդեցություն հայ կյանքում։ Եթե այս ամենին ավելացնենք և այն, որ ծերացած ու թուլակամ Եփրեմ կաթողիկոսը 1821 թ. հեռանալով Էջմիածնից, հաստատվել էր Հաղպատի վանքում և լիովին գտնըվում էր Ներսես Աշտարակեցու ազդեցության տակ, ապա պարզ կդառնա վերջինիս գրաված տեղն ու դիրքը ոչ միայն կրոնական, այլև ժամանակի հայ հասարակական-քաղաքական կյանքում։ Ներսես Աշտարակեցուն եռանդուն գործունեության էր մղում ռուսական զենքի օգնությամբ հայ ժողովրդին թուրքական և պարսկական լծից ազատագրելու հեռանկարը։ Ուստի, գործի դնելով կազմակերպչական իր ողջ ունակություններն ու եռանդը, նա ձգտում էր հաջողությամբ պսակել Կովկասյան հատուկ կորպուսի երևանյան արշավանքը։

Ներսես Աշտարակեցու հետ միասին հայրենանվեր գործի լծվեց նաև ականավոր հասարակական գործիչ, Ներսիսյան դպրոցի տեսուչ, բանաստեղծ Հարություն Ալամդարյանը։ Նրանք ոչ միայն գործարար մասնակցություն ունեցան երևանյան նոր արշավանքի նախապատրաստական աշխատանքներին, այլև ձեռնամուխ եղան Թիֆլիսում հայկական կամավորական գումարտակների ստեղծմանը, որպեսզի առավել գործուն ռազմական օգնություն ցույց տան Կովկասյան կորպուսին։ Ռուսական հրամանատարությունը սիրով ընդառաջեց հայերի այդ ցանկությանը, նկատի ունենալով պատերազմական նախորդ գործողությունների ժամանակ հայ աշխարհազորայինների Կովկասյան կորպուսին ցույց տված ռազմական օգնության նշանակությունը։

Հայկական գումարտակների կազմակերպման համար մշակվեց 34 հոդվածից բաղկացած հատուկ «Առաջադրություն»[15], որը հաստատվեց ռու-

---

[15] «Предположения для сформирования армянских батальонов», տե՛ս ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. ՌԳԱ, գ. 4336, թ. 2—5։

սական բանակի գլխավոր շտաբի կողմից։ Ըստ «Առաջադրության» հայկական գումարտակ կարող էին ընդունվել կամավոր ցանկությամբ՝ 18 տարեկանից ոչ փոքր և 30 տարեկանից ոչ մեծ տղամարդիկ, որոնք առողջ էին և կարող էին դիմանալ արշավանքի դժվարություններին։ Գումարտակը նախատեսվում էր հետևյալ կազմով՝ 1 շտաբս-սպա, 2 կապիտան, 2 շտաբս-կապիտան, 4 պորուչիկ, 4 պոդպորուչիկ, 1 գանձապահ, 1 համհարզ, 4 փողհար, 4 թմբկահար, 80 ենթասպա, 800 շարքային և 40 արտաշարային ֆուռլեյտորներ։ Գումարտակի հրամանատարը պետք է ունենար շտաբս-ըսպայի կամ կապիտանի աստիճան և ազգությամբ լիներ հայ։ Գումարտակի հագուստն էր՝ կանաչ գույնի մահուդե չեկմեն՝ ծալվող թևերով, մուգ գույնի բուրմեթից արխալուղ, գդակ և յափնջի։ Գումարտակի զորայինները պարտավոր էին, ինչպես ընդունված էր ռուսական բանակում, հավատարիմ ծառայության երդում տալ։



Վ. Մադաթով

Հայկական գումարտակների կազմակերպման «Առաջադրությունում» մանրամասնորեն նշված էին նաև զորայինների սպառազինության, ծառայության կարգի և ռազմական կարգապահության կանոնները։ Ուշագրավ է, որ ըստ մշակված «Առաջադրության», գումարտակները պետք է ունենային իրենց հատուկ ազգային զինադրոշները, իսկ հրամանները տրվելու էին հայերեն։ «Առաջադրության» 14-րդ հոդվածով նախատեսվում էր, որ զորայինները «...հատուկ գերազանցության համար կներկայացվեն պարգևատրման՝ ստանալու իսկական առաջին սպայական աստիճան»։

3-րդ հոդվածը վերաբերում էր կամավորների ու նրանց ընտանիքների արտոնություններին։ Կամավորները ծառայության ամբողջ ժամանակաշրջանում իրենց կանանց ու երեխաների հետ ազատվում էին բոլոր հարկերից ու պարհակներից։ Իսկ 4-րդ հոդվածի համաձայն զորայիններին իրավունք էր վերապահվում ռուս-պարսկական պատերազմի ավարտից հետո վերադառնալ իրենց տները։ Կամավորական գումարտակների կազմակերպման լուրը հայերն ընդունեցին բուռն խանդավառությամբ։ Թիֆլիս էին գալիս բազմաթիվ երիտասարդներ և ցանկություն հայտնում մտնել նրանց շարքերը։

1827 թ. մարտի 30-ին Թիֆլիսում կայացավ հայ առաջին կամավորների զորահանդեսը, իսկ մայիսի 15-ին Թիֆլիսի հայկական վանքում առաջին գումարտակին (գրականության մեջ գործ է ածվել նաև «Հայկական

գունդ») հանձնվեց հատուկ պատրաստված զինադրոշ։ Կամավորների երդման արարողությունից հետո Հարություն Ալամդարյանը նրանց դիմեց հայրենասիրական ջերմ խոսքով, կոչ անելով «Մինչև արյան վերջին կաթիլը սատար լինել մեր ամենասիրելի հայրենիքի վերականգնմանը՝ դարավոր ավերակներից»։



Հայկական կամավորական գումարտակներից մեկի զինադրոշը, 1827 թ.

*Մայիսի 17-ին կամավորական առաջին գումարտակը՝ կազմված 117 զորայիններից, շտաբս—կապիտան Սումբատովի հրամանատարությամբ մեկնեց էջմիածին՝ գործող զորքին միանալու։ Այդ մասին Թիֆլիսի զինվորական գեներալ-նահանգապետ Սիպյագինը ռուսական բանակի գլխավոր շտաբի պետ գեներալ Դիբիչին պաշտոնական զեկույցով հայտնում էր. «... Առաջին գումարտակը, թվով 117 մարդ, արդեն կազմակերպված, պատշաճ կարգով սպառազինված և մատակարարված արշավի համար ամեն ինչով, կորպուսի պարոն հրամանատարի հրամանի համաձայն, այսօր Թիֆլիսից ուղարկված է էջմիածին՝ գործող բանակին միանալու համար»[16]։ Հունիսի 2-ին ռազմաճակատ մեկնեց երկրորդ գումարտակը (կազմված 100 կամավորներից), իսկ օգոստոսի 21-ին՝ երրորդ գումարտակը։ Երրորդ գումարտակի կազմակերպման ու ռազմաճակատ մեկնելու մասին Սիպյագինը գեներալ Դիբիչին գրում*

16 ՍՍՀՄ ԿՊՌԴԱ, ֆ. ՌԳԱ, գ. 4336, թ. 6։

էր. «...Այստեղ կազմավորված հայկական երրորդ դումարտակը թվով 67 մարդ, պաշտոնաթող կապիտան Բեբուրովի հրամանատարությամբ, այս ամսի 21-ին, անհրաժեշտ ամեն ինչով ապահովված, ուղևորվեց դեպի Երևան, ըստ տրված հրթուղու, գեներալ-լեյտենանտ Կրասովսկու զորախմբին միանալու համար»[17]։

Թիֆլիսից Երևան մեկնելու ճանապարհին հայկական կամավորական զորախմբերը համալրվում էին հարյուրավոր հայ երիտասարդներով ու փոքրիկ ջոկատներից վերածվում գումարտակների ու գնդերի։

Առաջին գումարտակի համալրման մասին գրում էին. «Սույն մայիսի 17-ին նրանք (առաջին գումարտակի զորայինները—խմբ.) Թիֆլիսից դուրս եկան և ուղևորվեցին Երևան։ Ճանապարհին տեղական բնակիչներից նույնպես շատ հայեր կազմ ու պատրաստ միանում են իրենց եղբայրներին։ Ջոկատը թվով հասնում էր մինչև 1000 մարդու՝ բոլորն էլ հայեր։ Բոլորը տոգորված են հավատարմության և նվիրվածության ոգով»[18]։ Նույնպիսի մեծ համալրում ստացան նաև երկրորդ ու երրորդ ջոկատները։

Թեև հայկական կամավորական ջոկատները կարճ ժամանակում կազմակերպվեցին ու անմիջապես մեկնեցին ռազմաճակատ և այդ պատճառով չկարողացան ձեռք բերել պատշաճ ռազմական պատրաստություն, այնուամենայնիվ, ամենքն էլ հիանում էին նրանց կարգապահությամբ, մարտունակությամբ, կռիվներում ցուցաբերած անձնազոհությամբ։

Ռուս—պարսկական երկրորդ պատերազմի մասնակից գեներալ Ն. Մուրավյովը հայկական առաջին զորաջոկատի մասին գրել է. «Հայկական դրուժինային տրվեց Թիֆլիսում պատրաստված մի զինադրոշ։ Նա արշավանքի դուրս եկավ հոժարակամ և արտասովոր եռանդով, ունենալով երիտասարդ զինվորի ոգի... Զինված լինելով սվինավոր հրացաններով, նա կանոնավոր զորքի տեսք ուներ, ենթարկվում էր հրամանատարությանը, շարք էր կանգնում և գրանցվում էր մատյաններում... Այս նոր զորքը լավագույն հույսեր է ներշնչում, որ կգա ժամանակ, երբ կարելի կլինի մի պատկառելի կորպուս կազմել տեղական զորքերից, որոնք կարող կլինեն փոխարինել այստեղ, Վրաստանում կլիմայի հետևանքով մեռնող ռուսներին»[19]։ Հայկական կամավորական դրուժինաների կազմակերպումով ավելի ծավալուն դարձավ և առավել կազմակերպված բնույթ ստացավ հայերի ռազմական օգնությունը Երևան արշավող Կովկասյան կորպուսին։

Մայիսի 13-ին Կովկասյան կորպուսի գլխավոր ուժերը գեներալ Պասկևիչի հրամանատարությամբ դուրս գալով Շուլավերից՝ հունիսի 8-ին հասան Էջմիածին։ Կորպուսի գլխավոր ուժերը (չհաշված Բենկենդորֆի զորախումբը) կազմված էին 4800 հետևակ, 3800 հեծյալ զինվորներից ու 26 թնդանոթից[20]։ Գեներալ Պասկևիչը, անձամբ ծանոթանալով Երևանի բերդի պաշտպանման պայմաններին, հանգեց այն եզրակացության, որ գրոհով հնարավոր չէ

---

17 ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. ՌԳԱ, գ. 4336, թ. 14։

18 Նույն տեղում, գ. 4338, թ. 37—38։

19 *Г. Эзов,* Сношения Петра Великого с армянским народом, СПб., 1898, стр. CXXVI.

20 Տե՛ս *А. Щербатов,* նշվ. աշխ., էջ 269, 270։

բերդը գրավելու Դրա համար հարկավոր էր պաշարողական ծանր հրետանի, որը դեռևս Թիֆլիսից տեղ չէր հասել։ Ուստի Պասկևիչը Բենկենդորֆի զորախումբը միացնում է Կորպուսի գլխավոր ուժերին, Երևանի բերդի պաշարումը հանձնարարում գեներալ Ա. Ի. Կրասովսկու գլխավորած 20-րդ դիվիզիային, իսկ ինքը հունիսի 19-ին, Կորպուսի գլխավոր ուժերով, շարժվում է դեպի Նախիջևան։ Նա ծրագրում է նախքան Արարատյան դաշտի շոգերը սկսվելը, գրավել Նախիջևանը և Աբասաբադ բերդը, Երևանը կտրել Պարսկաստանից, դրանով իսկ դյուրացնել նրա գրավումը և հարկադրել Ֆաթհ-Ալի շահին հաշտություն կնքել։

Ռուսական կորպուսի գործողությունները Նախիջևանի ուղղությամբ պըսակվեցին հաջողությամբ։ Գառնի-չայի և Վեդի-չայի շրջակայքում ծավալված հաղթական կռիվներից հետո, հունիսի 26-ին ռուսական կորպուսը առանց դժվարության գրավեց Նախիջևանը և հուլիսի 1-ին պաշարեց Արաքսի ափին անգլիական ռազմական մասնագետների օգնությամբ կառուցված Աբասաբադ բերդը։

Պաշարված Աբասաբադին 12 հազար զորքով օգնության շտապեց Աբաս-Միրզան։ Ռուսական կորպուսի հրամանատարությունը, նախաձեռնությունն իր ձեռքը պահելու նպատակով, հուլիսի 5-ին կորպուսի գլխավոր ուժերով անցնում է Արաքսը և Ջևան-Բուլաղի մոտ ճակատամարտ տալիս Աբաս-Միրզայի զորքերին։ Ճակատամարտն ավարտվում է ռուսական զորքերի փայլուն հաղթանակով։ Կրելով խոշոր կորուստներ՝ պարսկական բանակը փախուստի է դիմում։

Ջևան-Բուլաղի հաղթական ճակատամարտից երկու օր հետո, հուլիսի 7-ին, Աբասաբադի պարսկական բերդապահ կայազորը անձնատուր եղավ։ Աբասաբադում ռուսները գերեցին երեք հազար սարբազ՝ իրենց հրամանատարների հետ, գրավեցին 18 թնդանոթ, հազար փութ վառոդ և կենսամթերքի հարուստ պաշարներ[21]։ Աբասաբադ բերդի գրավման համար մղված ճակատամարտում ռուսական զորքերի շարքում կռվում էր նաև 100 հոգուց բաղկացած հայկական աշխարհազորային մի ջոկատ[22]։

Ռազմական գործողությունները ռուսների համար աննպաստ էին զարգանում Երևանի մոտ։ Բերդը գրավելու գեներալ Կրասովսկու դիվիզիայի գործադրած ջանքերն ապարդյուն անցան, որովհետև Երևանի բերդի պարիսպները կործանելու համար Թիֆլիսից ծանր հրետանին դեռևս տեղ չէր հասել։ Բացի այդ, սկսվել էին Արարատյան դաշտի շոգերը և հազարից ավելի զինվորներ շարքից դուրս էին եկել հիվանդությունների պատճառով։ Ուստի, նախքան Թիֆլիսից օգնական լրացուցիչ ուժերի հասնելը, Պասկևիչի թույլտվությամբ Կրասովսկին դադարեցնում է Երևանի բերդի պաշարումը և հուլիսի 1-ից զորքին հանգիստ տալիս Ապարանի սարահարթում։ Իսկ փոխգընդապետ Լինդենֆելդերի հրամանատարությամբ էջմիածնում թողնում է մի գումարտակ, 5 թնդանոթ և 100 հեծյալ աշխարհազորայինների՝ վանքը և զինվորական հոսպիտալը պաշտպանելու համար։

21 Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 55, վավ. 114ա։
22 Տե՛ս ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. ՌԳԱ, գ. 4316, թ. 3—4։

Նախիջևանը և Աբասաբադը կորցնելով, Աբաս-Միրզան, իր ուժերը վերադասավորելու նպատակով, դիմում է խորամանկության, հաշտության բանակցություններ վարելու պատրվակով զինադադար է խնդրում։ Օգտվելով ժամանակավոր զինադադարից, գեներալ Պասկևիչը որոշ զորամասեր թողնում է Նախիջևանի և Աբասաբադի պաշտպանության համար, իսկ կորպուսի գլխավոր ուժերին հուլիսի 18-ից հանգիստ է տալիս Ղարաբաղի լեռնալանջերում։ Այնուհետև, Աբաս-Միրզայի հետ հաշտության բանակցություններ վարելու նպատակով, հուլիսի 20-ին Կարազիադինի պարսկական զորակայանն է ժամանում գեներալ Պասկևիչի ներկայացուցիչ Ա. Ս. Գրիբոյեդովը, որն ամբողջ պատերազմի ընթացքում գտնվում էր Կովկասյան կորպուսում և հաջողությամբ վարում նրա դիվանագիտական գործերը[23]։ Աբաս-Միրզան, հաշտություն կնքելու անկեղծ ցանկություն չունենալով, ձախողում է հուլիսի 21-ին սկսված բանակցությունները և, օգտվելով ռուսական կորպուսի ժամանակավոր հանգստից, խախտում զինադադարը ու օգոստոսի 4-ին 30 հազարանոց զորքով անցնում Արաքսի ձախ ափը և սկսում հարձակողական գործողություններ։ Նա ծրագրում էր գրավել Էջմիածինը, ոչնչացնել Կրասովսկու դիվիզիան, ապա շարժվել դեպի Թիֆլիս, Ելիսավետպոլ և Ղարաբաղ։ Դրանով նա կամենում էր հարկադրել Պասկևիչին հրաժարվել Թավրիզի վրա արշավելու մտադրությունից և վերադառնալ՝ ռուսական սահմանները պաշտպանելու։

Դեպքերը զարգանում են մեծ արագությամբ։ Օգոստոսի 6-ին Աբաս-Միրզայի բանակը գրավում է Աշտարակը, ապա, առաջ շարժվելով, օգոստոսի 15-ին պաշարում է Էջմիածինը և նույն գիշերը սկսում նրա հրետանային ռմբակոծությունը։

Հակառակորդի անակնկալ հարձակումը և Էջմիածինը կործանելու նրա սպառնալիքներն անկարող եղան ընկճել Էջմիածնի ռուսական կայազորի և տեղի հայ աշխարհազորայինների հաստատակամությունը։ Ժողովելով իրենց ողջ ուժերը, նրանք արիաբար դիմագրում են մեծաքանակ թշնամուն։ Հայ սուրհանդակների միջոցով ստանալով Էջմիածնի պաշարման լուրը, գեներալ Կրասովսկին Էջմիածինը և նրա կայազորը փրկելու համար Ապարանի ճամբարից վերցնում է շուրջ երեք հազար զինվոր, այդ թվում 100 հայ ու 40 վրացի աշխարհազորայիններ և օգոստոսի 16-ին շարժվում դեպի Աշտարակ—Էջմիածին[24]։ Օգոստոսի 17-ին, Օշական գյուղի մոտ, Կրասովսկու և Աբաս-Միրզայի բանակները հանդիպում են իրար։ Սկսվում է արյունալի մի կռիվ, որը պատմության մեջ մտավ «Օշականի ճակատամարտ» անունով։ Աբաս-Միրզան աշխատում էր փակել Կրասովսկու զորագնդի ճանապարհը դեպի Էջմիածին, շրջապատել, ոչնչացնել նրան ու ճանապարհ բացել Թիֆլիս շարժվելու համար։ Իսկ ռուս զինվորները և հայ աշխարհազորայինները, չնայած ծայրահեղ հոգնածության, քաղցին ու ծարավին, կռվում էին մեծ խիզախությամբ։ Մի քանի ժամից պատերազմի դաշտը ծածկվում է թշնամու դիակներով, բայց նոսրանում էին նաև ռուսական զորագնդի շարքերը։

---

23 Տե՛ս Վ. Ա. Պարսամյան, Ա. Ս. Գրիբոյեդովը և հայ-ռուսական հարաբերությունները, Երևան, 1947, էջ 51, նույնը տե՛ս И. Ениколопов, Грибоедов и Восток, Ереван, 1954.

24 ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. ՌԳԱ, գ. 4318, թ. 1—4։

Օշականի ճակատամարտին էջմիածնից տագնապով հետևող Ներսես Աշտարակեցին գրել է. «Ամսի 17-ին, երբ լուսացավ... մոտ ժամի 8-ին երևեցավ ռուսական բանակը Աշտարակի դիմացը։ Իսկ պարսից զորքը պատրաստ վիճակի մեջ դրվեց Օշականի գետակի եզերքին, և երբ ռուսաց զորքը մոտեցավ նրանց, սկսեցին նախ թնդանոթ արձակել և ապա չափազանց սաստկացավ ահեղատեսիլ պատերազմը, սկսած ժամը ութից մինչև ժամը 5-ը, կեսօրից հետո։

Որպես հավաստում են, թշնամու բանակը թվով 30000 էր, բաղկացած 9000 հետևակից և 21000 հեծյալներից։ Թնդանոթների թիվը՝ 24, որից երեքը՝ բավական մեծ։ Իսկ ռուսաց բանակը 3000-ի մոտ 12 թնդանոթով... երկու կողմից, այլ ավելի շատ պարսից կողմից արձակվեցին թնդանոթներ, ոչ պակաս քան 700։

Ասում են այդ կռվում պարսիկներից մեռան ավելի քան 3500, իսկ վիրավոր շատ ավելի...»[25]։

Կանգ չառնելով խոշոր կորուստների առաջ, Աբաս-Միրզան աստիճանաբար ռուսական զորագունդը օղակելու վտանգ է ստեղծում։ Այդ ծանր պահին հանկարծ պարսկական զորքերի գլխին որոտում է հրանոթի հզոր համազարկը։ Պարսիկները սկսում են խուճապահար նահանջել, կարծելով, թե Կրասովսկու զորագնդին օգնության են հասել օժանդակ ուժեր՝ ծանր հրետանիով։ Սակայն ռուսական զորքին ոչ մի ուժ օգնության չէր եկել։ Դա բռնությամբ պարսկական բանակ քշված նորքեցի նշանավոր թնդանոթաձիգ Հակոբ Հարությունյանն էր, որ տեսնելով ռուսական զորագնդի աղետալի վիճակը, իր կյանքը վտանգելով, անգլիական նոր ծանր թնդանոթն ուղղում է պարսկական զորաշարքերի դեմ։ Մինչև թշնամին ուշքի կգար և կհասկանար կատարվածը, Կրասովսկու զորագունդը ճեղքում է հակառակորդի շղթան և մտնում էջմիածին։ Հակոբ Հարությունյանը փորձում է փախչել և միանալ ռուսական զորքին, սակայն էջմիածնի մատույցներում բռնվում է ու ենթարկվում հրեշավոր խոշտանգումների։ Պարսիկ սատրապները փորում են նրա աչքերը, կտրում քիթը, շրթունքները, ականջներն ու կրունկները[26]։ Որոշ ժամանակ անց Հարությունյանը ուշքի գալով, մի կերպ հասնում է էջմիածին, որտեղ սկսում են բուժել նրա վերքերը։ Հակոբ Հարությունյանին իր ցուցաբերած սխրագործության համար ռուսական կառավարությունը սահմանեց տարեկան 100 ռուբլի ցմահ կենսաթոշակ[27]։ Իսկ հայերը, ի հավերժացումն Օշականի ճակատամարտում զոհված ռուս զինվորների հիշատակի, էջմիածնից չորս կիլոմետր հեռավորության վրա 1833 թվականի մայիսի 9-ին, մեծ հանդիսավորությամբ հիմք դրեցին մի հուշարձանի, որի կառուցումն ավարտվեց 1834 թվականին։

Չնայած Օշականի ճակատամարտում Կրասովսկու զորագունդը բազմաթիվ զոհեր տվեց, բայց ձախողեց Աբաս-Միրզայի՝ էջմիածինը գրավելու և Թիֆլիս շարժվելու պլանը։

---

25 Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 55, վավ. 150։

26 Վրացական ՍՍՀ ԿՊՊԱ, ֆ. 8, գ. 1902, թ. 7—8, 27—28։

27 Տե՛ս Ա. Երիցյան, նշվ. աշխ., էջ 293—294։

Տեղեկանալով Օշականի ճակատամարտի մասին, Պասկևիչը Նախիջևանում գեներալ Գ. Էրիսթովի հրամանատարության տակ թողնելով մի զորագունդ, կորպուսի գլխավոր ուժերով շարժվում է դեպի Էջմիածին՝ Աբաս-Միրզայի բանակը Արաքս գետի աջ ափը շպրտելու և Սարդարապատի ու Երևանի բերդերի գրավումը փութացնելու համար։ Իսկ Աբաս-Միրզան իր հերթին, ստանալով Կովկասյան կորպուսի գլխավոր ուժերի Էջմիածին շարժվե-



Օշականի ճակատամարտի հերոսների հիշատակին կառուցված հուշարձանը

լու լուրը, շտապում է ճողոպրել Արաքսի մյուս ափը։ Սեպտեմբերի 5-ին Պասկևիչի զորաբանակը հասավ Էջմիածին, իսկ 12-ին ռուսական զորքը երկու զորասյունով շարժվում է Հյուսեին-Ղուլի խանի օրոք կառուցված Սարդարապատի բերդի վրա, որի պաշտպանությունն իր ձեռքն էր առել Հասան խանը։ Սեպտեմբերի 13-ին Սարդարապատ հասավ գեներալ Կրասովսկին, բերելով Թիֆլիսից տեղ հասած ծանր հրետանին։ Աստիճանաբար բերդին են մոտենում նաև կորպուսի մյուս զորամասերը։

Սեպտեմբերի 16-ից ռուսական թեթև հրետանին սկսեց Սարդարապատի բերդի ռմբակոծությունը։ Երկու օր հետո գործի դրվեց նաև ծանր հրետանին։ Սեպտեմբերի 19-ին փլվում է բերդի հարավային պարիսպը։ Հասան խանը զգալով, որ այլևս անկարող է շարունակել բերդի պաշտպանությունը, նույն գիշերը, իր մի քանի թիկնապահների հետ դիմում է փախուստի։ Նրա օրինակին են հետևում բերդապահ զինվորներից շատերը։ Ռուսական կորպուսը, սեպտեմբերի 19-ի լույս 20-ի գիշերը, գրավում է Սարդարապատի բերդը։ Նրա պարիսպների մեջ փակված հայերը ջերմորեն դիմավորեցին ռուսական զորամասերին։ Սարդարապատում ռուսների ձեռքն ընկավ 13 թնդանոթ, մեծ քանակությամբ վառոդ, ռումբ, 14 հազար չետվերտ ցորեն (չետվերտ—ռուսական հին չափ է, հավասար է 209,9 լիտրի), զգալի քանակությամբ բամբակ և այլ ավար։ Հաղթանակը Սարդարապատի ճակատամարտում Պասկևիչին հնարավորություն ընձեռեց կորպուսի գլխավոր ուժերը շարժել Երևանի վրա։

Երևանի պաշտպանության համար հուսակտուր ճիգեր է գործադրում Հյուսեին-Ղուլի խանը։ Նա բերդապահ զորքի հրամանատարությունը հանձնում է Հասան խանին, իսկ ինքը, փոքրաթիվ ուժերով, հեռանում է բերդից, նպատակ ունենալով հավաքել 8—9 հազար հեծյալներ և բերդը պաշարող ռուսական զորամասերին հարվածել թիկունքից։ Սակայն ռուսական հրամանատարությունը, ժամանակին կռահելով Սարդարի այդ մտադրությունը, դիմում է հակագործողությունների։ Գնդապետ Ն. Ն. Ռաևսկու զորագնդին խնդիր է տրվում՝ հետապնդել Հյուսեին-Ղուլի խանին, ջախջախել նրա ուժերը և անվտանգ դարձնել Երևանը պաշարող զորքերի թիկունքը։

Սեպտեմբերի 21-ին գլխավոր հրամանատարին Ն. Ն. Ռաևսկին հաղորդում էր, որ Երևանի սարդարը, խոշոր կորուստներ կրելով, 1200 հեծյալներով փախավ Բայազետի փաշայության սահմանները, իսկ այնտեղից էլ հեռացավ Խոյ։ Դրանից հետո ռուսական զորամասերը առաջ շարժվելով, սեպտեմբերի 23-ին դուրս եկան Հրազդանի ափը և հաջորդ օրը պաշարեցին Երևանի բերդը։ Երևանի բերդի պարիսպներին է մոտենում նաև ռուսական պաշարողական ծանր հրետանին։ Որոշվում է գրոհն սկսել բերդի հարավ-արևելյան կողմից։

Ռուսական ծանր հրետանին սեպտեմբերի 25-ի վաղ առավոտվանից սկսեց ռմբակոծել Երևանի հինավուրց բերդը։ Հասան խանը բերդում ուներ 6000 սարբազ և 50-ից ավելի թնդանոթ, բայց դրանք անզոր էին խափանելու հաղթանակի վճռականությամբ լցված ռուս զինվորների ու հայ աշխարհազորայինների գրոհները։ Չնայած թշնամու կատաղի դիմադրությանը, բերդից տեղացող հրետանային ու հրացանային կրակին, ռուսական հետև-

վակը, աստիճանաբար առաջ շարժվելով, հասնում է բերդի արտաքին պարիսպներին և սեղմում պաշարման օղակը։

Հրետանային, անընդմեջ ռմբակոծությունների հետևանքով սեպտեմբերի 30-ի, լույս հոկտեմբերի 1-ի գիշերը վերջնականապես կոտրվեց պարսկական կայազորի դիմադրությունը։ Բերդից անկանոն կերպով արձակվող հրանոթային և հրացանային կրակն այլևս անկարող էր փրկել դրությունը։ Ռուսական հետևակը դիմում է համարձակ գրոհների՝ ներխուժելու բերդը, իսկ 40 թնդանոթներ, միայն սեպտեմբերի 30-ի գիշերը, 1000-ից ավել ռումբ թափեցին նրա ամրությունների վրա՝ պատճառելով մեծ ավերածություններ։ Հասան խանի վիճակն առավել ծանրացավ, որովհետև նրա դեմ ապստամբեցին նաև բերդի պարիսպների մեջ քշված ավելի քան 10 հազար հայեր։ Պարսկական կայազորին, գոռոզ Հասան խանի հորդորանքներին հակառակ, տիրել էր անասելի հուսալքություն։



Երևանի ճանձնումը ռուսական զորքերին: Նկ. Ռուբոյի

Հոկտեմբերի 1-ի վաղ առավոտյան սկսվեց ռուսական հետևակի վերջին գրոհը, որն ավարտվեց բերդի գրավումով։ Հրետանային ռմբակոծությունից բերդի հարավ-արևելյան պարսպի փլվածքի միջով առաջինը Երևանի բերդը ներխուժեցին լեյբ-գվարդիական հավաքական գնդի վաշտերը[28] և գրավեցին նրա հարավ-արևելյան աշտարակը։ Նույն այդ ժամանակ գվարդիական գնդի մյուս վաշտերը և գեներալ Կրասովսկու զորամասը արագորեն մո-

---

[28] *Տե՛ս С. Скрутовский*, Лейб-гвардии сводный полк на Кавказе в персидскую войну с 1826 по 1828 гг., СПб., 1896, стр. 43.

տեցան բերդի հյուսիսային դարպասներին և այնտեղից ներխուժեցին բերդը։ Գրավելով հյուսիսային դարպասները, Կրասովսկին փակեց թշնամու բերդապահ զորքի փախուստի ճանապարհը։ Նրանցից անմիջապես հետո բերդ մտան նաև ռուսական կորպուսի մյուս զորամասերը։ Պարսկական կայազորը հարկադրված եղավ անձնատուր լինել, իսկ Պարսկաստանում «անպարտելի» անուն հանած գոռոզ Հասան խանը թաքնվեց եղբոր նորակառույց մզկիթում։ Գվարդիական վաշտերը գեներալ Կրասովսկու գլխավորությամբ մտան մզկիթ, գերեցին Հասան խանին ու նրա հետ այնտեղ թաքնված մյուս խաներին։

Ռուսները գերի վերցրին բերդապահ կայազորի բոլոր զորահրամանատարներին և կենդանի մնացած ավելի քան 3000 սարբազ։ Երևանում ռուսների ձեռքն ընկավ նաև ռազմական մեծ ավար, այդ թվում 35 թնդանոթ, երկու հաուբից, ութ մորտիր, չորս մարտկոցային հրանոթ, մեծ քանակությամբ արկեր, վառոդ և այլ զենք ու զինամթերք, հակառակորդի բոլոր զորամասերի զինադրոշները, ինչպես և ավելի քան 10 հազար չետվերտ հացահատիկ[29]։ Երևանի գրավման մարտերում ռուսներն ունեցան 52 սպանված և վիրավոր։ Այսպիսով, ռուսական զորքերի երրորդ արշավանքը ավարտվեց 1827 թ. հոկտեմբերի 1-ին Երևանի գրավումով։

Հայ ժողովուրդը ցնծագին հրճվանքով ընդունեց Երևանի ազատագրումը պարսիկ խաների ճիրաններից։ Այդ մասին Խ. Աբովյանը, որպես ականատես, գրել է. «...դժոխքի քանդվիլը մեղավորների համար էս գինը չէր ունենալ, ինչպես Երևանու բերդի առնիլը Հայերի համար»[30]։ Ապա խոսելով հայ ժողովրդին համակած հրճվանքի ու խնդության մասին, շարունակում է. «Քանի Հայաստան իր փառքը կորցրել էր, քանի Հայք իրանց գլուխն էին թրի տեղ թշնամու ձեռք քցել, է՛ս օրը, է՛ս ուրախությունը չէին տեսել, չէին վայելել»[31]։

Հայերի հետ մեկտեղ բուռն հրճվանք էին ապրում նաև տեղի ադրբեջանցիները։ Այդ մասին Խ. Աբովյանը գրում է. «Երևան թեւին տվեց, երբ Ռուսաց զորքը իր մեջը մտան... էն ժամանակվան խաղերը որ հանել ասում էին, հավիտյանս հավիտենից կարող են աշխարքին վկայություն տալ՝ թե Թուրք (խոսքը ադրբեջանցիների մասին է —խմբ.) ու Հայ հենց իմացան թե Աստված վեր էկավ, իրանց համար։ Հարիր տեսակ խաղ հայերեն, Թուրքերեն Երևանու բաղերն ու ձորերը լսում էին ու հինգ տարեկան երեխեն էլ էսօր ուրախ վախտը ձեռը բերնին ա դնըում ու ասում»[32]։

Ուշագրավ է, որ Խ. Աբովյանից շատ հետո՝ 1908 թ., հայ մեծ բանաստեղծ Հովհ. Թումանյանը «Երևանի կռիվը և Խ. Աբովյանի «Վերք Հայաստանի»-ն իբրև պատմություն» իր աշխատության մեջ նույնպես պարսկական տիրապետությունը համարել է կատարյալ «դժոխք» և բարձր գնահատել 1826—1828 թթ. ռուս-պարսկական պատերազմի նշանակությունը։ Այդ պատերազմով, գրում է Հովհ. Թումանյանը, «Հայ ժողովուրդը ազատվում էր մի դժոխքից,

29 Տե՛ս ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. ՌԳԱ, գ. 4292, թ. 1—19, գ. 4312, թ. 197—202։

30 Խ. Աբովյան, Երկերի լիակատար ժողովածու, հատ. III, էջ 179։

31 Նույն տեղում։

32 Նույն տեղում, էջ 177։

որ նրա համար ստեղծել էր պարսկական [կոպիտ ու խավար] բռնակալությունը, մի բռնակալություն, որի վայրագությունը ոչ մի սահման ու չափ չէր ճանաչում, ոչ օրենք, ոչ իրավունք, ոչ խնդիր, ոչ աղաչանք, ոչ [կրոն], ոչ սրբություն, ոչ կայք, ոչ կյանք, ոչ կին, ոչ պատիվ, ոչ ամոթ, ոչ խղճմտանք... Եվ այդ դժոխքի միջնաբերդը Երևանն էր»[33]։ Ապա շարունակելով իր միտքը, նա գրում է. «Երևանի առումով Ռուսաստանին միացավ Մասիսի էս կողմը գտնվող հայությունը ու էդ օրվանից հայ ժողովրդի կյանքի ու պատմության մեջ բացվեց մի նոր շրջան։ Կատարվեց (Կովկասի) [հայության դարավոր տենչանքը»][34]։

Երևանի գրավմանը մասնակից նախկին դեկաբրիստ Ե. Լաչինովն իր օրագրում նշել է. «Հուզիչ է ազատագրված հայերի հրճվանքը։ Սրտից է բըխում նրանց արտահայտած ուրախությունը։ Նրանք իրենց երկիրը հարսանքատան են նմանեցնում, որտեղ հիմա ամեն ինչ ցնծում է»[35]։





«Երևանի գրավման համար» մեդալը

Մեծ բերկրանքով լսելով Երևանի գրավման լուրը, Հ. Ալամդարյանը այն գնահատում է որպես «...Հայաստան աշխարհի փրկությունը անգութ պարսիկների երկաթե հնոցից»[36]։

Ռուսական զորքերի կողմից Երևանի գրավման առթիվ Հնդկաստանից իր հայրենակիցներին հղած շնորհավորական նամակում Մեսրոպ Թաղիադյանը գրում է. «Աչքներդ լույս, որ մեր քաղցր աշխարհքն պարսից դառն չարչարանքներից ազատվեց»[37]։

Պարսկական խաների լծից Երևանի ազատագրման առթիվ բնակչությունը մեծ տոնախմբություն կազմակերպեց, որ տևեց մի քանի օր և ավարտվեց հոկտեմբերի 6-ի պաշտոնական տոնակատարությամբ։ Այդ օրը եկե-

33 Հովհ. Թումանյան, Երկերի ժողովածու, հատ. 6, Երևան, 1959, էջ 256։

34 Նույն տեղում։

35 Մ. Ներսիսյան, Դեկաբրիստները Հայաստանում, Երևան, 1958, էջ 374։

36 Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 55, վավ. 210։

37 Տ. Հովհաննես Կ. Մկրեան, Կենսագրութիւն Մեսրովպայ Դաւթեան Թաղիադեանց Երեվանցւոյ, Թիֆլիս, 1886, էջ 133։

ղեցիներում ու մզկիթներում տեղի ունեցան հանդիսավոր արարողություններ։ Կեսօրին հրապարակում կայացավ շքեղ զորահանդես, որին ներկա էր քաղաքի ամբողջ բնակչությունը[38]։ Զորահանդեսի սկիզբը և ավարտը ազդարարվեց 101 հրետանային համազարկով։ Ի նշանավորումն Երևանի բերդի գրավման, սահմանվեց հատուկ մեդալ, որով պարգևատրվեցին Երևանի գրավման հազարավոր մասնակիցներ։



Ռուսական զորքերի զորահանդեսը Երևանում 1827 թ.։ Նկ. Վ. Մաշկովի

Ո՞րն էր հայերի այդպիսի ուրախության և հրճվանքի պատճառը։ Կարծես թե այդ հարցի պատասխանն է կամեցել տալ Ստ. Նազարյանցը, որ գրել է. «...հայերը ճշմարտապես և իրավացի շնորհակալ են Ռուսաստանին, որ ազատել է նորանց մի անտանելի, անարգականստրկությունից և բացել է նոցա առջև մի նոր քաղաքական կյանքի ասպարեզ»[39]։

## 3. ԿՈՎԿԱՍ ԱՔՍՈՐՎԱԾ ԴԵԿԱԲՐԻՍՏՆԵՐԻ ԵՎ ՀԱՅ ԱՇԽԱՐՀԱԶՈՐԱՅԻՆՆԵՐԻ ՄԱՍՆԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԵՐԵՎԱՆԻ ԳՐԱՎՄԱՆԸ

Ինչպես ամբողջ Արևելյան Հայաստանի, այնպես էլ Երևանի համար մղված մարտերում աչքի ընկնող դեր խաղացին Կովկասյան կորպուս արտաքսված ատիճանազրկված դեկաբրիստ սպաները, նրանց «մեղսակիցները»,

38 Տե՛ս Թ. Խ. Հակոբյան, Երևանի պատմությունը (1801—1879 թթ.), Երևան, 1959, էջ 340։
39 Ստ. Նազարյանց, Երկեր, հատ. I, Թիֆլիս, 1913, էջ 95—96։

*1825 թ. դեկտեմբերի 14-ին Պետերբուրգում Սենատի հրապարակի ապստամբությանը մասնակցած գվարդիական գնդերի և Հարավում՝ Չերնիգովյան գնդի ապստամբությանը մասնակցած զինվորները, ավելի քան 3000 մարդ[40], որոնք 1826 թ. ամռանը և աշնան սկզբներին ուղարկվեցին Կովկաս՝ մասնակցելու ռուս-պարսկական պատերազմին։ Նրանց Կովկաս գալը մեծ չափով բարձրացրեց ռուսական կորպուսի մարտունակությունը, քանի որ դեկաբրիստ սպաներն իրենց խոր գիտելիքներով և ռազմական հարուստ փորձով ժամանակի ռուսական սպայության ամենաառաջավոր ներկայացուցիչներն էին։*

*Գեներալ Պասկևիչը 1828 թ. հուլիսի 15-ին ռուսական բանակի գլխավոր շտաբի պետ գեներալ Դիբիչին գրել է. «...Ընդհանրապես աստիճանազրկվածներին ես բոլոր ճակատամարտերի ժամանակ էլ օգտագործել եմ առաջին շարքերում, որպես հրաձիգների, և միշտ այնտեղ, ուր վտանգն ավելի մեծ է եղել»[41]։ Ղեկավարվելով այս սկզբունքով, 1827 թ. մայիսին, երբ Կովկասյան կորպուսի գլխավոր ուժերը Թիֆլիսից շարժվեցին Երևան, Պասկևիչը լեյբ-գվարդիական հավաքական գունդը տեղադրեց գործող կորպուսի ավանգարդում։ Դեկաբրիստական գունդը հունիսի 8-ին հասավ էջմիածին, ապա կորպուսի գլխավոր ուժերի կազմում, ակտիվ մասնակցություն ունեցավ Գառնի-չայի, Վեդի-չայի ճակատամարտերին և հունիսի 26-ին մտավ Նախիջևան։ Այդ գունդը հուլիսի 5-ին մասնակցեց Ջևան-Բուլաղի նշանավոր ճակատամարտին և հուլիսի 7-ին առաջինը մտավ Աբասաբադի պարտված բերդը։ Ջևան-Բուլաղի ճակատամարտում դեկաբրիստական գնդի խաղացած դերն այնքան ակնբախ էր, որ Պասկևիչը գվարդիայի հովանավոր մեծ իշխան Միխայիլ Պավլովիչին գրեց. «...բոլորից ավելի արժանի է գվարդիական գունդը, որի կարգը և եռանդը անպատկերելի է։ Ես բախտավոր եմ, որ դրան կարող եմ օրինակ դարձնել այստեղ կորպուսի այլ վորքերի համար»[42]։*

*Լեյբ-գվարդիական հավաքական գունդը շատ ավելի աչքի ընկնող դեր խաղաց Սարդարապատի և Երևանի բերդերի գրավման մարտերում։ Սեպտեմբերի 18—19-ին, երբ տեղի էր ունենում Սարդարապատի վճռական գրոհը, նա դարձյալ գտնվում էր առաջին շարքերում և իր համարձակ գործողություններով արագացրեց բերդի անկումը։*

*Սեպտեմբերի 25-ից մինչև հոկտեմբերի 1-ը գվարդիական գնդի պաշտպանության տակ ու նրա անմիջական մասնակցությամբ ստեղծվեցին Երևանի բերդի հաղթական գրոհի համար անհրաժեշտ կառույցները։ Այդ գնդի վաշտերն էին, որ հոկտեմբերի 1-ի վաղ առավոտյան, համարձակ գրոհով առաջինը ներխուժեցին բերդ։*

*Սարդարապատի և Երևանի բերդերի գրավման ժամանակ դեկաբրիստական գնդի դերն այնքան մեծ էր, որ ցարական հրամանատարությունը հարկադրված եղավ նշել զինվորների խիզախությունը՝ պարգևատրելով նրանց։*

---

40 *Տե՛ս* Մ. Ներսիսյան, *Դեկաբրիստները Հայաստանում, էջ 12։*

41 *Е. Вейденбаум*, Декабристы на Кавказе («Русская старина», 1903, № 6, стр. 486).

42 *С. Скрутовский, նշվ. աշխ., էջ 37—38։*

Գնդի վաշտերից յուրաքանչյուրը Սարդարապատի գրավման համար պարգևատրվեց հնգական և Երևանի համար՝ ութական խաչով, իսկ գնդի հրամանատար Իվան Շիպովը պարգևատրվեց Սարդարապատի համար՝ Վլադիմիրի 3-րդ աստիճանի և Երևանի գրավման համար՝ Գեորգիևյան 4-րդ աստիճանի շքանշաններով։

Լեյբ-գվարդիական համաքական գունդը հոկտեմբերի 1-ից մինչև հոկտեմբերի 5-ը մնաց Երևանում և մեծ դեր խաղաց քաղաքում կարգուկանոն հաստատելու գործում։ Այնուհետև դուրս գալով Երևանից, նա շարժվեց դեպի Թավրիզ և միանալով կորպուսի գլխավոր ուժերին, մասնակցեց գրեթե բոլոր կարևոր ռազմական գործողություններին[43]։

Արևելյան Հայաստանի ու նրա կենտրոն Երևանի համար մղված ճակատամարտերին գործնական մասնակցություն ունեցան նաև Կովկասյան կորպուս աքսորված և ուղարկված շուրջ յոթ տասնյակ դեկաբրիստ աստիճանազրկվածներ ու նրանց «մեղսակիցներ»[44]։

Անկախ այն բանից, որ դեկաբրիստ սպաները աստիճանազրկված էին ու ծառայում էին որպես շարքային զինվորներ կամ պահպանելով զինվորական կոչումները, վարում էին հրամանատարական պաշտոններ, բոլորն էլ իրենց արժանի բաժինը բերեցին Կովկասյան կորպուսի տարած հաղթանակներում։ Գեներալ Պասկևիչը, Դենիս Դավիդովի դիպուկ բնութագրությամբ, «...աչքի չընկնելով ոչ ոգու մի առանձին կայունությամբ, ոչ պերճախոսությամբ, ոչ թղթի վրա իր մտքերը շարադրելու ընդունակությամբ, ոչ սիրալիր վարմունքով սրտեր գրավելու կարողությամբ և ոչ էլ գիտության որևէ ճյուղից տեղեկություններ ունենալով...»[45], հաճախ հարկադրված էր լինում դիմել ոչ միայն կորպուսում ծառայող նախկին դեկաբրիստ սպաների, այլև աստիճանազրկվածների օգնությանը, որպես գիտուն, փորձված ու հմուտ մասնագետների։ Այդ տեսակետից բնորոշ է նախկին գվարդիական կապիտան, լեյբ-գվարդիայի պիոներային (սակրավոր) էսկադրոնի հրամանատար, դեկաբրիստական շարժմանը հարելու համար աստիճանազրկված և Կովկասյան կորպուս աքսորված Մ. Պուշչինի օրինակը։ Պասկևիչը պատերազմական գործողությունների ընթացքում զգալով կորպուսի ինժեներական մասի պետ գեներալ Տրուզսոնի անկարողությունը, հարկադրված էր նրա պարտականությունները դնել Պուշչինի վրա, որը միշտ էլ դրանք կատարում էր մեծ հաջողությամբ։ Հասարակ զինվորի շինել հագած այդ մարդն ըստ էության դարձել էր կորպուսի ինժեներական մասի փաստացի ղեկավարը[46]։

Աբասաբադի տակ Արաքս գետն անցնելու համար Մ. Պուշչինի ղեկավարությամբ մեկ գիշերվա ընթացքում կառուցվեցին շարժական կամուրջներ

---

43 Թուրքմենչայի հաշտության պայմանագրի կնքումից որոշ ժամանակ անց լեյբ-գվարդիական համաքական գունդը ետ կանչվեց Պետերբուրգ և նրա վաշտերին թույլ տրվեց նորից միաձուլվելու իրենց նախկին գնդերին։ 1828 թ. հուլիսի 8 (20)-ին այն դուրս եկավ Թիֆլիսից և Պետերբուրգ հասավ դեկտեմբերի 11 (23)-ին։

44 Տե՛ս Մ. Ներսիսյան, Դեկաբրիստները Հայաստանում, էջ 9—12։

45 Դենիս Դավիդով, Ռազմական հուշեր, էջ 528—529։

46 *М. В. Нечкина*, Движение декабристов, т. II, М., 1955, стр. 449.



Ն. Ն. Օրժիցկի



Զ. Գ. Չերնիշև



Մ. Ի. Պուշչին



Ա. Ա. Բեստուժև-Մառլինսկի

Կովկաս աքսորված մի խումբ դեկաբրիստներ

և այլ հարմարանքներ, որոնք հնարավորություն տվին արագ կերպով անհրաժեշտ ուժեր փոխադրել գետի մյուս ափը՝ Ջևան-Բուլաղում ճակատամարտ տալու համար։ Մ. Պուշչինի նախագծերով ու նրա ղեկավարությամբ կառուցվեցին Սարդարապատի բերդը գրոհելու անհրաժեշտ ամրությունները[47]։

Առանձնապես մեծ էր Մ. Պուշչինի դերը Երևանի բերդի գրավման գործում։ Դեռևս 1827 թ. գարնանը, լինելով գեներալ Բենկենդորֆի զորախմբի կազմում, նա բավական հանգամանորեն ուսումնասիրել էր բերդը։ Հետագայում իր թողած հիշողություններում Մ. Պուշչինը գրում էր, որ հաճախ, հագնելով պարսիկի շորեր, երեկոները ծպտյալ մտնում էր Երևան, մոտիկից ուսումնասիրում բերդի պարիսպները, աշտարակները և պաշտպանական կարևոր այլ կետեր, ապա վերադառնալով ռուսական ճամբար, գծում բերդի հրետանային ռմբակոծման պլանները։ Այդ ամենը օգտակար եղավ 1827 թ. սեպտեմբերին, երբ Կովկասյան կորպուսը վերջին անգամ պաշարեց Երևանի բերդը։ Այս անգամ ևս, կորպուսի հրամանատարությունը բերդը գրոհելու համար բոլոր կարևոր ամրությունների կառուցումը հանձնարարեց Մ. Պուշչինին, փաստորեն մեկուսացնելով կորպուսի ինժեներական մասի պետ գեներալ Տրուզսոնին։ Երևանի գրավման կապակցությամբ Մ. Պուշչինին շնորհվեց կրտսեր սպայի աստիճան։

Կովկասյան կորպուսի Երևանյան արշավանքին նույնպիսի ակտիվ մասնակցություն ունեցան նախկին դեկաբրիստներ Ե. Լաչինովը, Պ. Բեստուժևը, Յ. Վիշնևսկին, Ն. Ակուլովը, Ա. Գանգեբլովը, Պ. Կոնովնիցինը, Ա. Ռինկեվիչը, Մ. Մալյուտինը, Ն. Սեմիչևը, Ա. Միկլաշևսկին, Վ. Վոլխովսկին, Ի. Բուրցովը, Ն. Օրժիցկին և շատ ուրիշներ[48]։

Երևանի գրավումից հետո, մինչև 1828—1829 թթ. ռուս-թուրքական պատերազմի սկսվելը, որոշ դեկաբրիստներ ծառայության մնացին Երևանի կայազորում և մոտիկից հաղորդակից դարձան հայ կյանքին։ Պ. Կոնովնիցինը վարում էր Երևանի բերդի պարետին առընթեր ինժեներական մասի պետի պաշտոնը, Ա. Գանգեբլովը՝ պլաց-մայորի պաշտոնը, ապա միաժամանակ պաշտոնավարում էր նաև Երևանի մարզային վարչությունում։ Մ. Մալյուտինը աշխատում էր Հայկական մարզի վարչությունում և եռանդուն մասնակցում հայերի ներգաղթի կազմակերպման կոմիտեի աշխատանքներին։

Հիշատակության արժանի է նաև այն փաստը, որ Ա. Գանգեբլովի և Պ. Կոնովնիցինի նախաձեռնությամբ 1827 թ. վերջերին 1828 թ. սկզբին Երևանում ռուս սպաներից կազմվում է մշակութային մի խմբակ։ Անդամները ծանոթանում են Հայաստանին, նրա հիասքանչ բնաշխարհին, նկարում զանազան բնապատկերներ, մասնավորապես գեղեցիկ ու վեհատեսիլ Արարատ լեռը, լուսաբանում ժամանակի հասարակական-քաղաքական հուզող հարցերը։ Նրանք քննարկում են նաև Ա. Ս. Գրիբոյեդովի «Խելքից պատուհաս» պիեսի ձեռագիրը։ Այդ խմբակի նախաձեռնությամբ Երևանի սարդարի պա-

---

47 «Записки Михайла Ивановича Пущина», («Русский архив», 1908, книга 3, № 11—13, стр. 510—514).

48 Տե՛ս Մ. Գ. Ներսիսյան, *Դեկաբրիստները Հայաստանում*, էջ 10—12։

լատի հայելապատ դահլիճում ռուս սպաների ուժերով տեղի ունեցավ «Խելքից պատուհաս»-ի առաջին բեմադրությունը, որին ներկա էր նաև հեղինակը։

Ռուս-պարսկական երկրորդ պատերազմի տարիներին Կովկասյան կորպուս աքսորված դեկաբրիստներից ոմանք անձնական կապեր հաստատեցին հայ մշակույթի, հասարակական ու ռազմական գործիչների (Հ. Ալամդարյան, Ն. Աշտարակեցի, Հ. Շահան-Ջրպետյան, Վ. Մադաթով, Լ. Լազարև, Վ. Բեհբութով և ուրիշներ) հետ։ Շատերն էլ, լինելով Հայաստանում ու մոտիկից ծանոթանալով հայ ժողովրդի պատմությանը, ականատես լինելով նրա ծանր վիճակին, մեծ կարեկցանքով էին լցված հայ ժողովրդի նկատմամբ։ Նրանց մասնավորապես հուզում էր այն հարցը, թե հայ ժողովուրդը կկարողանա՞ արդյոք դուրս գալ այն մղձավանջային ծանր վիճակից, որի մեջ գցել էին նրան պարսիկ խաները և թուրք փաշաները, թե կշարունակի մնալ նախկին թշվառ վիճակում։ Ե. Լաչինովը, Մ. Պուշչինը, Ա. Գանգեբլովը, Վ. Վոլխովսկին, Ա. Բեստուժև-Մառլինսկին, Ն. Վեդենյապինը, Վ. Սուխորուկովը և ուրիշներ իրենց հուշերում ու նամակներում ոչ միայն արժեքավոր տեղեկություններ են թողել Հայաստանի ու հայերի մասին, այլև արտահայտել են դեկաբրիստ սպաների ու աստիճանազրկվածների ջերմ համակրանքը հայ ժողովրդի ազատագրական պայքարի նկատմամբ և դրսևորել անկեղծ ցանկություն, որ, ինչպես իրենք էին ասում, երբեմնի նշանավոր Հայաստանը «նորից ձեռք բերի իր նախկին փառքը»։ Դեկաբրիստ Ե. Լաչինովը իր հուշերում գրում է. «Դո՛ւ, երբեմնի մեծահռչակ Հայաստան, դո՛ւ, որ մեզ մինչև հիմա հիացնող այդքան հուշարձաններ ես թողել, ի՞նչ է քեզ սպասում։ Կհայտնվե՞ս արդյոք նորից փառքի ասպարեզում, թե քո թախծոտ զավակներին վիճակված է հավիտյանս լքյալ գոյություն»[49]։

Զնայած ցարիզմի հետապնդած ռազմա-քաղաքական ու գաղութակալական նպատակներին, Կովկասյան կորպուսի շարքերում կռվող դեկաբրիստներից շատերը ցարիզմի մղած պատերազմները դիտում էին որպես միջոց՝ հայ ժողովրդին ազատագրելու թուրքական և պարսկական լծից։ Այդ մասին Ե. Լաչինովը գրում է. «Ամսի 17-ի առավոտյան (1828 թ. օգոստոսի 17-ի—խմբ.) մենք առաջ շարժվեցինք։ Նայեցինք անցյալ տարվա հենց այս օրերի հետ մեր դրության միանմանությանը։ Այն ժամանակ՝ օգոստոսի 16-ին, մենք դուրս եկանք Ջանգիլիից՝ (խոսքը Կրասովսկու դիվիզիայի՝ Ապարանի ճամբարի մասին է—խմբ.) էջմիածինն ազատագրելու համար, այժմ գնում ենք ազատագրելու նրա ճնշված զավակներին»[50]։

Այդ համոզմունքով էլ պայմանավորվում էր պատերազմական գործողությունների ժամանակ Կովկասյան կորպուսում ծառայող դեկաբրիստների ջերմ համակրանքը և օգնությունը հայերին։

* * *

Երևանի ազատագրումը պարսկական տիրապետությունից, անտարակույս, հնարավոր եղավ Կովկասյան կորպուսի բարձր մարտունակության,

---

49 Մ. Ներսիսյան, նշվ աշխ., էջ 254։

50 Отрывок из «Исповеди Лачинова» («Кавказский сборник», том I, Тифлис, 1876, стр. 151, 152).

հակառակորդի դեմ մղված մարտերում ռուս զինվորների ցուցաբերած քաջության ու խիզախության շնորհիվ։ Միաժամանակ Երևանյան երրորդ արշավանքի հաջող ավարտին մեծ չափով նպաստեց հայերի ու անդրկովկասյան մյուս ժողովուրդների՝ ռուսական արշավող զորքերին ցույց տված համակողմանի օգնությունը։ Սարդարապատի և Երևանի բերդերի գրավման մարտերում մշտապես կրակի առաջին գծում էին հայկական կամավորական գումարտակները։ Սրանց հետ միասին թշնամու դեմ անձնվիրաբար կռվում էին Լոռի-Փամբակում, Շիրակում և Հայաստանի այլ շրջաններում գյուղացիներից տարերայնորեն ձևավորված աշխարհազորային-պարտիզանական ջոկատները։

Երևանի պաշարման օրերին հայ հասարակական գործիչները ռուսական կորպուսին օգնում էին իրենց մարտական պրոպագանդայով։ Ներսես Աշտարակեցին Երևանի ու նրա շրջակայքի հայերին կոչ էր անում ուժեղացնել Երևանը պաշարած ռուսական զորքերին ցույց տրվող օգնությունը։ Այդ կոչերը տարածողներից էր Նորքեցի հայրենասեր Աստվածատուրյանը, որը գազանաբար սպանվեց Հասան խանի սարբազների ձեռքով։ Արձագանքելով Աշտարակեցու կոչերին, Էջմիածնի, Քանաքեռի, Աշտարակի, Օշականի և այլ վայրերի գյուղացիները 1827 թ. սեպտեմբերին, աշխարհազորային նոր ջոկատներ կազմելով, օգնության էին գալիս Երևանի բերդը գրոհող ռուսական զորամասերին։

Կովկասյան կորպուսին գործուն օգնություն էին ցույց տալիս նաև բռնի կերպով պարսկական բանակ ծառայության քշված հայերից շատերը։ Նրանք, փախչելով պարսկական բանակից, մտնում էին աշխարհազորային ջոկատների ու հայկական կամավորական դրուժինաների շարքերը և անձնվիրաբար կռվում հակառակորդի դեմ։ Ռուս-պարսկական երկրորդ պատերազմի մասնակից գեներալ Ն. Մուրավյովը, խոսելով հայկական կամավորական առաջին դրուժինայի մասին, վկայում է, որ այն պարբերաբար համալրվում էր ինչպես Երևանի շրջակայքի, այնպես էլ պարսկական բանակից փախած հայերով։ «...Այս առաջին դրուժինան միանալով մեզ,— գրում է Ն. Մուրավյովը,— հետզհետե ուժեղանում էր պարսկական գումարտակներից փախած հայ սարբազներով ու Երևանի խանության բնակիչներով։ Բոլորը հավատարիմ ծառայության երդում էին ընդունում և մեզ հետ մասնակցում մեր բոլոր արշավանքներին»[51]։

Հայկական կամավորական գումարտակների և աշխարհազորային-պարտիզանական ջոկատների շատ զորայիններ պատերազմական գործողությունների ժամանակ իրենց ցուցաբերած քաջության ու անձնազոհության համար արժանացան մարտական շքանշանների ու զանազան պարգևների։ Սարդարապատի բերդի գրավման համար 8 խաչով պարգևատրվեց հայկական կամավորական գումարտակի մի զորաբաժին, որ կազմված էր 259 մարդուց, 3 խաչով պարգևատրվեցին հայ աշխարհազորային-պարտիզանական մի այլ ջոկատի զորայինները[52]։ Երևանի բերդի գրավմանը մասնակցելու համար

---

51 Г. Эзов, նշվ. աշխ., էջ CXXVI։

52 Վրացական ՍՍՀ ԿՊՊԱ, ֆ. 1137, գ. 715, թ. 138—139։

բազմաթիվ հայեր պարգևատրվեցին «Երևանի բերդի գրավման համար» մեդալով։

Սարդարապատի և Երևանի բերդերի գրավման ժամանակ իրենց քաջագործություններով աչքի ընկած և շքանշաններով պարգևատրված հայ զորայիններից էին Պողե Եսանովը, Ռուստամ Լաչինովը, Գրիգոր Քալանթարյանը, Մկրտում Պոտապովը, Գևորգ Նազարյանը, Սարգիս Ալեքսանյանը և շատ ուրիշներ։

Խ. Աբովյանը հանձին Աղասու և նրա մարտական զինակիցների, գնահատելով հայ զորայինների խաղացած դերը ռուս-պարսկական երկրորդ պատերազմում, գրում էր. «Օրհնվի էն կաթը, որ դուք կերել եք, էն հողը՝ որ ձեզ ծնել ա...»[53].

Երևանյան երրորդ արշավանքի ժամանակ աչքի ընկան նաև հայ սուրհանդակ-կապավորները։ Դրանցից էր խիզախ ու անձնազոհ Հովհաննես Ասլանյանը, որին Ներսես Աշտարակեցին ուղարկեց Էջմիածին՝ Բենկենդորֆի զորաջոկատի՝ Երևան շարժվելու լուրը հաղորդելու համար։ Սակայն Էջմիածնի մատույցներում նրան բռնում են պարսիկ սարբազները և ենթարկում դաժան խոշտանգումների։ Փորում են նրա մեկ աչքը, կտրում քիթն ու լեզուն և ուշագնաց վիճակում նետում ամայի դաշտում ու հեռանում։ Հ. Ասլանյանն իր ցուցաբերած անձնազոհության համար պարգևատրվեց ոսկե մեդալով։ Նրան տարեկան սահմանվեց 100 ռուբլի կենսաթոշակ[54]։ Անվախ ու անձնազոհ սուրհանդակ-կապավորներ էին նաև Հարություն Մանուկյանը, Մկրտիչ Կոստանյանը, Համազասպ Եսայանը և ուրիշներ։

Երևանյան արշավանքի ժամանակ ևս հայերը Կովկասյան կորպուսի պարենային դժվարությունները հաղթահարելու համար ցույց էին տալիս անհրաժեշտ օգնություն։ 1827 թ. հունիսի 29-ին գնդապետ Աբխազովը պաշտոնական զեկուցագրով հայտնում էր, որ Գորիսում հավաքվել է պարենի մեծ պաշար, ընդամենը 9300 չետվերտ, որից սուխարի և ալյուր՝ 4500 չետվերտ։ Նա միաժամանակ հաղորդում էր, որ հավաքված է 1000 գլուխ անասուն[55]։ Ռուսական զորամասերին նյութական օգնություն էին ցույց տալիս նաև Լոռի—Փամբակի, Շիրակի, Ապարանի, Երևանի, Էջմիածնի, Աշտարակի, Թալինի և մյուս շրջանների գյուղացիները։

Էջմիածնի և Երևանի հայերը 1827 թ. ամռանը անմիջական մասնակցություն ունեցան Էջմիածնում ռուսական զինվորական մնայուն հոսպիտալի կազմակերպմանը։ Նրանք նորաստեղծ հոսպիտալին սիրով տրամադրում էին փայտ, մահճակալներ, բամբակ ու բուրդ, ներքնակներ և վերմակներ պատրաստելու համար։ Այդ հոսպիտալում ռուս բժիշկների հետ միասին ծառայում էին նաև հայ բուժակներ[56]։

---

53 Խ. Աբովյան, *Երկերի լիակատար ժողովածու, հատ. III, էջ 325։*

54 Ա. Երիցյան, *Ամենայն հայոց կաթողիկոսությունը, մաս Ա, էջ 282—283։ Նույնը տե՛ս* *М. Я. Алавердянц,* Граф Иван Федорович Паскевич Ереванский, СПб., 1912, стр. 11.

55 *Տե՛ս ԿՊՌՊԱ, ֆ. ՌԳԱ, գ. 4312, թ. 134—143։*

56 *Տե՛ս Л. А. Оганесян,* История медицины в Армении, ч. IV, Ереван, 1947, стр. 7. *Երևանը ռուսական զորքերի կողմից գրավվելուց հետո զինվորական հոսպիտալը փոխադրվեց այնտեղ։*

Ռուս-պարսկական երկրորդ պատերազմի ժամանակ հայերի Կովկասյան կորպուսին ցույց տված համակողմանի օգնության մասին Խ. Աբովյանը պատկերավոր ձևով գրել է. «Ինչ որ պարսից կովի ժամանակին Հայք արին... թե մարդ չիմանա, քարերը վկայություն կտան»[57]։



Հայկական գումարտակներից մեկի զինադրոշը, 1827 թ.

Իհարկե, ինքնին հասկանալի է, որ ռուսական բանակի շարքերում ընդհանուր թշնամու դեմ կռվող հա՛յ զորայիններին, ռուսական զորքերին նյութական ու բարոյական օգնություն ցույց տվող հայ աշխատավորական զանգվածներին ոգեշնչում էին ոչ թե ցարիզմի ռազմա-քաղաքական ու գաղութատիրական նպատակները, այլ ռուսական զենքի միջոցով պարսիկ խաների լծից ազատագրվելու իրենց ակնկալությունները։

Կովկասյան կորպուսի Երևանյան երրորդ արշավանքին մասնակցություն ունեցան նաև վրաց և ադրբեջանական աշխարհազորային ջոկատները։ Գեներալ Դենիս Դավիդովի զորագնդի կազմում՝ դեռևս 1826 թ. սեպտեմբերին Փամբակում և Ապարանում Հասան խանի հրոսակախմբերի դեմ մղվող կռիվ-

57 Խ. Աբովյան, Երկերի լիակատար ժողովածու, հատ III, էջ 121։

*ներին իր մասնակցությունը բերեց վրացիներից կազմված աշխարհազորային մի ջոկատ, որը հատկապես աչքի ընկավ Միրաքի նշանավոր ճակատամարտում։ 1827 թ. Երևանի մոտ գործող ռուսական բանակի կազմում թըշնամու դեմ կռվում էր նաև վրացական մի այլ հեծյալ աշխարհազորային ջոկատ։ Նա ակտիվ մասնակցություն ունեցավ Սարդարապատի և Երևանի բերդի գրավման համար մղված մարտերին։ Բացի այդ ջոկատներից, Հայաստանում Կովկասյան կորպուսի զորամասերում հակառակորդի դեմ կռվում էին նաև վրացի շատ զինվորներ և հրամանատարներ։ Դրանց շարքերում էր նաև գեներալ-մայոր Ա. Ճավճավաձեն։*

*Ռուս-պարսկական երկրորդ պատերազմի ժամանակ Կովկասյան կորպուսի շարքերում, ոչ միայն Ադրբեջանում, այլև Հայաստանում գործում էին ոչ քիչ թվով ադրբեջանական աշխարհազորային ջոկատներ։*

*Կովկասյան կորպուսին մեծ ծառայություն էր մատուցում ժամանակի ադրբեջանական ականավոր հասարակական գործիչ, գրող ու գիտնական, լուսավորիչ ու հրապարակախոս, ռուսական կողմնորոշման պաշտպան Ա. Բակիխանովը[58]։ Նա ռուս-պարսկական պատերազմի տարիներին աշխատում էր Կովկասյան կորպուսում՝ Գրիբոյեդովի մոտ, իբրև արևելյան լեզուների թարգման։ Բակիխանովը ակտիվ մասնակցություն ունեցավ Սարդարապատի գըրավմանը և պարգևատրվեց։*

*Խ. Աբովյանը նույնպես բազմաթիվ վկայություններ ունի, որոնք հաստատում են պարսիկ խաների դեմ հայերի մղած ազատագրական պայքարի նկատմամբ ադրբեջանական ժողովրդական զանգվածների համակրանքը։ Եվ դա հասկանալի է։ Հայերին բախտակից ադրբեջանական աշխատավոր ժողովուրդը նույնպես տնքում էր պարսկական լծի տակ և պայքարում իր ազատագրության համար։*

*Հայերի նկատմամբ երևանաբնակ ադրբեջանցիների համակրանքի և ցույց տված օգնության մասին Խ. Աբովյանը գրում է. նրանք «...որ Հայի հետ մեկտեղ մեծացել՝ ախպոր պես էին վարվում...» հայի հետ, նրանք էլ էին «Սարդարին, Հասան-խանին անիծելով, թքելով, Ղզլբաշի վրա ատամները կրճտացնելով...» երազում այն օրը, որ կազատվեն «...անիծած Ղզլբաշի ձեռիցը...»։ Ադրբեջանցիները «...շատ անգամ,— գրում է Խ. Աբովյանը,— հայերի հետ միացել, քշել էին նրանց, ամա թրի զոռով էկել էլ եդ երկիրը զավթել էին»[59]։*

*Ջնայած Երևանը պարսկական լծից ազատագրվեց ռուս զինվորների, Կովկասյան կորպուս աքսորված դեկաբրիստների և հայ աշխարհազորայինների քաջագործությունների շնորհիվ ու նրանց արյան գնով, բայց Նիկոլայ ցարը այդ փառքը վերագրեց գեներալ Պասկևիչին, նրան շնորհեց «Երևանի կոմս» տիտղոսը ու տվեց մեկ միլիոն ռուբլի պարգև։*

---

58 *Տե՛ս Ц. П. Агаян,* А. Бакиханов, Баку, 1948, стр. 44—53.

59 Խ. Աբովյան, *Երկերի լիակատար ժողովածու, հատ. III, էջ 128։*

## 4. ԹՈՒՐՔՄԵՆՉԱՅԻ ՀԱՇՏՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆԱԳԻՐԸ ԵՎ ՀԱՅԵՐԻ ՆԵՐԳԱՂԹԸ ՊԱՐՍԿԱՍՏԱՆԻՑ

Ռուս-պարսկական պատերազմը 1827 թ. հոկտեմբերից թևակոխեց իր եզրափակիչ էտապը։ Կովկասյան հատուկ կորպուսը, զարգացնելով Սարդարապատի և Երևանի համար մղված մարտերում ձեռք բերած հաջողությունները, հետապնդում էր պարտված հակառակորդին։ Օգտվելով պարսկական բանակի խուճապից ու բարոյալքումից, գեներալ Էրիսթովը, իր զորագնդով հոկտեմբերի 4-ին դուրս գալով Նախիջևանից, հոկտեմբերի 13-ին, գրեթե առանց լուրջ դիմադրության հանդիպելու, գրավեց Թավրիզը։ Հոկտեմբերի 19-ին Թավրիզ հասան նաև կորպուսի գլխավոր ուժերը։



Թուրքմենչայի պայմանագրի կնքումը 1828 թ.: Նկ. Վ. Մաշկովի

Թավրիզի անկումը և պարսկական բանակի խուճապահար նահանջը շահական կառավարությանը հարկադրեցին հաշտություն խնդրել։ Հաշտության բանակցություններ վարելու համար նոյեմբերի 6-ին՝ Դեհխարղան ժամանեց պարսկական պատվիրակությունը (Դեհխարղանում էր գտնվում Կովկասյան կորպուսի գլխավոր զորակայանը)[60]։ Հաջորդ օրը սկսվեցին բանակցությունները։ Արտաքուստ թվում էր, թե ամեն ինչ բարեհաջող է ընթանում։ Պար-

60 Բանակցություններին ռուսների կողմից մասնակցում էին Ի. Պասկևիչը, Ա. Օբրեզկովը, որպես խմբագիրներ՝ Ա. Գրիբոյեդովը, Ա. Ամբուրգերը, Ն. Կիսիլևը, թարգմանիչներ՝ Ա. Բակիխանովը, Դ. Վլագալին։ Պարսկական կողմից մասնակցում էին Աբաս-Միրզան, Կայմակամ Ֆարահանին, Բեգլար բեկ Ֆաթհ-Ալի խանը, ստատս-քարտուղար՝ Միրզա-Մահմեդ-Ալին և թարգմանիչ Միրզա-Մասուդը (այդ բանակցությունների մասին տե՛ս ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. ՌԳԱ, գ. 432)։

սիկներն ընդունում են ռուսական առաջարկությունը՝ Արաքս և Կուր գետերը ճանաչելու որպես պետական սահմանագիծ, ռուսներն էլ, ընդառաջելով պարսիկներին, համաձայնվում են ռազմատուգանքի չափը 15 քուրուր թումանից (30 միլիոն ռուբլի արժաթ) հասցնել 10 քուրուր թումանի (20 միլիոն ռուբլի)։ Սակայն այդպիսի զիջում ստանալուց հետո էլ նրանք ռուսների համար աննպաստ պայմաններ էին առաջարկում ռազմատուգանքի վճարման կարգի և ժամկետների մասին, մասնավորապես պահանջելով, որ ռազմատուգանքի առաջին վճարը կատարվի միայն այն ժամանակ, երբ ռուսական զորքերը ամբողջովին դուրս կգան Հարավային Ադրբեջանից։ Շուտով պարզ է դառնում, որ պարսիկները զանազան պատրվակներով աշխատում են բանակցությունները ձգձգել՝ հույս ունենալով, որ առաջիկայում Թուրքերից օգնություն կստանան և, վերսկսելով ռազմական գործողությունները, ի չիք կդարձնեն Կովկասյան կորպուսի ձեռք բերած հաղթանակները։ Հայտնի է դառնում և այն, որ պարսկական հրամանատարությունը Ուրմիայի շրջանում խոշոր ուժեր է կենտրոնացնում ռուսական կորպուսին թիկունքից անակնկալ հարված հասցնելու համար։ Այսպիսի իրավիճակում հաշտության բանակցություններ վարելու համար սահմանված զինադադարի ժամկետը լրանալուց հետո, Պասկևիչը 1828 թ. հունվարի 7-ին ընդհատում է Դեհխարղանի բանակցությունները և վերադառնում Թավրիզ։

Ստեղծված բարդ իրադրության պայմաններում, որպեսզի շահական կառավարությունը հարկադրված լինի անհապաղ հաշտության պայմանագիր կնքել, Կովկասյան կորպուսի հրամանատարությունը որոշում է վերսկսել հարձակողական գործողությունները։ 1828 թ. հունվարին Հարավային Ադրբեջանում գտնվող ռուսական զորամասերը կարճ ժամանակամիջոցում գրավում են Մարաղան, ապա Ուրմիան, Խոյը, Սալմաստը և հունվարի 25-ին Արդաբիլը։ Դրանից հետո կորպուսի գլխավոր ուժերը ուղղություն են վերցնում դեպի Թեհրան։

Պարսկական բանակի իրար հաջորդած պարտությունները մեծ չափով սրեցին երկրի ներքին հակասությունները։ Ուժեղացան խանական երկպառակությունները, Կաջարների դինաստիայի դեմ ծայր առան հուզումներ ու բացահայտ ապստամբություններ։ Կանգնած լինելով կատարյալ աղետի առաջ, Ֆաթհ-Ալի շահը անգլիական դեսպան Մակդոնալդի միջոցով Պասկևիչին հայտնեց, որ ընդունում է ռուսների առաջարկած հաշտության բոլոր պայմանները և խնդրում վերսկսել բանակցությունները։

Հաշտությունն անհրաժեշտ էր նաև ռուսներին, քանի որ նրանք արդեն լուծել էին իրենց առաջ դրված խնդիրները՝ գրավել Երևանի ու Նախիջևանի խանությունները և դուրս գալ Արաքսի՝ ստրատեգիական կարևորություն ներկայացնող սահմանագիծը։ Բացի այդ, հաշտության կնքումով կկանխվեր թուրք-պարսկական ռազմական հնարավոր դաշինքը և Թուրքիայի հետ պատերազմի դեպքում՝ Կովկասյան կորպուսի ամբողջ ուժերը կկենտրոնացվեին վերջինիս դեմ։

Հաշտության բանակցությունների վերսկսման վայր նշանակվեց Թավրիզից Թեհրան տանող ճանապարհի վրա գտնվող Թուրքմենչայ գյուղը, ուր և փետրվարի 6-ին ժամանեցին ռուսական ու պարսկական պատվիրակություն-

ները։ Անգլիական դիվանագետները դիմում են մի շարք փորձերի՝ մասնակցելու հաշտության բանակցություններին որպես միջնորդ կողմ։ Այդ նպատակով Թեհրանի անգլիական դեսպանության քարտուղար Կեմբելը նույնիսկ, նախքան Թուրքմենչայի բանակցությունները, հանդիպում ունեցավ Պասկեվիչի հետ, սակայն նրանից վճռական մերժում ստացավ։ Ռուսաստանի արտաքին գործերի մինիստր կոմս Նեսսելրոդեն, իր հերթին, շտապեց նախազգուշացնել Պասկևիչին, որ հաշտության պայմանագրի կնքման գործում ոչ մի դեպքում թույլ չպետք է տալ Պարսկաստանում գտնվող անգլիական դեսպանության միջամտությունը[61]։



Ա. Ս. Գրիբոյեդով

1828 թ. փետրվարի 10 (22)-ին Թուրքմենչայում Ռուսաստանի և Պարսկաստանի միջև կնքվեց երկկողմանի հաշտության պայմանագիր[62]։ Ռուսաստանի կողմից պայմանագիրը ստորագրեցին գեներալ Պասկևիչը և պետական խորհրդական Ա. Օբրեզկովը, իսկ Պարսկաստանի կողմից՝ գահաժառանգ Աբաս-Միրզան։

Թուրքմենչայի պայմանագրի կնքման գործում մեծ դեր խաղաց Ա. Ս. Գրիբոյեդովը։ Նա է ձևակերպել և վերջնականապես խմբագրել այդ դաշնագրի բոլոր հիմնական ու սկզբունքային հոդվածները։ Սակայն Ա. Ս. Գրիբոյեդովի գործունեությունը չի սահմանափակվում դրանով։ Պատերազմի ժամանակ նա անմիջական մասնակցություն ունեցավ նաև ռազմական գործողություններին և պարգևատրվեց «Երևանի բերդի գրավման համար» մեդալով[63]։

Թուրքմենչայի պայմանագրով ռուս-պարսկական պետական սահմանագիծը հարավում հասցվեց մինչև Արաքս գետը։ Պարսկաստանը պաշտոնապես ճանաչեց Երևանի ու Նախիջևանի խանությունների և Օրդուբադի գավառի միացումը Ռուսաստանին։ Նա պարտավորվեց Ռուսաստանին վճարել 10 քուրուր թուման (20 միլիոն ռուբլի արժաքի) ռազմական տուգանք։ Պարսկական կառավարությունը պարտավորվեց արգելք չհարուցել իր հպատակության տակ գտնվող այն քրիստոնյաներին, որոնք կցանկանային մշտապես բնակություն հաստատելու համար գաղթել ռուսական տիրապետության սահմանները։ Հատուկ հոդվածով Կասպից ծովում ռազմական նավատորմ ունենալու իրավունքը վերապահվեց միայն Ռուսաստանին։ Թուրքմենչայի պայմանագրով

61 АКАК, т. VII, стр. 540.
62 «Договоры России с Востоком...», стр. 214—222.
63 Տե՛ս Վ. Ա Պարսամյան, Ա. Ս. Գրիբոյեդովը և հայ-ռուսական հարաբերությունները, էջ 61—63։

վերահաստատվեցին Պարսկաստանի՝ Գյուլիստանի պայմանագրի համաձայն ստանձնած բոլոր պարտավորությունները։

Պայմանավորվող կողմերի միջև միաժամանակ կնքվեց ռուս վաճառականության համար նպաստավոր առևտրական պայմանագիր։

Այսպիսով, ռուս-պարսկական երկրորդ պատերազմում ռուսական բանակների տարած հաղթանակի և Թուրքմենչայի պայմանագրի շնորհիվ վերջնականապես տապալվեցին Հայաստանը շահական Պարսկաստանի տիրապետության տակ պահելու պարսկական խաների և նրանց «հովանավոր» Անգլիայի ու Ֆրանսիայի ռեակցիոն պլանները։ Թուրքմենչայի պայմանագրով Արևելյան Հայաստանը միացվեց Ռուսաստանին և հայ ժողովրդի արևելյան հատվածն ազատագրվելով պարսկական դժնդակ տիրապետությունից, իր բախտը հաստատորեն կապեց ռուս մեծ ժողովրդի հետ։

* * *

Ողջ հայության հետ միասին Պարսկաստանում ապրող հայերը նույնպես խանդավառությամբ ընդունեցին Թուրքմենչայի պայմանագիրը։ Եվ դա հասկանալի է։ Հայ ժողովրդի համար պատմական մեծ նշանակություն ունեցող այդ ակտով ոչ միայն Արևելյան Հայաստանն ազատվեց պարսիկ խաների կործանարար լծից, այլև նրա 15-րդ հոդվածով պարսկահայերին իրավունք էր վերապահվում գաղթելու Ռուսաստանին միացված իրենց հայրենի երկիրը։ Թուրքմենչայի պայմանագրով գաղթի համար սահմանվեց մեկ տարի ժամանակ։ Գաղթողներին իրավունք էր տրվում առանց մաքսի և որևէ այլ հարկ վճարելու, տանել իրենց շարժական կայքը, իսկ անշարժ կայքը վաճառելու և առհասարակ իրենց հայեցողությամբ տնօրինելու համար տրվեց հինգ տարի ժամանակ[64]։

Թուրքմենչայի պայմանագիրը ստորագրելուց հետո Պարսկաստանում բընակվող տասնյակ հազարավոր հայեր բուռն ցանկություն հայտնեցին ներգաղթել Արևելյան Հայաստան։ Դրա մեջ էին նրանք տեսնում իրենց փրկությունը պարսկական խաների ճիրաններից։

Հայ հասարակական գործիչները (Ն. Աշտարակեցին, Լազարյանները և ուրիշներ) Պարսկաստանից Արևելյան Հայաստան ներգաղթ կազմակերպելու իրավունք ձեռք բերելը համարելով հայ ժողովրդի համար բախտորոշ նշանակություն ունեցող ձեռնարկում, եռանդուն գործունեություն ծավալեցին դեռևս ռուս-պարսկական երկրորդ պատերազմի ընթացքում։ Զանգվածային ներգաղթի միջոցով նրանք կամենում էին ոչ միայն պարսկահայերին փրկել ձուլման սպառնալիքից, այլև զարկ տալ ավերված երկրամասի տնտեսական ու հոգևոր կյանքին և Արևելյան Հայաստանը դարձնել հայ ժողովրդի ազգահավաքման օջախ։

Նոր գրավված Արևելյան Հայաստանը մարդաշենակ դարձնելու և մասնավորապես Արաքսի գիծը հուսալի էթնիկական տարրով բնակեցնելու խնդիրը մինչև Թուրքմենչայի պայմանագրի կնքումը զբաղեցրել է նաև ցարական կառավարությանը։ Նա ծրագրում էր այդ խնդիրը լուծել այնտեղ շուրջ 80 հա-

---

64 «Договоры России с Востоком...», стр. 221—222.

զար կազակներ վերաբնակեցնելու միջոցով։ Սակայն շուտով պարզ դարձավ, որ Ռուսաստանից կազակների նման զանգվածային գաղթը կպահանջեր ինչպես կազմակերպչական երկարատև ու մանրակրկիտ նախապատրաստություններ, այնպես էլ դրամական ու նյութական խոշոր միջոցների ներդրում, որպիսին կառավարությունն ի վիճակի չէր տրամադրել։ Ուստի այդ ծրագիրը թողնվում է ապագային, օրվա ռեալ հարց համարելով Պարսկաստանից հայերի ներգաղթը[65]։ Արաքսի սահմանային գիծը կազակներով բնակեցնելու ծրագրի ձախողման հարցում պակաս նշանակություն չունեցավ նաև հայ հասարակական գործիչների ցույց տված համառ դիմադրությունը։

Հայերի ներգաղթին ռուսական կառավարության ցուցաբերած դրական վերաբերմունքը, անտարակույս, բխում էր նրա ռազմա-քաղաքական և գաղութային շահերից։ Այդ մասին գեներալ Պասկևիչը ռուսական բանակի գլխավոր շտաբի պետ Դիբիչին գրած զեկուցագրերից մեկում ուղղակիորեն ասում է. «Մեր սահմանի ամայի հողերի բնակեցումը հնազանդ, աշխատասեր և հավատով մեզ նվիրված ժողովրդով կարող է մեծ օգուտ բերել»[66]։

Թուրքմենչայի պայմանագրի կնքումից անմիջապես հետո սկսվում են ներգաղթի եռանդուն նախապատրաստությունները։ Ներգաղթողներին ընդունելու և տեղավորելու համար, 1828 թ. փետրվարի վերջերին, Երևանի մարզային ժամանակավոր վարչությանը կից կազմակերպվում է ներգաղթի կոմիտե, որը հայկական մարզի վարչության ստեղծումից հետո (1828 թ. մարտի 21) գործում էր նրան առընթեր, նրա ղեկավարության ներքո։ Կովկասյան կորպուսի հրամանատարը, 1828 թ. փետրվարի 29-ին, հատուկ հրահանգ է տալիս, ուր հանգամանորեն շարադրված են Երևանի մարզային ժամանակավոր վարչության և նրան առընթեր գործող ներգաղթի կոմիտեի անելիքները։ Այդ հրահանգի համաձայն ներգաղթողները, ռուսական սահմանը հասնելուն պես, լիովին անցնում էին ներգաղթի կոմիտեի իրավասության ներքո։ Հաշվի առնելով եկվորների զբաղմունքը, կոմիտեն պարտավոր էր ներգաղթողներին բնակեցնել համապատասխան շրջաններում (նախ Երևանի գավառում, որից հետո նաև Նախիջևանի, Օրդուբադի, Մեղրու և Ղափանի շրջաններում) պետական հողերի վրա։

Պարսկաստանից ներգաղթի կազմակերպումը հանձնարարվում է գնդապետ Լազար Լազարևին (Լազարյան), որը 1827 թ. աշնանից ծառայության մեջ էր Կովկասյան կորպուսում, իսկ Թավրիզը գրավելուց հետո նշանակվեց նրա սպարետ։ Լ. Լազարևի օգնականներն էին գնդապետ Մովսես Արղությանը, մայորներ Իվանե Մելիքյանը, Իսահակ Ղամազյանը, Դավիթ և Ալեքսանդր Ղորղանյանները և այլ զինվորական ու քաղաքացիական պաշտոնյաներ[67]։ Գնդապետ Լ. Լազարևին տրամադրվեց մի չնչին գումար՝ 25 հազար ռուբլի արծաթ դրամ (որը հավասար էր 100 հազար ռուբլի թղթադրամի)՝ ներգաղթի հետ կապված ծախքերը հոգալու, ինչպես և խիստ կարիքավոր ներգաղթողներին նպաստ տալու համար։

---

65 Լեո, *Հայոց պատմություն, Նորագույն շրջան, մաս 2*, Երևան, 1927, էջ 108—109։

66 ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. ՌԳԱ, գ. 978, թ. 22—26։

67 Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 58, վավ. 133։

*Լ. Լազարևը ձեռնամուխ եղավ ներգաղթի կազմակերպմանը՝ առաջնորդվելով գեներալ Պասկևիչի 1828 թ. փետրվարի 26-ի հատուկ հրահանգով։ Այնտեղ հանգամանորեն շարադրված էր ներգաղթի կազմակերպման կարգը*[68]*։ Հրահանգված էր ներգաղթը կազմակերպել սոսկ կամավոր սկզբունքով։ Առաջին հերթին գաղթեցվելու էին այն շրջաններից, որտեղից Կովկասյան կորպուսի զորամասերը շուտ էին հեռանալու։ Ռուսական կառավարության անունից հայերին հավաստիացնում էին, որ գաղթելու դեպքում նրանք կստանան հնարավորություն՝ զբաղվելու երկրագործությամբ, արհեստով, առևտրով և այն ամենով, ինչով կցանկանան։ Գյուղացիներին խոստանում էին բավարար չափով հող։ Նրանք վեց տարով ազատվում էին հարկեր վճարելուց և երեք տարով բոլոր տեսակի պարհակներից։*

*Պարսկաստանում գտնվող ռուսական զորքերի հրամանատարությանը հանձնարարվում էր գործարար օգնություն ցույց տալ Լ. Լազարևին՝ գաղթը հաջող կազմակերպելու համար, ինչպես և ապահովել գաղթականների կյանքը և ունեցվածքը, հոգ տանել նաև Պարսկաստանում՝ նրանց անշարժ գույքի պահպանմանը և վաճառքի կազմակերպմանը։ Հրահանգվում էր՝ գաղթականների շարժումը և ռուսական սահմանում ընդունումը դյուրացնելու նպատակով նրանց բաժանել խմբերի՝ յուրաքանչյուրը կազմված 150—300 ընտանիքից։*

*Հայերի գաղթի կազմակերպմանը եռանդուն մասնակցություն ունեցավ Պարսկաստանում ռուսական արտակարգ լիազոր-դեսպան Ա. Ս. Գրիբոյեդովը։ Նա մշտապես կապված էր ինչպես գնդապետ Լ. Լազարևի, այնպես էլ Երևանում գործող ներգաղթի կոմիտեի հետ։ Ա. Գրիբոյեդովը նույնիսկ իր վրա էր վերցնում գաղթականների՝ Պարսկաստանում թողած գույքի պահպանման ու վաճառքի կազմակերպման գործը*[69]*։*

*Ներգաղթի նախապատրաստման և իրագործման մեջ իր խոշոր ներդրումն ունի Հայկական մարզի վարչության անդամ Ներսես Աշտարակեցին։ Ներգաղթը հաջողությամբ պսակելու համար նա մեկ անգամ չէ, որ դիմել է գեներալներ Դիբիչի, Պասկևիչի, Կրասովսկու, Պարսկաստանում ռուսական դեսպան Գրիբոյեդովի և ռուսական այլ բարձրաստիճան զինվորականների ու պետական գործիչների օգնությանը։ Նա միաժամանակ գործարար կապեր է հաստատում Լ. Լազարևի ու նրա օգնականների հետ։ Ներսեսը հատուկ պատվիրակների միջոցով բացատրական լայն գործունեություն ծավալեց նաև պարսկահայերի մեջ, հորդորելով նրանց ներգաղթել Արևելյան Հայաստան։ Իսկ երբ ներգաղթն սկսվեց, նա մեծ ջանքեր գործադրեց Հայկական մարզում գաղթականների ընդունման, բնակեցման և նրանց ապրելու համար շատ թե քիչ տանելի պայմաններ ստեղծելու գործում եղած դժվարությունները հաղթահարելու համար։*

*Հայերի գաղթը կապված էր բազմաթիվ դժվարությունների հետ։ Շահական կառավարությունն, օրինակ, դիմում էր զանազան միջոցների՝ տապա-*

---

68 *ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. ՌԳԱ, գ. 978, թ. 3—9։ Նույնը տե՛ս «Նկարագիր գաղթականութեան Հայոց ի Պարսկաստանէ ի Ռուսաստան», Մոսկվա, 1832, էջ 71—72։*

69 *Տե՛ս А. С. Грибоедов,* Полное собрание сочинений, т. III, П., 1917, стр. 237.

լելու այն, որպեսզի չզրկվի իր հազարավոր շահավետ հարկատուներից։ Պարսիկ խաները նույնիսկ սկսեցին մեղադրել Լ. Լազարևին, թե իբր նա խախտում է գաղթի կամավոր սկզբունքը և դիմում բռնի միջոցների։ Այդ խարդավանքները մերկացնելու համար Լ. Լազարևին նույնիսկ հարկ եղավ կազմակերպել գաղթող հայերի և պարսկական պաշտոնյա անձանց առերեսում, որի ժամանակ հայերը միաբերան հաստատեցին, որ իրենք գաղթում են լիակատար հոժարությամբ և որ ոչ մի ուժ չի կարող իրենց ետ պահել հայրենիք վերադառնալու որոշումից[70]։

Հայերին գաղթից ետ պահելու նպատակով պարսիկ խաները ստեղծում էին նաև զանազան արհեստական խոչընդոտներ, հատկապես մեծ դժվարություններ էին հարուցում՝ խանգարելու նրանց անշարժ գույքի վաճառքը։ Սակայն դա նույնպես հայերին ետ չպահեց գաղթելու իրենց հաստատ որոշումից։ Այն, ինչ չէին կարողանում վաճառել, նրանք թողնում էին իրենց ծանոթներին, կամ բարեկամներին՝ հետագայում վաճառելու հույսով, շատերը նույնիսկ հրաժարվում էին իրենց անշարժ գույքից, միայն թե օր առաջ հասնեին հայրենիք։ Հայերի ներգաղթի նկատմամբ պարսիկ խաների վարած թշնամական քաղաքականությունը պաշտպանում էին անգլիական դիվանագետները[71]։ Չնայած հարուցվող բոլոր դժվարություններին ու արգելակումներին, ոչ պարսիկ խաները, ոչ էլ նրանց գործակից անգլիական դիվանագետները չկարողացան խափանել հայերի Հայաստան վերադառնալու գործը։ Պարսկաստանից հեռանալու հայերի ցանկությունը այնքան մեծ էր, որ շատերը, չսպասելով անգամ իրենց հերթին, ժամանակից շուտ սկսում էին շարժվել դեպի ռուսական սահմանը։

Գաղթականների առաջին քարավանը դեպի ռուսական սահմանը շարժվեց 1828 թ. մարտին։ Նրանք մեծ մասամբ կազմված էին Թավրիզաբնակ հայերից։ Սրանց շուտով հետևեցին նաև մյուս գավառների հայերը։ Ներգաղթի ընթացքում գաղթողներին մեծ օգնություն էին ցույց տալիս Պարսկաստանում գտնվող ռուսական զորամասերը։ Զինվորներն ուղեկցում էին ներգաղթողների քարավաններին, նրանց կյանքը և ունեցվածքը ապահովում ավազակային հարձակումներից, անվտանգ կերպով հասցնում էին ռուսական սահմանն ու հանձնում ներգաղթի կազմակերպման կոմիտեին և Հայկական մարզի իշխանությունների իրավասությանը։

Ռուս սպաների՝ հայ գաղթականների նկատմամբ ցուցաբերած բարյացակամության ու հոգատարության մասին կան բազմաթիվ վկայություններ։ Օրինակ, ներգաղթողների մի քանի քարավաններ ուղեկցող կաբարդական հետևակային և Շամշիևի կազակային գնդերի սպաները հաճախ իրենց ձիերը տրամադրում էին կանանց ու երեխաների փոխադրման համար, իսկ իրենք գնում էին ոտքով[72]։ Նրանցից շատերը, անձրևային ու ցուրտ եղանակին, գաղթականներին էին տրամադրում նույնիսկ իրենց անձնական տաք հագուստնե-

---

70 Տե՛ս С. Глинка, Описание переселения армян аддербиджанских в пределы России, М., 1831, стр. 125. Տե՛ս նաև «Նկարագիր գաղթականութեան Հայոց ի Պարսկաստանէ ի Ռուսաստան», էջ 44, 57։

71 Տե՛ս С. Глинка, նշվ. աշխ., էջ 49, 51—54։

72 Տե՛ս ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. ՌԳԱ, գ. 978, թ. 22—26։

րը։ Գեներալ Պասկևիչի վկայությամբ Պարսկաստանից հայերի զանգվածային ներգաղթի հաջող կազմակերպման գործում կարևոր նշանակություն ունեցավ նաև գնդապետ Լ. Լազարևի ու նրա օգնականների ծավալած եռանդուն գործունեությունը[73]։

1828—1829 թթ. Ատրպատականում ապրող 60—65 հազար հայերից Արևելյան Հայաստան ներգաղթեցին 8249 ընտանիք՝ շուրջ 45 հազար հայ[74]։ Նրանք մեծ մասամբ բնակեցվեցին Երևան, Նախիջևան, Օրդուբադ քաղաքներում, Զանգիբասարի, Կարբիբասարի, Սարդարապատի, Վեդիբասարի, Կըրխբուլաղի, Դարաչիչակի, Ապարանի, Սուրմալուի, ինչպես նաև Նախիջևանի ու Օրդուբադի մահալներում և Վայոց ձորում։ Մի քանի հարյուր ընտանիք բընակություն հաստատեց Ղարաբաղում և այլ վայրերում։

Հայկական մարզում գաղթականները բազում դժվարություններ կրեցին։ Նախապես հոգ չէր տարվել բնակարանային ամենատարրական հարմարություններ ստեղծելու մասին, ուստի շատերը հարկադրված էին ապրել վըրաններում կամ բոլորովին բաց երկնքի տակ։ Միջոցներ չէին ձեռնարկվել գաղթականներին ապահովելու պարենով, նույնիսկ անհրաժեշտ քանակությամբ հացով։ Գաղթականներից շատերը, հնարավորություն չունենալով իրենց ունեցվածքը փոխադրել կամ վաճառել, ծայրաստիճան կարիքի մեջ ընկան։ Եվ վերջապես, Երևանի մարզային վարչությանը կից գործող ներգաղթի կոմիտեի, նրա տեղական բաժանմունքների ու ցարական բյուրոկրատիայի ապաշնորհության հետևանքով մեծ դժվարություններ ծագեցին նաև գաղթականների ընդունման, բնակատեղերի բաշխման և գաղթի հետ կապված այլևայլ հարցերում։

Չնայած այս դժվարություններին ու գաղթականների կրած զրկանքներին, ներգաղթի հետևանքով իրականություն դարձավ տասնյակ հազարավոր հայերի իղձը՝ ազատագրվել պարսիկ խաների տիրապետությունից, վերադառնալ հայրենիք՝ իրենց մասնակցությունը բերելու հարազատ ժողովրդի տնտեսական, մշակութային և քաղաքական կյանքին։

---

73 Նույն տեղում։

74 АКАК, т. VII, стр. 845—851.

ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ

# 1828—1829 ԹԹ. ՌՈՒՍ-ԹՈՒՐՔԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ ԵՎ ԱՐԵՎՄՏԱՀԱՅՈՒԹՅՈՒՆԸ

## 1. ՌՈՒՍ—ԹՈՒՐՔԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՍՐՈՒՄԸ

Դեռևս ռուս-պարսկական երկրորդ պատերազմի շրջանում լրջորեն սրվել էին մեծ տերությունների հակասությունները Մերձավոր Արևելքում և Բալկաններում։ Ռուսաստանը, Անգլիան, Ֆրանսիան, Ավստրիան, օգտվելով Թուրքիայի թուլությունից, ձգտում էին աստիճանաբար իրենց ազդեցությունը տարածել ու ամրապնդել Օսմանյան կայսրության մեջ։ Նրանք ջանում էին տիրանալ Բոսֆորի ու Դարդանելի նեղուցներին և հատկապես Կոստանդնուպոլսին, Կ. Մարքսի խոսքերով ասած՝ Արևելքի ու Արևմուտքի միջև ընկած այդ ոսկյա կամուրջին[1]։

Սևծովյան նեղուցների ու Կոստանդնուպոլսի գրավումը Ռուսաստանի կողմից կնշանակեր ազատ ելք ունենալ դեպի Միջերկրական ծով, որը մեծ չափով կնպաստեր նրա համաշխարհային տնտեսական կապերի ուժեղացմանը։ Սակայն Ռուսաստանի շահագրգռվածությունը չէր պայմանավորված միայն նեղուցներով և առհասարակ Սև ծովի հյուսիսային ափերով, ինչպես նաև դրանց տնտեսական նշանակությամբ։ Դրանք Ռուսաստանի համար բացառիկ կարևոր էին երկրի պաշտպանության, մասնավորապես նրա հարավային սահմանները թուրքական հարձակումներից անվտանգ դարձնելու համար։ Սևծովյան նեղուցների ռազմա-ստրատեգիական նշանակության մասին Ֆ. Էնգելսը գրել է. «Դարդանելի և Բոսֆորի առևտրական նշանակությունը միաժամանակ դրանք դարձնում է նաև առաջնակարգ ռազմական դիրքեր, այսինքն այնպիսի դիրքեր, որոնք վճռական նշանակություն կունենան ամեն մի պատերազմում... Միևնույն ժամանակ Դարդանելի և Բոսֆորի նեղուցներն այնքան նեղ են, որ հարկ եղած տեղերում կառուցված և լավ զինված փոքր թվով իսկ ամրությունները, որոնք անմիջապես կստեղծի Ռուսաստանը նեղուցներին տիրանալու դեպքում, կարող է անհաղթահարելի պատվար կազմել ողջ աշխարհի միացյալ նավատորմերի առջև, եթե նրանք փորձեն անցնել նեղուցներով»[2]։

---

1 *К. Маркс и Ф. Энгельс,* Сочинения, т. IX, стр. 441.

2 *К. Маркс и Ф. Энгельс,* Сочинения, т. 9, изд. II, стр. 14.

Բալկաններում և Մերձավոր Արևելքում սուր կերպով բախվում էին Ռուսաստանի և արևմտաեվրոպական մեծ տերությունների շահերը։ Ցարիզմի հզոր ախոյաններն էին Ավստրիան, Անգլիան և Ֆրանսիան, որոնցից յուրաքանչյուրը պայքարում էր հաստատուն դիրք գրավելու այդ շրջաններում։

Սրված հակասությունների ու բարդ իրադրության պայմաններում ցարական կառավարությանը հաջողվեց հարկադրել Թուրքիային՝ դիմելու որոշ զիջումների։ 1826 թ. սեպտեմբերի 25-ին (ն. տ. հոկտեմբերի 7) Ռուսաստանի և Թուրքիայի միջև կնքվեց Աքքերմանի համաձայնագիրը, որով թուրքական կառավարությունը կրկին վերահաստատում էր նախորդ պայմանագրերով ու մասնավորապես 1812 թ. Բուխարեստի պայմանագրով ստանձնած իր բոլոր պարտավորությունները[3]։ Թուրքիան պարտավորվեց սեփական ջրերում նավարկելու ազատ իրավունք տալ ռուս վաճառականների նավերին, ինչպես նաև առևտրական նպատակներով անարգել կերպով օգտվելու նեղուցներից։ Հատուկ նշվեց այն մասին, որ Թուրքիան անհապաղ իրագործելու է Բուխարեստի պայմանագրի որոշումները նաև Մոլդավիայի, Վալախիայի և Սերբիայի վերաբերյալ։ Աքքերմանի համաձայնագիրը Ռուսաստանի դիվանագիտական խոշոր հաղթանակն էր։

Ռուսական կառավարությունը որոշ քայլերի է դիմում լուծելու նաև թուրքական բռնապետության դեմ 1821 թ. ապստամբության դրոշ պարզած հույն ժողովրդին ինքնավարություն տալու հարցը։

Այդ կապակցությամբ Ռուսաստանի և Անգլիայի միջև 1826 թ. մարտի 23-ին (ապրիլի 4) ստորագրվեց Պետերբուրգի արձանագրությունը, որով ստորագրող կողմերը որոշեցին Թուրքիայի հետ համատեղ բանակցություններ վարել և միասին էլ դիմել սուլթանին՝ առաջարկելով դադարեցնել Հունաստանում մղվող պատերազմը և հույներին ինքնավարություն տալ։ Հունաստանն առանց հապաղելու միացավ Պետերբուրգի արձանագրությանը, իսկ սուլթանական կառավարությունը հրաժարվեց հունական հարցում որևէ զիջում անել։ Ինքնին հասկանալի է, որ հունական հարցում այդպիսի դիրք բռնելով, ցարիզմը առավելապես շահագրգռված էր Բալկաններում իր ազդեցության ուժեղացմամբ։

Թուրքիայի վրա նոր ճնշում գործադրելու և հունական հարցը «լուծելու» նպատակով 1827 թ. հուլիսի 6-ին Լոնդոնում, Ռուսաստանի նախաձեռնությամբ, համաձայնագիր ստորագրվեց Ռուսաստանի, Անգլիայի և Ֆրանսիայի միջև, որով նրանք պարտավորվեցին պաշտպանել հույներին ինքնավարություն տալու պահանջը։ Անգլիան և Ֆրանսիան վախենում էին, որ Ռուսաստանի միակողմանի միջամտությունը հունական հարցում կարող էր հանգեցնել Բալկաններում իրենց ազդեցության թուլացմանը և Ռուսաստանի ազդեցության ուժեղացմանը։ Այդ իսկ պատճառով բարվոք էին համարում համատեղ գործել։

Լոնդոնյան համաձայնագրի կնքումից հետո Ռուսաստանը, Անգլիան և Ֆրանսիան Թուրքիային առաջարկեցին դադարեցնել ռազմական գործողությունները Հունաստանում, հեռացնել այնտեղից թուրք-եգիպտական նավա-

---

[3] «Договоры России с Востоком...», стр. 49—58.

տորմն ու ցամաքային զորքերը և հունական հարցը լուծել առաջարկված
պայմաններով։ Սակայն Թուրքական կառավարությունը դարձյալ մերժեց
դաշնակիցների առաջարկությունը և պատրաստվեց նոր զորքեր ուղարկել
Հունաստան՝ ռազմական գործողություններն ավելի ծավալելու և ապստամբու-
թյունը վերջնականապես խեղդելու նպատակով։ Ի պատասխան դրան 1827 թ.
սեպտեմբերին ռուսական, անգլիական և ֆրանսիական միացյալ նավա-
տորմը մոտենում է Նավարինի ծովախորշին, ուր գտնվում էր Թուրք-եգիպ-
տական նավատորմը և վերսկսում բանակցությունները՝ հույների դեմ պա-
տերազմական գործողությունները դադարեցնելու պահանջով։ Դարձյալ մեր-
ժում ստանալով, դաշնակիցների նավատորմը մտնում է Նավարինի ծովա-
խորշը։ Թուրք-եգիպտական նավատորմը, օգտվելով իր թվական գերակշ-
ռությունից (126 նավ, դաշնակիցների 27 նավի դիմաց), առաջինն է կրակ
բացում։ 1827 թ. հոկտեմբերի 20-ին Նավարինում տեղի ունեցավ ծովային
խոշոր մարտ, որն ավարտվեց Թուրք-եգիպտական նավատորմի ջախջա-
խումով։

Նավարինի ճակատամարտն առավել բորբոքեց Թուրքական կառավարող
շրջանների թշնամանքը Ռուսաստանի նկատմամբ։ 1827 թ. դեկտեմբերի 18-ին
սուլթանը չեղյալ համարեց Ռուսաստանի հետ կնքված բոլոր պայմանագրե-
րը, այդ թվում նաև Աքքերմանի համաձայնագիրը և սկսեց նախապատրաստ-
վել պատերազմի։ Նա ակնկալում էր պատերազմի միջոցով իրագործել Ղրի-
մը գրավելու, Ռուսաստանը ամբողջովին Ազովից ու Սև ծովից մեկուսացնե-
լու, ռուսներին Կովկասից դուրս մղելու և այնտեղ Թուրքական տիրապետու-
թյուն հաստատելու իր վաղեմի ծրագրերը։ Կովկասում հաջողության հասնե-
լու համար սուլթանի բոլոր գործակալները, այդ թվում և մահմեդական հո-
գևորականությունը, ռեակցիոն մյուրիդիզմի պրոպագանդ էին ծավալում
կովկասյան լեռնականների մեջ։

Ցարիզմն իր հերթին, Թուրքմենչայի պայմանագիրը կնքելով, Թուրքիայի
դեմ պատերազմի էր նախապատրաստվում, ծրագրելով ոչ միայն վերջնա-
կանապես խափանել Թուրքիայի զավթողական նկրտումները Ղրիմի, Կով-
կասի, Սև ու Ազովի ծովերի նկատմամբ, այլև թուլացնել նրա ռազմական
հզորությունը և Բալկաններում ու Մերձավոր Արևելքում ուժեղացնել իր ազ-
դեցությունը։

Այդ ծրագրի իրագործման համար նպաստավոր իրադրություն էր ըս-
տեղծվել։ Նապոլեոնի ջախջախումը մեծ չափով բարձրացրել էր Ռուսաստա-
նի ռազմական հեղինակությունը։ 1827 թ. լոնդոնյան համաձայնագրի և Նա-
վարինի ճակատամարտի հետևանքով Անգլիան ու Ֆրանսիան հարկադրված
էին չեզոքություն պահպանել։ Բացի այդ, ուժեղացել էր Թուրքիայի տիրա-
պետության տակ գտնվող քրիստոնյա ժողովուրդների ազատագրական պայ-
քարը, քանի որ 1821 թ. Թուրքիայի դեմ սկսված հունական ապստամբու-
թյունը ոգեշնչող օրինակ հանդիսացավ նաև Թուրքահպատակ մյուս ժո-
ղովուրդների համար։ Ցարիզմը այդ ժողովուրդների «հովանավորի» ու
«պաշտպանի» դերը ընդունեց՝ նրանց իր շահերին ծառայեցնելու նպատակով։

«Այդ գրեթե բացառապես ուղղափառ-հունական դավանանքին պատկա-
նող քրիստոնյաները (խոսքը բալկանյան քրիստոնյաների մասին է—խմբ.),—

գրում է Ֆ. Էնգելսը,— այդպիսով, դավանակից էին ռուսներին, իսկ նրանց թվում սլավոնները՝ սերբերն ու բուլղարները նաև նրանց ցեղակիցներն են։ Այդ իսկ պատճառով էլ բավական էր, որ Ռուսաստանը հայտարարեր ճնշված ուղղափառ եկեղեցին ու ստրկացված սլավոնությանը պաշտպանելու իր կոչման մասին, որպեսզի այստեղ ազատագրության քողի տակ նվաճումներ կատարելու համար հողը արդեն պատրաստ լիներ։ Ճիշտ այդպես էլ Կովկասյան լեռնաշղթայից հարավ Թուրքական տիրապետության տակ գտնվում էին քրիստոնեական փոքր պետություններ ու քրիստոնեություն դավանող հայեր, որոնց նկատմամբ ցարիզմը կարող էր իրեն «ազատարար» հռչակել»[4]։ Անկախ ցարիզմի նվաճողական նպատակներից, այդ ժողովուրդների նկատմամբ նրա վարած «հովանավորման» քաղաքականությունը, ինչպես նաև պատերազմների միջոցով Թուրքիայի ռազմական հզորության թուլացումը օբյեկտիվորեն աշխուժացնում էր Թուրքահպատակ քրիստոնյա ժողովուրդների ազատագրական շարժումները և Ռուսաստանի նկատմամբ համակրանքի ջերմ զգացմունքներ արթնացնում նրանց մեջ։ Այս, ինչպես և ռուսական զենքի միջոցով Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին, մեծ հույսեր էին ներշնչում նաև արևմտահայ զանգվածներին։ Նրանց մեջ գնալով ուժեղանում էր իրենց գոյատևման համար ակտիվ պայքարի դիմելու վճռականությունը։ Դրա անմոռաց օրինակը տվեցին Տավրոսյան լեռների քաջակորով զավակները՝ զեյթունցիները, որոնք իրենց անձնազոհ պայքարով հասել էին յուրօրինակ ինքնավարության։ XIX դարի քսանական թվականների առաջին կեսին հայերի ինքնապաշտպանական զինված ելույթներ տեղի ունեցան նաև Բայազետի, Սասունի և Արևմտյան Հայաստանի մի շարք այլ գավառներում։

## 2. ՌԱԶՄԱԿԱՆ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԿՈՎԿԱՍՅԱՆ ՃԱԿԱՏՈՒՄ ԵՎ ՀԱՅԵՐԻ ՕԳՆՈՒԹՅՈՒՆԸ ՌՈՒՍԱԿԱՆ ԲԱՆԱԿԻՆ

Ռուսաստանի համար նպաստավոր իրադրության պայմաններում՝ 1828 թ. ապրիլի 14(26)-ին սկսվեց ռուս-թուրքական պատերազմը՝ Բալկանյան և Կովկասյան ռազմաճակատներով։

Ռուսական հրամանատարությունը Կովկասյան ճակատում իր գլխավոր խնդիրն էր համարում՝ գրավել Փոթին ու Անապան, ամրանալ Սև ծովի արևելյան ափերին, ապա դառնալ Կարսին, Ախալքալաքին, Ախալցխային, Բայազետին և այդպիսով անվտանգ դարձնել կայսրության հարավային սահմանները։ Բացի այդ, Կովկասյան ռազմաճակատում, ակտիվ գործողությունների միջոցով ռուսական հրամանատարությունը ձգտում էր շլատել Թուրքական բանակը և թույլ չտալ հակառակորդին խոշոր ուժեր կուտակել պատերազմի գլխավոր՝ Դանուբ-բալկանյան ռազմաճակատում։

1828 թ. ապրիլին ռուսական բանակը (կազմված 92 հազար մարդուց), Պ. Վիտգենշտեյնի հրամանատարությամբ, անցավ Պրուտ գետը և գրավեց Դանուբյան իշխանությունները, իսկ Կովկասյան ճակատում ռուսական զոր-

---

4 *К. Маркс и Ф. Энгельс*, Сочинения, т. 22, стр. 17.

քերը հարձակողական գործողություններ սկսեցին հունիսի կեսերին։ Կովկասյան ռազմաճակատում պատերազմական գործողությունների գլխավոր ասպարեզ դարձան Կարսի, Ախալցխայի, Բայազետի, Էրզրումի (Կարինի) և Վանի փաշայությունների տերիտորիաները, որոնց բնակչության հիմնական մասը հայերն էին։ Այս հանգամանքը ռուսական զորքերի համար խիստ դրական հետևանք ունեցավ, որովհետև արևմտահայերը, թուրքական տիրապետությունից իրենց ազատագրության ելքը կապելով Ռուսաստանի հետ, ամենուրեք Կովկասյան հատուկ կորպուսի զորամասերին դիմավորում էին մեծ սիրով և գործուն օգնություն էին ցույց տալիս[5]։

Պատերազմական գործողությունների առաջին իսկ օրերին Կովկասյան ճակատում ռուսական հրամանատարությունը խնդիր դրեց սրընթաց գրոհով գրավել ռազմա-ստրատեգիական կարևոր նշանակություն ունեցող Կարս քաղաքը և նրա հռչակավոր ամրոցը։ Կովկասյան կորպուսի զորամասերը (հայ աշխարհազորայինների հետ միասին շուրջ 14 հազար մարդ) հունիսի 14-ին անցան Ախուրյան գետը և ձեռնամուխ եղան այդ խնդրի իրագործմանը։

Ռուսական բանակի առաջխաղացումը դեպի Կարս եռանդուն պայքարի հանեց նաև արևելահայ զանգվածներին։ Ճակատ մեկնելու համար կազմակերպվում էին հայկական աշխարհազորային նոր ջոկատներ։ Նկատի ունենալով ռուս-պարսկական առաջին և երկրորդ պատերազմների ժամանակ հայկական աշխարհազորային ջոկատների խաղացած կարևոր դերը, Կովկասյան կորպուսի հրամանատարությունը սիրով ընդառաջում էր հայերի նախաձեռնությանը, որովհետև Կովկասյան ռազմաճակատում հակառակորդը քանակապես գերակշռում էր ռուսական ուժերին։ Եթե Կովկասյան ռազմաճակատում ակտիվ հարձակողական գործողությունների համար Թուրքիան 40 հազարից ավելի զորք ուներ, ապա ռուսները՝ Կովկասում ունեցած 49 հազար զորքից Թուրքիայի դեմ հարձակողական գործողություններ վարելու համար կարող էին դուրս բերել միայն շուրջ 14 հազար զինվոր[6]։ Մնացած զորամասերը զբաղված էին երկրամասի սահմանային շրջանների պաշտպանությամբ։ Այս իրադրության մեջ կովկասյան կորպուսի հրամանատարությունն, ընդառաջելով հայերի ցանկությանը, դեռևս պատերազմի նախօրյակին ձեռնամուխ եղավ Երևանի ու նրա շրջակայքի հայերից կամավորական աշխարհազորային ջոկատների ձևավորմանը։ 1828 թ. փետրվարին Երևանում ստեղծվեց 400 հայերից բաղկացած «Հայկական հեծյալ գունդ» և «Հայկական հետևակային գումարտակ» (800 հոգի)[7]։ Խաղաղ ժամանակ, մարզի սահմանների պահպանման համար սրանք պահակային ծառայություն էին կատարում, իսկ ռուս-թուրքական պատերազմը սկսվելուն պես մեկնեցին ռազմաճակատ։ Պատերազմի ընթացքում աշխարհազորային նոր ջոկատներ կազմակերպվեցին ինչպես Հայկական մարզի, այնպես էլ Կովկասի հայաբնակ մյուս շըր-

5 Տե՛ս «История военных действий в Азиатской Турции в 1828—1829 годах», ч. 1, Варшава, 1843, стр. 76—77 и пос.

6 Տե՛ս *Н. И. Сухотин*. Периоды войн, не вошедшие в 1, 2 и 3 части обзора войн России от Петра Великого до наших дней, 1897, ч. IV, кн. 1, стр. 340—341.

7 Տե՛ս ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. ՌԳԱ, գ. 4334, թթ. 8—9, 12—13։

ջանների հայերից։ Միայն Հայկական մարզից ռազմաճակատ մեկնեցին շուրջ երեք հազար հայ աշխարհազորայիններ[8]։

Կոտրելով հակառակորդի դիմադրությունը, Կովկասյան հատուկ կորպուսի զորամասերը հունիսի 20-ին ընդհուպ մոտեցան Կարսին և պաշարեցին նրա բերդը։ Թուրքական հրամանատարությունը մեծ հույսեր էր կապում Կարսի բերդի հետ, որովհետև իր բնական հարմար դիրքով և տարիներ շարունակ ֆրանսիական ու անգլիական ռազմական ինժեներների օգնությամբ կառուցած արհեստական ամրություններով ամրացված լինելով, այն համարվում էր ժամանակի անառիկ ամրոցներից մեկը։ Բերդի պաշտպանությունը հանձնված էր 11 հազարանոց կայազորին, որն իր տրամադրության տակ ուներ 151 թնդանոթ։ Պաշարված Կարսին մեծաթիվ բանակով օգնության էր շտապում Կիոս-Մամեդ փաշան։ Սակայն, որքան էլ Կարսի բերդը անառիկ ամրոցի անուն էր հանել, այնուամենայնիվ չդիմացավ ռուսական զորամասերի հուժկու գրոհներին։ Հունիսի 23-ի վաղ առավոտյան Կարսի թուրքական կայազորը Մահմեդ-էմին փաշայի գլխավորությամբ հարկադրված եղավ անձնատուր լինել, իսկ Կիոս-Մամեդ փաշայի զորաբանակը, լսելով Կարսի անկման լուրը, նահանջեց և սկսեց նախապատրաստվել՝ կանխելու ռուսական բանակի հետագա առաջխաղացումը։

Կարսի գրավմանը մեծ օգնություն ցույց տվեցին ինչպես Արևելյան Հայաստանից եկած և Կովկասյան կորպուսի կազմում գործող հայկական աշխարհազորային ջոկատները, այնպես էլ Կարսի հայերը։ Պաշարման օրերին բերդապահ թուրքական կայազորի հրամանատարությունը զինել էր զենք կրելու ընդունակ հայ տղամարդկանց՝ բերդի պաշտպանության համար նրանց օգտագործելու նպատակով։ Սակայն կռվի թեժ պահին նրանցից շատերը միացան ռուսներին և զենքը ուղղեցին թուրքերի դեմ, իսկ բերդում մնացածները, վտանգի ենթարկելով իրենց կյանքը, ռուսներին օգնում էին, ինչով կարող էին[9]։

Կարսի անկումով թուրքերը զրկվեցին մի հզոր ամրոցից, որը կոչված էր ոչ միայն պաշտպանական դեր խաղալու, այլև անհրաժեշտության դեպքում օգտագործվելու որպես ռազմական հենակետ՝ Անդրկովկաս ներխուժելու համար։ Բացի այդ, գրավելով Կարսը, Կովկասյան կորպուսի զորամասերը թուրքական բանակը ետ շպրտեցին ռուսական սահմանագլխից և ճանապարհ բացեցին դեպի Ախալքալաք, Ախալցխա, ապա էրզրում։

Կովկասյան կորպուսի հրամանատարությունը, Կարսի պաշտպանությունը վստահելով հատուկ կայազորի, մնացած ուժերը (9 հազար զորք՝ 48 հրանոթով) շարժեց դեպի Ախալքալաք—Ախալցխա։ Սակայն Կիոս-Մամեդ փաշայի բանակին Ախալքալաք—Ախալցխային օգնության հասնելու հնարավորությունից զրկելու համար դիմեց ռազմական խորամանկության։ Ռուսական հրամանատարությունն, անցնելով ճարպիկ զորաշարժի, այնպիսի տպավորություն ստեղծեց, թե իբր նպատակ ունի շարժվել ոչ թե Ախալքալաք—

---

8 Տե՛ս Ա. Երիցյան, նշվ. աշխ., էջ 453։

9 Տե՛ս В. Потто, Кавказская война..., т. IV, вып. II, Тифлис, 1887, стр. 64.

Ախալցխա ուղղությամբ, այլ դեպի Էրզրում։ Կիոս-Մամեդ փաշան, հավատալով դրան, իր բանակը շտապ ետ է քաշում՝ Էրզրում տանող ճանապարհը պաշտպանելու։ Օգտվելով դրանից, ռուսական կորպուսը հուլիսի 23-ին արագորեն մոտեցավ Ախալքալաքին և սրընթաց գրոհով գրավեց այն։ Ամրոցի թուրքական կայազորի զինվորների մի մասը դիմեց փախուստի, իսկ 300 զինվորներ գերի հանձնվեցին։ Ախալքալաքից անմիջապես հետո, հուլիսի 26-ին, Կովկասյան կորպուսի զորամասերը նույնպիսի հաջողությամբ գրավում են նաև Խերթվիսի ամրոցը։

Ամրապնդելով ձեռք բերած հաջողությունները, համալրվելով Վրաստանից օգնության եկած 2500 զինվորներով, օգոստոսի 5-ին ռուսական բանակը պաշարեց Ախալցխան։ Նույն ժամանակամիջոցին Ախալցխային էր մոտեցել և նրա մոտակայքում ճամբար դրել Կիոս-Մամեդ փաշայի բանակը։

Ուստի Ախալցխայի գրավման համար նախ անհրաժեշտ եղավ ջախջախել և ետ մղել նրան օգնության շտապող Կիոս-Մամեդ փաշայի ուժերը։ Այդ նպատակով, օգոստոսի 9-ին, ռուսական կորպուսը գրոհում է թշնամու ճամբարը։ Արյունահեղ ճակատամարտն ավարտվում է ռուսների հաղթանակով։ Թուրքական ջախջախված բանակը դիմում է փախուստի։

Օգոստոսի 10-ին Կովկասյան կորպուսի զորամասերը սկսում են Ախալցխայի բերդի գլխավոր գրոհը։ Ռուսական հրետանին հինգ օր շարունակ ռմբակոծում էր բերդը, իսկ հետևակը՝ գնալով սեղմում պաշարման օղակը։ Կորցնելով Կարսը և Ախալքալաքը, թուրքական հրամանատարությունն իր հույսերը կապել էր Ախալցխայի բերդի հետ, որը պաշտպանության համար նույնպես ուներ հարմար ամրություններ և ուժեղ կայազոր (10 հազար զինվոր)։ Սրան միացել էր նաև Կիոս-Մամեդ փաշան՝ իր ջախջախված բանակից մնացած 5000 զինվորներով, և մեծ ճիգեր էր գործադրում ամեն գնով պաշտպանելու բերդը։ Սակայն այս անգամ ևս թուրքերի դիմադրությունը ապարդյուն անցավ։ Օգոստոսի 15-ի արյունահեղ ճակատամարտից հետո ռուսական կորպուսին հաջողվում է գրավել Ախալցխան։ Յոթ օր անց, օգոստոսի 22-ին, ռուսական զորքերը գրավում են նաև Արդահանը։

Ախալքալաքի, Ախալցխայի, Խերթվիսի և Արդահանի գրավման մարտերին Կովկասյան կորպուսի զորամասերին լուրջ օգնություն ցույց տվեցին հայերը։ Կարսի գրավումից հետո տեղի հայերից ձևավորվեց հետևակային գումարտակ և 800 մարդուց կազմված հեծյալ աշխարհազորային ջոկատ[10], որոնք իրենց մասնակցությունը բերեցին ռուսական կորպուսի հարձակողական գործողություններին։ Ախալցխայի գրավման համար մղված մարտերում ցուցաբերած արիությամբ աչքի ընկան 70 հայերից կազմված կամավորական ջոկատը[11], ինչպես և Ախալցխայի շատ հայեր ու վրացիներ։

Այն ժամանակ, երբ Կովկասյան կորպուսի գլխավոր ուժերը, գրավելով Կարսը, Ախալքալաքը, Ախալցխան ու Արդահանը, զբաղված էին ձեռք բերած հաղթանակը ամրապնդելու գործով, Հայկական մարզի կառավարիչ գեներալ Ա. Ճավճավաձեի հրամանատարության տակ գտնվող զորագունդը,

---

10 Տե՛ս ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. ՌԶԱ, գ. 1019, թ. 3, գ. 4644, թ. 72։

11 Նույն տեղում, գ. 4644, թ. 203—204։

դուրս գալով Երևանից, հարձակողական գործողություններ սկսեց Բայազե-
տի ուղղությամբ։ Ա. Ճավճավաձեի գլխավորած զորագունդը, որի կազմում
էր Երևանի 400 հայերից ու ադրբեջանցիներից կազմված աշխարհազորային
ջոկատը[12], օգոստոսի 27-ին Բայազետի մոտ պարտության մատնելով թուր-
քական առաջապահ ուժերին, հարկադրեց նրանց փախուստի դիմել։ Ռուսա-
կան զորագնդին համակողմանի օգնություն էին ցույց տալիս Բայազետի ու
նրա շրջակայքի հայերը։ Պաշարված Բայազետի կայազորի վիճակը գնալով
ծանրանում է։ Մի կողմից ռուսական հրետանու և հետևակի անընդմեջ գրոհ-
ները, մյուս կողմից տեղի հայերի ճնշումը հարկադրեցին թուրքական կայա-
զորին, քուրդ Բահլյուլ փաշայի գլխավորությամբ, օգոստոսի 28-ին անձնա-
տուր լինել։ Բայազետից հետո գեներալ Ա. Ճավճավաձեի գլխավորած զոր-
քերը գրավում են Դիադինը, իսկ սեպտեմբերի 12-ին՝ Ալաշկերտը։

1828 թ. ամառվա ամիսներին ռազմական գործողությունները զարգա-
նում էին հօգուտ ռուսների նաև մերձսևծովյան շրջանում։ Առանձնացված
ռուսական հատուկ զորամասերը Սև ծովի ափերին գրավում են Անապան,
Սուխումը և Փոթին։ Այսպիսով, 1828 թ. ռազմական գործողությունները Կով-
կասյան ռազմաճակատում ավարտվեցին ռուսական զենքի փայլուն հաղթա-
նակով։

Ռուսական բանակները 1828 թ. զգալի հաջողությունների հասան նաև
Բալկանյան ռազմաճակատում։ Կոտրելով հակառակորդի քանակապես գե-
րակշիռ ուժերի դիմադրությունը (ռուսների 92 հազար զորքի դեմ թուրքերը
դուրս բերեցին 127 հազար), նրանք 1828 թ. հունիսի 17-ին գրավեցին
Բրաիլը, իսկ հոկտեմբերի 10-ին՝ Վառնան։

* * *

Ի հակակշիռ ռուսական բանակների 1828 թ. ձեռք բերած ռազմական
հաջողությունների, եվրոպական մեծ տերությունները դիմում են Ռուսաս-
տանի նկատմամբ ակտիվ հակագործողությունների։ Ավստրիան արագորեն
սկսեց զինվել՝ անհրաժեշտության դեպքում Դանուբյան իշխանությունները
ներխուժելու համար, իսկ անգլիական կառավարությունը, թեպետ կաշկանդ-
ված 1827 թ. Լոնդոնյան համաձայնագրով, այնուամենայնիվ չէր թաքց-
նում իր համակրանքը թուրքերի նկատմամբ։ Եթե Նավարինի նշանավոր ճա-
կատամարտից անմիջապես հետո անգլիական կառավարությունը շտապում
էր Թուրքիային խոնարհաբար «ափսոսանք» հայտնել, թե «Նավարինի ճա-
կատամարտը լոկ մի չնախատեսված դժբախտ պատահականություն էր»,
ապա այժմ լիովին պարզ էր դառնում այդ «ափսոսանքի» պատճառը։ Անգ-
լիան Արևելքում իր ազդեցության տարածման և ուժեղացման համար հաճախ
է Ռուսաստանի դեմ հանել Թուրքիային։ 1828 թ. ռազմական գործողություն-
ների ժամանակ ռուսական բանակների ձեռք բերած հաջողությունները հա-
կադրվում էին Անգլիայի շահերին, դրա համար վերջինս ամեն կերպ ջանում
էր փոխել պատերազմի ընթացքը։ Անգլիական դիվանագետները դիմում էին
նորանոր խարդավանքների՝ Պարսկաստանին Ռուսաստանի դեմ վերստին

---

12 Տե՛ս ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. ՌԴԱ, գ. 4644, թ. 266, 267—269։

պատերազմի մեջ ներքաշելու համար, անգամ ջանում էին Թուրք-պարսկական ռազմական դաշինք ստեղծել։ Պարսկաստանում անգլիական դիվանագետների վարած հակառուսական քաղաքականության մասին գեներալ Պասկևիչը 1828 թ. դեկտեմբերի 15-ին Ռուսաստանի արտաքին գործերի մինիստըր Նեսսելրոդեին գրում էր. «անգլիական մինիստրությունը, որը Մալկոլմի դեսպանության ժամանակներից ի վեր պարսկական արքունիքում իր ազդեցությունը պահպանելու համար ծախսել է մեր դրամով 75 միլիոն, չի խնայի ևս մի քանի տասնյակ միլիոն, որպեսզի մեր դեմ զինի Պարսկաստանին և նրան հաջողությամբ գործելու միջոցներ տրամադրի»[13]։

Ռուսաստանի և Պարսկաստանի միջև նոր պատերազմ բորբոքելու նպատակով էր, որ անգլիական գործակալները և նրանց հարած պարսկական խաները 1829 թ. փետրվարի 11-ին (հ. տ. հունվարի 30-ին) Թեհրանում կազմակերպեցին պարսկական խաժամուժի հարձակումը ռուսական դեսպանատան վրա, որի ժամանակ զոհվեց ռուսական դեսպան Ա. Ս. Գրիբոյեդովը, ոչնչացվեց դեսպանության ամբողջ անձնակազմը և 32 կազակներից բաղկացած պահակախումբը։ Պատահաբար փրկվեցին դեսպանության առաջին քարտուղար Ի. Մալցևը, թարգմանիչ Մելիքովը և դեսպանատան մի քանի սպասարկողներ։ Անգլիական դիվանագետները շատ ջանքեր թափեցին, որպեսզի ժխտեն իրենց մասնակցությունը այդ ամոթալի ակտին, սակայն դա նրանց չհաջողվեց։ Ռուսական դեսպանության վրա կատարված հարձակման հանգամանքների մասին ստացված առաջին իսկ տեղեկությունների հիման վրա գեներալ Պասկևիչը Նեսսելրոդեին գրում էր. «անգլիացիները անմասն չեն եղել Թեհրանում բռնկված խռովությանը... որովհետև նրանք անտարբեր չէին նայում Պարսկաստանում մեր մինիստրության գերազանցությանը և իրենց սեփական ազդեցության ոչնչացմանը»[14]։

Կովկասյան կորպուսում ծառայության, մասնավորապես Պարսկաստանում ռուսական դեսպանի պաշտոնում եղած ժամանակաշրջանում Ա. Գրիբոյեդովի՝ հայերի հանդեպ տածած ջերմ հոգատարությունը հայկական լայն շրջաններում առաջ էր բերել խոր հարգանքի ու երախտագիտության զգացում։ Ահա թե ինչու Գրիբոյեդովի ողբերգական մահը ծանր վիշտ պատճառեց հայերին։ Այդ շատ անգամ են գոհունակությամբ նշել հենց իրենք՝ Գրիբոյեդովի մերձավոր բարեկամներն ու պաշտոնակիցները։ Նկարագրելով Թավրիզում Ա. Ս. Գրիբոյեդովի հոգեհանգստի արարողությունը, ռուսական հյուպատոս Ամբուրգերը գրում էր. «Չափազանց շատ ժողովուրդ կար՝ տղամարդիկ, կանայք, երեխաներ, որոնք կարծես բոլորն էլ խորապես վշտակցում էին հանգուցյալի դժբախտ ճակատագրին, նրանց մեջ հաճախ լսվում էին բարձրաձայն հեծկլտանքներ։ Կանայք մինչև երեկո չէին հեռանում եկեղեցուց, միայն պետք է նշել, որ դրանք մեծ մասամբ հայեր էին, իսկ նման վշտակցությունը, իհարկե, պատիվ է բերում այդ ժողովրդին»[15]։

Ռուսաստանի և Պարսկաստանի միջև նոր պատերազմ բորբոքելու և

13 АКАК, т. VII, стр. 667.

14 Նույն տեղում, էջ 674։

15 Նույն տեղում, էջ 697։

# ԱՐԵՎԵԼՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԻԱՑՈՒՄԸ ՌՈՒՍԱՍՏԱՆԻՆ




ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆՇԱՆՆԵՐ

Հայ ժող. պատմ. հատ. V

**ԲՆԱԿԱՎԱՅՐԵՐ**

- ◎ ԵՐԵՎԱՆ — Խանությունների և փաշայությունների կենտրոններ
- ⊙ ԵՐԶՆԿԱ — Գավառների, օկրուգների, սանջակների կենտրոններ
- ○ Խնուս — Այլ բնակավայրեր

**ՍԱՀՄԱՆՆԵՐ**

- Ռուսական կայսրության 1826 թ.
- Ռուսական կայսրության 1829 թ.
- Խանությունների, փաշայությունների
- Թուրքմենչայի պայմանագրով (10·II·1828) Ռուսաստանին միացված տարածքը
- Ադրիանապոլսի պայմանագրով (2·IX·1829) Օսմանյան կայսրությունից Ռուսաստանին միացված գավառները

1805 — Խանությունների և ֆեոդալական իշխանությունների Ռուսաստանին միացման տարեթվերը (1801–1813 թթ.)

1822 — Ռուսական վարչակարգի հաստատման տարեթվերը

Զորքերի շարժման ուղղությունները

- Ռուսական
- Թուրքական
- Պարսկական

21·IX·1826 թ. ▲ Ռազմական գործողությունների վայրերը և ժամանակը

1·X·1827 թ. △ Ռուսական զորքերի կողմից խոշոր բնակավայրերի և բերդերի գրավման ժամանակը

Ռուսաստանի դեմ թուրք-պարսկական ռազմական դաշինք ստեղծելու անգլիական դիվանագետների փորձերը ձախողվեցին։ 1829 թ. գարնանը թուրքական բանակների դեմ ռուսական զորքերի տարած նոր հաղթանակները սթափեցրին Ֆաթհ-Ալի շահին, զգալ տալով, որ Ռուսաստանի դեմ նոր պատերազմը կործանարար կլինի Պարսկաստանի համար, ուստի նա շտապեց Նիկոլայ I-ին թանկարժեք նվեր ուղարկել, որ հայտնի է «շահ ալմաստ» անունով, պաշտոնապես ներողություն խնդրեց ռուսական դեսպանության հետ կատարված ողբերգության համար և պարտավորվեց անհապաղ կատարել Թուրքմենչայի պայմանագրով Պարսկաստանի ստանձնած բոլոր պարտավորությունները։ Ցարական կառավարությունն էլ բավարարվեց դրանով, որովհետև ռուս-թուրքական պատերազմը թևակոխել էր իր վճռական շրջափուլը և նման պայմաններում ռուս-պարսկական հարաբերությունների հետագա սրումը միայն օգտակար կլիներ Թուրքիային ու Արևմտյան տերություններին։

Հուսախաբ լինելով Պարսկաստանից, Անգլիան իր ամբողջ ուշադրությունը կենտրոնացրեց Թուրքիայի վրա։ Նրա ռազմական խորհրդականների մշակած պլաններով սուլթանը ծրագրում էր 1829 թ. սկզբներին հզոր հարձակում սկսել Ախալցխայի, Կարսի և Բայազետի ուղղություններով։ Այդ պլանի իրագործման համար թուրքական հրամանատարությունը Կովկասյան ռազմաճակատում կենտրոնացրեց մեծաքանակ բանակ զենքի, զինամթերքի ու պարենի խոշոր պաշարներ։ Հայերին Կովկասյան կորպուսի զորամասերին օգնություն ցույց տալու հնարավորությունից զրկելու նպատակով թուրք փաշաները նրանց զանգվածաբար տեղահան էին անում սահմանամերձ շրջաններից ու քշում երկրի խորքը, իսկ նրանց ունեցվածքը կողոպտում։

Թուրքական հրամանատարությունն իր առաջին հարվածն ուղղեց Ախալցխայի դեմ։ Թշնամու 20 հազարանոց բանակը սրընթաց առաջխաղացումով 1829 թ. փետրվարի 17-ին պաշարեց Ախալցխան։ Փետրվարի 19-ի լույս 20-ի գիշերը տեղի ունեցած արյունալի մարտերից հետո հակառակորդին հաջողվեց ներխուժել քաղաքի փողոցները։ Օգտվելով դրանից, թուրք զինվորները ոչ միայն կողոպտում են հայերի ու վրացիների ամբողջ ունեցվածքը, այլև սրի են քաշում նրանց, չխնայելով անգամ երեխաներին, կանանց ու ալեհեր ծերունիներին։ Անառիկ էր մնում պաշարված ամրոցը, որի կայազորի պետ գեներալ Վ. Բեհբութովը, վճռականորեն մերժելով անձնատուր լինելու մասին Ահմեդ փաշայի վերջնագիրը, մեծ հմտությամբ կազմակերպեց պաշտպանությունը։ Ռուսական սակավաթիվ բերդապահ կայազորին օգնություն էին ցույց տալիս տեղի հայերն ու վրացիները, որոնցից շատերն ընկան անհավասար կռվում։ 12 օրից հետո պաշարված Ախալցխային Թիֆլիսից օգնության է հասնում նախկին դեկաբրիստ Ի. Գ. Բուրցովի զորագունդը։ Բորժոմի կիրճում նա պարտության է մատնում թուրքական առաջապահ կորպուսին և, թիկունքից հարվածելով Ախալցխան պաշարած հակառակորդի բանակին, մարտի 4-ին թշնամուն հարկադրում է խուճապահար փախուստի դիմել։

Թուրքական զորքերի հակահարձակման ձախողման գործում կարևոր նշանակություն ունեցավ նաև Բայազետի պաշտպանությունը։ Վանի

փաշայի գլխավորությամբ թուրքական 15 հազարանոց մի զորաբանակ 1829 թ. հունիսի 19 (20)-ին պաշարում է Բայազետը։ Ռուսական 1500 զինվորից կազմված կայազորի հետ միասին զենքի դիմեցին քաղաքի հայերը, անգամ կանայք ու պատանիները։ Գեներալ Պասկևիչի 1829 թ. հոկտեմբերի 10-ի պաշտոնական զեկուցագրի համաձայն, Բայազետի պաշտպանության մարտերին մասնակցել են 2000 հայեր[16]։ Դիմանալով զենքի ու պարենի պակասից առաջացած բոլոր դժվարություններին, ռուս զինվորների հետ սերտորեն համագործակցելով, նրանք ետ մղեցին թուրքական մեծաքանակ բանակի բոլոր գրոհները և քաջաբար պաշտպանեցին Բայազետը։ Պաշտպանության ղեկավարներից մեկի՝ գեներալ Պոպովի վկայությամբ, հայերը կռվում ու մեռնում էին ինչպես հերոսներ, նրանց հրամանատարները, չնայած բոլորն էլ վիրավորված էին, բայց միշտ գտնվում էին կրակի առաջին գծում։ Ռուս զինվորների և հայ աշխարհազորայինների քաջարի դիմադրության շնորհիվ ձախողվեց Բայազետը գրավելու թուրքական պլանը։ Լսելով Էրզրումի ուղղությամբ ռուսական զորքերի հաղթական գործողությունների լուրը, Բայազետը պաշարած թուրքական բանակը շտապում է ետ վերադառնալ Վան, այն պաշտպանելու համար։

Թուրքական բանակների դեմ նշանավոր հակահարձակողական մարտերից էր նաև Սողանլուղի ճակատամարտը (հունիսի 19—20), որն ավարտվեց ռուսական զորքերի փայլուն հաղթանակով և հունիսի 24-ին Հասան-Ղալա բերդի գրավումով։

Բոլոր ուղղություններով թուրքական բանակներին ետ շպրտելուց հետո, Կովկասյան կորպուսի զորամասերը, առաջ շարժվելով, ազատագրում են Արևմտյան Հայաստանի մի շարք գավառները։ 1829 թ. հունիսի 27-ին ռուսական զորամասերը առանց դիմադրության հանդիպելու գրավեցին Էրզրումը (Կարին)։ Դա խոշոր նշանակություն ունեցող իրադարձություն էր, որովհետև եթե Կարսը համարվում էր Էրզրումի բանալին, ապա Էրզրումը՝ Անատոլիայի նախադուռն էր։

Էրզրումի գրավման կարևորության մասին Ֆ. Էնգելսը գրել է. «... ռուսների կողմից Էրզրումի հաջող գրոհը որոշեց կամպանիայի ելքը Ասիայում 1829 թվականին»[17]։ Ռուսական զորքերի հետ Էրզրում հասավ նաև մեծ գրող Ա. Ս. Պուշկինը, որն այցի էր եկել Կովկաս աքսորված իր դեկաբրիստ բարեկամներին։ Հուլիս-օգոստոս ամիսներին ռուսական կորպուսի զորամասերը գրավում են Օլթին, Քղին, Մուշը, Խնուսը, Դերջանը, Բաբերդը (Բայբուրթը) և նախապատրաստվում գրավել Սև ծովի առափնյա շրջանները, հատկապես Բաթումն ու Տրապիզոնը։

* * *

1829 թ. ռազմական գործողությունների ժամանակ հայերի օգնությունը Կովկասյան կորպուսի զորամասերին ավելի կազմակերպված ու ծավալուն բնույթ ստացավ։ Եթե պատերազմի սկզբին արևմտահայերը մեծ մասամբ միանում էին Հայկական մարզից ռուսական զորամասերի հետ ռազմաճա-

---

16 Տե՛ս ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. ՌԳԱ, գ. 1019, թ. 3։

17 *К. Маркс и Ф. Энгельс*, Сочинения, т. 9, стр. 450.

կատ եկած աշխարհազորային ջոկատներին և քաջաբար կռվում թշնամու դեմ, ապա 1828 թ. վերջերին, մասնավորապես 1829 թ., նրանք ստեղծում են նաև իրենց ինքնուրույն ջոկատները։

Պատերազմական գործողությունների ամբողջ ընթացքում խոշոր ծառայություն մատուցեց Բայազետի Մելիք-Մարտիրոսի 500 մարդուց բաղկացած հեծյալ ջոկատը։

1829 թ. հունիսին Էրզրում շարժվող ռուսական զորամասերին նշանակալից օգնություն ցույց տվեցին Բասենի և Էրզրումի հայերը՝ Կարապետ արքեպիսկոպոսի գլխավորությամբ։ Աշխարհազորային այդպիսի ջոկատներ ստեղծեցին նաև Բայազետի, Ալաշկերտի, Բասենի, Սեբաստիայի, Մուշի, Արդահանի և Արևմտյան Հայաստանի այլ գավառների հայերը։



Էրզրումի գրավումը։ Նկ. Վ. Մաշկովի

Ռուս-թուրքական պատերազմում աչքի ընկնող մասնակցություն ունեցան Կովկասյան կորպուս աքսորված և արդեն ռուս-պարսկական պատերազմի ճակատներում բազում սխրանքներ գործած դեկաբրիստները։ Մ. Պուշչինի նախագծով ու նրա ղեկավարությամբ Կարս տանող ճանապարհին կառուցվեցին մի շարք կամուրջներ և անցումներ, նույնիսկ որոշ ճանապարհներ սալարկվեցին։

Ռուս-թուրքական պատերազմում համարձակ ու քաջ զորավարի անուն վաստակեց նախկին դեկաբրիստ փոխգնդապետ Ա. Միկլաշևսկին։ Նա մասնակցություն ունեցավ Կարսի, Ախալքալաքի ու Ախալցխայի բերդերի գրավման մարտերին։ 1828 թ. նոյեմբերին Ա. Միկլաշևսկին ստացավ գնդապետի աստիճան, 1829 թ. մարտին նշանակվեց 42-րդ Եգերական գնդի հր-

րամանատար և իր գնդով խոշոր դեր խաղաց Թուրքական բանակների դեմ մղված բոլոր նշանավոր ճակատամարտերում։

1826—1828 թթ. ռուս-պարսկական և 1828—1829 թթ. ռուս-Թուրքական պատերազմների գրեթե բոլոր կարևոր ստրատեգիական պլանները կազմվում ու մշակվում էին դեկաբրիստների «Փրկության միության» ապա «Բարօրության միության» անդամ, Կովկասյան կորպուսի օբեր-կվարտիրմեյստեր Վ. Վոլխովսկու անմիջական մասնակցությամբ։ Նրա անունը սերտորեն կապված է Կարսի, Էրզրումի, Բաբերդի համար մղված ճակատամարտերի հետ։

Ռուս-պարսկական և հատկապես ռուս-Թուրքական պատերազմների ժամանակ իր ռազմական խոր գիտելիքներով, զորավարական տաղանդով ու անձնական քաջությամբ փայլեց նախկին դեկաբրիստ գնդապետ Ի. Բուրցովը։ Նա Կարսի բերդի վրա կատարված խիզախ ու սրընթաց գրոհի նախաձեռնողներից մեկն էր, որի համար պարգևատրվեց Գեորգիևյան խաչով։ Ի. Բուրցովը, Ախալցխայի գրավման մարտերի ամենավճռական պահին, Շիրվանյան գնդի հրամանատար Բորոդինի սպանվելուց հետո, գնդի հրամանատարությունը վերցրեց իր ձեռքը, մեծ հմտությամբ ու համարձակությամբ մարտի տարավ այն և օգոստոսի 15-ին առաջինը մտավ Ախալցխա։

1829 թ. ռազմական գործողությունների ժամանակ Ի. Բուրցովի գլխավորած Խերսոնյան գրենադերական գունդը Արդահանի մոտ ջախջախեց Թուրքական 16 հազար զինվորից կազմված բանակը և փայլուն հաղթանակ տարավ Սողանլուղի ճակատամարտում։

1829 թ. ամռանը Ի. Բուրցովն, իր գնդով անցնելով վճռական հարձակման, գրավեց Օլթի գավառը, ապա Բաբերդը։ Հուլիսի 19-ին Խարթ գյուղի մոտ տեղի ունեցած արյունալի ճակատամարտում Ի. Բուրցովը, որն արդեն գեներալ-մայորի աստիճան ուներ, ծանր վիրավորվեց և մահացավ հուլիսի 23-ին։

Ռուս-պարսկական պատերազմի ժամանակ Արևելյան Հայաստանում մղված մարտերի մասնակից նախկին դեկաբրիստ Վ. Սուխորուկովը «գերազանց քաջություն» ցուցաբերեց նաև Ախալցխայի ու Էրզրումի համար մղված կռիվներում և ռուս-Թուրքական պատերազմի այլ հերոսամարտերում։ Վ. Սուխորուկովը, որպես շնորհալի զինվորական, զարգացած պատմաբան և փայլուն լրագրող, աչքի ընկնող դեր խաղաց նաև Կովկասյան կորպուսի շտաբում։

1828—1829 թթ. ռուս-Թուրքական պատերազմի Կովկասյան ռազմաճակատում իրենց անունները հերոսի փառքով պսակեցին նախկին դեկաբրիստներ Պյոտր և Պավել Բեստուժև եղբայրները, Ա. Վեդենյապինը, Ֆ. Վիշնևսկին, Պ. Կոնովնիցինը, Ա. Գանգեբլովը, Ն. Սեմիչևը և ուրիշներ։

## 3. ԱԴՐԻԱՆԱՊՈԼՍԻ ՊԱՅՄԱՆԱԳԻՐԸ ԵՎ ՀԱՅԵՐԻ ԳԱՂԹԸ

Պատերազմական գործողությունները ռուսների համար հաջող էին զարգանում նաև գլխավոր՝ Բալկանյան ռազմաճակատում։ 1829 թ. այս ռազմաճակատի հրամանատար նշանակվեց գեներալ Ի. Դիբիչը, որը ձեռնամուխ ե-

ղավ վճռական հարձակողական գործողությունների և կարճ ժամանակում հասավ մեծ արդյունքի։ Հունիսի 18 (30)-ին ռուսական բանակը գրավեց Սիլիստրիա ամրոցը, ապա անցնելով Բալկանյան լեռնաշղթան, մտավ Հարավային Բուլղարիա և հուլիսի 12 (24)-ին գրավեց Բուրգաս քաղաքը։ Ռուսական բանակի մուտքը Բուլղարիա մեծ չափով նպաստեց Թուրքիայի դեմ բուլղար ժողովրդի մղած ազատագրական պայքարին։ 1829 թ. օգոստոսի 8 (20)-ին ռուսական բանակն, առանց լուրջ դիմադրության հանդիպելու, գրավեց Ադրիանապոլիսը և Կոստանդնուպոլսի վրա արշավելու նախապատրաստություններ սկսեց։ Մինչդեռ Թուրքական, բանակը բոլորովին քայքայվել էր և մայրաքաղաքի պաշտպանության համար «նույնիսկ ձեռքի տակ բրիգադներ չկային»[18]։ Այսպիսի ծանր վիճակի մեջ ընկնելով, Սուլթան Մահմուդ II-ին ուրիշ ոչինչ չէր մնում, քան անհապաղ հաշտություն խնդրել ռուսներից։

Բալկանյան և կովկասյան ռազմաճակատներում ռուսական բանակների տարած հաղթանակները մեծ խուճապ առաջացրին նաև արևմտյան տերությունների կառավարող շրջաններում։ Ավստրիական բանակը սպասում էր հրամանի՝ ներխուժելու Դանուբյան իշխանությունները։ Հունիսին Կոստանդնուպոլիս վերադարձան անգլիական և ֆրանսիական դեսպանները, որոնք 1827 թ. նոյեմբերին, հունական միջադեպի կապակցությամբ, ռուսական դեսպանի հետ միասին հեռացել էին այնտեղից։ Անգլիական կառավարությունը ծովակալ Գորդոնին հրամայեց Կոստանդնուպոլսի վրա ռուսների շարժվելուն պես, նավատորմն անհապաղ մտցնել Սևծովյան նեղուցները։ Այսպիսով, Անգլիան, Ֆրանսիան և Ավստրիան պատրաստ էին Ռուսաստանի դեմ պատերազմ սկսելու, եթե նա իր բանակը շարժեր դեպի Թուրքիայի մայրաքաղաքը։ Նրանք միաժամանակ սկսում են դիվանագիտական ճնշում գործադրել՝ արագացնելու հաշտության կնքումը։ Ստեղծված միջազգային լարված իրադրությունը հարկադրեց Ռուսաստանին տեղի տալ արևմտյան պետությունների ճնշմանը և հաշտության դիմել։

Կռվող կողմերի միջև օգոստոսի 21-ից Ադրիանապոլսում սկսվում են հաշտության բանակցություններ։ Թուրքիայում գտնվող անգլիական, ֆրանսիական, ավստրիական և պրուսական դիվանագետները դիմում են զանազան միջոցների, որպեսզի հարկադրեն Ռուսաստանին՝ հաշտություն կնքել զիջող պայմաններով։ 1829 թ. սեպտեմբերի 2 (14)-ին կնքվեց հաշտության պայմանագիրը[19]։

Ադրիանապոլսի պայմանագրով Թուրքիան ճանաչեց Գյուլիստանի և Թուրքմենչայի պայմանագրով հաստատված Անդրկովկասի միացումը Ռուսաստանին։ Այդ հաշտությամբ Ռուսաստանին անցան Դանուբի գետաբերանն՝ իր կղզիներով, Սև ծովի արևելյան ափը՝ Կուբանի գետաբերանից մինչև սբ. Նիկոլայի նավամատույցը, Անապա և Փոթի նավահանգիստները, Անդրկովկասում Ախալցխայի փաշայության մի մասը՝ Ախալքալաք ու Ախալցխա բերդերով։ Ռուսական առևտրական նավերին իրավունք տրվեց նավարկելու Սևծովյան նեղուցներով, իսկ ռուսական վաճառականներին՝ ազատ առևտուր անելու Օսմանյան կայսրության բոլոր մարզերում։ Թուր-

[18] *К. Маркс* и *Ф. Энгельс*, Сочинения, т. 9, стр. 352.
[19] «Договоры России с Востоком...», стр. 71—80.

քիան պարտավորվեց Ռուսաստանին վճարել ռազմատուգանք՝ 1,5 միլիոն հոլանդական չերվոնեց (հոլանդական չերվոնեցը հավասար էր 3 ռուբլի ոսկյա դրամի)։ Թուրքիան ճանաչեց Հունաստանի ներքին ինքնավարությունը[20]։ Ինքնավար իրավունքներ տրվեցին Մոլդավիային և Վալախիային, ըստ որում այդ ինքնավարության ապահովման երաշխիքը հանձնվեց Ռուսաստանին, որ փաստորեն նշանակում էր նրանց վրա Ռուսաստանի խնամակալության հաստատում։ Ադրիանապոլսի պայմանագրով ինքնավարություն տրվեց նաև Սերբիային։

Ադրիանապոլսի պայմանագրի 15-րդ հոդվածով Թուրքիան վերաճանաչեց մինչ այդ Ռուսաստանի հետ կնքած բոլոր պայմանագրերն ու համաձայնագրերը[21]։

Արևմտյան տերությունների ճնշման տակ, որոնց ձեռնտու չէր Ռուսաստանի ուժեղացումն Արևելքում, ի վնաս հայ ժողովրդի ազգային շահերի, Թուրքիային վերադարձվեցին Էրզրումը, Արդահանը, Բայազետը, Ալաշկերտը, Կարսը և Արևմտյան Հայաստանի մյուս շրջանները, որոնք պատերազմի ընթացքում գրավվել էին Կովկասյան կորպուսի կողմից։

Այսպիսով, Ադրիանապոլսի հաշտության պայմանագիրը ցույց տվեց, որ 1828—1829 թթ. ռուս-թուրքական պատերազմի ժամանակ արդեն արևմտահայության հարցը սոսկ հայ-թուրքական, նույնիսկ հայ-ռուս-թուրքական հարաբերությունների հարց չէր։ Նա սերտորեն առնչվում էր ռուս-թուրք և արևմտյան մեծ տերությունների հարաբերություններին, Մերձավոր Արևելքում նրանց գաղութատիրական, նվաճողական ծրագրերին։ Ուստի այդ ժամանակներից ի վեր, հանուն իրենց նվաճողական-գաղութատիրական շահերի, մեծ տերությունները մեկ անգամ չէ, որ արևմտահայության ճակատագիրը դրել են արյունոտ զոհասեղանին։ Արևմտյան տերությունների վարած այդ քաղաքականությունն էլ դարձավ հայ ժողովրդի մեծ ողբերգության գլխավոր պատճառը։

* * *

Ադրիանապոլսի պայմանագրով, ռուսական բանակի գրաված Արևմտյան Հայաստանի գավառները Թուրքիային վերադարձնելու որոշումը հարկադրեց այդ վայրերի հայ բնակչության մի մասին գեթ օգտագործելու Ադրիանապոլսի պայմանագրի 13-րդ հոդվածը, որի համաձայն երկու կողմերի հպատակներին իրավունք տրվեց մեկ և կես տարվա ընթացքում ինքնահոժար մեկ երկրից տեղափոխվել մյուսը։

Արևմտահայերի գաղթը ղեկավարելու համար Թիֆլիսի զինվորական գեներալ-նահանգապետի նախագահությամբ ստեղծվում է հատուկ հանձնաժողով։ Նա գործում էր Պասկևիչի տված հրահանգով, որն իր բովանդակությամբ գրեթե նույնն էր, ինչ Պարսկաստանից հայերի գաղթի վերաբերյալ հրահանգը։ Հաստատված կարգի համաձայն նախատեսվում էր գաղթող վաճառականներին ու արհեստավորներին բնակեցնել քաղաքատիպ վայրե-

---

20 1830 թ. փետրվարի 3 (15)-ին Լոնդոնում կնքված համաձայնագրով Հունաստանը հռչակվեց անկախ պետություն՝ կառավարման միապետական ձևով։

21 «Договоры России с Востоком...», стр. 79.

րում, իսկ գյուղացիներին՝ պետական հողերի վրա։ Փոխարինաբար նրանց նյութական օգնություն ցույց տալու համար հատկացվում էր 380 հազար ռուբլի արծաթ դրամ (թղթյա դրամով՝ 1500000 ռուբլի)[22]։ Գաղթողները վեց տարի ժամանակով ազատվում էին բոլոր տեսակի հարկերից ու պարհակներից։

Տասնյակ հազարավոր հայեր անհամբերությամբ էին սպասում գաղթի պաշտոնական թույլտվությանը, որպեսզի անցնեն ռուսական սահմանները, քանի դեռ Կովկասյան կորպուսի զորամասերը ետ չէին քաշվել Ադրիանապոլսի պայմանագրով սահմանված պետական սահմանագիծը։ Գաղթականների այսպիսի նախազգուշական քայլի դիմելը բացատրվում է նրանով, որ թուրք փաշաները պատերազմում իրենց կրած պարտությունը շատ բանով վերագրելով հայերին, նախապատրաստվում էին նրանց նկատմամբ իրագործել նորանոր արյունալի ոճրագործություններ։ Ահա թե ինչու Կարսից, Արդահանից, Բայազետից, Էրզրումից և Արևմտյան Հայաստանի մյուս շրջաններից, գաղթի մասին պաշտոնական թույլտվության հրապարակումից անմիջապես հետո, նույնիսկ չսպասելով սահմանված նպաստը ստանալուն, գաղթականների առաջին քարավաններն սկսում են շարժվել դեպի ռուսական սահմանները։ Զանգվածային գաղթը սկսվեց 1830 թ. վաղ գարնանից։ Գեներալ Պասկևիչը 1830 թ. հունվարի 22-ին ռազմական մինիստր Չերնիշևին գրում էր, որ սկսած 1829 թ. հոկտեմբերի 1-ից մեծ քանակությամբ հայեր արդեն անցել են ռուսական սահմանը։ Նա հաղորդում էր, որ Կարսից և նրա շրջակայքից 2500 ընտանիքներ արդեն տեղավորվել են Ալագյազի (Արագած) մոտերքում Փամբակի ուղեմասի ամայի գյուղերում, իսկ Էրզրումից 25 ընտանիքներ՝ Լոռիում։ Նույն զեկուցագրում Պասկևիչը հայտնում էր, որ գաղթի համար Էրզրումում պատրաստ է մոտ 2000 ընտանիք, Բայազետ քաղաքում՝ 1143, Բայազետի փաշայության գավառներում՝ ավելի քան 2000 ընտանիք[23]։

Ռուսական տիրապետության սահմանները գաղթելու հայերի ընդհանուր ցանկությունը տագնապ և անհանգստություն է պատճառում թուրք փաշաներին, որովհետև դրա հետևանքով նրանք զրկվում են իրենց առատ եկամուտներ բերող հողագործներից, արհեստավորներից ու վաճառականներից։ Ուստի, ինչպես իր ժամանակին պարսիկ խաները, այժմ էլ թուրք փաշաները դիմում են նենգ միջոցների, նրանց զանգվածային գաղթը խափանելու համար։

Չնայած թուրք փաշաների ու նրանց հովանավորող անգլիական գործակալների հարուցած բոլոր խոչընդոտներին, անգամ բացահայտ դիմադրությանը, արևմտահայերի գաղթը կատարվեց հաջողությամբ։ Արևմտյան Հայաստանից Հայկական մարզ և Անդրկովկասի այլ շրջանները գաղթած հայերի թիվը 1829 թ. վերջերից մինչև գաղթելու իրավունքի սահմանված ժամկետի ավարտը կազմել է 14047 ընտանիք՝ մոտավոր հաշիվներով 90—100 հազար մարդ[24]։

---

22 «Собрание актов, относящихся к обозрению истории армянского народа», ч. 1, М., 1833, стр. 61.

23 Տե՛ս ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. ՌԳԱ, գ. 1019, թ. 12—13։

24 Տե՛ս Ս. Երիցյան, նշվ. աշխ., էջ 441—442։

Էրզրումի փաշայությունից գաղթածները, Կարապետ արքեպիսկոպոսի առաջնորդությամբ, հիմնականում հաստատվեցին Ախալցխա և Ախալքալաք քաղաքներում ու նրանց շրջակա գյուղերում, մասամբ էլ Լոռու, Շիրակի և Ծալկայի գյուղերում, կարսեցիները՝ Ալեքսանդրապոլում, Շիրակի, Ապարանի ու Թալինի գյուղերում, բայազետցիները՝ Սևանի ավազանում, Դարաչիչակում և մասամբ Սուրմալուում։ 1829—1832 թթ. կամերալ ցուցակագրման տվյալներով միայն հայկական մարզում մշտական բնակություն հաստատած արևմտահայ գաղթականների թիվը հասնում էր 21666 մարդու[25] (3682 ընտանիք)։

Այսպիսով, թեպետ 1828—1829 թթ. ռուս-թուրքական պատերազմից հետո էլ Արևմտյան Հայաստանը շարունակեց մնալ սուլթանական տիրապետության ներքո, այնուամենայնիվ, ռուսական բանակների տարած հաղթանակի շնորհիվ էր, որ Ադրիանապոլսի պայմանագրով շուրջ 100 հազար արևմտահայեր հնարավորություն ստացան գաղթել Արևելյան Հայաստան ու Կովկասի մյուս մարզերը, ազատվելով թուրքական լծից։ Թուրքմենչայի և Ադրիանապոլսի պայմանագրով Պարսկաստանից ու Թուրքիայից հայերի կանգվածային գաղթը Արևելյան Հայաստան խոշոր քայլ էր հայ ժողովրդի ազգահավաքման ճանապարհին։

## 4. ԱՐԵՎԵԼՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՌՈՒՍԱՍՏԱՆԻՆ ՄԻԱՑՄԱՆ ՊԱՏՄԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

1826—1828 թթ. ռուս-պարսկական և 1828—1829 թթ. ռուս-թուրքական պատերազմներում Ռուսաստանի տարած հաղթանակների, Թուրքմենչայի և Ադրիանապոլսի պայմանագրերի, Ռուսաստանի, Անգլիայի ու Ֆրանսիայի միջև 1827 թ. կնքված Լոնդոնյան համաձայնագրի հետևանքով Ռուսաստանը արտաքին քաղաքականության բնագավառում հասավ զգալի հաջողությունների։ Սակայն ակնհայտ է դրանց երկակի նշանակությունը։ Ռուսաստանի ռազմական հաղթանակները թեպետ ժամանակավորապես, բայց որոշակիորեն ամրապնդեցին ցարիզմի դիրքերը ինչպես երկրի ներսում, այնպես էլ արտաքին քաղաքականության ասպարեզում։ Մյուս կողմից, այդ պատերազմներում Ռուսաստանի հաղթանակների շնորհիվ անդրկովկասյան ժողովուրդների ազատագրումը պարսկական, մասամբ էլ՝ նրանց ու բալկանյան որոշ ժողովուրդների ազատագրումը սուլթանական լծից, այդ ժողովուրդների համար առաջադիմական մեծ նշանակություն ունեցավ։

XIX դարի սկզբին հայ ժողովրդի համար ստեղծված բախտորոշ պահին, նրա նկատմամբ Պարսկաստանի ու Թուրքիայի, ինչպես և Անգլիայի ու Ֆրանսիայի վարած ռեակցիոն քաղաքականության պայմաններում, հայ ժողովրդի ֆիզիկական փրկության ու գոյատևման միակ ելքը Ռուսաստանին միանալն էր։ Եվ դա հասկանալի է, որովհետև թուրք փաշաները և պարսիկ խաները ագետալի իրավիճակ էին ստեղծել հայ ժողովրդի ճակատագրի և նրա ազատագրական պայքարի համար։ Մինչդեռ պատմական այդ կոնկրետ իրադրության պայմաններում, հայ ժողովրդի զարգացման հեռանկարներն օբյեկտի-

[25] Տե՛ս И. Шопен, Исторический памятник..., стр. 539—540, 639—642.

վորեն համընկնում էին Ռուսաստանի պատմական զարգացման օրինաչափություններին և նպաստում առաջինի ֆիզիկական գոյության հարատևմանը, երկրի արտադրողական ուժերի, ազգային մշակույթի, հասարակական-քաղաքական մտքի զարգացմանը։ Ուստի, չնայած ցարիզմի նվաճողական նպատակներին, և վարած գաղութատիրական քաղաքականությանը, ստեղծված պատմական կոնկրետ իրադրության պայմաններում Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին հայ ժողովրդի համար օբյեկտիվորեն ունեցավ առաջադիմական խոշոր նշանակություն[26]։

Շահական Պարսկաստանը և սուլթանական Թուրքիան ոչ միայն զավթել էին Հայաստանը, հաստատել իրենց արյունոտ տիրապետությունը և մասնատել այդ հինավուրց ժողովրդին, նրա նկատմամբ կիրառելով ազգային ու կրոնական բիրտ խտրականության, բռնի մահմեդականացման ու ձուլման քաղաքականություն, այլև պարբերաբար կազմակերպում էին հայ զանգվածների բռնագաղթեր, որոնք լուրջ վտանգ էին ստեղծել հայ ժողովրդի նույնիսկ ֆիզիկական գոյության համար։ Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միացնելու շնորհիվ արևելահայերը ոչ միայն փրկվեցին բնաջինջ լինելու վերահաս վտանգից, այլև սկսած 1828 թ.՝ Պարսկաստանից, ապա Թուրքիայից մեծ քանակությամբ հայեր գաղթեցին Արևելյան Հայաստան, հնարավորություն ստանալով իրենց ուժերը նվիրաբերել հայ ժողովրդի տնտեսական, հոգևոր ու քաղաքական կյանքի զարգացմանը։

Եթե պարսիկ խաների կազմակերպած զանգվածային բռնագաղթերի հետևանքով ապագա Հայկական մարզի տերիտորիայում 1827 թ. սկզբին հայերի թիվը նվազել և կազմում էր բնակչության միայն մեկ քառորդը (106.900 բնակչից հայեր էին միայն 25.151 մարդ), ապա դրանից երեք տարի հետո, 1831 թ. նրանց թիվը հասավ 82.377 մարդու և կազմեց բնակչության կեսից ավելին[27]։ Հետագա տարիներին այդ թիվն առավել արագությամբ աճեց, և Ռուսաստանին միացված Արևելյան Հայաստանը դարձավ հայ ժողովրդի հավաքման ու ազգային համախմբման օջախ։ Իրենց ֆիզիկական գոյությունը պահպանելու համար գաղթելով Պարսկաստանից ու Թուրքիայից, հայերը ոչ միայն ապաստան էին գտնում Արևելյան Հայաստանում, այլև Կովկասի ու ռուսական կայսրության այլ մարզերում՝ ավելացնելով այնտեղ բնակվող հայերի թիվը։

Արևելյան Հայաստանում, նրա Ռուսաստանին միանալուց հետո, արագորեն աճում էր հայ բնակչությունը։ Ֆիզիկական բնաջնջման եզրին հասած հայ ժողովրդի համար Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միացման

---

26 *Տե՛ս М. Г. Нерсисян,* Из истории русско-армянских отношений, Ереван, 1956; *А. Р. Иоаннисян,* Присоединение Закавказья к России и международные отношения в начале XIX столетия, Ереван, 1958; *З. Т. Григорян,* Присоединение Восточной Армении к России в начале XIX в., М., 1959; Նույնի, *Հայ և ռուս ժողովուրդների պատմական բարեկամությունը, Երևան, 1942,* Նույնի, *Ռուս և հայ ժողովուրդների ռազմական համագործակցությունը XIX դարի սկզբին, Երևան, 1957,* Նույնի, *Հայ և ռուս ժողովուրդների դարավոր բարեկամությունը, Երևան, 1960,* Ք. Խ. Հակոբյան, *Երևանի պատմությունը (1801—1879), Երևան, 1959,* Վ. Ա. Պարսամյան, *Գրիբոյեդովը և հայ-ռուսական հարաբերությունները, Երևան, 1947։*

27 *Տե՛ս* Ա. Երիցյան, *նշվ. աշխ., էջ 337—338։*

նշանակության արժեքավորման ելակետը միշտ և առաջին հերթին եղել է ժողովրդի ֆիզիկական գոյատևման հարցը։ Դրա համար էլ դեռևս այն ժամանակ Խ. Աբովյանը, խորապես ըմբռնելով Արևելյան Հայաստանի Ռուսաստանին միացնելու նշանակությունը հայ ժողովրդի ֆիզիկական գոյության պահպանման համար, գրել է. «...քոռ նախանձոտ մարդին գործքով ցույց կտա, թե հայ ազգը ո՛չ թե փողի կամ շահի խաթեր ա ռուսի տիրության անունը պաշտում, այլ թե իր սրտի ուխտն ուզում կատարի, որ իրան ճավաճ ու ազգը պաճողին (ընդգծումը մերն է—խմբ.) արինը, կյանքը, որդին չխընայի»[28]։

Այդ հարցում նույն սկզբունքով են առաջնորդվել Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միացման ժամանակակից հայ հասարակական ականավոր գործիչներ Մ. Թաղիադյանը, Հ. Ալամդարյանը և նրանց հաջորդած բոլոր հայ առաջադեմ ու հեռատես մտածողները։ Ահա թե ինչու Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միանալուց շուրջ մեկ դար հետո էլ մեծանուն բանաստեղծ Հովհ. Թումանյանը գրել է. «Հայկական հարցը վայրենի կոտորածների... ու գաղթականությունների հարց է. նա գերազանցորեն ֆիզիկական գոյության խնդիր է: Եվ նրա հաջողությունը միշտ կապված է եղել Ռուսաստանի հաջողության հետ (ընդգծումը մերն է—խմբ.): Ով վեր է կացել Ռուսաստանի հաջողության դեմ, վեր է կացել հայկական հարցի հաջողության դեմ, և ով Ռուսաստանի դեմ պաշտպանել է Տաճկաստանին, նա մեղսակից է տաճկական գազանություններին ու հայկական սարսափներին։

Նա պատասխանատու է հայ ժողովրդի ծով արյան ու մարդկության պատմության առաջ»[29]։ Ապա անդրադառնալով Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միացման նշանակությանը, նա գրել է. «...մի շարք ռուս-պարսկական պատերազմներից հետո վերջնականապես 1828 թվին Ռուսաստանը տիրեց Հին Սյունիքը, Գուգարքն ու Արարատյան երկիրը և միանգամ ընդմիշտ վերջ տվեց կոտորածներով, գաղթականություններով ու առևանգումներով հայտնի հայկական հարցին հայոց աշխարհքի էս մասում, կամ ուրիշ խոսքով՝ պարսկահայկական հարցին»[30]։

Այսպիսով, Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միացման պատմական նշանակությունը մեծ է, նախ և առաջ, այն պատճառով, որ դրանով արևելահայերը փրկվեցին ֆիզիկական բնաջնջումից, ինչպես նաև նըպաստավոր պայմաններ ստեղծվեցին հայ ժողովրդի ազգահավաքման համար:

Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին շրջադարձային խոշոր նշանակություն ունեցավ նրա արտադրողական ուժերի և ողջ տնտեսական կյանքի զարգացման համար։ Պարսկաստանի տնտեսական ծայրաստիճան հետամնացությունը, երկրում իշխող միջնադարյան հողային հարաբերությունները և ծանր հարկային սիստեմը, արևելյան տիրակալների կողմից աշխատավորության գիշատիչ կողոպուտը, անձի ու սեփականության իրավունքի անձեռնմխելիության բացակայությունը, ֆեոդալական մասնատվա-

---

28 Խ. Աբովյան, Երկերի լիակատար ժողովածու, հատ. III, Երևան, 1948, էջ 177։

29 Հովհ. Թումանյան, Երկեր, հատ. 4, Երևան, 1951, էջ 230—231։

30 Նույն տեղում, էջ 228։

ծությունը, մաքսային արգելափակումները, հարատև պատերազմները կաշկանդում և արգելակում էին երկրի արտադրողական ուժերի և ողջ տնտեսության զարգացումը։ Ավելին, Պարսկաստանը արագորեն կորցնում էր իր ինքնուրույնությունը, սկսում էր դառնալ կախյալ երկիր և ենթարկվել արևմտյան տերությունների գաղութային շահագործմանը։

Այլ էր Ռուսաստանի վիճակը։ Չնայած իր ընդհանուր հետամնացությանը, նա տնտեսապես անհամեմատ ավելի բարձր աստիճանի վրա էր գտնվում և հետագա առաջընթացի առավել մեծ նախադրյալներ ու պայմաններ ուներ, քան շահական Պարսկաստանը։ XIX դարի երկրորդ քառորդում Ռուսաստանում զարգանում էր արդյունաբերությունը, աճում էր արդյունաբերական ձեռնարկությունների թիվը և նրանցում աշխատող վարձու բանվորների քանակը։ Արտադրության մեջ նկատելիորեն ավելանում էր նաև մեքենային աշխատանքի ներդրումը։ Սկսվում է հայրենի մեքենաշինական գործարանների շինարարությունն ու գործարկումը։ Արդյունաբերության զարգացմանը զուգընթաց աճում էր քաղաքների թիվը և բնակչության քանակը։ XIX դարի 30-ական թվականների վերջերից Ռուսաստանում սկսվում է երկաթուղային շինարարությունը, որն իր հերթին մեծ չափով նպաստում է երկրի տնտեսական կյանքի զարգացմանը։ Ապրանքա-դրամական հարաբերությունները սկսեցին ավելի ու ավելի ներթափանցել գյուղատնտեսության մեջ։ Այսպիսով, Ռուսաստանում զարգանում էր կապիտալիստական կացութաձևը, և շուտով նա թևակոխում է կապիտալիզմի շրջափուլը։

Ռուսաստանի սոցիալ-տնտեսական կյանքում տեղի ունեցած խոշոր փոփոխությունները բարերար ազդեցություն գործեցին Արևելյան Հայաստանի տնտեսական կյանքի զարգացման վրա։ Վերացվեցին նրա ֆեոդալական մասնատվածությունը, անիշխանությունը, ներքին մաքսային սահմանները, բնակչության համար ապահովվեց անձի ու սեփականության անձեռնմխելիության իրավունք։ Արևելյան Հայաստանի տնտեսությունը ներգրավվեց հետզհետե զարգացող համառուսաստանյան տնտեսական կյանքի ընդհանուր ոլորտը և նպաստավոր պայմաններ ստեղծվեցին Հայաստանում կապիտալիստական հարաբերությունների հանդես գալու, արտադրողական ուժերի և ողջ տնտեսական կյանքի զարգացման համար։

Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միացնելու առաջին, իսկ տասնամյակում լուրջ տեղաշարժեր կատարվեցին նրա տնտեսական կյանքում։ Ընդարձակվեցին ցանքատարածությունները, աճեց գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, հիմնվեցին բազմաթիվ մանուֆակտուրային ձեռնարկություններ, և պայմաններ ստեղծվեցին ֆաբրիկա-գործարանային արտադրության զարգացման համար։ Զգալիորեն, ուժեղանում են նաև Արևելյան Հայաստանի առևտրա-տնտեսական կապերն Անդրկովկասի մյուս շրջանների, Ռուսաստանի, ինչպես և Հայաստանի հարևան երկրների հետ։

Այսպիսով, Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միացումը հայ ժողովրդի սոցիալական ու տնտեսական, կյանքի զարգացման համար կարևոր նշանակություն ունեցավ։

Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին զուգադիպեց Ռուսաստանի հասարակական-քաղաքական կյանքի և մշակույթի զարգացման նը-

*շանակալից մի ժամանակաշրջանի։ Եթե շահական Պարսկաստանը տակա-
վին խարխափում էր միջնադարյան խավարի ու հետամնացության մեջ, կաշ-
կանդում իր տիրապետության ներքո գտնվող հայ ժողովրդի քաղաքական ու
մշակութային կյանքի առաջընթացը, ապա Ռուսաստանը թևակոխել էր ազա-
տագրական ու հեղափոխական շարժումների ազնվականական փուլը և ճանա-
պարհ էր հարթում հեղափոխական-դեմոկրատական էտապին անցնելու հա-
մար։ Համապատասխանորեն զարգացման նոր շրջափուլ էր մտել նաև ռու-
սական ազգային դեմոկրատական մշակույթը՝ գրականությունը, արվեստը,
գիտությունը, ժողովրդական կրթությունը։*

*Ռուսական նոր մշակույթի վերընթացը սերտորեն կապված է Ռադիշչևի
ու Գրիբոյեդովի, Պուշկինի ու Լերմոնտովի, Գոգոլի ու Նեկրասովի, Գլինկայի
ու Դարգոմիժսկու, Լոբաչևսկու և Պիրոգովի, Բրյուլովի և XIX դարի առաջին
կեսի ռուսական գրականության, արվեստի ու գիտության շատ ուրիշ նշա-
նավոր գործիչների անունների հետ։ Իր ժամանակի ռուսական հեղափոխա-
կան հասարակական միտքը մեծ թռիչք գործեց դեկաբրիստների ու հեղափո-
խական դեմոկրատների քաղաքական ծրագրերում, «Սովրեմեննիկի» էջերում,
Ռադիշչևի, Գերցենի, Օգարյովի, Բելինսկու, Չերնիշևսկու, Դոբրոլյուբովի ստեղ-
ծագործություններում։ Այդ ամենն իրենց բարերար ու առաջադիմական ներ-
գործությունն ունեցան Ռուսաստանին միացված Արևելյան Հայաստանի մը-
շակույթի, հեղափոխական-դեմոկրատական մտքի ու առաջադեմ հասարա-
կական շարժման հետագա աճի վրա։ Դա բնական ու օրինաչափ պրոցես էր,
քանի որ այն ճշմարտացին ու տաղանդավորը, ուժեղն ու առաջադիմականը,
ինքնատիպը, հետևաբար նաև համամարդկայինը, որ պատմական այդ ժա-
մանակաշրջանում ստեղծվում էր Ռուսաստանում, չէր կարող արձագանք
չգտնել նրա կազմում գտնվող ու նրա հետ մշտական սերտ շփման մեջ ապ-
րող հայ ժողովրդի մշակութային, հասարակական-քաղաքական և ողջ հո-
գևոր կյանքում։*

*Արևելյան Հայաստանի Ռուսաստանին միացումով նպաստավոր պայ-
մաններ ստեղծվեցին հայ նոր գրականության, արվեստի, գիտության, ժողո-
վրրդական կրթության ու լուսավորության և հասարակական-քաղաքական ա-
ռաջադեմ մտքի զարգացման համար։*

*Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին առաջընթաց մի նոր
խոշոր քայլ հանդիսացավ հայ և ռուս ժողովուրդների մերձեցման ճանա-
պարհին։ Դա միանգամայն օրինաչափ էր, որովհետև կենտրոնացված մեկ
պետության կազմում նրանց գտնվելը, տնտեսական և մշակութային փոխազ-
դեցությունը, վերջապես համատեղ պայքարն ինչպես ցարիզմի ու ճորտատի-
րության, այնպես էլ արտաքին ընդհանուր թշնամիների դեմ, չէին կարող
չնպաստել այդ ժողովուրդների մերձեցմանն ու բարեկամության խորացմա-
նը, հայ ժողովրդի բովանդակ կյանքի հետագա օրինաչափ առաջընթացին։
Լիովին արդարանում է Ֆ. Էնգելսի 1851 թ. արտահայտած այն միտքը, թե
«...Ռուսաստանը իրոք առաջադիմական դեր է խաղում Արևելքի նկատ-
մամբ...»[31]։*

---

31 *К. Маркс* и *Ф. Энгельс,* Сочинения, т. 27, изд. 2, М., 1962, стр. 241.

*Արտահայտելով Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միացման նշանակության մասին ժամանակի հայ առաջադեմ մտածողների պատմաքաղաքական մտահայեցողությունը մեծ լուսավորիչ-դեմոկրատ Խ. Աբովյանը գրել է. «Օրհնվի էն սհաթը, որ ռսի օրհնած ոտը հայոց լիս աշխարհը մտավ, ու ղզլբաշի անիծած չար շունչը մեր երկրիցը հալածեց»[32]։*

*Այսպիսով, եթե ցարիզմը՝ արակչեևների Ռուսաստանը, հայ ժողովրդին ենթարկել է ազգային դաժան ճնշման ու գաղութային կեղեքման, ապա նոր բարձրացող հեղափոխական Ռուսաստանը՝ Բելինսկու և Գերցենի, Չերնիշևսկու և Դոբրոլյուբովի Ռուսաստանը, պատմական մեծագույն դեր է խաղացել նրա բովանդակ կյանքում։*

*Չնայած Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին հայ ժողովրդի համար առաջադիմական խոշոր նշանակություն ունեցավ, բայց դրանից հետո էլ հայ ժողովրդական զանգվածները չհասան ոչ ազգային, և ոչ էլ սոցիալական ու քաղաքական ազատագրության։ Ճաշակելով ցարիզմի վարած ազգային-գաղութային քաղաքականության ողջ դառնությունը, նրանք իրենց իրական ազատագրությունը որոնում էին ոչ միայն պարսկական ու թուրքական, այլև ցարական բռնապետության կործանման մեջ։ Ուստի հայ աշխատավորական զանգվածները, դաշնակցած ռուս և Ռուսաստանի մյուս ժողովուրդների հետ, անհաշտ պայքար ծավալեցին՝ թոթափելու նաև ցարական լուծը։*

*Այսպիսով, Արևելյան Հայաստանի միացումով Ռուսաստանին, պատմության օբյեկտիվ, օրինաչափ առաջընթացով հայ ժողովրդի ազգային, սոցիալական ու քաղաքական ազատագրության հեռանկարները հաստատորեն կամրջվեցին Ռուսաստանում բարձրացող հեղափոխական ուժերի պայքարի ու հաղթանակի հետ։*

---

32 Խ. Աբովյան, *Երկերի լիակատար ժողովածու, հատ. III, Երևան, 1948, էջ 58։*

ԳԼՈՒԽ ՎԵՑԵՐՈՐԴ

# ԱՐԵՎԵԼՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԸ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ԿԱԶՄՈՒՄ

## 1. ԵՐԵՎԱՆԻ ԺԱՄԱՆԱԿԱՎՈՐ ՎԱՐՉՈՒԹՅՈՒՆԸ

Երևանի ազատագրումից հետո Կովկասյան հատուկ կորպուսի հրամանատարության առջև խնդիր ծառացավ ստեղծել տեղական իշխանության ժամանակավոր օրգաններ, որոնք պիտի տնօրինեին և կարգավորեին նորագրավ երկրամասերի ներքին գործերը, մինչև կռվող կողմերի միջև կկնքվեր հաշտության պայմանագիր։

1827 թ. հոկտեմբերի 6-ին գեներալ Պասկևիչի կարգադրությամբ ստեղծվեց Երևանի ժամանակավոր վարչություն, որի գլուխ կարգվեց գեներալ Կրասովսկին, իսկ անդամներ նշանակվեցին Երևանի պարետ փոխգնդապետ Բորոդինը և Ներսես Աշտարակեցին։ Ժամանակավոր վարչությանը հրահանգ տրըվեց պարսկական լծից ազատագրված վայրերում կազմակերպել իշխանության նոր օրգաններ, որոնց անհրաժեշտ խնդիրը պետք է լիներ՝ օժանդակել պատերազմի հաղթական ավարտին։ Դա նշանակում էր, որ վարչությունը պետք է ապահովեր զորքերի մատակարարումը պարենամթերքով, կազմակերպեր ազատագրված տերիտորիայի անվտանգությունը թշնամական ոտնձգություններից, պետք է հոգ տաներ Երևանի, Սարդարապատի և Աբասաբադի բերդերի պաշտպանության մասին և ապահովեր հիշյալ բերդերի կայազորների մարտունակությունը։ Այդ խնդիրների հաջող կենսագործման համար վարչությանը հանձնարարվեց հաշվառման ենթարկել և պետականացնել Երևանի սարդարի ողջ ունեցվածքը, բարեկարգել ճանապարհները, ապահովել նրանց անվտանգությունը, որպեսզի պահպանվեր կապը Վրաստանի հետ և վերականգնվեին պատերազմի հետևանքով խաթարված առևտրական հարաբերությունները։ Երևանի վարչությանը հանձնարարված էր նաև հայերից կազմել ինչպես հեծյալ, այնպես էլ հետևակ զինված ուժեր, որոնց առաջնային խնդիրը պետք է լիներ պահակային ծառայության կատարումը։ Այսպիսով, Երևանի ժամանակավոր վարչությունը, պատերազմական ժամանակաշրջանի պայմաններին հարմարեցված, Կովկասյան հատուկ կորպուսի հրամանատարին ենթակա իշխանության մի օրգան էր։

Իր կարճատև գոյության ընթացքում Երևանի ժամանակավոր վարչությունը եռանդուն գործունեություն ծավալեց հիշյալ խնդիրները կենսագործելու

*համար։ Այդ բանին մասամբ նպաստում էին վարչության պետ գեներալ Կրասովսկու փոխհարաբերությունները վարչության անդամ Ներսես Աշտարակեցու հետ։ Ժամանակավոր վարչությունն անհապաղ ձեռնամուխ եղավ հայկական զինված ուժերի ստեղծմանը, կազմեց ավելի քան հազար հոգուց բաղկացած զորաջոկատ, որը երկրում տեղակայված ռուսական բերդապահ զորքերի հետ մեկտեղ ապահովում էր կարգ ու կանոն։ Սարդարի կայքը հաշվառման ենթարկվեց և պետականացվեց, որի շնորհիվ հնարավոր եղավ զորաբանակն ապահովել անհրաժեշտ պարենամթերքով։*

*Ռուս-պարսկական 1826—1828 թթ. պատերազմը դեռ չավարտված, ինչպես ռուս կառավարական շրջաններին, այնպես էլ հայ ազատագրական շարժման գործիչներին մտահոգում և զբաղեցնում էր այն հարցը, թե ինչպիսի վարչակարգ պետք է մտցվեր Արևելյան Հայաստանում պարսկական լծի թոթափումից հետո։ Գաղտնիք չէ, որ ցարական կառավարությունը կամենում էր օգտագործել ստեղծված իրադրությունը՝ տիրակալության սահմանները դեպի Կուր—Արաքս—Ախուրյան բնագիծը տարածելու համար։*

*Այլ էր հայ ազատագրական շարժման գործիչների ձգտումը։ Նրանց մտահոգում էր ոչ միայն օտարերկրյա բռնակալական լծից հայրենի երկրի ազատագրումը, այլ նաև նրա ապագա կացության հարցը։ Նրանք շարունակում էին փայփայել այն վաղեմի երազը, թե պարսկական բռնակալական լծի խորտակումից հետո կվերականգնվի հայկական պետականությունը՝ Ռուսաստանի հովանու ներքո։ Ցարական կառավարությանը քաջ հայտնի էին հայ ազատագրական շրջանների այդ ձգտումները, ուստի և Նիկոլայ I-ի կարգադրությամբ Պետերբուրգում ստեղծվեց հատուկ կոմիտե, որը պետք է զբաղվեր նոր գրավված երկրամասի ապագա կացության հարցով։*

*Ելնելով դրանից, Ռուսաստանում գործող մի շարք հայ գործիչներ (Խ. Լազարյան, Կ. Արղության, Ալ. Խուդաբաշյան) այդ օրերին մշակում և ռուսական կառավարությանն են ներկայացնում մի նախագիծ, որը պետք է հնարավորություն ընձեռեր ապահովելու Արևելյան Հայաստանի ինքնավարությունը ռուսական կայսրության շրջանակներում։ Այդ նախագիծը անհրաժեշտ էր համարում վերականգնել «հայկական թագավորությունը», և Նիկոլայ I-ը իր տիտղոսների թվում պետք է ավելացներ նաև «հայկական թագավոր» տիտղոսը։ Հայկական ապագա թագավորությունը պետք է կազմվեր հին հայկական թագավորության մեջ մտնող գլխավոր շրջաններից։ Նախագծի հեղինակների կարծիքով Նիկոլայ I-ի կողմից հայկական թագավոր տիտղոսի ընդունումը, «որպես հին Հայաստանի թագավորության վերածնունդ, ուժեղ ազդեցություն կգործի Եվրոպական և Ասիական Թուրքիայում, բացի այդ ամբողջ Ասիայում և մասամբ Հյուսիսային Աֆրիկայում բնակվող մեծաքանակ հայերի վրա։ Այդ բարի լուրը կխանդավառի ողջ [հայ] ժողովրդին», որը ամեն կողմից կներհոսի դեպի նորաստեղծ հայկական պետության սահմանները, և դրանով իսկ մեծ հարված կհասցվի ինչպես Թուրքիային, այնպես էլ Պարսկաստանին[1]։ Նախա-*

[1] Տե՛ս Վ. Ա. Պարսամյան, *Ա. Ս. Գրիբոյեդովը և հայ-ռուսական հարաբերությունները*, Երևան, 1947, էջ 267։

գիծը, սակայն, չէր սահմանափակվում միայն այսքանով։ Նման ինքնավարություն ձեռք բերելուց հետո նախագծի հեղինակները հարկ էին համարում ունենալ նաև կամավոր հիմունքներով հայերից ստեղծված սեփական զորք, որը պետք է փոխարիներ ռուսական զորքերին և սահմանապահ ծառայություն կատարեր։ Հայկական զորաբանակը պետք է ստեղծվեր և գործեր այն նույն հիմունքներով, ինչպիսի հիմունքներով կազմավորվել էր Պետրոս I-ի պարսկական արշավանքի շրջանում հայկական էսկադրոնը։ Հայկական հիշյալ զորաբանակի սպայակույտը պետք է համալրվեր բացառապես հայ, մասամբ նաև վրացի սպաներից, իսկ հետագայում քաղաքացիական և զինվորական ծառայողները պետք է պատրաստվեին Մոսկվայի Լազարյան ճեմարանում և Թիֆլիսի Ներսիսյան դպրոցում։ Հայկական զորաբանակի ինչպես սպաները, այնպես էլ զինվորները պետք է օգտվեին որոշակի արտոնություններից, մի բան, որը մեծապես կխթաներ նման զորաբանակի արագ համալրումը և կազմավորումը։

Այսուհանդերձ, նախագծի հեղինակները քաջ գիտակցում էին, որ «Հայկական թագավորությունը» գտնվելու էր Ռուսաստանի հովանու ներքո, ուստի սկզբից ևեթ ձգտում էին կանխել որոշ երևույթների տարածումը Արևելյան Հայաստանի սահմաններում, որը որոշակի բացասական հետևանքներ կարող էր ունենալ հայ ժողովրդական զանգվածների համար։ Առաջին հերթին այդ ճորտատիրական իրավունքի հարցն էր, որ գոյություն ուներ ինչպես Ռուսաստանում, այնպես էլ հարևան Վրաստանում։ Արդ՝ քանի որ դրանից «շատ չարիքներ և անկարգություններ են առաջանում, անհրաժեշտ է սահմանափակել կամ վերացնել ճորտատիրական իրավունքը Վրաստանում, կամ գեթ սահմանել, որպեսզի ոչ ոք չկարողանա առանձին-առանձին վաճառել մարդկանց, որոնք ամրակցված են ոչ թե անձին, այլ հողին և որպեսզի բոլորովին արգելվի մարդկանց վաճառել, արտահանել կամ գաղթեցնել այլ նահանգներ և այլ վայրեր»[2]։ Ըստ նախագծի, ապագա «Հայաստանի թագավորության» բնակիչների իրավունքների պաշտպանությունը պետք է խարսխված լիներ կայուն օրենքների վրա, ընդ որում այդ օրենքների մշակմանն ու կենսագործմանը մասնակցություն պետք է ունենային հայերի ներկայացուցիչները՝ հանձինս հայկական եկեղեցու և առավել նշանավոր տոհմերի լիազորված անդամների։

Ի հակադրություն պարսկական տիրապետության շրջանում իշխած անօրինականության ու բռնությունների, պետք է սահմանվեին բնակիչների իրավունքներն ապահովող և պարտականությունները ցուցանող օրենքներ։ Կասկած չկա, որ նախագծում առաջ քաշված բոլոր սկզբունքային դրույթների նպատակակետն էր՝ Ռուսաստանի վեհապետության ներքո ապահովել հայ ազգային վերնախավերի գլխավորած ներքին ինքնավարության ստեղծումը։

Սակայն դեկաբրիստների ապստամբությունից անմիջապես հետո ճորտատիրական ծայրահեղ ռեակցիայի ուղին որդեգրած ցարական կառավարությունը չէ, որ պետք է ընդառաջեր նման ինքնավարական ակնկալություններին և հակաճորտատիրական ձգտումներին։ Ուստի հասկանալի է, որ հիշյալ նախագծում առաջ քաշված առաջադրանքները և առավել ևս հակաճորտատի-

---

2 Նույն տեղում, էջ 256։

րական տրամադրությունները պետք է բարձիթողի արվեին ցարական կենտրոնական կառավարության և անդրկովկասյան իշխանությունների կողմից։ Ավելին, սրանց վարքագծում շատ շուտով նկատելի են դառնում որոշակի հակահայկական տրամադրություններ, որոնց խթանողը Կովկասի կառավարչապետ Պասկևիչն էր։ Եթե մինչև Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին Պասկևիչը հայերին շողոքորթելու, նրանց ընդառաջելու քաղաքականություն էր վարում, ապա հետագայում նա ակներև ատելություն էր տածում հայերի նկատմամբ։ Նման քաղաքականության հիմքը պետք է փնտրել այն ինքնավարական ձգտումների մեջ, որոնց համար մարտնչել էր հայ ժողովուրդը և որոնք գաղտնիք չէին Կովկասի կառավարչապետի համար։

Պասկևիչը, որին հանձնարարված էր Արևելյան Հայաստանում նոր իշխանության կազմակերպման և նոր օրենքների կենսագործման խնդիրը, չհապաղեց իսկույն ևեթ ձեռնամուխ լինելու ցարիզմի գաղութային քաղաքականության կենսագործմանը։ Նրա առաջին քայլերից մեկը հայ գործիչներին ասպարեզից հեռացնելն էր, որոնք հայկական ինքնավարական ձգտումների թարգմանն էին։ Դրանց մեջ ամենակարկառուն դեմքը Ներսես Աշտարակեցին էր, հայ ինքնավարական բաղձանքների գաղափարակիրներից մեկը։ Պասկևիչի սադրանքներով էր, որ ցարական կառավարությունը որոշեց Հայաստանից հեռացնել Ներսես Աշտարակեցուն, Թիֆլիսի թեմը գլխավորող հայ վիճակավորին, նրան փաստորեն աքսորելով հեռավոր Բեսարաբիա։ Ներսես Աշտարակեցին մեղադրվում էր այն բանում, որ իր ազդեցության տակ առնելով Երևանի ժամանակավոր վարչության պետ գեներալ Կրասովսկուն, հայերի նկատմամբ վարել է աշառու քաղաքականություն և դրանով իսկ մահմեդական ազգաբնակչությանը «գրգռել» ընդդեմ հայերի, որ նա փորձել է ընդլայնել էջմիածնի կալվածատիրական իրավունքներն ի հաշիվ արքունի գանձարանի։ Պասկևիչը չէր խորշում նույնիսկ հակառուսական տրամադրություններ վերագրել Աշտարակեցուն։ Իր հերյուրանքներն հիմնավորելու համար Պասկևիչը օգտագործում էր այն փաստը, որ Աշտարակեցին մտադրություն ուներ կազմել շուրջ 200 հոգուց բաղկացած մի զորաջոկատ, որը կոչված էր պաշտպանելու էջմիածնի վանքը։ Պասկևիչն այդ մտադրությունն հրամցնում էր իբրև հայկական բանակ կազմելու և հայերին Ռուսաստանի դեմ ապստամբեցնելու փորձ։ Ճիշտ է, շուտով նա հարկադրված էր ժխտել իր այդ հերյուրանքը Ներսեսի հասցեին, սակայն փաստը մնում էր փաստ, որ նա ամեն կերպ ձգտում էր ասպարեզից հեռացնել Ներսեսին։ Այդ բանը նրան հաջողվեց, և Ներսես Աշտարակեցին հեռացվեց Հայաստանից։ Հեռացվեց նաև հայերի նկատմամբ բարյացակամորեն տրամադրված գեներալ Կրասովսկին։ Սակայն Պասկևիչը այսքանով էլ չբավարարվեց։ Նա սկսեց հալածել և պատժել այն անձանց, ովքեր տոգորված էին Հայաստանի պետականության վերականգնման գաղափարով։

## 2. ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՐԶԸ

1828 թ. մարտի 20-ին Նիկոլայ I-ը, Թուրքմենչայի հաշտության պայմանագիրը վավերացնելուց անմիջապես հետո, ստորագրեց մի հրամանագիր, ուր ասված էր. «Համաձայն Պարսկաստանի հետ կնքված պայմանագրի, հրամա-

յում եմ՝ Պարսկաստանից Ռուսաստանին միացված Երևանի և Նախիջևանի խանությունններն այսուհետև բոլոր գործերում անվանել Հայկական մարզ և այն ներմուծել մեր տիտղոսի մեջ։ Այս մարզի բարեկարգման և կառավարման մասին կառավարիչ սենատը համապատասխան հրամանագիր կստանա իր ժամանակին»[3]։

Այսպիսով, Երևանի ժամանակավոր վարչությանը գալիս էր փոխարինելու վարչական մեկ այլ օրգան, և նորաստեղծ մարզի կառավարման գործը փոխանցվում էր մարզային վարչությանը[4], որի պետ նշանակվեց Երևանում ռուսական զորքերի հրամանատար գեներալ-մայոր Ալեքսանդր Ճավճավաձեն։ Վարչության կազմում իբրև անդամներ մտնում էին երկու ռուս զինվորական և տեղի հայ ու մահմեդական բնակչության իշխող խավերի մեկական ներկայացուցիչներ։ Մինչև 1833 թ. հայ բնակչության ներկայացուցիչն էր Սահակ Մելիք-Աղամալյանը։ Վարչության կազմի մեջ մտնում էին նաև երեք խորհրդական, որոնք համապատասխանաբար պետք է վարեին գործադիր, ֆինանսական, տնտեսական և դատական գործերը։

Հայկական մարզն իր հերթին բաժանվում էր Երևանի և Նախիջևանի գավառների և Օրդուբադի օկրուգի։ Գավառներում ստեղծվեցին ոստիկանական վարչություններ և գավառական դատարաններ, իսկ Երևանում և Նախիջևանում՝ քաղաքային դատարաններ։ Նախիջևանի գավառում և Օրդուբադի օկրուգում իշխանությունը թողնվեց տեղական մահմեդական նախրների՝ Էհսան խանի և նրա եղբայր Շեյխ-Ալի բեկի ձեռքը, մի բան, որ խիստ դժգոհություն առաջացրեց հայ բնակչության մեջ։ Հիշյալ անձնավորությունների ձեռքում տեղական իշխանության թողնելը ցարական իշխանությունները բացատրում էին այն բանով, որ նրանք պատերազմի ընթացքում իբր մեծամեծ ծառայություններ են մատուցել ռուսական զորքերին։ Էհսան խանին և Շեյխ-Ալի բեկին ռուս սպաներից միայն օգնականներ էին հատկացվում։

Ինչ վերաբերում է Հայկական մարզի քոչվոր քուրդ և ադրբեջանցի բընակչությանը, ապա նրանց վրա շարունակվելու էր իրենց ցեղապետերի կառավարչությունը։ Սկզբնական շրջանում մահալների և առանձին գյուղերի կառավարման նախկին ձևը գրեթե պահպանվեց, քանի որ այնտեղ իշխանության գլուխ մնում էին պարսկական տիրապետության ժամանակաշրջանի կառավարիչները, այն է՝ միրբոլուքները, մելիքները և աղաները։

Այնուամենայնիվ, Հայկական մարզի ստեղծումը ցարական կառավարության կողմից մասնակի զիջում էր ինքնավարական և ազգային պետականության վերականգնման ձգտումներին։ Եվ եթե «Հայկական մարզ» անվամբ ցարական կառավարությունը կամենում էր խաբուսիկ պատրանքներ ստեղծել հայ ազատագրական շրջաններում, ապա վերջինները իրոք ցանկալին ընդունում էին իրականի տեղ։ «Դեռ բոլորովին նոր էր այս անունը մտցվել Ռուսաստանի վարչական աշխարհագրության մեջ, երբ Երևանի և նրա շըրջակա գյուղերի հայ հասարակության կողմից մի բազմաստորագիր դիմում

[3] «Собрание актов, относящихся к обозрению истории армянского народа», т. I, М., 1833, стр. 278.

[4] Հայկական մարզի մեջ էր մտնում նաև Օրդուբադի գավառը։ Տե՛ս В. Н. Иваненко, Гражданское управление Закавказьем, Тифлис, 1901, стр. 241.

*էր խմբագրվում, ուղղված էջմիածնի Հոգևոր վարչության, որի մեջ իմիջի-
այլոց կոչ էր արվում ամբողջ աշխարհում ցրված հայությանը գալ հավաքվել
Արարատյան երկրում, ուր մի ժամանակ հայոց թագավորությունն էր եղել
և ուր այժմ ռուսների ձեռքով նորից հաստատվել է ազատությունը»*[5]։

*Մինչդեռ իրականում ցարական կառավարությունը բոլորովին այլ մը-
տադրություններ ուներ։ Պասկևիչը և ֆինանսների մինիստր Կանկրինը ամ-
բողջ Անդրկովկասը դիտում էին իբրև Ռուսական կայսրության գաղութային
մի կցորդ և ձգտում էին «այն կապել Ռուսաստանի հետ քաղաքացիական և
քաղաքական կապերով իբրև մեկ մարմին և ստիպել տեղի բնակիչներին խո-
սել, մտածել և զգալ ռուսաբար»*[6], *ինչպես գրում էին Պասկևիչը և սենատոր-
ներ Մեչնիկովն ու Կուտաիսովը կենտրոնական կառավարությանը ներկայաց-
րած «Առաջարկություններ անդրկովկասյան երկրամասի կառուցվածքի մա-
սին» իրենց նախագծում։ Ճիշտ է, այս նախագիծը չկենսագործվեց, սակայն
բացահայտում էր այն իրական քաղաքական գիծը, որին հետամուտ էր ցա-
րական կառավարությունը Անդրկովկասում։*

*Նորահաստատ վարչական կարգը Արևելյան Հայաստանում իրենից ներ-
կայացնում էր հնի և նորի մի խառնուրդ, ընդ որում 1828—1829 թթ. Թուր-
քիայի դեմ մղվող պատերազմը և 1828—1830 թթ. երկրում մոլեգնող ժան-
տախտի համաճարակը մեծապես խանգարում էին ռուսական իշխանություն-
ներին՝ ցարական օրենքների համապատասխան կարգ ու կանոն հաստա-
տել նոր նվաճված երկրում։ Այս ամենի հետևանքով սկզբնական շրջանում
բնակչության մեջ ծայր է առնում զանգվածային խուլ բողոք, հատկապես
այն շահատակություններից, որ կատարում էին երկրի նախկին իշխողները,
որոնք այժմ էլ դեռ տեղերում իշխանության սանձերն իրենց ձեռքն էին պա-
հում։ Առանձնապես ուժեղ էր դժգոհությունը էհսան խանի և Շեյխ-Ալի բեկի
տնօրինությանը թողնված Նախիջևանում և Օրդուբադում, որտեղ «հուզմուն-
քը և դժգոհությունը... ծայր աստիճանի են հասնում»*[7]։

*Բայց այսպիսին էր իրավիճակը միայն սկզբնական շրջանում։ Արևել-
յան Հայաստանի պատմության մեջ սկսվում էր մի նոր ժամանակահատ-
ված։ Աստիճանաբար երկրի կառավարման մեջ զգալի փոփոխություններ էին
մտցվում։ Ցարական կառավարությունը ձգտում էր երկրում հաստատել մի-
օրինակ կարգեր։ Նախկին կառավարության բռնապետական ապօրինություն-
ները վերացվում էին, գործի էին դրվում հաստատուն օրենքներ, որոնք նա-
խորդ ժամանակաշրջանի համեմատությամբ մի քայլ էին դեպի առաջ։ 1830
թ. փետրվար ամսին Հայկական մարզի պետ նշանակվեց գեներալ-մայոր իշ-
խան Վասիլի Բեհբութովը, որն այդ պաշտոնում մնաց մինչև 1838 թվակա-
նը։ Բեհբութովը զգալի աշխատանք կատարեց մարզում ցարական օրենք-
ների հաստատման և կիրառման ուղղությամբ։ Սակայն այդ հարցը դրված
էր ողջ Անդրկովկասի մասշտաբով, որովհետև դեռևս մեկ ընդհանուր քա-
ղաքական գիծ չէր մշակված և, բացի այդ, կառավարական շրջաններում էլ*

---

5 Լեո, *Հայոց պատմություն, Նորագույն շրջան, մաս Բ, Երևան, 1927, էջ 133։*

6 «Колониальная политика Российского царизма в Азербайджане в 20—60-х гг. XIX в.», ч. I, М.—Л., 1936, стр. 21.

7 АКАК, т. VII, стр. 647.

*գոյություն ունեին լուրջ տարաձայնություններ։ Եթե բացահայտ գաղութարարական հայեցակետի վրա կանգնած պաշտոնական անձինք (Պասկևիչ, Մենշիկով, Կուտաիսով և այլք) այն միտքն էին արծարծում, որ անհրաժեշտ է իսկույն ևեթ Անդրկովկասում մտցնել ռուսական վարչակարգ և արմատախիլ անել տեղական ժողովուրդների վարչական, և օրենսդրական նախկին համակարգը, ապա Կովկասի կառավարչապետի պաշտոնում Պասկևիչին փոխարինած բարոն Ռոզենը դեմ էր արտահայտվում միանգամից նման արմատական փոփոխություններ կատարելուն և գտնում էր, որ տեղական ժողովուրդների վարչական, և օրենսդրական կյանքում փոփոխություններն անհրաժեշտ է աստիճանաբար ներմուծել։*

*Այս տարաձայնությունների հետևանքով ողջ Անդրկովկասում կատարվելիք վերափոխումների հարցը փոքր-ինչ հետաձգվեց։ Չնայած դրան, Պասկևիչի հանձնարարությամբ Վ. Բեհբութովը Հայկական մարզում մի շարք վերակառուցումներ ձեռնարկեց։ Վրաստանի քաղաքացիական նահանգապետ Փալավանդովի հետ միասին Բեհբութովը Հայկական մարզի կառավարման բնագավառում մտցնում է էական փոփոխություններ՝ վարչության ռուսացման ուղղությամբ։ Նրանք միասին կազմում են կանոններ, որոնք 1833 թ. հունիսի 23-ին վավերացվում են Նիկոլայ I-ի կողմից և օրենքի ուժ ստանում։*

*Հունիսի 23-ի օրենքով նախ և առաջ փոփոխությունների էր ենթարկվում Հայկական մարզի վարչական քարտեզը։ Դրանով Երևանի գավառը բաժանվում էր չորս օկրուգների՝ Երևանի, Շարուրի, Սուրմալուի և Սարդարապատի։ Նախիջևանի գավառը և Օրդուբադի օկրուգը պահպանվում էին։ Նորաստեղծ օկրուգների կառավարման համար նշանակվում էին ռուս աստիճանավորներ, մինչդեռ Նախիջևանը և Օրդուբադը շարունակում էին մնալ նախկին նայիբների կառավարչության ներքո։*

*Մյուս կարևոր փոփոխությունը, որ բերում էր հունիսի 23-ի օրենքը, Հայկական մարզի վարչության կոլեգիալ ձևի վերացումն էր և վարչության պետի փաստական միանձնյա իշխանության հաստատումը։ Այնուհետև՝ եթե նախկինում ոստիկանական, դատական և ֆինանսական գործերի տնօրինությունը հանձնարարված էր խորհրդականներին, ապա այժմ դրանք իրականացնելու էին այդ նպատակով ստեղծված տարբեր բաժինները։ Հարկերի և տուրքերի գանձման համար ստեղծվում է առանձին վարչություն, ինչպես նաև հատուկ կոմիսարի պաշտոն, որի հոգսը պետք է լիներ հարկերի ու տուրքերի գանձումը և պետական եկամտի նոր աղբյուրների որոնումը*[8]*։*

*Մինչ այդ Երևանում և Նախիջևանում եղած քաղաքային դատարանները վերածվեցին գավառական դատարանների։ Մարզի բնակիչներին իրավունք էր վերապահվում նաև օգտվել միջնորդ դատարաններից, իսկ մահմեդականներին՝ նույնպես և շարիաթից։*

*Սակայն այս միջոցառումները ժամանակավոր բնույթ էին կրում, մինչ ցարիզմը ձեռնամուխ կլիներ ամբողջ Անդրկովկասում վարչական ռեֆորմների անցկացմանը։*

[8] «Полное собрание законов Российской империи» (*այսուհետև՝* ПСЗРИ), т. VIII, 1833, № 6282.

## 3. ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՐԶԻ ՎԵՐԱՑՈՒՄԸ. ՎԱՐՉԱԿԱՆ ՆՈՐ ՄԻԱՎՈՐՆԵՐ

*Ցարիզմին մտահոգում էր ամբողջ երկրամասում միանման վարչակարգ ստեղծելու և ընդհանուր օրենքներով այն կառավարելու խնդիրը։ Դեռևս 30-ական թվականների սկզբներին սենատորներ Մեչնիկովի և Կուտայսովի կողմից անցկացված վերստուգումը ցույց էր տվել, որ հին ու նոր օրենքների առկայությունը, ընդհանուր մշակված վարչական կառավարման բացակայությունը բազմատեսակ չարաշահումների աղբյուր են հանդիսանում և իրավացի դժգոհություն առաջ բերում տեղական բնակչության մեջ։ 1837 թ. Նիկոլայ I-ի այցելությունը Անդրկովկաս և բնակչության անսքող դժգոհությունն ու բողոքներն ավելի ևս համոզեցին ցարական կառավարությանը, որ անհրաժեշտ է շուտափույթ միջոցներ ձեռք առնել երկամասում դրությունը կարգավորելու և կայուն վարչաձև ստեղծելու համար։*

*Դեռևս 1833 թ. զինվորական մինիստր կոմս Չերնիշևի նախագահությամբ ստեղծվեց «Անդրկովկասի բարեկարգման հատուկ կոմիտե», որը, ինչպես այդ կոմիտեի անվանումն է ցույց տալիս, պետք է զբաղվեր Անդրկովկասում անցկացվելիք ապագա բարեփոխումների խնդրով։*

*Այս հարցերը կարգավորելու և վերջնական որոշում կայացնելու նպատակով 1837 թ. մարտին Անդրկովկաս ուղարկվեց հատուկ հանձնաժողով՝ սենատոր Գանի գլխավորությամբ, որը պետք է ուսումնասիրեր երկրամասում տիրող իրավիճակը և դրա հիման վրա համապատասխան օրինագիծ կազմեր՝ կառավարության հաստատմանը ներկայացնելու համար։ Արդեն 1838 թ. փետրվարին Գանի հանձնաժողովի զեկուցագիրը պատրաստ էր և ներկայացվեց կառավարության քննարկմանը։ Երկարատև քննությունից ու կշռադատումներից հետո, 1840 թ. ապրիլի 10-ին օրինագիծը վավերացվեց կայսեր կողմից և օրենքի ուժ ստացավ։ Այդ օրենքի առանձնահատկություններից մեկն այն էր, որ, այսպես կոչված, տեղական «բարձր դասը»՝ աղաներն ու բեկերը, դուրս էին մղվում վարչական գործունեության ասպարեզից, իբրև ցարիզմի քաղաքական նոր խնդիրներին բոլորովին անհամապատասխան և ավելորդ մի տարր։ Գանի հաշվումներով միայն Շաքիում, Շիրվանում և Ղարաբաղում անաշխատունակ և պորտաբույծ այդ դասի թիվը կազմում էր 10750 մարդ, որոնց կերակրում էին 83 հազար գյուղացիներ՝ գանձարանին չվճարելով և ոչ մի կոպեկ[9]։ Նման պարագան, իր հերթին, լրացուցիչ դժվարություններ էր ստեղծում կառավարության համար և մտահոգության պատճառ դառնում. ձրիակերության և անաշխատ կյանքի սովոր «արտոնյալ» դասը, զրկվելով վարչական գործերից և դրանից ստացվող եկամուտներից, կարող էր մի ամբողջ չարիք դառնալ երկրի գլխին, քանի որ պիտի պարապեր գողությամբ և ավազակությամբ։ Ստեղծված դժվարությունից դուրս գալու ելքը համարվեց այն, որ սկզբունքորեն որոշվեց բեկերին թոշակ նշանակել պետական գանձարանից։*

---

[9] *Տե՛ս В. Н. Иваненко,* Гражданское управление Закавказьем, Тифлис, 1901, стр. 342—343.

1840 թ. օրենքով Անդրկովկասում վարչական նոր բաժանում էր անցկացվում և երկրամասում ստեղծվում էին վրացա-իմերեթական նահանգ՝ Թիֆլիս, և Կասպիական մարզ՝ Շամախի կենտրոններով։ Վրացա-իմերեթական նահանգի մեջ մտնում էին Թիֆլիսի, Թելավի, Գորիի, Բելոկանի, Քութայիսիի, Ելիսավետպոլի, Երևանի, Նախիջևանի, Ալեքսանդրապոլի, Ախալցխայի և Գուրիայի գավառները, իսկ Կասպիական մարզի գավառներն էին Շիրվանը, Ղարաբաղը, Շաքին, Բաքուն, Թալիշը, Դերբենդը և Ղուբան։ Հիշյալ 18 գավառներն իրենց հերթին բաժանվում էին 72 շրջանների։

Այսպիսով, տասներկուամյա գոյությունից հետո վերացվում էր Հայկական մարզը։ Հայկական մարզի վերացումը գալիս էր խորտակելու հայկական ինքնավարության պատրանքները և ցույց էր տալիս, որ ցարիզմն արդեն անցնում է գաղութային անսքող քաղաքականության։ Դրա ապացույցն էր նաև երկրամասի նոր վարչական բաժանման փաստը, որով անտեսվում էին ազգային առանձնահատկությունները։

Կառավարության նոր քաղաքականության հաջորդ քայլը 1841 թ. մայիսի 23-ի օրենքն էր։ Վերջինիս համաձայն ադրբեջանցի աղաների կառավարման ներքո գտնված գյուղերն ազատվում էին նրանց ենթարկվելու, տուրքեր վճարելու և անձնական ծառայություններ կատարելու պարտավորություններից։ Կարգ էր սահմանվում, որ գյուղացիները այժմ հարկերը տանուտերերի միջոցով պետք է հանձնեին գանձարանին։

Կառավարությունն իսկույն եեթ ձեռնամուխ եղավ ընդունված օրենքների կենսագործմանը։ Դեռևս 1840 թ. Ղազախի 11 հայ գյուղերի բնակիչներն ազատվել էին աղաների վարչությունից, որպես արդյունք 1837 թ. Նիկոլայ I-ին կատարած դիմումի և ի հատուցումն այն ծառայությունների, որ նրանք մատուցել էին ռուսական զորքերին 1826—1828 թթ. ռուս-պարսկական պատերազմի ընթացքում[10]։ 1841 թ. մայիսի 28-ին կայսերական հրաման ստացվեց Ղազախի և Բորչալուի աղաներին իրենց պաշտոններից հեռացնելու մասին. նրանց կախումից ազատվեցին 102 գյուղեր։ Դրա փոխարեն աղաները պետք է գանձարանից փոխհատուցում ստանային, իսկ այդ գումարը գանձվում էր գյուղացիներից։ Նախքան աղալարների վերաբերյալ օրենքը կհրապարակվեր, Անդրկովկասի Գլխավոր վարչության խորհուրդը դեռևս 1841 թ. մարտի 24-ին որոշել էր ընդունել սպասվող օրենքը, որի բովանդակությունը նրան քաջ հայտնի էր և տարածել նաև մնացած բեկերի վրա, ելնելով այն պարագայից, որ բեկերը խաների ժամանակ են եղել վարչական անձինք, ուստի և այժմ պետք է հեռացվեն վարչական գործունեության ասպարեզից։

Հարկ է նշել, որ աղաներին և բեկերին վերաբերող օրենքը և նրա ոգուց բխած որոշումները առաջադիմական քայլ էին հանդիսանում, քանի որ գյուղացիական լայն խավերին ազատում էին այդ պորտաբույծ դասի կամայականություններից։ Ուստի և զարմանալի չէր, որ արտոնյալ այդ դասը խիստ դիմադրեց։ Աղաներն ու բեկերը չխորշեցին ոչ մի միջոցից, որպեսզի կառավարությանը հարկադրեն նահանջել։ Երկրամասում ստեղծված խառնա-

10 Տե՛ս В. Н. Иваненко, նշվ. աշխ., էջ 338։

շիռթ կացությունը և «արտոնյալ դասի» դժգոհությունը հարկադրեցին, որպեսզի Կովկաս ժամանի Կովկասյան կոմիտեի նախագահ Չեռնիշևը և տեղում զբաղվի դրության կարգավորմամբ։ Դրա արդյունքը եղավ այն, որ նա կարգադրեց վերականգնել բեկերի նախկին իրավունքները, իսկ աղաների ապահովության համար նոր միջոցներ փնտրել։

Որոշ դեպքերում աղաներին և բեկերին հաջողվեց ոտքի հանել նաև մոլեռանդության մատնված մահմեդական գյուղացիության մի մասին՝ կառավարության միջոցառումները բացատրելով որպես ոտնձգություն նրանց ազգային ավանդույթների նկատմամբ։ Դրանից դրդված, կառավարությունն իր հերթին միջոցներ ձեռք առավ խստացնելու ոստիկանական և ժանդարմական ճնշումը երկրամասում։ Դեռևս 1837 թ. ստեղծված Անդրկովկասի ժանդարմական կորպուսը վերակազմվեց և 1842 թ. աշնանը վերածվեց ժանդարմական 6-րդ բաժանմունքի։

Ցարական կառավարությունը 40-ական թվականների կեսերին դիմում է նոր միջոցների՝ ռուսական տիրապետությունը Անդրկովկասում ամրապնդելու և այստեղ դասակարգային վստահելի հենարան ստեղծելու համար։ Ահա այս խնդիրն էր, որ պիտի իրագործեր Անդրկովկասի առաջին փոխարքա իշխան Մ. Ս. Վորոնցովը։

Վորոնցովը օժտված էր մեծ լիազորություններով։ Նրան վերապահված էր, մինիստրներից և մինիստրություններից անկախ, տեղական բազմազան հարցերի լուծումը։

Փոխարքա Մ. Ս. Վորոնցովի ձեռք առած միջոցառումների մի մասը վերաբերում էր Անդրկովկասի վարչակարգի հետագա փոփոխություններին, ելնելով ազգային խայտաբղետ կազմ ունեցող և զարգացման տարբեր աստիճանների վրա կանգնած ժողովուրդներով բնակեցված այդ երկրամասի յուրահատկություններից։ Այսպես, Արևելյան Հայաստանում, Վրաստանում և Ադրբեջանի մի շարք շրջաններում հիմնվում են քաղաքացիական վարչություններ, մինչդեռ Օսեթիայում, Գուրիայում, Ջարո-Բելոկանիում և այլուր կառավարման գործը հանձնվում էր ռազմա-քաղաքական վարչություններին, իսկ լեռնականներով բնակեցված շրջաններում՝ ռազմական վարչություններին։

Այսքանով էլ չբավարարվելով, 1846 թ. դեկտեմբերի 14-ին կառավարությունը կրկին Անդրկովկասը վարչական բաժանման է ենթարկում։ Այս անգամ ստեղծվում էին չորս նահանգներ՝ Թիֆլիսի, Քութայիսի, Շամախու և Դերբենդի։ Երևանի, Նախիջևանի և Ալեքսանդրապոլի գավառները մտնում էին Թիֆլիսի նահանգի կազմի մեջ։ Այս դեպքում ևս անտեսվում էին երկրամասի ազգային առանձնահատկությունները։ Միայն 1849 թ. հունիսի 9-ին Երևանի նահանգի կազմակերպումով Արևելյան Հայաստանի զգալի մասը ցարիզմը ամփոփեց վարչական մեկ միավորի մեջ, որով զարկ տվեց նահանգի տնտեսական ու կուլտուրական առաջընթացին, փոքրիշատե նպաստավոր պայմաններ ստեղծեց ոչ միայն Երևան քաղաքի, այլև նահանգի գավառական քաղաքների զարգացման համար։ Երևանի նահանգի մեջ մտնում էին Երևանի, Նախիջևանի, Ալեքսանդրապոլի, Օրդուբադի և Նոր Բայազետի գավառները։

## 4. ՑԱՐԻԶՄԻ ԳԱՂՈՒԹԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

*Ցարիզմը իր գաղութային քաղաքականությունը Անդրկովկասում վարում էր մեծ զգուշավորությամբ, մանավանդ, երբ խոսքը վերաբերում էր հայ ժողովրդին։ Բանն այն է, որ բուն հայկական տերիտորիայի մեծ մասը՝ Արևմտյան Հայաստանը, որտեղ և բնակվում էր հայ ժողովրդի ճնշող մեծամասնությունը, շարունակում էր գտնվել Օսմանյան կայսրության տիրապետության տակ, իսկ ցարական կառավարության ռազմա-քաղաքական շահերը Թուրքիայում պահանջում էին անպայման հաշվի նստել այդ փաստի հետ, ուստի և ցարիզմը աշխատում էր քողարկել իր գաղութարարական ձգտումները։ Նշված պարագաները երկվություն էին մտցնում ցարական կառավարության վարած քաղաքականության մեջ, և հետագայում մեծ մասամբ արտաքին քաղաքական իրադրություններից էին կախված լինում դեպի Արևելյան Հայաստանը և հայ ժողովրդի արևելյան հատվածը ունեցած վերաբերմունքի մեջ կատարվող փոփոխությունները։ Այս պարագան հատկապես ցայտուն կերպով դրսևորվեց հայ եկեղեցու նկատմամբ ցարական կառավարության վարած քաղաքականության հարցում։*

*Եկեղեցու դերը նշանակալից էր հայ ժողովրդի կյանքում։ Պետականության կորստից հետո, դարեր շարունակ, հայ եկեղեցին էր այն միակ կազմակերպությունը, որ կրում էր համազգային բնույթ և միմյանց էր շաղկապում ինչպես հայ ժողովրդի տարանջատված և տարբեր պետությունների տիրապետության տակ գտնվող հատվածները, այնպես էլ այն հայ զանգվածներին, որոնք ապաստան էին գտել աշխարհի զանազան ծայրերում։ Պարսկական և Թուրքական տիրապետության շրջանում եկեղեցին հայ ժողովրդի ազգապահպանության գործում զգալի դեր էր կատարում։ Ռուսական պետական գործիչները դեռևս XVIII դարի սկզբներից հասկացել էին հայ եկեղեցու դերը և դիտում էին այն իբրև կարևոր մի ազդակ, որը կարող էր մեծապես նպաստել իրենց արտաքին-քաղաքական նպատակադրումներին Մերձավոր ու Միջին Արևելքում։*

*Ցարական Ռուսաստանը ծրագրում էր հայ եկեղեցու դիրքն օգտագործել ոչ միայն իր իշխանությունը Արևելահայաստանում ամրապնդելու համար, այլև Պարսկաստանի ու Թուրքիայի տիրապետության տակ մնացած և ընդհանրապես արտասահմանյան երկրներում ցրված հայ զանգվածների վրա այս կամ այն չափով ազդեցություն նվաճելու նպատակով։ Դրա համար անհրաժեշտ էր, որպեսզի հայ եկեղեցին կարողանար պահպանել իր նախկին դիրքը։ Արևելյան Հայաստանի միացումից անմիջապես հետո ցարական կառավարությունը, ի դեմս Կովկասի կուսակալ կոմս Պասկևիչի, ձեռնամուխ եղավ հայ եկեղեցու ներքին հարցերի կարգավորմանը և ցարական Ռուսաստանում նրա տեղի, դերի ու նշանակության որոշմանը։ Այդ առումով անհրաժեշտ էր մասնակիորեն բարձրացնել կաթողիկոսական գահի նշանակությունը, շնորհել նրան որոշակի իշխանություն և արտոնություններ, միևնույն ժամանակ պահպանելով այն՝ կառավարության համար շահավետ շրջանակներում։*

*Պասկևիչը Թիֆլիսում ստեղծում է չորս հոգուց կազմված մի գաղտնի*

հանձնաժողով, որը պետք է հայ եկեղեցու ներքին կյանքը սահմանող կանոնադրություն մշակեր։ Գաղտնի հանձնաժողովի մեջ մտնում էին Հայկական մարզի պետ Վ. Օ. Բեհբութովը, Սերովբե վարդապետ Կարնեցին, Հակոբ Շահան-Ջրպետյանը և մի լեհ աստիճանավոր՝ Օչկինը։ Հանձնաժողովի անդամները բոլորովին անձեռնհաս էին իրենց առջև դրված խնդիրը իրագործելու։

Հայ եկեղեցու բարենորոգության հարցը դեռևս XIX դարի սկզբին էր գրավել որոշ գործիչների ուշադրությունը։ Մասնավորապես Լազարյանների դրդմամբ էր, որ 1808 թ. մայիսի 25-ին Դանիել կաթողիկոսը ստեղծեց էջմիածնի «Բարձրագույն խորհրդարանը» կամ «սյունհոդոսը»։ Խորհրդարանի կազմի մեջ մտնում էին էջմիածնի բարձր հոգևորականության ներկայացուցիչները։ Խորհրդարանը օգտվում էր խորհրդակցական մարմնի իրավունքներով։

Հայ եկեղեցու հարցում ցարիզմի հետամտած նպատակները ցայտուն կերպով բացահայտվում են Պասկևիչի՝ օտար դավանանքների գործերի մինիստր Բլուդովին հղած մի նամակից. «Այժմ պատրիարք Եփրեմը, թե՛ իր բնավորությամբ և թե՛ իր անձնվիրությամբ Ռուսաստանին, դիմադրություն ցույց չի տա այս կապակցությամբ անցկացվելիք բարենորոգումներին և անհրաժեշտ կարգ ու կանոնին։ Բայց նրա խորին ծերության պատճառով շուտով երևի նրա տեղը կնշանակվի մեկ ուրիշը, որը կարող է համառ և ըմբոստ անձնավորություն լինել։ Այնժամ տերության համար դժվար կլինի հաշտեցնել ընդհանուրի օգտի և հայերի հոգևոր վարչության բարեկարգման իր դիտավորությունները նման մի քահանայապետի մասնավոր ձգտումների հետ, քանի որ նա կսկսի հոգ տանել սոսկ իր սեփական օգուտների մասին և կըկամենա պաշտպանել իր իշխանությունը օտար ամեն մի ազդեցությունից։ Նմանապես պետք չէ մոռանալ, որ էջմիածնում նստող համայն հայոց պատրիարքը, ըստ հնավանդ սովորության, հայ հոգևորականության պետն է և հոգևոր հովիվը ամենայն հայոց, որոնք սփռված են ամբողջ աշխարհում և որոնք նրան համարում են մասամբ ազգի պետը և գլուխը նաև աշխարհիկ գործերում։ Եթե այդ պաշտոնը ստանձնի մի ընդունակ և ձեռներեց անձնավորություն, որ հակամետ լինի խորամանկության և ըմբոստության, ապա, երբ տերությունը ձեռնամուխ լինի հայոց հոգևոր գործերի վարչության բարելավմանը, նա կարող կլինի դիմել Թուրքիայի և Պարսկաստանի հայերին և նրանց միջոցով դիմադրել այստեղի քաղաքական իշխանության բարի դիտավորություններին»[11]։

Ահա այս նկատառումներով էր, որ Թիֆլիսի գաղտնի հանձնաժողովը մշակեց եկեղեցու համար կանոնադրության մի նախագիծ, որը հետագայում վերաքննվեց Պետերբուրգում, փոփոխությունների ենթարկվեց և 1836 թ. մարտի 11-ին հաստատվեց Նիկոլայ I-ի կողմից իբրև հայ եկեղեցական կանոնադրություն։ Պատմության մեջ «Պոլոժենիե» անունով հայտնի այդ կանոնադրությունը իր ազդեցությունն ունեցավ հայ ժողովրդի ներքին կյանքի վրա։ Դա բացատրվում է այն հանգամանքով, որ «Պոլոժենիե»-ի ընդգրկումը

---

[11] АКАК, т. VII, № 214.

շատ ավելի լայն էր, քան հայ եկեղեցու ներքին կյանքի տարբեր բնագավառներին վերաբերող հարցերը։ «Պոլոժենիեն» միայն եկեղեցական կանոնադրության կանոնագիրք չէր, այլ դրանից ավելին—Ռուսաստանի սահմաններում ապրող հայության ազգային-կուլտուրական ինքնորոշման առանձնաշնորհումն[12]։ Սա նշանակում է, որ հայ ժողովուրդը իրավունք էր ստանում, իբրև մի կրոնական առանձին համայնք, պահպանել իր լեզուն և ազգային-կրոնական առանձնահատկությունները։ Եթե պետական պաշտոնական լեզուն ռուսերենն էր, ապա ազգային-հասարակական կյանքում հայերը կարող էին օգտվել մայրենի լեզվից։ Հայ եկեղեցին, այդ իմաստով, իրավունք էր ստանում ստեղծել և պահել հայկական դպրոցներ, որոնք սակայն դրվում էին կղերականության իրավասության տակ։ «Պոլոժենիեն» վերահաստատում և ամրապնդում էր կղերականության տիրապետությունը։

Մյուս կողմից, ռուսական արտաքին քաղաքականության շահերը պահանջում էին, որպեսզի հայ եկեղեցին շարունակեր նախկինի պես վայելել հանուր հայության վստահությունը, կամ, ինչպես Բլուդովն էր գրում Պասկևիչին, «բազմաթիվ կարևոր քաղաքական պատճառներով անհրաժեշտ էր, որ հայոց պատրիարքը սիրվի և հարգվի ոչ միայն ռուսահպատակների կողմից, այլև մյուս հայերից»[13]։ Առաջին հերթին դա վերաբերում էր արևմտահայերին, որոնց համերաշխությանը մայր աթոռի հետ խիստ մեծ նշանակություն էր տալիս ռուսական կառավարությունը։

«Թագավոր կայսեր ամենաողորմած հովանավորության» ներքո հայկական եկեղեցու դավանանքը հռչակվում էր ազատ։ Հայ եկեղեցուց պահանջվում էր հարգել կայսրության մեջ առկա մյուս դավանանքները և հրաժարվել հավատորսությունից, թեպետ թույլատրվում էր, որ մահմեդականները և հեթանոսներն ընդունեն հայոց դավանությունը։ Հայ հոգևորականությունը ազատ էր կացուցվում մարմնական պատիժներից, հարկերից, կոռ ու բեկարից։

«Պոլոժենիե»-ի համաձայն հայ եկեղեցին ստանում էր հետևյալ կազմակերպական կառուցվածքը. եկեղեցական ստորին վարչական միավորը ծուխն էր կամ ծխական համայնքը, որն ունենալու էր քահանա և երեցփոխ։ Այս երկուսն էլ պաշտոնի կարող էին կոչվել միայն ժողովրդական ընտրությամբ։ Հայ եկեղեցական թեմերը կառավարելու համար կաթողիկոսի ընտրությամբ և առաջադրությամբ ցարական իշխանության բարձրագույն օրգանները հաստատելու էին թեմակալ առաջնորդներ։ Վերջիններս թեմական գործերը կառավարելու համար իրենց ենթակայության տակ ունենում էին կոնսիստորիաներ։ Ի վավերացումն նախնի ավանդույթների, հայկական եկեղեցու գլուխ կրկին հռչակվում էր ամենայն հայոց կաթողիկոսը և ծայրագույն պատրիարքը, որն ընտրվում էր ամբողջ հայ ժողովրդի ներկայացուցիչների կողմից, համազգային ընդհանուր ժողովում՝ աշխարհիկ և հոգևոր պատգամավորների քվեներով։ Չնայած այս բանին, համազգային ժողովն իր ընտրության մեջ ազատ չէր, ազատ չէր այնքանով, որքանով որ կարող էր քվեարկել և գահի

---

12 Լեո, *Հայոց պատմություն, նորագույն շրջան, մասն II*, Երևան- 1927, էջ 264։

13 АКАК, т. VII, № 221.

համար առաջադրել երկու թեկնածուներ, սակայն չգիտեր, թե նրանցից որ մեկը կարժանանա ռուսական ցարի հաստատությանը։ Դրանով իսկ, փաստորեն, կառավարությունն իրեն իրավունք էր վերապահում և լայն հնարավորություններ էր ստանում կաթողիկոսական գահին բազմեցնելու իրեն հաճելի և ցանկալի անձնավորության։ Այսպիսով, խախտվում էր նախկին ավանդույթը, որի համաձայն կաթողիկոսը հաստատվում էր պարսից շահերի, օսմանյան սուլթանների, իսկ XIX դարի սկզբից նաև ռուսական ցարերի կողմից։ Այդ իրավունքն այժմ միմիայն ռուսական ցարին էր վերապահվում։ Ռուսաստանի սահմաններից դուրս ապրող հայության հետ կաթողիկոսը կապ կարող էր պահպանել միայն արտաքին գործերի մինիստրության միջոցով։ Կաթողիկոսի իշխանության սահմանափակում էր նշանակում նաև այն, որ սինոդը գրեթե կիսանկախ մի հիմնարկություն էր և ամբողջովին գտնըվում էր կառավարության կողմից նշանակվող պրոկուրորի անմիջական հսկողության տակ, թեև սինոդի նախագահը համարվում էր կաթողիկոսն ինքը։

«Պոլոժենիե»-ով նախատեսվում էր եկեղեցիներին կից ստեղծել ծխական դպրոցներ, իսկ յուրաքանչյուր թեմում՝ սեմինարիա կամ թեմական դըպրոց։ Էջմիածնում ստեղծվելու էր հոգևոր ճեմարան։ Անհրաժեշտ էր նշել, որ դպրոցների վերաբերյալ հոդվածները «Պոլոժենիե»-ի դրական կողմերից էին։

Դրվելով ամբողջովին կառավարության հսկողության տակ հայ եկեղեցին, սակայն, նրանից նյութական օժանդակություն չէր ստանում, և նրա գոյության նյութական հիմք կարող էին ծառայել սոսկ հայ ժողովրդի նվիրատըվությունները և եկեղեցական կալվածներից ստացված եկամուտները։

«Պոլոժենիե»-ն դժգոհությամբ ընդունվեց հայ եկեղեցու, ժողովրդական լայն զանգվածների և հատկապես արևմտահայության կողմից, քանի որ այն դիտվեց իբրև հայ եկեղեցու և ազգային իրավունքներն ու ավանդույթները սահմանափակող մի օրենք։ Նկատի ունենալով «Պոլոժենիե»-ի՝ հայ եկեղեցու ոգու և ավանդույթներին խորթ մի շարք հոդվածները, նույնիսկ հնդկահայերը 1840 թ. պաշտոնապես բողոքեցին Նիկոլայ I-ին, որպեսզի վերացվեն նմանօրինակ հոդվածները։

«Պոլոժենիե»-ի համաձայն 1837 թ. հիմնվեցին Էջմիածնի սինոդը և ռուսահայ վեց թեմերի (Երևանի, Վրաստանի, Ղարաբաղի, Շամախու կամ Շիրվանի, Նոր Նախիջևանի և Բեսարաբիայի, Աստրախանի) կոնսիստորիաները։ Բացվեցին թեմական դպրոցներ Երևանում (1837) և Շուշում (1838)։

Այսպիսով «Պոլոժենիեն» ռուսական կառավարության կողմից օգտագործվում էր իբրև մի միջոց հայ ժողովրդի լուսավորության գործը դնելու եկեղեցու «հոգևոր» վարչության տակ, իսկ մյուս կողմից նպատակ էր հետապնդում հայ եկեղեցու և հոգևորականության միջոցով առավել դյուրությամբ անցկացնելու ցարիզմի քաղաքականությունը։

* * *

Եթե հայ եկեղեցու «բարենորոգության» խնդիրը ցարական կառավարությանը հետաքրքրում էր առաջին հերթին իբրև արտաքին-քաղաքական մի կարևոր գործոն, ապա ոչ պակաս չափով նրան շահագրգռում էր Արևելյան

Հայաստանում և առհասարակ ամբողջ Անդրկովկասում դասակարգային ամուր հենարան ստեղծելու հարցը։

1830-ական թթ. Հայկական մարզում կառավարության առաջին քայլերից մեկն այն եղավ, որ վարչական պաշտոններից հեռացվեցին խանական շրջանի նախկին պաշտոնյաները՝ խաները, բեկերը, մելիքները և աղաները, իսկ մահալների կառավարիչներ նշանակվեցին ռուս աստիճանավորներ։ Սակայն այդ միջոցառումից հետո կառավարությունը պետք է լուծեր նաև նախկին պաշտոնյաների հողատիրական իրավունքների կարգավորման հարցը։ Քանի որ նախկին կառավարության ժամանակ հողատիրական իրավունքները հիմնականում կապված էին պաշտոնավարության հետ, անհրաժեշտություն էր առաջանում շուտափույթ կարգավորել այդ հարցը։ Այստեղ ցարական կառավարությունը հավատարիմ մնաց դասակարգային իր էությանը։

Պասկևիչին հաջորդած Անդրկովկասի կառավարչապետ բարոն Ռոզենի կարգադրությամբ Հայկական մարզի պետ իշխան Բեհբութովը 1836 թ. մի շարք կանոններ մշակեց մուլքադարների և թիուլդարների, ինչպես նաև քոչվոր ժողովուրդների ցեղապետերի իրավունքների վերաբերյալ։

Իշխան Բեհբութովի մշակած «Կանոնադրության» ելակետային սկզբունքն այն էր, որ պարսկական տիրապետության օրոք Հայկական մարզի բոլոր խաները, բեկերը, սուլթանները, մելիքները իսկական կալվածատերեր են եղել, որ համապատասխան գյուղերը պատկանել են նրանց և գտնվել են նրանց տնօրինության տակ, որ այդ գյուղերի բնակիչները կատարել են տարբեր տեսակի պարհակներ՝ հօգուտ մուլքադարների և թիուլդարների և իբրև մուլք վճարել են ամբողջ բերքի որոշ մասը։

Կանոնադրության մեջ այն միտքն է զարգացվում, որ ամբողջ հողի տնօրինության իրավունքը «թողնված է ստորին դասակարգի երկրագործ մարդկանց, որոնք եթե ցանքի համար կամովին որևէ հողակտոր չտան մուլքադարին կամ հողատիրոջը, նա արդեն իրավունք չունի իր սեփականության վրա և միայն հանդիսատես է մնում, թե ինչպես հասարակ հողագործները նրա սեփական հողից մեծ օգուտներ են ստանում»[14]։ Այսպիսով, պարզ է դառնում, որ 1836 թ. կանոնադրությունը կյանքի էր կոչված պաշտպան կանգնելու շահագործող նախկին դասերի իրավունքներին։

Այժմ մուլքադարներն իրավունք էին ստանում ամեն մի գյուղի հողերից, որոնք նախկինի պես բաժանվում էին վեց հավասար մասերի՝ դանգի կամ ակչայի, սեփական ցանքերի համար օգտագործել յուրաքանչյուր ակչայից 2 կամ 3 խալվար հողաբաժին, այսինքն ամեն մի գյուղից նրանց բաժին էր ընկնելու 12—18 խալվար հողատարածություն, իսկ եթե գյուղը սակավահող էր, ապա այնքան, որքան բաժին էր ընկնում ամեն մի գյուղական ընտանիքի։ Բացի այդ, գյուղացիները պարտավոր էին մուլքադարի ցանքերը ջրել, հնձել, կալսել և բերքը նրա տուն տանել։ Նշվածից ավելի ցանք կատարելիս մուլքադարը պարտավոր էր կիրառել վարձու աշխատանք, իսկ ցանքերից գյուղացիներին համահավասար պետությանը բահրա վճարել։ Ամեն մի ակչայից կամ դանգից գյուղացիները պետք է մեկական գյուղացիական ընտա-

14 ՍՍՀՄ ԿՊՊԱ, ֆ. Կովկասյան կոմիտե, № 1268, ց. 68, I, թ. 19։

նիք տրամադրեին մուլքատեր խաներին, բեկերին, սուլթաններին և մելիքներին՝ վերջիններիս տնային տնտեսության մեջ աշխատելու համար։ Սա արդեն մի պարտավորություն էր, որ առաջին անգամ փաթաթվում էր գյուղացիության վզին և որը մեծ դժգոհությունների տեղիք պիտի տար։ Հիշյալ ընտանիքները ազատվում էին դեմստվային պարհակներից և անձնական դրամական տուրքից, բայց բահրա պետք է վճարեին մյուս գյուղացիներին համահավասար։ Պահպանվում էր զանազան տոների և հանդեսների առթիվ նըվերներ մատուցելու նախկին սովորությունը։

Մուլքատերերն ազատ էին լինելու, բացի բահրայից, մնացյալ տուրքերից և զեմստվային պարհակներից։ Սակայն այդ արտոնությունը չէր տարածվում գնման կամ այլ օրինական ճանապարհով հողեր ձեռք բերած հողատերերի վրա, եթե նրանք պատկանում էին հարկատու դասերին։

Այսպիսով, նոր կանոնադրությամբ մուլքատերերն իրավունք էին ըստանում հիմնականում գյուղացիական ձրի աշխատանք կիրառելով սեփական ցանք կատարելու։ Միաժամանակ, փաստորեն, ճորտային կացության էր մատնվում ամեն մի գյուղական համայնքից վեց ընտանիք։ Տեղական ոստիկանությունը պետք է հոգ տաներ, որպեսզի գյուղացիներն անխախտ կատարեին իրենց վրա ծանրացած նոր պարհակները։

Իշխանությունների տեսադաշտից դուրս չմնացին նաև թիուլդարները։ Այդ շրջանում գոյություն ունեին չորս տեսակի թիուլներ՝ ա) ժառանգական, բ) մուավեզե, այն է՝ մեկ կամ մի քանի մուլքատիրական գյուղի փոխարեն տրված թիուլ, գ) ռոճիկի փոխարեն ստացած թիուլ և, վերջապես, դ) թիուլային էին համարվում էջմիածնի վանքին պատկանող գյուղերը[15]։

Դեռևս ռուսական տիրապետության հաստատման շրջանում, Պասկևիչի օրոք, սահմանվել էր հետևյալ կարգը. «ցմահ օգտագործման համար թիուլներ տալ նրանց, ովքեր նախկինում ստացել են, բայց սահմանել, որ ա) թիուլները երբեք ժառանգներին չանցնեն, բ) որ այսուհետև ոչ ոքի թիուլ չտըրվի, գ) հակաօրինական արարքների համար, առավել ևս դավաճաններից (այսինքն, Պարսկաստան փախած թիուլատերերից), թիուլները խլել և դ) որ այժմ զանազան անձերի ցմահ օգտագործմանը թողնված թիուլներում բընակիչներից տուրքերի գանձումն ավելի շատ չլինի, քան վճարում են պետական գյուղացիները»[16]։ Սակայն ցարական կառավարությունը շուտով փոխեց իր վերաբերմունքը նման անձանց նկատմամբ։ Նրանց թույլատրեց որոշակի ժամանակամիջոցում վաճառել իրենց ունեցվածքը։ Այսպես, 1828 թ. Պարսկաստան էր փախել Դարաքենդ Փարչենիսի մահալի կառավարիչ Մամեդ Ջաֆար խանը, և Պասկևիչը կարգադրել էր, որպեսզի այլևս նրան չթույլատրվի ոտք դնել ռուսական սահմանները։ Սակայն Ռոզենի կառավարչապետ դառնալուց հետո, Մամեդ Ջաֆար խանը դիմեց նրան՝ վերադառնալու և իր ու-

---

15 Տե՛ս ՍՍՀՄ ԿՊՊԱ, հակ.՝ Կովկասյան կոմիտե, № 1268, ցուց. (68), 1, 1837, գ. 1, թ. 26—26 հակ.։

16 Նույն տեղում, թ. 29։

նեցվածքին տեր կանգնելու խնդրանքով։ Ջաֆար խանին, ինչպես և շատ ուրիշներին, թույլատրվեց վերադառնալ և տնօրինել իրենց ունեցվածքը[17]։

Այժմ Հայկական մարզի պետը գտնում էր, որ դա «մասամբ անարդարացի» է, քանի որ նման վճիռը հանված է պատահական և «չստուգված» տվյալների հիման վրա։ Բեհբութովը, հանդես գալով թիուլատերերի և նրանց ժառանգների շահերի պաշտպանությամբ, առաջարկում էր նոր ստուգում անցկացնել և, եթե դրանից հետո էլ կառավարությունը չցանկանա ժառանգական թիուլի ինստիտուտն ընդունել, ապա թող համապատասխան փոխհատուցում տրվի թիուլատերերի ժառանգներին։ Ինչ վերաբերում է էջմիածնի վանքին, ապա նրան պատկանող թիուլները «ընդմիշտ թողնել նրա տիրապետության տակ, որովհետև այդ վանքը հնուց տիրում է թիուլների և երբեք դրանցից չի զրկվել»։ Իսկ մինչ համապատասխան վճիռ կհանվեր թիուլային տիրույթների մասին, առաջարկվում էր սրանցից զեմստվային պարհակներ չպահանջել, բացառությամբ փոստային պարհակի և միրաբների օգտին գանձվող դրամի[18]։

Հիշյալ կանոնադրության մեջ մոռացության չէին տրված նաև քոչվոր ժողովուրդների աղաները և ցեղապետերը, որոնք տեղական իշխանություններին պետք է օգնեին իրենց կառավարման տակ թողնվող ցեղախմբերին հսկելու և տուրքեր հավաքելու գործում։ Նրանք պետք է հետևեին «կարգ ու կանոնի» պահպանմանը, զինված պայքար կազմակերպեին արտասահմանից հայտնվող կամ ներքին ավազակախմբերի դեմ, պատժեին պետական տուրքերի վճարման կամ հասարակական պարհակների կատարման մեջ թերացողներին։ Նոր աղալարներ կամ ցեղապետեր նշանակելիս և հներին հեռացնելիս Հայկական մարզի պետը պետք է տեղյակ պահեր երկրամասի կառավարչապետին և ստանար վերջինիս համաձայնությունը[19]։

Պետությանը մատուցած վերոհիշյալ ծառայությունների դիմաց բնակչությունը պարտավոր էր աղաներին և ցեղապետերին աշխատուժով օգնել նոր տուն կառուցելիս կամ հինը վերանորոգելիս. յուրաքանչյուր ընտանիք պարտավոր էր տարեկան մեկ օր նրանց համար վար ու ցանք անել, հնձել, կալսել, բերքը տանել ամբարները, ինչպես նաև տարեկան մի բանվոր տալ խոտհնձի համար։ Բացի այդ, նրանց պետք է տնային ծառայողներ տրամադրվեին։ Պատերազմի դեպքում ձեռք բերված ավարի 1/10 մասը բնակիչները պարտավոր էին հատկացնել նրանց։ Տոնահանդեսների կամ ամուսնության կապակցությամբ խրախուսվում էր «կամավոր» ընծաներ տալու սովորույթը։ Հայկական մարզի բոլոր քոչվոր ցեղախմբերը ամեն մի ծխից պետք է հինգ ռուբլի արծաթ վճարեին գանձարանին, ինչպես նաև կոպարային հացատուրք, մինչդեռ աղաները և ցեղապետերն ազատ էին հողի բերքից պետությանը տուրք վճարելուց։ Սա դեռ բոլորը չէր։ Աղաների և ցեղապետերի ազգականների ապրուստի հոգսը ևս դրվում էր գյուղացիների վրա, քանի որ նույնպիսի պարհակներ նրանք պարտավոր էին կատարել նաև սը-

17 ՌԱՔԱ, Գլխավոր արխիվ, գ. 1—7, 1834, գ. 1, թ. 3—8։

18 Տե՛ս ՍՍՀՄ ԿՊՊԱ, Կովկասյան կոմիտե, գ. № 1268, ցուց. (68) 1, 1837, գ. 7, «1», գ. 31—31 հա.։

19 Նույն տեղում, գ. 1, «1», թ. 2—5։

րանց համար, իսկ վերջիններս ազատվում էին պետական բոլոր տուրքերից և պարհակներից։

«Կանոնադրության» մեջ մանրամասն սահմանված էին նաև գյուղական տանուտերերի (քյոխվաների) և նրանց օգնականների (չաուշների) ընտրության կարգը և պարտավորությունները։ Կառավարման և տուրքերի հավաքման գործում նրանք պետք է օժանդակեին աղաներին և ցեղապետերին, բայց պետք է գտնվեին աղայի կամ ցեղապետի անմիջական ենթակայության ներքո և «անպայման» կատարեին նրանց բոլոր հրամաններն ու կարգադրությունները։

Հիշյալ «կանոնադրությամբ» փաստորեն իրավական ձևակերպում էր ստանում Հայկական մարզի քոչվորական 3108 ընտանիքների կիսաֆեոդալական կախվածությունը 47 աղաներից, ցեղապետերից և սրանց ազգականներից, ընդ որում 180 ընտանիք էլ մատնվում էր ճորտերի կացության՝ հասարակական նորաստեղծ այդ վերնաշերտի տնտեսության մեջ ծառայելու համար։ Այն գյուղերը, որոնք ազատ էին մնացել նման բեռից, նախատեսվում էր նրանց համար ևս ստեղծել նույն վիճակը։

Այսպիսին էր ցարիզմի քաղաքականությունը արտոնյալ դասի նկատմամբ Հայկական մարզում ցարական տիրակալության առաջին տասնամյակում։

Սրան զուգընթաց, ամբողջ մարզում 1829—1836 թթ. կեսերը հարկային սիստեմը դեռևս ծանր էր, որը մեծ դժգոհությունների տեղիք էր տալիս։ Ուստի անհրաժեշտ եղավ նոր հարկային սիստեմ մշակել, որը հաստատվեց և կենսագործվեց 1836 թ. կեսերից։ Բայց այն էլ էական թեթևություն չբերեց աշխատավոր բնակչությանը։ Տեղական պաշտոնյաների, մուլքադարների ու թիուլատերերի պետական տուրքերը կապալով վերցնողների զեղծումներն ու չարաշահումները չափ ու սահման չունեին։

1840-ական թթ. սկզբին իրագործված վարչական ռեֆորմներն իրենց ազդեցությունը թողեցին նաև Արևելյան Հայաստանի սոցիալ-տնտեսական կյանքի վրա։ 1841 թվականի մայիսի 28-ի օրենքով վարչական իրավունքներից զրկված աղալարների և բեկերի արտոնյալ դասը, չհաշտվելով կատարվածի հետ, մեծ դիմադրություն ցույց տվեց և հարկադրեց կառավարությանը զբաղվել իր հարցով։ Դրա հետևանքը եղավ այն, որ 1842 թ. Թիֆլիսում սկսեցին գործել երեք հանձնաժողովներ, որոնցից մեկը զբաղված էր բեկերի, իսկ մյուս երկուսը՝ աղալարների իրավունքների ճշտման և նյութական ապահովության խնդիրներով։ Հանձնաժողովները հանգեցին այն եզրակացության, որ ա) բեկերն իրենց ունեցած բնակեցված կալվածների ժառանգական տերերն են, բ) որ թեպետև աղալարները նման իրավունքներով օժտված չեն, բայց որպես գյուղերի ժառանգական կառավարիչներ, իրավատեր են ոբրոշ եկամուտների և, վերջապես, գ) ռուսական իմաստով ճորտական կարգ այսպես կոչված մուսուլմանական գավառներում գոյություն չի ունեցել։ Այս հիմնական սկզբունքներն էլ պետք է կազմեին նախագծվող աղալարական-բեկական օրինագծի ողնաշարը։ Ոչ պակաս հատկանշական էին հանձնաժողովների այն եզրակացությունները, որ բեկերին ու աղալարներին հնարավոր է իրենց իրավունքներում իրավահավասար ճանաչել, որովհետև նրանք օգտվում են համանման իրավունքներով և արտոնություններով։

Այսպիսին էր իրավիճակը Անդրկովկասում առհասարակ և Արևելյան Հայաստանում, մասնավորապես, երբ Կովկասում ստեղծվեց փոխարքայություն և առաջին փոխարքա նշանակվեց իշխան Մ. Ս. Վորոնցովը (1844—1854)։ Վորոնցովին հրահանգված և լուծման կարոտ առաջնահերթ խնդիրներից մեկն էլ աղալարների և բեկերի հարցն էր։ Փոխարքայի հանձնարարությամբ՝ նրա օգնական գեներալ Լադինսկին զբաղվեց հիշյալ խնդրի ուսումնասիրությամբ և 1845 թ. հունիսի 6-ին համապատասխան զեկուցագիր ներկայացրեց։ Փաստաթղթի բովանդակությունը ցույց է տալիս այն կտրուկ շրջադարձը, որ պատրաստվում էր կատարել կառավարությունը։ Լադինսկին գտնում էր, որ ինչպես աղաները, այնպես էլ բեկերն, իրենց վարչությանը հանձնված գյուղերի ժառանգական կալվածատերերն են եղել և նույնիսկ օժտված այնպիսի իրավասություններով, որպիսիք ունեցել են վրացական կալվածատերերը, միայն այն տարբերությամբ, որ ժառանգական սեփականության սկզբունքն այնտեղ անվիճելի չի եղել։ Լադինսկու կարծիքով անհրաժեշտ էր բեկերի ու աղալարների ժառանգական սեփականություն, ճանաչել այն բոլոր հողատարածությունները, որոնք փաստաթղթերով, կամ փաստական տիրույթի իրավունքով նրանց ձեռքին են գտնվել Անդրկովկասի միացման ժամանակաշրջանում։

Իսկ ինչպիսին պետք է լիներ գյուղացիության իրավական դրությունը։ Առաջարկվում էր գյուղացիներին համարել պետական, բայց կախման մեջ թողնել բեկերից, իսկ վերջիններիս օժտել ռուսական ազնվականության իրավունքներով։ Ահա այս ոգով էլ Վորոնցովը դիմեց կառավարությանը, որպեսզի օրենսդրական ճանապարհով սահմանվեն գյուղացիների և արտոնյալ դասի փոխհարաբերությունները։

Բայց այս տրամադրությունները արտահայտություն էին մի պրոցեսի, որն իր սկիզբը առել էր դեռևս տասնյակ տարիներ առաջ, երբ Շաքիում, Շիրվանում և Ղարաբաղում պահպանվում էին խանական կարգերը։ Բավական արագ ծանոթանալով Ռուսաստանում տիրող սոցիալական կարգերին և ըմբռնելով դրանց բովանդակությունը, տեղական իշխող դասը որոշեց կալվածների ու գյուղացիների տեր դառնալ։ Ձնայած փոխարքայի ներկայացրած նախագծի դեմ եղան լուրջ առարկություններ, սակայն, Նիկոլայ I-ը հավանություն տվեց դրան։ 1846 թ. դեկտեմբերի 6-ի ռեսկրիպտը եկավ օրինականացնելու ադրբեջանական բեկերի ու աղաների և հայ մելիքների հողային իրավունքներն այն ոգով, ինչ ոգով որ նախագծել էր փոխարքա Վորոնցովը։

Ռեսկրիպտով մասնավորապես նախատեսվում էր կայունացնել Անդրկովկասի արտոնյալ դասերի վիճակը և դրանով իսկ նրանց «օգտակար» դարձնել կառավարության վարելիք քաղաքականությանը։ Այս նպատակով խաների, բեկերի և այլոց ժառանգական սեփականություն էին հռչակվում նախկինում զանազան «ծառայությունների և քաջագործությունների» համար շնորհված և երկրամասը Ռուսաստանին միացվելու ժամանակ հիշյալների տիրապետության տակ եղած, ինչպես նաև «այժմ էլ անվիճելիորեն նրանց ձեռքին գտնվող հողերը»։ «1840 թ. որոշ անձնավորություններից վարչական կարգով բռնագրավված հողերը, ինչպես նաև Բորչալու-Շամշադինի, Ղազա-

խի ուղեմասերում 1841 թ. բռնագրավված հողերը նույնպես վերադարձնել այդ անձանց կամ նրանց ժառանգորդներին, դրանք ճանաչել իբրև ժառանգական սեփականություն և դադարեցնել դրանց փոխարեն թոշակների վճարումը»։ Ինչ վերաբերում է ռուսական կառավարության կողմից տարբեր ծառայությունների համար ցմահ շնորհված հողերը ժառանգական ժամանակավոր տիրապետության տակ թողնելու հարցին, ապա հանձնարարվում էր Կովկասի փոխարքային առաջադրություն կատարել հիշյալ անձերի մասին, իսկ եթե նմանաբնույթ հողերը արդեն անցել են նրանց ժառանգներին, ապա դրանք ճանաչել իբրև ժառանգական սեփականություն։

Ժառանգական իրավունքով կալվածատերերին անցնող հողերը, բոլոր արդյունատեղիներով հանդերձ, դառնում էին նրանց լիակատար սեփականությունը, կարող էին փոխանցվել ժառանգաբար, նվիրաբերվել, վաճառվել, սակայն այնպիսի անձանց, որոնք նույնպես պատկանելիս լինեին արտոնյալ խավերին։ Այս հարցում կարելի էր առաջնորդվել և՛ պետական օրենքներով, և՛ շարիաթով. և՛ թե սովորութային իրավունքի նորմերով։ Հողերի շուրջը ծագած վեճերը կարող էին քննարկվել միայն դատական ատյաններում, ընդհանուր հիմունքներով։

Այնուհետև ռեսկրիպտը անդրադառնում էր նաև նորաթուխ հողատերերի և սրանց հողերի վրա բնակվող գյուղացիների փոխհարաբերությունների հարցին։ Վերջիններս պետք է շարունակեին բնակվել վերոհիշյալ կալվածատերերին շնորհված հողերի վրա, բայց... ճանաչվում էին իբրև պետական գյուղացիներ։ Հողատերերի հողերից օգտվելու համար այս գյուղացիները պարտավոր էին զանազան ծառայություններ կատարել հօգուտ կալվածատերերի։ Գյուղացիները դրվում էին նաև հողատերերի ոստիկանական վերահսկողության տակ։

Այսպիսով, ցարական կառավարությունը ժառանգական կալվածատերեր հռչակեց և ճորտատիրական որոշ իրավունքներով օժտեց Արևելյան Հայաստանի և Ադրբեջանի ամեն կարգի հողատերերին և, ելնելով իր իսկ ստեղծած իրողությունից, այն հիմք համարեց նրանց արտոնյալ դասին պատկանելը որոշելու համար[20]։ Դրանով իսկ ճորտատիրական պետության և Անդրկովկասի նորաստեղծ կալվածատիրության միջև «հաշտություն» էր կայանում։

Ցարական ռեսկրիպտով Կովկասի փոխարքային հանձնարարվում էր զբաղվել արտոնյալ դասի անձնական իրավունքների որոշումով, հավասարեցնելով դրանք ըստ հնարավորության, այն իրավունքներին, որոնք շնորհված էին ռուսական ազնվականությանը։ Այս սկզբունքը կենսագործելու նպատակով Թիֆլիսում, Երևանում, Շուշում և Բաքվում ստեղծվում էին հանձնաժողովներ, որոնց տրված հրահանգում նշված էր. «Բեկական տոհմի մեջ հաշվելու համար առավել վճռական հատկանիշը համարվում է հողատիրությունը, իսկ այն բոլոր անձինք, որոնց տրված են բնակեցված կալվածներ, բեկական իրավունքով, առանց որևէ հետագա քննության ճանաչվում են..., իրենց ընտանիքներով հանդերձ, բարձր դասին պատկանող»[21]։

---

20 *Ц. П. Агаян,* Крестьянская реформа в Азербайджане в 1870 году, Баку, 1956, стр. 79.

21 «Свод материалов....», т. I, ч. II, стр. 43.

*Հանձնաժողովների գործունեության արդյունքը եղավ բեկական և աղալարական կոչված «կանոնադրությունների» ընդունումը, որոնց հիմնական սկզբունքները մշակել էին Վորոնցովը և Լադինսկին, ձգտելով դրանց տալ հնարավորին չափ ընդգծված ճորտատիրական բնույթ։ Ընդունվեց երեք «կանոնադրություն», որոնք հայտնի են իբրև 1847 թ. ապրիլի 20-ի, 1847 թ. դեկտեմբերի 28-ի և 1851 թ. հունիսի 8-ի կանոնադրություններ։ Այս վերջինը վերաբերում էր Երևանի նահանգին և Թիֆլիսի նահանգի Ախալցխայի գավառին, բայց կյանքում չկիրառվեց։*

*Բեկական և աղալարական կանոնադրությունները վերաբերում էին նաև Արևելյան Հայաստանի մի շարք շրջաններին՝ Ղարաբաղին, Զանգեզուրին և Հայաստանի հյուսիսային երեք ուղեմասերին (դիստանցիաներին)։ Կանոնադրություններով սահմանվում էր կալվածատերերի կողմից գյուղացիներին հատկացվելիք հողաբաժնի չափը, նշվում էին այն ֆեոդալական-ճորտատիրական պարհակները, որ ստացված հողաբաժնի դիմաց պետք է կատարեին գյուղացիները՝ հօգուտ կալվածատերերի, թվարկվում էին հողատերերին շնորհված ոստիկանական-դատական ֆունկցիաները, որոշվում այն կարգը, որի համաձայն գյուղացին կարող էր հեռանալ տվյալ կալվածատիրոջ հողից։*

*Ըստ բեկական կանոնադրության, հողատերը պարտավոր էր 15 տարին լրացած արական սեռի յուրաքանչյուր գյուղացու տալ 5 դեսյատինից ոչ պակաս հարմար հողակտոր։ Աղալարական կանոնադրությամբ նախատեսվում էր, որ գյուղացու հողաբաժինը մնալու է նույնը, ինչ որ էր մինչ 1847 թվականի դեկտեմբերի 28-ը, որ աղալարները իրավունք չունեն այն պակասեցնել, իսկ եթե տնօրինության տակ ունեն ազատ հողամասեր, ապա պարտավոր են գյուղացիների հողաբաժինը հասցնել բեկական գյուղացիների հողային նորմային։ Այս որոշումը այնպես էլ չիրականացվեց*[22]։

*Կալվածատիրական հողում բնակվելու և դրանից օգտվելու համար գյուղացիները պարտավոր էին բնատուրք վճարել հողի բոլոր բերքերի 1/10-ի չափով։ Հողատիրոջից բանող անասուններ, գործիքներ և սերմացու ստանալու դեպքում այն կազմում էր բերքի 1/5 մասը։ Այգիների, բոստանների, բրնձի ցանքսերի և շերամապահության համար մալջահաթը հավասար էր բերքի 1/3-ին։ Գյուղացիները պարտավոր էին այն հասցնել կալվածատիրոջ տուն մինչև 50 վերստ հեռավորության վրա։*

*Գյուղացիները պարտավոր էին նաև կոռ կատարել։ Ամեն մի գյուղական գերդաստան պետք է տարեկան մեկ մշակ տար՝ 18 օր աշխատելու համար, իր գյուղատնտեսական գործիքներով հանդերձ, կամ համաձայն կալվածատիրոջ ցանկության, ամեն մի բանվորական օրվա դիմաց վճարել 20 կոպեկ։ Աղալարների համար կոռը համապատասխանաբար կազմում էր 8 օր կամ 10 կոպեկ։ Յուրաքանչյուր տասը ընտանիք պետք է մեկ տղամարդ և մեկ կին ծառայող տրամադրեր դաշտային կամ տնային աշխատանքների համար, ընդ որում կին ծառայող տրամադրելու կետը բնավ չկենսագործվեց, ելնելով երկրամասի ազգային-կենցաղային պայմանների առանձնահատկություններից։ Ծառայողի ընտանիքը կալվածատիրոջ համար այլ պարհակներ*

---

[22] «Свод материалов...», т. I, ч. II, стр. 54—55.

չէր կատարում, իսկ նրա պետական տուրքերը վճարում էր կալվածատերը։ Կար նաև կոռի մեկ այլ տեսակը՝ ավարեզը, որը պարտավոր էր կատարել գյուղական ողջ համայնքը՝ տարեկան երկու օր։ Դրամական տուրքերը գանձվում էին արոտավայրերից օգտվելու կամ քոչավայրի իրավունք տալու համար։

Այսպիսով, կալվածատիրական դարձած հողերի վրա ապրող գյուղացիների համար ստեղծվում էին կացության ծանր պայմաններ, նրանք դրվում էին գրեթե ճորտային դրության մեջ, անգամ սահմանափակվում էր նրանց տեղափոխության իրավունքը, մինչդեռ նորաթուխ կալվածատիրական դասը, որը կոչված էր ցարիզմի ամրապինդ հենարանը դառնալու Անդրկովկասում, օժտված էր լայն իրավունքներով և արտոնություններով։

Ճիշտ է, Անդրկովկասի բեկական և աղալարական դասը իր իրավունքներում այնպես էլ երբեք չհավասարվեց ռուսական ազնվականությանը, բայց և այնպես դրվեց արտոնյալ դրության մեջ։ Իսկ սրանց մեծ մասը «գյուղացիական և քոչվորական միջավայրից գլուխ բարձրացրած ինքնաբույս բռնատերեր էին, որոնք Վորոնցովի կողմից առաջ քաշվեցին և կազմակերպվեցին իբրև ֆեոդալական դաս»[23]։ Ֆեոդալական-ճորտատիրական կարգերի ջատագով իշխան Վորոնցովը և նրա համախոհները կամենում էին ի հաշիվ տեղական գյուղացիության բարվոքել նորաստեղծ կալվածատիրության դրությունը։

Ցարիզմի գաղութային քաղաքականության բնորոշ գծերից մեկն էլ Արևելյան Հայաստանի և առհասարակ ամբողջ Անդրկովկասի բնակեցումն էր Ռուսաստանի տարբեր նահանգներից բերված գաղթականներով, քաղաքականություն, որ կիրառվում էր դեռևս XIX դարի սկզբից։ Այդ գործն սկսվեց դեռևս գեներալ Երմոլովի կառավարչության տարիներին, երբ Վիրտեմբերգից գերմանացի գաղթականներ բերվեցին և բնակեցվեցին Վրաստանում ու Ադրբեջանում։ Դրանից հետո ծրագրվեց պարսկական լծից ազատագրված Արևելյան Հայաստանում զինվորական շեներ ստեղծել։ 1827 թ. կոմս Դիբիչը գրում էր Պասկևիչին «Պարսկաստանի սահմանագլխին 80000 մալոռուսական կազակների բնակեցման» մասին, ամեն մի շնչին 25 դեսյատին հարմարավետ հողեր տրամադրելով, որ նշանակում էր շուրջ 2 միլիոն դեսյատին հող առանձնացնել նախատեսված գաղթականության համար[24]։

Պասկևիչի 1830 թ. պատասխանից պարզվում է, որ, չնայած Պարսկաստանից և Արևմտյան Հայաստանից հայերի ներգաղթին, անդրկովկասյան իշխանություններին շարունակում էր զբաղեցնել այդ հարցը։ Նա գրում էր, որ հարմար բնակավայրեր են ընտրվում զինվորական շեների համար, որ այդ ժամանակ արդեն անմիջապես յոթ հազար հոգու կարող են ընդունել և այլն։ Սակայն զինվորական շեների ստեղծման ծրագրից ոչինչ չստացվեց, և 1850-ական թթ. վերջերին Կովկասի փոխարքա Բարյատինսկու առաջարկով գոյություն ունեցող մի քանի շեների զինվորականները պարզապես վերածվեցին պետական գյուղացիների։

Բացի այդ, Պետական խորհուրդը 1830 թ. հոկտեմբերի 20-ին, բարձրագույն հաճություն ստացած, կարծիք էր հայտնել ռուս աղանդավորներին (դուխոբորներ, իկոնոբորներ, մոլոկաններ և այլն) Անդրկովկաս բնակեց-

---

23 Խ. Հ. Ավդալբեկյան, նշվ. աշխ., էջ 133։

24 АКАК, т. VII, стр. 322.

ման ուղարկելու և դրա համար հարմարավետ վայրեր տրամադրելու մասին։ Սակայն այդ նպատակի համար ազատ հողատարածություններ, մասնավորապես Արևելյան Հայաստանում, չկային, ուստի Ռուսաստանից վտարված աղանդավորներին հողով հնարավոր էր ապահովել միայն ի հաշիվ տեղական գյուղաբնակչության հողաբաժինների։

Ռուս գաղթականներին Անդրկովկաս գրավելու նպատակով ցարական կառավարությունը նրանց համար ստեղծում էր բոլոր պայմանները։ Եթե կայսրության մեջ գործող ընդհանուր օրենքների համաձայն նոր վայրեր գաղթող գյուղական բնակչությանը վեցամյա հարկային արտոնություն էր տրըվում, այսինքն, այդ տարիների ընթացքում նրանք ազատվում էին պետության հարկեր և տուրքեր վճարելու պարտականությունից, ապա Անդրկովկաս գաղթող աղանդավորներին ութամյա հարկային ու տուրքային արտոնություն էր շնորհված ըստ 1848 թ. դեկտեմբերի 9-ի կառավարական որոշման[25], իսկ կամովին Անդրկովկաս գաղթած և այնտեղ ուղղափառ դավանանքը ընդունած նախկին աղանդավորները պետական գանձարան մուծվող տուրքերից ազատվելու էին 26 տարով[26]։ Ուղղափառ դավանանքին պատկանող ռուս գյուղացիների հարկային արտոնությունը կազմում էր տասը տարի։

Այդ կապակցությամբ Կովկասյան կոմիտեի բարձրագույն հաստատության արժանացած որոշման մեջ ասված էր. «Մալոռուս կազակներին, ինչպես նաև ընդհանրապես Անդրկովկաս գաղթող ուղղափառ դավանանքի բոլոր ռուսներին տասնամյա արտոնություն շնորհել, ի նկատի ունենալով, որ այնտեղ գաղթող աղանդավորներին ութամյա արտոնություն է տրված, իսկ այդ հարցում ուղղափառներին անհրաժեշտ է գերապատվություն տալ նրանց հանդեպ»[27]։

Այստեղից պարզ է, որ ցարական կառավարությունը կամենում էր միանգամից երկու կարևոր խնդիր լուծել։ Նախ՝ հաշիվ տեսնել աղանդավորների հետ և վերադարձնել նրանց ուղղափառության գիրկը և, մյուս կողմից, արտոնություններ շնորհելով «բարձր դասին», իր համար կայուն քաղաքական հենարան ստեղծել Անդրկովկասում։ Այս միջոցառման քաղաքական աստառը ավելի պարզ է դառնում, երբ ռուս գաղթականներին տրվող արտոնությունները համեմատում ենք Պարսկաստանի և Թուրքիայի սահմաններից հայրենիք ներգաղթած հայ գաղթականների հետ, որոնք կորցրել էին իրենց ողջ ունեցվածքը, բայց հարկերից ու տուրքերից ազատ լինելու միայն վեց տարվա արտոնությամբ էին օժտվում։

1840-ական թթ. Անդրկովկասում ռուս գաղթականների բնակեցման և բնակավայրերի ընտրության գործը ղեկավարում էին Կովկասյան գլխավոր վարչության խորհրդի անդամ, երկրագործության և պետական գույքերի մինիստրության կովկասյան լիազոր Ցադեևը և Երևանի գավառապետ Բլավատսկին։ Ցարական աստիճանավորները ռուս գաղթականների Անդրկովկասում հիմնավորելը հրամցնում էին իբրև տեղական բնակչության կուլտուրական

---

25 ПСЗРИ, т. XXII, 1848, № 22806.

26 ПСЗРИ, т. XXXVI, 1859, № 34324.

27 ПСЗРИ, т. XXVII, 1852, № 26227.

կարգացմանը խթանող մի միջոց։ Այսպես, Ցադեևը 1849 թ. գրում էր. «ռուս գաղթականները Անդրկովկաս են բերում... բարեկարգ գյուղերի օրինակ, նըպաստում են փոստային և առևտրական հաղորդակցությանը, բերում են ցանքերի նոր տեսակներ... իրենց մեջ ունեն շատ արհեստավորներ, որոնք այս երկրամասում պակասում են և ընդհանրապես տեղական շինականներից ավելի ձեռներեց և գործունյա են...»[28]։ Մյուս կողմից, ռուս գաղթականների առկայության հետ կապվում էին Անդրկովկասը կայսրության համար տնտեսապես ավելի շահավետ դարձնելու հեռանկարներ։

Առաջին ռուսաբնակ գյուղերը Արևելյան Հայաստանում հիմնվեցին իշխան Վորոնցովի փոխարքայության տարիներին։ Այդ գաղթավայրերից էին 1844 թ. հիմնադրված Վորոնցովկա և դրանից մի տարի անց ստեղծված Նովո-Միխայլովկա գյուղերը, որոնք երկուսն էլ կրում էին փոխարքայի անունը և տոհմանունը։ Այս գաղթավայրերը հիմնվեցին Թիֆլիս-Ալեքսանդրապոլ ճանապարհին, Լոռու դաշտում և, ժամանակի ընթացքում, տնտեսապես խիստ բարգավաճեցին, քանի որ նրանց բնակիչները ի հաշիվ հայ գյուղացիության ընդարձակ և բարեբեր հողատարածություններ էին ձեռք բերել, մինչդեռ հայ գյուղացիները հարկադրված էին լքել-հեռանալ իրենց պապենական հողերից։ Այնուհետև այս վայրերում ստեղծվեցին Պրիվոլնոյե, Պոկրովկա, Ալեքսանդրովկա, Նիկոլաևկա, Ռուս-Գերգեր ռուսական մեծ բնակավայրերը։ Ցադեևը կամենում էր ռուսական գաղթավայրեր ստեղծել նաև Ախուրյանի միջին հոսանքի ձախափնյա սևահողային տափարակում, սակայն ռազմական սիստեմի բացակայությունը վիժեցրեց այդ ծրագրի կենսագործումը։ Ցադեևը ծրագրել էր նաև ռուսներով բնակեցված գյուղեր հիմնել Ալեքսանդրապոլ-Մեծ Ղարաքիլիսա-Ջալալօղլի և Ալեքսանդրապոլ-Մեծ Ղարաքիլիսա-Դիլիջան ճանապարհների վրա, սակայն տեղական բնակչության դիմադրությունը խափանեց այդ պլանի կենսագործումը, միայն Համզաչիման գյուղի աջ և ահյակ կողմերում հիմնվեցին Նիկիտինո և Վոսկրեսենովկա գյուղերը։ Երևանի գավառապետ Բլավատսկու առաջադրությամբ հիմնադրվեց Միխայլովկա (Մխխանա) գյուղը, որի վրայով նախատեսվում էր Ալեքսանդրապոլը անմիջականորեն կապել Սևանա լճի ավազանի հետ։ Նա ծրագրել էր նաև Սևանա լճի ափերի երկայնքով ռուս գաղթականներ բնակեցնել և լիճը օղակել նրանց գյուղերով։ Սակայն նրան հաջողվեց այստեղ հիմնել միայն Ալեքսանդրովկա և Նադեժդինո (Շորժա) գյուղերը։ Բացի այդ, հիմնադրվել էին նաև Ելենովկա, Սեմյոնովկա և Կոստանտինովկա գյուղերը։

Նախատեսված էր չորս գյուղ էլ հիմնադրել Ելենովկայի և Նոր Բայազետի միջև։ Ռուս գաղթականների համար հիշյալ տեղի ընտրությունը հիմնավորվում էր նրանով, որ կլիման առողջարար է, հողը՝ բարեբեր, ջուրը՝ առատ, անտառը՝ մոտիկ։ Այդ գյուղերի հիմնադրման հետ կապվում էին նաև որոշակի տնտեսական հեռանկարներ, առնչված Սևանա լճի հետ։ Ցադեևի մտադրությամբ չորս գյուղերի հիմնումը կկենդանացներ այդ վայրի անապատային տեղերը և կզարգացներ Սևանա լճում արդյունաբերությունը, ինչ-

[28] ՀԿՊԳԱ, ф. 133, գ. 389, էջ 1—10։ Տե՛ս *В. Рштуни,* Крестьянская реформа в Армении в 1870 г., Ереван, 1947, стр. 166.

պես ձկնորսության ընդարձակումով, այնպես էլ հատկապես նավագնացության հաստատումով լճի վրա, որը և կհեշտացներ գյուղատնտեսական ապրանքների փոխադրումը արևելյան ափից դեպի Ելենովկա և Չիբուխլու, որտեղ կարելի կլիներ հիմնել առևտրական նավամատույցներ[29]։

Ցարիզմը ռուս գաղթականներին, տեղացիների համեմատությամբ, արտոնյալ վիճակում էր դնում, նրանց լավագույն հողաբաժիններ էր տրամադրում։ Այդ ամենը դժգոհություն և բողոքներ էր առաջացնում տեղական ազգաբնակչության մեջ

Ցարեևի կարծիքով տեղական գյուղացիության բողոքների հետ հաշվի նստելու անհրաժեշտություն չկար։

Կովկասյան փոխարքայի վարչությանը կից պետական էքսպեդիցիայի հանձնարարությամբ հողաչափ Պոլուխտովիչը 1850 թ. պետք է սահմանագծեր Ելենովկա գյուղը և այնքան հողատարածություն տրամադրեր, որքան հնարավոր կլիներ զատել Ջրըշըր, Քարվանսարա և Ոնդամալ հայկական գյուղերի հողերից, իբր թե այն հաշվով, որ և՛ ռուսները, և՛ հայերը հավասար ու բավարար չափով հող ունենան։ Սակայն հողաչափ Պոլուխտովիչը չարաշահում է իր իրավունքները, որի վկայությունը տալիս է Նոր Բայազետի գավառապետի հիշյալ հողաչափին հղած գրությունը. «Դուք, բացի Ձեզ արված հանձնարարություններից, դիպել եք նաև Օրդաքլու գյուղի հողերին, ինչ հրամանի մեջ ամենևին չի նշված, և այդ հողերից Ելենովկա գյուղի համար կտրել եք մեծ քանակությամբ վարած հողեր և արդեն դրել եք սահմանաձողեր. բացի այդ ենթադրում եք նույն ձևով վարվել նաև Շահրիզ, Դդմաշեն, Ցախչի և Վերին ու Ներքին Ախտա գյուղերի հետ»[30]։

Նման քաղաքականության պայմաններում ամենևին էլ զարմանալի չէ, որ Երևանի նահանգապետը մերժում էր հայ գյուղացիների դիմումը, երբ նրանք նշում էին, որ իրենց ռուս հարևանների մեկ շնչին գրեթե վեց անգամ ավելի հող է ընկնում, քան իրենց։ Այդպես էր դրությունը Սեմյոնովկա և Չիբուխլու գյուղերում, ուստի և չիբուխլվեցիները խնդրում էին Սեմյոնովկայի ավելցուկ հողերը տրամադրել իրենց։ Ներքին Ախտայի 95 ծուխ հայերն ավելի վատ հողային պայմաններում էին գտնվում, քան 35 ծուխ մոլոկանները։ Ադրբեջանցիներով բնակեցված Բղլու գյուղի համարյա բոլոր հարմարավետ վարելահողերն ու արտերը 1864 թ. ծրաշափությամբ անցան ռուսական Ալեքսանդրովկա գյուղին։

Զանգեզուրի սակավահող Անգեղակոթ և մի շարք այլ գյուղերի հողատարածությունների հաշվին հիմնվեցին Բազարչայ և Բորիսովկա ռուսաբնակ գյուղերը, իսկ Դիլիջանի Ջարխեչ և հարևան սակավահող գյուղական համայնքները հարկադրված էին տեղ հատկացնել Նոր Դիլիջան և Գոլովինո գյուղերի համար։

Չնայած բոլոր ջանքերին, ցարական կառավարությանը չհաջողվեց զանգվածային ռուս գաղթականություն հաստատել Արևելյան Հայաստանում, առավել ևս այն դարձնել ցարիզմի հենարան, որովհետև լինելով աղանդավորներ, նրանք մինչև վերջ էլ դիմադիր դիրք ունեին ցարիզմի նկատմամբ։ Ավելին,

29 ՀԿՊԴԱ, ֆ. 139, գ. 359, թ. 1—10։

30 Նույն տեղում, թ. 71—72։

ռուս գաղթականները սկզբից ևեթ երազում էին հայրենիք վերադառնալու մասին, անընդհատ դիմում էին կառավարությանը, բայց մերժում էին ստանում։ 1865 թ. թույլատրվում է նրանց վերադարձը, բայց տեղական իշխանությունները դարձյալ խոչընդոտներ էին հարուցում։

## 5. ԳՅՈՒՂԱՑԻԱԿԱՆ ՆԼՈՒՅԹՆԵՐ

Արևելյան Հայաստանի Ռուսաստանին միացումից հետո էլ ամենաբազմամարդ դասակարգը շարունակում էր մնալ գյուղացիությունը։ Բազմահազար պարսկահայերի և արևմտահայերի ներգաղթից հետո գյուղացիական դասակարգը էլ ավելի ստվարացավ։

Ներգաղթի հետևանքով Հայկական մարզի մինչ այդ ավեր ու ամայի 127 գյուղերը բնակեցվեցին, աճեց մեծաքանակ բնակչություն ունեցող գյուղերի թիվը. այսպես, 201—2000 շունչ բնակչություն ունեցող բնակավայրերի քանակը կրկնապատկվել էր։ 1831 թ. գյուղական բնակչությունը կազմում էր ամբողջ ազգաբնակչության 91,6 տոկոսը։ Քաղաքային բնակչության գերակշիռ մասը զբաղվում էր երկրագործությամբ, այգեգործությամբ և անասնապահությամբ։

Ցարիզմի վարած սոցիալ-տնտեսական քաղաքականության հետևանքով Արևելյան Հայաստանի «բարձր դասի» քանակական կազմում տեղի ունեցան որոշակի փոփոխություններ։ Ըստ 1829—1832 թթ. կամերալ ցուցակագրության տվյալների, Հայկական մարզի բնակչությունը կազմում էր 104.450 մարդ որից «բարձր դասի» պատկանում էր 3,173 մարդ (սրանցից 434-ը ազգությամբ հայ էին, մնացյալները՝ ադրբեջանցի (կամ բնակչության 1,9 տոկոսը)։ 1865 թ. տվյալներով Երևանի նահանգի (ի բաց առյալ Ալեքսանդրապոլի գավառը) բնակչությունը կազմում էր 356780 մարդ, որից 4260-ը պատկանում էին «բարձր դասին»։ Սրանցից հայեր էին միայն 713-ը։ «Բարձր դասը» կազմում էր բնակչության 1,2 տոկոսը։ Ահա այդ «դասն» էր, որ կեղեքում էր աշխատավոր գյուղացիությանը։

Մինչև 1834 թ. Հայկական մարզում տեղաբնիկներից տուրքերը պետք է գանձվեին պարսկական տիրապետության ժամանակաշրջանում գանձվող տուրքերի կեսի չափով։ Ներգաղթողները մինչև 1836 թ. ազատված էին տուրքերից։ 1834 թ., եկամուտների և պետական գույքերի վարչության ստեղծումից հետո, որի գլուխ կանգնած էր Ի. Շոպենը, «տուրքերը հավասարեցվեցին և որոշվեց ամենուրեք միատեսակ գանձել բերքի բոլոր արդյունքների 1/5 մասը»[31]։ Այդ պարագան միանգամայն ծանրացնում էր գյուղացիական զանգվածների դրությունը, ուստի և բավական սուր բողոքների ու դժգոհությունների տեղիք տվեց։ Դրա հետևանքը եղավ այն, որ 1836 թ. մտցվեցին վեց տարվա փորձնական ժամկետով Հայկական մարզի ողջ բնակչության համար հողի արդյունքներից գանձվող դրույքային տուրքեր։ Միաժամանակ հաստատվեցին նաև դրամական տուրքեր, ըստ որում պետական գյուղացիների ամեն մի ծուխ վճարելու էր 2 ռուբլի 50 կոպեկ, մուլքադարական գյու-

---

[31] И. Шопен, նշվ. աշխ., էջ 1218։

ղացիների ամեն մի ծուխ՝ 2 ռուբլի, իսկ քաղաքացիների յուրաքանչյուր ծըխից գանձվելու էր 3 ռուբլի։

1836—1842 թթ. կիրառված հարկային նոր՝ կոպարային կամ դրույքային սիստեմին, փոխարինելու եկավ դրամական տուրքի սիստեմը, որը մեծ դժգոհություն առաջ բերեց գյուղացիության մեջ, թեև դա ամենևին էլ չխանգարեց այն կենսագործելու կյանքում։

Դրամական տուրքերի գանձմանը վերաբերող կանոնները մշակվեցին բյուրոկրատական դիվանատների խուլ անկյուններում, և այդ մասին որևէ վաղաժամ հայտարարություն չեղավ, քանի որ դա «կարող էր ժողովրդի մեջ անհիմն լուրեր առաջացնել և երկյուղ ծնել»։ Նիկոլայ I-ը Անդրկովկասի իր պաշտոնյաներին հրահանգ էր տալիս՝ պայմաններ ստեղծել ապագա մեծ եկամուտների ապահովման համար[32]։

Հարկային նոր սիստեմով Հայաստանի և Ադրբեջանի բոլոր գյուղացիները ճանաչվեցին պետական գյուղացիներ, բաժանվելով երկու կարգի՝ պետական հողի վրա ապրող գյուղացիներ և մուլքադարական հողի վրա ապրող շինականներ։

Հարկային այս սիստեմին անցնելուց հետո էլ մուլքադար գյուղացիները պետք է վճարեին բոլոր նախկին տուրքերը, մի բան, որ մեծագույն դժգոհությունների և բախումների պատճառ է դառնում կալվածատիրական գյուղերում։ Ինչ վերաբերում է թիուլդարներին, ապա նրանք «իրենց պատկանող եկամուտը ստանում են նախկին հիմունքներով»։ Տուրքերի վճարման գործում գյուղացիության վրա հաստատվեց համապարտ երաշխավորության սկզբունքը։

Ուստի հասկանալի է, թե ինչու 30-ական թվականների վերջից, ինչպես կալվածատիրական գյուղերում, այնպես էլ պետական գյուղացիության շըրջանում, աճում էր դժգոհությունը ցարիզմի սոցիալ-դասակարգային քաղաքականության, տեղական իշխանության չարաշահումների և ծանր հարկերի դեմ։

Այնուամենայնիվ, ռուսական տիրապետության հաստատումը մասնակիորեն թեթևացրեց աշխատավոր գյուղացիության վիճակը։ Պարսկական տիրապետության շրջանում հարկային ծանր բեռը զուգորդվում էր անասելի բռնություններին և վայրագություններին։ Կայուն օրենքների և կարգ ու կանոնի բացակայությունը, իշխանավորների կամայականությունները գյուղացիներին հաճախակի մատնում էին տնտեսական քայքայման և նետում աղքատության գիրկը։ Նրանց կյանքն ու կայքը ամեն վայրկյան կարող էին կորստի մատնվել։ Այլ էր դրությունը ռուսական իշխանության տակ անցնելուց հետո։ Ճիշտ է, լինում էին չարաշահումներ, զեղծումներ, իշխանությունները հովանավորում էին «բարձր դասերին», բայց առկա էր և գործում էր կայուն օրենքը։

Բնամթերային տուրքերի փոխարեն հարկերի դրամական հատուցման սիստեմին անցնելը մեծապես խթանեց ապրանքա-դրամական հարաբերու-

---

[32] Տե՛ս *И. П. Бахтадзе*, Податное обложение государственных крестьян Закавказского края, տե՛ս «Свод материалов...», т. I, ч. III, стр. 9 и 93, 94.

թյունների հետագա զարգացմանը, հետևապես և երկրի տնտեսական առաջընթացին։ Ժողովուրդը, Արևելյան Հայաստանի Ռուսաստանին միացումից հետո, ապահովվում էր նաև իր տնտեսության զարգացման համար խիստ անհրաժեշտ մեկ այլ նախապայմանով ևս. դա խաղաղության հաստատումն էր երկրում, որի շնորհիվ մարդը հնարավորություն էր ստանում առանց երկյուղի զբաղվել իր խաղաղ աշխատանքով, մինչդեռ նախկինում միջֆեոդալական խռովությունները, անվերջ ասպատակությունները զրկում էին նրան իր տնտեսությունը վարելու հնարավորությունից։

Այլ էր համեմատաբար շատ ավելի փոքր թիվ կազմող կալվածատիրական գյուղացիության դրությունը։ Հայկական մարզի, ավելի ուշ Երևանի նահանգի հողատերերը՝ մուլքադարները և թիուլդարները թեև հնարավորություն ստացան ցարական իշխանության հովանավորության շնորհիվ ընդարձակել իրենց դասային արտոնությունները գյուղացիության նկատմամբ, շատերին էլ հաջողվեց սողոսկել «բարձր դասի» կազմի մեջ, բայց մինչև 1840-ական թվականների կեսերը նրանք շատ հեռու էին այնպիսի արտոնություններ ունենալուց, որպիսիք վայելում էին, ռուս ճորտատերերի նման, վրացական ազնվականներն իրենց գյուղացիների նկատմամբ։

Ցարական քաղաքականության շրջադարձը դեպի Արևելյան Հայաստանի «բարձր դասի» կալվածատիրական իրավունքների ընդլայնումը և ամրապնդումը, իհարկե, հնարավորին չափ օգտագործվեց վերջինիս կողմից։

Ռուսական տիրապետության հաստատումից շատ անձնավորություններ, օգտվելով երկրում տիրող խառնաշփոթությունից, տեր էին դառնում գյուղերի և մեծ թվով հողային տարածությունների։ Ավելին, նրանք կողոպտում էին ժողովրդին և մյուս կողմից ոչ մի հարկ չէին վճարում պետական գանձարանին։ Նախիջևանի խանությունում թիուլներ չկային։ Սակայն արդեն 1831 թ. հայտնի է դառնում, որ մասնավոր մի շարք անձեր յուրացրել են որոշ գյուղեր և հայտարարել դրանք իրենց պատկանող թիուլներ։ Այդ եղանակով ոմն Ահմադ սուլթան տեր էր կանգնել Յարըմջա գյուղին, որն իբր գնել էր 1827 թ. Պարսկաստան փախած Մահմադ բեկի ժառանգներից, մինչդեռ Յարըմջան պետական գյուղ էր եղել[33]։

Նույն եղանակով Նախիջևանի նաիբ էհսան խանը բռնագրավել էր Աղբենդ և Աղդարա գյուղերը և տարիներ շարունակ յուրացրել դրանց հասույթները, գյուղացիության համար ստեղծելով գոյության անտանելի պայմաններ։ Հետագայում դատավճռով այդ գյուղերը վերցվել էին նրանից և վերադարձվել գանձարանին, սակայն շուտով հաջորդել էր Նիկոլայ I կայսեր ռեսկրիպտը և անօրինական կերպով զավթված գյուղերը կրկին դարձել էին հափշտակողի սեփականությունը[34]։ Այսպիսով, հիշյալ ժամանակաշրջանում բռնագրավումները ֆեոդալ-հողատեր դառնալու տարածված ձևերից մեկն էին։

Պետական գյուղերին ու հողերին տիրելու մյուս ձևը կեղծ փաստաթղթեր ստեղծելն էր, սուտ վկայություններ տալը։ Այդ տարիներին հայտնվեցին բազմաթիվ պարգևագրեր, վաճառագրեր և այլն, որոնք հնարավորություն

33 ՀԿՊՊԱ, ֆ. 26, 1848, գ. 149, թ. 99։

34 Տե՛ս Խ. Հ. Ավդալբեգյան, նշվ. աշխ., էջ 88։

էին տալիս տեր կանգնելու խոշոր կալվածների։ Դժվար չէր դրանց կեղծ լինելն ապացուցել, սակայն, մեծ մասամբ, ցարական պետական ատյաններն ու տեղական իշխանությունները աչք էին փակում դրա վրա։ Կեղծ փաստաթղթերի օգնությամբ էր, որ Երևանի բնակիչներից ոմն Մեհթի բեկ Հաջիբեկլինսկի կամենում էր տեր կանգնել Զանգիբասարի հինգ գյուղերի, որպես Թիուլդար և մուլքադար։ Շուրջ 25 տարի Հաջիբեկլինսկին յուրացնում է այդ գյուղերի եկամուտները, որից հետո միայն բացահայտվում է կեղծիքը և նա զրկվում է անօրինական ճանապարհով սեփականացրած գյուղերից[35]։

Շատ-շատերին հաջողվեց արտոնյալ դասի շարքերն անցնել պարզապես շնորհիվ այն բանի, որ կոչվում էին խան, սուլթան, աղա, բեկ, իսկ ոմանք էլ կաշառակերության, պետական հողերի շուրջը կեղծ վիճաբանություններ սարքելով և այլ զարտուղի ճանապարհներով տեր կանգնեցին հողերի։ Ցարական իշխանությունները եւս քիչ հոգ չտարան բազմացնելու այդ պորտաբույծ դասակարգը՝ գյուղեր և հողեր պարգևելով և զանազան կոչումներ շընորհելով իրենց մարդկանց։ Թե ինչպես էին վերաբերվում սրանք գյուղացիների հետ, ցայտուն կերպով ցույց է տալիս Կարճևան գյուղի օրինակը, որը Պասկևիչը պարգևել էր Ղարադաղի նախկին Մամադ Կուլի խանին։ Կարճևանցիների բողոքագրում ասվում էր հետևյալը. «... Այժմ հրամանավ Պասկևիչ սարդարին Մամադ-Կուլի-խան Ղարադաղցի տասն ու հինգ տան խանություն է անում, որ է Կարճևան. խնդրեմք հասարակությամբ վերահասու լինել, որ այս փոքուր ժամանակիս ինչքան նեղություն կամ զուլում է արել, մեր գյուղն չի ծախվել կամ մենք չենք ծախվել նորա վրեն»[36]։ Ապա նշվում է, որ խանը 90 ձիավորով գալով գյուղ և բազմապիսի նվերներ ու հարկեր հավաքելով, ավերել է իրենց գյուղը։

Թե ինչպիսի կացություն էր ստեղծվել աշխատավորական զանգվածների համար այնպիսի մի շրջանում, երբ դեռ իշխանության նոր օրգանները չէին ամրապնդվել, և գերիշխող էր մնում հինը, երբ նորն ու հինը դեռ միահյուսված էին, երևում է Հայկական մարզի վարչությանը Շոպենի հղած մի գաղտնի զեկուցագրից, որը վերաբերում է Նախիջևանի և Օրդուբադի շրջաններին. «Նախիջևանի և Օրդուբադի շրջանների բնակիչների ներկա դրությունը խղճալի տպավորություն թողեց ինձ վրա։ Չնայած երկրի բնական հարըստություններին, բնակիչներն անհամեմատ ավելի աղքատ են։ ...Այսպիսի հակադրության գլխավոր պատճառները համարում եմ հետևյալը.

ա) հարկերն այստեղ գանձվում են պարսկական կառավարության ժամանակ գոյություն ունեցող չափով, չնայած Հայկական մարզի համար կիսով չափ կրճատելու կարգադրություն կա.

բ) պատերազմի ու ժանտախտի հետևանքով ազգաբնակչությանը արված հարկային արտոնությունները չեն կիրառվել.

գ) շրջանների կառավարման ձևն արգելակում է բնակչության բարեկեցությանը։ Նաիբներն անսանձ կերպով անձնատուր են եղել ասիական շահամոլության. նրանք իրենց ձիավոր ծառաների մեծամեծ խմբերով շրջագա-

---

35 Նույն տեղում, էջ 77—78։

36 ՀԿՊԳԱ, ֆ. 26, գ. 9. թ. 29։

յում են գյուղերում և ձրիաբար օգտվում գյուղացիների պարենից ու խարից.

դ) նաիբներն իրենց ազգականների ու մերձավորների հետ, որոնք տեղիս գլխավոր մուլքադարներն են, ամենևին չհոգալով բնակչության մասին, ամեն ինչ անում են, կարելույն չափ մեծ հասույթ ստանալու համար։ Չնայած այս շրջանների ջրասակավությանը, նրանք չալթուկ են ցանում, որը պարսկական կառավարության ժամանակ արգելված էր։ Սեփական ցանքսերի համար լավագույն և ամենից բերրի հողերն են ընտրում, միայն վատ հողերը գյուղացիներին թողնելով։ Չալթուկի ցանքսերից ազատված ջրերով նրանք իրենց խամ հողերն են ջրում։ Այս դրկանքներին ամենից շատ պետական գյուղերի բնակիչներն են ենթակա, որովհետև նրանք ոչ մի պաշտպան չունեն.

ե) պարհակներն ու պարտույթները կամայականորեն են բաշխվում։ Անդատաստան պատիժները, ջանակոծումներն ու տուգանումները վերջ չունեն։ Շատ անգամ պատժում են, որպեսզի տուգանք գանձեն։ Նախիջևանում տարածված համբավ է, որ երբ նաիբ էհսան-խանը կամենում է թուղթ խաղալ, կրպակներից մեկական չերվոնեց է հավաքել տալիս յուր օգտին.

զ) խաները, նրանց ազգականներն ու մերձավորները յուրացրել են պետական ու լքյալ (Պարսկաստան փախածների) գյուղերը և կամ թե չէ՝ վերջինների հաշվին ընդարձակել են իրենց հողատիրության սահմանները։ Բնակչությունից գանձում են անչափ մեծ տուրքեր, բայց պետական գանձարանին միայն փշրանքներն են հանձնում.

է) քաղաքական տեսակետից իրենց շահերից ելնելով՝ նաիբներն ու տիրող տարրերը տեղացիների մեջ «վայրենի, խստաբարո ու խորթ» վերաբերմունք են սնում դեպի ռուսները։ Այս բանն անում են մի կողմից իրենց դիրքն ու կշիռը կառավարության առաջ արժեքավորելու և բարձր պահելու նկատառումով, մյուս կողմից՝ բնակչությանը միմիայն իրենց ենթակա պահելու նպատակով, որպեսզի պահանջված ժամին (պատերազմ, ապստամբություն հօգուտ Պարսկաստանի և այլն) տեղական տարրը զերծ լինի իրենց համար ոչ-ձեռնտու ազդեցություններից և անի այն, ինչ իրենք կթելադրեն...»[37]։

Շոպենի այս գաղտնի զեկուցագրում սեղմ կերպով թվարկված են այն ապօրինությունները, սանձարձակությունները, խժդժություններն ու կամայականությունները, որոնց այս կամ այն չափով ենթակա էր Արևելյան Հայաստանի բնակչությունը։ Եվ թերևս այս ամենից ելնելով էր, որ ցարական կառավարությունը նախապես վարեց քաղաքական մի կուրս, որը նպատակ ուներ սահմանափակել ֆեոդալական հողատիրության ինքնաշնորհված իրավունքները։

1860-ական թթ. գյուղացիության վիճակում կատարվում են որոշ տեղաշարժեր, կապված դրամական հարաբերությունների, ապրանքային տնտեսության զարգացման և կապիտալիստական արտադրաեղանակի առաջացման հետ։ Այդ նույն երևույթը գյուղում նկատվող ներքին պայքարն է՝ ուղղված շահագործման նոր տեսակի՝ իր էությամբ բուրժուական շահագործ-

37 АКАК, т. VII, № 411—413.

ման և դրանց կրողների՝ գյուղական կուլակների դեմ։ Գյուղացիության վրա ծանրացող այդ նոր բեռը դեռևս հիմնականը չէ, պետական ու կալվածատիրական ճնշման կողքին այն իրեն հազիվ է զգացնել տալիս, բայց դա մի երևույթ է, որն անտեսել արդեն չի կարելի։

1863 թ. Դարալագյազի Աղքենդ մուլքադարական գյուղի բնակիչների 17 ընտանիք դիմում է Երևանի նահանգապետին և իրավունք խնդրում վերաբնակվելու Նոր Բայազետի գավառի Խատրլուկ ավերակ գյուղում, քանի որ վարելահողը պակաս է և ի վիճակի չեն պետական ու մուլքադարական տուրքերն ու պարհակները վճարել։

Ծանր էր նաև Ջիբուխլու գյուղի բնակիչների վիճակը. կլիմայական անբարենպաստ պայմանների հետևանքով ցորենի և գարու ցածր բերքը ոչ միայն չէր բավարարում նրանց կարիքները, այլև շատ անգամ գյուղացիներն ստիպված էին լինում շուկայից հաց գնել։ Բավարար չէին նաև Ջիբուխլվեցիների վարելահողերն ու արոտատեղիները։ Չնայած դրան, նրանցից կամենում էին խլել և Սևանա վանքին հանձնել հողակտորներից մեկը։ Նրանց վրա էր բարդված նաև լճի ափով անցնող ճանապարհի ձյունը մաքրելու, փոստը հինգ ձիավորներով ուղեկցելու և այլ պարհակներ։ Կարիքից ու կամայականություններից ծեծկված գյուղացիները պաշտպանություն էին որոնում նահանգական իշխանությունների մոտ, խնդրում ազատել անվճար պետական պարհակներից, չխլել իրենց հողը։

1866 թ. Ներքին Ախտայի հայ գյուղացիները փոխարքային տված խնդրագրում նշում էին, որ սկսած 1851 թ. իրենց տնտեսական դրությունը վատացել է, որովհետև գյուղական համայնքին պատկանող բերրի ու մոտիկ վարելահողերը կտրել ու տվել են մոլականներին։ Նրանք զրկված էին նաև վառելափայտ ձեռք բերելու հնարավորությունից։

Անցյալ դարի 60-ական թթ. Ապարանը մտնում էր Էջմիածնի գավառի մեջ. նրա բնակչությունը կազմված էր գլխավորապես Արևմտյան Հայաստանից 1828—1829 թթ. ռուս-թուրքական պատերազմից հետո գաղթած հայ գյուղացիներից։ Բնակչությունը 30-ական թվականների վերջերին Նոր Բայազետի և Փամբակ-Շորագյալի հայ գաղթականների նման ըմբոստացել էր և հրաժարվել պետական տուրքեր վճարելուց և պարհակներ կատարելուց։ Եթե 1863 թ. ժամանակավոր պարտապանի վիճակում գտնվող ռուս գյուղացիների մեջ տարածված էր այն մտայնությունը, որ այդ թվականի գարնանից իրենց բաժնեհողերի սեփականատերերն են դառնալու, ապա Ապարանի գյուղացիության մեջ այդ մտայնությունը յուրատեսակ արձագանք էր գտել և պետական տուրքերից խուսափելու առիթ ծառայեց։ Ապարանի գյուղացիների հարկերը վճարելուց հրաժարվելու իրական դրդապատճառն այն էր, որ գավառապետը կողոպտում էր գյուղացիներին՝ հենվելով գյուղական կուլակների վրա։ Վերջիններս թույլ չէին տալիս գյուղացիներին իրենց հացահատիկը վաճառել Երևանում, հարկադրում էին շուկայական արժեքից 3—4, նույնիսկ 5—6 անգամ ավելի պակաս գներով այն վաճառել գավառապետի գործակալներին, իսկ ցորեն չունեցողներին ստիպում էին չնչին գներով վաճառել իրենց անասունները։

Գավառապետը դիմում էր նաև ուղղակի խաբեության՝ ավելացնելով պետական հարկերն ու պարհակները և գրպանելով տարբերությունը։ Երբեմն էլ նա գյուղացիներից հավաքում էր վաղուց վերացված տուրքերը, ինչպես արոտավայրերից գանձվող սաբալախո տուրքը։ Որոշակի գումար էր գանձվում տեղական պահակախմբի համար, մինչդեռ այդպիսին գոյություն չուներ։ Իր անձնական հողամասի պահպանման ծախսերը ևս նա գանձում էր գյուղացիներից։ Գավառապետը կամայականորեն փոփոխում էր գյուղական ընտրովի պաշտոնյաներին, վաճառում էր պաշտոնները կամ նշանակում իր մարդկանց։ Գավառապետի գործակիցները նվերների անվան տակ հավաքում էին զանազան մթերքներ, կաշառքներ վերցնում և այլ ապօրինություններ կատարում։

1860-ական թթ. Ալեքսանդրապոլի գավառի պետական քսան գյուղերի բնակիչների բողոքը իրենց գավառապետի դեմ բացահայտում է այն ապօրինությունները, որոնց զոհ էին դառնում անխնա կերպով շահագործվող գյուղացիները։ Վերջիններիս բողոքը քննող պաշտոնյան նշում էր. «Կազակային պոստի կառուցումը չափազանց ծանր է նստում բնակիչների վրա։ Նրանք պարտավոր են ամբողջ շինանյութը բերել իրենց հաշվին՝ չստանալով փոխադրավարձ, ձրի բանվորներ են տալիս և համարյա ձրի վարպետներ»։ Թեև գյուղացիներից, սկսած 1861 թ., տարեկան ամեն մի ընտանիքից հավաքում էին 2 ռուբլի 17 կոպեկ՝ ձիավոր պահակների ծախքը հոգալու համար, որոնք իբր թե նրանց պետք է պաշտպանեին կողոպուտներից, բայց պահակային ծառայությունը գրեթե բացակայում էր։ Գյուղացիների համար դժվարացել էր նաև պետական անտառներից անձնական կարիքների համար փայտ ձեռք բերելը։ Երևանի ժանդարմական վարչության պետ կապիտան Ջոլտովսկին իր զեկուցագրերից մեկում նկարագրում էր այն ճնշումներն ու կողոպուտը, որոնց ենթարկվում էին Ալեքսանդրապոլի գավառի գյուղացիները՝ գավառապետ ֆոն-դեր-Պալենի կողմից։ Վերջինս յուրացնում էր փայտ կտրելու իրավունքի համար գանձվող գումարները։

Գյուղական հասարակության պարհակները և տուրքերը բաշխելու իրավունքը ոտնահարվում էր կա՛մ գավառական իշխանության կողմից, կա՛մ գյուղի վերնաշերտի կամքով։ Ալեքսանդրապոլի գավառի 20 գյուղերի ներկայացուցիչները, փոխարքային բողոքելով պարհակների և տուրքերի սահմանման գործում գավառապետի վարչական կամայականության դեմ, պաշտպանում էին ոչ թե գյուղի հասարակական ժողովի իրավունքները, այլ գյուղական տանուտերերի և «պատվավոր անձերի»՝ այսինքն գյուղի վերնաշերտի արտոնությունը. դրա համար էլ այդ բողոքն ստորագրած 47 հոգուց 17-ը տանուտերեր էին։

Գյուղական վերնաշերտերի տրամադրությունները բողոքագրում երևան են գալիս մեկ այլ հարցում ևս։ Գավառապետը մեղադրվում է այն բանում, որ հրաման է տվել գյուղերում հողի ներքին վերաբաժանում կատարել ոչ թե այնտեղ հնուց գոյություն ունեցող, այսպես կոչված, համփա-չարեքային սկզբունքով, այլ ըստ ընտանիքների արական սեռի շնչերի։ Ապա ավելացնում են, որ հենց «այդ պատճառով էլ մեր միջև շարունակ անբավականություններ են տեղի ունենում»։

Գյուղացիների բողոքագրի այդ կետը ճիշտ հասկանալու համար հարկավոր է նկատի ունենալ հետևյալ հանգամանքները։

Գյուղական համայնքի հողն ըստ շնչի բաշխելու նոր սկզբունքը պաշտպանում էր չքավորությունը, իսկ վերնաշերտը կողմնակից էր հնուց գոյություն ունեցող համփա-չարեքային սիստեմին, որի համաձայն, ի միջի այլոց, կարելի էր համապատասխան տուրքեր տալով, անկախ ընտանիքի արական սեռի անդամների թվի, ավելի մեծ քանակությամբ հող ստանալ, իսկ այդ, իհարկե, հնարավոր և ձեռնտու էր միայն գյուղական վերնաշերտին[38]։

Դրամական տնտեսության հետզհետե նկատվող զարգացման պայմաններում գյուղական բնակչության աճը, հողի պակասությունը, հատկապես գյուղացիական ռեֆորմին հաջորդող տարիներին[39], սրել էր պայքարը հողի վերաբաժանման համար այդ երկու սիստեմների կողմնակիցների միջև ոչ միայն Ալեքսանդրապոլի գավառում, այլև Երևանի նահանգի մյուս շրջաններում։

Թեև Ալեքսանդրապոլի գավառի պետական 20 գյուղերի բողոքն իբրև «անհիմն» անհետևանք թողնվեց Երևանի նահանգապետի կողմից, բայց դրա համառոտ վերլուծությունը պարզորեն ցույց է տալիս, որ այդ դիմումով Հայաստանի գյուղացիները հարուցել են պետական գյուղի հասարակական կյանքը հուզող մի շարք կարևոր հարցեր՝ կապված պետական իշխանության գավառական մարմինների չարաշահումների և կամայականությունների հետ, գյուղում զանազան շերտերի միջև սկսված բախումների հետ՝ պարհակների ու տուրքերի բաշխման և հողի վերաբաժանման եղանակների կապակցությամբ։

1830—1860 թթ. Արևելյան Հայաստանում ծավալված գյուղացիական ելույթները կարելի է ստորաբաժանել երկու ժամանակահատվածի, որոնցից մեկն ընդգրկում է 1830-ական թթ. և մյուսը 1840-ական թթ. կեսերից հետո ընկած ժամանակաշրջանը։ Եթե 1830-ական թթ. գյուղացիությունը, հատկապես Պարսկաստանից և Արևմտյան Հայաստանից ներգաղթած, հիմնականում պայքար ծավալեց կառավարության հարկային քաղաքականության դեմ, ավելի ճիշտ հարկային արտոնությունները երկարաձգելու համար, քանի որ ներգաղթից հետո դեռևս չէր կարողացել կարգի բերել իր քայքայված տնտեսական կացությունը, ապա երկրորդ ժամանակաշրջանի բնորոշ գիծն էր՝ պայքարը նորաթուխ կալվածատիրական դասի ուժեղացող շահագործման և ճորտատիրական հավակնությունների դեմ։ Այս շրջանում պայքարը միաժամանակ ուղղվում էր իշխանության և նրա ներկայացուցիչների դեմ, որովհետև նրանք, իբրև կանոն, հանդես էին գալիս կալվածատերերի շահերի պաշտպանությամբ։

Գյուղացիական ելույթների մեջ աստիճանաբար ուրվագծվում էր մեկ այլ գիծ ևս՝ գյուղացիական զանգվածների պայքարը գյուղական ունևոր շերտերի դեմ։ Ուշադրության արժանի է նաև այն փաստը, որ շահագործման դեմ մըղ-

---

38 Տե՛ս *С. Г. Егиазаров*, Административно-экономический строй сельской общины в Эриванской губернии. В книге «Свод материалов...», т. I, ч. I, стр. 26, 27.

39 Տե՛ս *С. Завaров*, Опыт исследования сельского хозяйства хлебородного района Эриванской губернии и Карсской области, Тифлис, 1899, стр. 218.

վող պայքարում հայ և ադրբեջանցի գյուղացիները հաճախակի միասնաբար էին հանդես գալիս դասակարգային ընդհանուր թշնամու դեմ[40]։

Գյուղացիության զանգվածային առաջին բողոքները և գանգատները վերաբերում են 1837 թ., երբ Նիկոլայ I-ը այցելեց Հայաստան։ Օգտագործելով առիթը, գյուղացիները յուրահատուկ ձևով ներկայացրին կայսրին իրենց բողոքն ու գանգատը։ Նրանք ճանապարհի վրա ծղոտ էին վառում, ցույց տալու համար, որ իրենք էլ այդպես վառվում են իրենց շահագործողների ձեռքին, իսկ Սարդարապատում ցույց տվեցին մի փետրահան աքաղաղ, որը խորհրդանշում էր, թե իրենք այդպես փետրահան են լինում, այսինքն՝ կողոպտվում են[41]։

Ղազախի հայ գյուղացիները նույնպես դիմեցին Նիկոլայ I-ին՝ գանգատվելով, որ նախկինում իրենք կողոպտվում էին աղալարների կողմից, իսկ այժմ տառապում են ցարի իշխանության լծի տակ։ Նկատի ունենալով Գրիգոր արքեպիսկոպոս Մանուչարյանի գլխավորությամբ Ղազախի հայ գյուղացիների գործուն մասնակցությունը ռուս-պարսկական և ռուս-թուրքական պատերազմներին և այն, որ նրանց մատուցած ծառայությունների համար դեռևս կառավարչապետ Երմոլովն էր խոստացել ազատել աղալարների իշխանությունից, գյուղացիների խնդիրքը հարգվեց[42]։

Նույն թվականին Զանգեզուրի մահալի Բռնակոթ գյուղի բնակիչները ցարական պաշտոնյաների շահատակությունները և իրենց տնտեսական ծանր վիճակը հետևյալ կերպ էին նկարագրում. «Մեր պետերը,—գրում էին նրանք,— ոչխարի հոտի վրա ընկած գայլերի նման զանազան ճնշումներով քայքայում են մեր բարեկեցությունը։ Մշտապես Շուշի ամրոցում իր տանը գտնվող պարետը իր ճաշի համար ամեն օր գանձում է մեկ ռուբլի արծաթով։ Ամեն վեց ամիսը մեկ նաիբները մեզ մոտ փոխվում են։ Նաիբի ամեն մի ճաշի համար պահանջվում է մեկ ոչխար, 1 լիտր բրինձ, կես լիտր յուղ, խոհարարին ճաշ եփելու համար տալիս ենք 5 ռուբլի, ծառայողին՝ 4 ռուբլի, միրզային (գրագրին) 12 ռուբլի, իսկ իրեն՝ նաիբին՝ 50 ռուբլի արծաթով։ Նաիբն ունենում է 10 նոքարներ ու ծառաներ, որոնք մեր ձիերն են հեծնում և վերադարձնելիս էլ մեկ ռուբլի են վերցնում»[43]։ Նույն մահալի գյուղացիները բացի բողոքներից, տնքում էին ճնշումների և ապօրինի տուրքերի տակ, թեև դա այնքան էլ վտանգավոր չէր նրանց համար, ինչպես վկայում էր սենատոր Գանի հանձնաժողովի անդամներից մեկը։ Նույն անձնավորությունը հաղորդում էր, որ տեղական պաշտոնյաները համապատասխան «նախազգուշական» միջոցների են դիմում՝ կանխելու ժողովրդական բողոքի ամեն մի փորձ։ Երևանի բնակիչները վախենում էին ավելորդ մի խոսք արտասանել, որովհետև նրանցից շատերը «խնդրագրերով թագավոր կայսրին դիմելու համար տուժել էին»։

Շատ դեպքերում կալվածատիրական բռնությանը ենթարկված գյուղացիները իրենց թիուլդարներից ազատվելու համար, դիմում էին իշխանու-

---

40 Տե՛ս *Ц. П. Агаян,* Крестьянская реформа в Азербайджане в 1870 г., стр. 164.

41 Տե՛ս Ս. Երիցյան, *Ամենայն հայոց կաթողիկոսությունը, մասն Բ, էջ 434։*

42 Տե՛ս *В. Н. Иваненко,* Гражданское управление Закавказьем, стр. 338.

43 «Колониальная политика Российского царизма в Азербайджане», ч. I, стр. 368.

թյուններին և խնդրում թույլատրել բնակություն հաստատել պետական գյուղերում։ Այսպես, Դարալագյազի մահալի Կորադիզ և Ալմալու գյուղերի բնակիչները այդ գյուղերից հեռանալու իրենց ցանկությունը պատճառաբանում էին հետևյալ կերպ. նրանք «Պարսկաստանից գաղթելու օրից աղքատության ու չքավորության մեջ են ընկել միմիայն այն ճնշումների հետևանքով... որ նրանց պատճառում է Մահմեդ Սադըխ բեկը, որը բացի բնատուրքերից, նրանցից գանձում է նաև զանազան դրամական տուրքեր, ինչպես և խնդրում են թույլտվություն, վերաբնակվելու մի այլ տեղ, որպեսզի ազատվեն անհավատի լծից»[44]։

Սակայն 1830-ական թվականների վերջերին ծավալված գյուղացիական ելույթների հիմնական պատճառը պարսկահայ և արևմտահայ գաղթականությանը շնորհված վեցամյա արտոնաժամկետի լրանալուց հետո նրանց հարկադրվելն էր։ Կառավարությունն այդ ժամանակավոր արտոնությունը 1836 թ. համարեց վերջացած և 1837 թվականին նրանց վրա հարկեր դրեց՝ «համապատասխան նրանց կացության և այն դրույքներով, որ նշանակված են բընակիչների համար»։ Նման ելույթներ ծավալվեցին Փամբակում, Շորագյալում, Ախալցխայում, որոնք վարչական առումով մտնում էին Վրաստանի կազմի մեջ, Նոր Բայազետում և այլուր։

Փամբակի և Շորագյալի շրջանը մեծ մասամբ բնակեցված էր էրզրումից և Կարսից գաղթած հայերով։ Նրանք տնտեսական խիստ ծանր կացության մեջ էին գտնվում, թեև Նիկոլայ I-ի կարգադրությամբ հարկերից և տուրքերից ազատ լինելու նրանց արտոնաժամկետը երկարաձգվել էր մինչև 1838 թվականը, այսինքն ևս մեկ տարով։ 1838 թ. նորագաղթները դարձյալ հրաժարվեցին տուրքերը վճարելուց։

Կովկասի կառավարչապետի հրամանով Փամբակ-Շորագյալի ուղեմաս է գալիս պետական խորհրդական իշխան Փալավանդովը՝ գյուղացիներին հանդարտացնելու և կարգն ու կանոնը վերահաստատելու համար։

Նրա 1838 թ. հունվարի 31-ի գրությունից պարզվում է, որ մինչև Գյումրի հասնելը, նա եղել է ուղեմասի մի շարք գյուղերում, և հայ գաղթականները պահանջել են տանուտերերին պաշտոնից հեռացնել։ Գյումրիում նա պարզում է, թե ովքեր են խռովության դրդիչները և կալանավորում նրանց, իսկ դրանց մեջ եղած մի քանի քահանաներին նախազգուշացում անում։ Նա այցելում է խռովության մեջ ամենից շատ աչքի ընկած գյուղերը՝ Փոքր Ղարաքիլիսան, Բայանդուրը, Թավշան-Ղշլաղը և Ղազարապատը[45]։

Նույն Փալավանդովի փետրվարի 2-ի գրությունից երևում է, որ բնակչության դժգոհությունները ճնշելու համար նա պահանջում է խիստ պատիժներ կիրառել գյուղացիների նկատմամբ։ Այնուամենայնիվ, գլխավոր պըրիստավ Շլիպենբախը ազատվում է պաշտոնից։ Այս հանգամանքը ցույց է տալիս, որ ժողովրդական հուզումները պայմանավորված էին նաև պաշտոնյաների չարաշահումներով։

---

44 Նույն տեղում, էջ 348։

45 «Երևանի պետական համալսարանի գիտական աշխատություններ», հատ. 62, Երևան, 1958, էջ 79—82։

Փալավանդովը 1838 թ. փետրվարի 9-ին զեկուցում էր, որ ճիշտ չէր գյուղացիական «անկարգությունները» ամբողջովին վերագրել անբարեհույս մարդկանց «սադրանքներին», որ դրանք պայմանավորված էին հայ գաղթականների տնտեսական դրությամբ և տեղական պաշտոնյաների, այդ թվում նաև գյուղական տանուտերերի կամայականությամբ։

Առավել մեծ ծավալ ընդունեցին և իշխանություններին մտահոգեցին Գյոկչայի կամ Նոր Բայազետի 30 հայ գյուղերում ծավալված գյուղացիական հուզումները, որոնք նույնպես ուղղված էին կառավարության հարկային քաղականության դեմ։ 1837 թ. հիշյալ 30 գյուղերում բնակություն հաստատած արևմտահայ գաղթականությանը նույնպես պարտավորեցվեց հարկեր վճարել։ Նրանց խնդիրը հարկերը կրճատելու մասին մերժվեց։ Հետաձգվեց նաև Նոր Բայազետի բնակիչների դիմումներին բավարարություն տալու հարցը։ Նրանք խնդրում էին իրենց ճանաչել իբրև քաղաքացիներ (պաշտոնապես Նոր Բայազետը քաղաք դարձավ 1850 թվականից), ազատել գյուղական տուրքերից, այնտեղ գավառական դպրոց բաց անել պետության հաշվին։

Տեղական իշխանությունների հետ գյուղացիների բախման առիթը հետևյալն էր. 1837 թ. վերջերին նրանք հավաքեցին բերքը, բայց տուրքերը չըվճարեցին, պատճառաբանելով, որ այդ վեր է իրենց ուժերից և հնարավորություններից ու հարց դրեցին կրճատել հարկերը։ Կառավարչապետը նախ դիմեց «ներշնչման» միջոցին, բայց տեսնելով, որ դա արդյունք չի տալիս, գյուղերը եսաուլներ ուղարկեց, որոնց սակայն գյուղացիները վռնդեցին և հետո էլ «բացահայտ անհնազանդություն ցուցաբերեցին»։ Դրանից հետո նրանք պատգամավորություն ուղարկեցին Թիֆլիս՝ իրենց գանգատը կառավարչապետին հայտնելու։

Գյուղացիների դիմադրությունը հարկերի գանձմանը բացատրվում էր նաև այն բանով, որ նրանցից ընթացիկ տարվա տուրքերից բացի պահանջում էին նաև վերադարձնել գաղթի ժամանակ պետության տված նպաստը։ Անգամ իշխանության ներկայացուցիչներն ընդունում էին, որ նպաստի բավական մեծ գումարի գանձումը, «տուրքերը լրիվ վճարելու գլխավոր արգելքը կհանդիսանա» և ավելի օգտակար էին համարում զիջել նրանց տրված նպաստը, որպեսզի լրիվ կերպով կարողանան գանձել տուրքերը, քանի որ տուրքերի կրճատումը կարող էր առիթ ծառայել այլ վայրերի գյուղացիներին ևս «նման ներողամտության ձգտելու»։ Բայց այդ ուղղությամբ էլ իշխանությունները որևէ կոնկրետ քայլի չդիմեցին։

Կառավարչապետ Ռոզենի հանձնարարությամբ Նոր Բայազետ է ժամանում Հայկական մարզի պետ իշխան Բեհբությովը՝ տեղում հարցը քննելու համար, սակայն ոչ մի արդյունքի չի հասնում։ «Իմ խրատներն ու հորդորները,— գրում էր նա 1838 թվականի փետրվարի 19-ին Ռոզենին հղած զեկուցագրում,— ոչ միայն որևէ ազդեցություն չունեցան նրանց վրա, այլ ընդհակառակը, համարձակ արտահայտությունները ցույց էին տալիս, որ նրանք պատրաստ են հանդգնությունների»[46]։ Գյուղերից հավաքված բնակիչները քաղաքացիների հետ միասին «կազմել էին մի վայրենի ամբոխ և, թը-

[46] «Крестьянское движение в Армении в XIX в.», Ереван, 1948, стр. 25—26.

վում է, առիթ էին որոնում անկարգություններ անելու։ «Կատաղած ամբոխը մելիքներից և տանուտերերից ոմանց չեզոքացրել էր... ժողովուրդը բոլորովին չի հնազանդվում նրանց», «մի քանի ավելի անբարեմիտ տանուտերեր...։ ամենևին չներկայացան ինձ» այն պատրվակով, որ «իբր ժողովուրդը չի թողնում, ծեծում է նրանց»[47]։

Անկարող լինելով դրությունը շտկել, իշխան Բեհբութովը պաշտոնական հայտարարություն է անում տուրքերը վճարելու ժամկետի վերաբերյալ և սպառնում է գյուղացիներին, որ չմուծելու դեպքում «նրանք կհամարվեն կառավարության հակառակորդներ և նրանց հետ կվարվեն իբրև խռովարարների և ընդհանուր անդորրը խանգարողների»։ Տուրքերը մուծելու վերջին ժամկետը նշանակվում է մարտի 16-ը։

Մարզապետին գյուղացիները խիստ թշնամաբար են ճանապարհ գցում։ Նրա շուրջը խռոված ամբոխը «օդը լցնում է սարսափելի աղաղակներով. այդ աղմուկի մեջ ես կարողացա հասկանալ միայն հետևյալ բառերը. «Մենք չենք ուզում մելիքներ, տանուտերեր, օկրուգային պետ, ու թվում է, նույնպես և կառավարություն»։ Իշխան Բեհբութովի եզրակացությունն այն էր, որ «արդարությունը պահանջում է նրանց ամենախիստ պատժի ենթարկել» և այն էլ «զենքի ուժով»[48]։

Անդրկովկասի կառավարչապետ Ռոզենը հավանություն է տալիս իշխան Բեհբութովի առաջարկին և Գյոկչայի գյուղացիների խռովությունը ճնշելու նպատակով Բեհբութովի տրամադրության տակ է դնում եգերների երկու վաշտ, կազակային մեկ հարյուրյակ և երկու լեռնային թնդանոթներ։ Փոխգնդապետ Պրոցիկովի գլխավորությամբ սրանք ժամանում են Նոր Բայազետ և անմիջապես ձեռնարկում բռնությունների։ Մարտի 24-ին ձերբակալվում և Երևան են ուղարկվում «գլխավոր գրգռիչները», իսկ վեց հոգու հրապարակային գանահարության են ենթարկում։ Դրանից հետո հաջողվում է հնազանդեցնել գյուղացիներին և խոստում ստանալ, որ կվճարեն տուրքերը։ Գյոկչայի գաղթականներից տուրքերը գանձելու այս վճռական միջոցները «առիթ ծառայեցին նաև մարզի մյուս բնակիչների լիակատար հնազանդության համար»[49]։

Հետագա քննություններից պարզվեց, որ տեղական իշխանությունները հարկերը սահմանելիս խախտել էին գոյություն ունեցող դրույքները և Նոր Բայազետի գյուղացիության ընդվզումը իսկապես որ արդարացի հիմքեր ուներ։ Այսպես, այդ ժամանակ Անդրկովկասում գտնվող և Նոր Բայազետ այցելած սենատոր Գանը գրում էր զինվորական մինիստր Չերնիշովին, որ իրոք Գյոկչայի հայ գաղթականներին տուրքադրելիս խախտված է եղել Հայկական մարզում ընդունված կարգը, և որ նրանց տուրքերն ավելի ծանր են եղել, քան հարևան ադրբեջանցի գյուղացիներինը։ «Ջանց առնելով գործված անօրինությունը, անդրկովկասյան իշխանությունները պնդում էին, որ իբրև թե հայ գաղթականները վստահացան այդքան համառ անհնազանդություն ցույց տալ՝ ելնելով Փամբակ-Շորագյալի անցքերից, որոնք տեղի ունեցան

47 Նույն տեղում, էջ 26։
48 Նույն տեղում, էջ 27։
49 Նույն տեղում, էջ 33—34։

այնտեղի գաղթականների և բնիկների մեջ՝ անբարեհույս մարդկանց դրդումով...»[50]։

Ցարական պաշտոնյաները նշում էին նաև, որ Նոր Բայազետի գյուղացիության ըմբոստության մեջ մեծ դեր են խաղացել քաղաքացիները, որ վերջիններս «ջանում են նման անհնազանդություն տարածել նաև մյուս բնակիչների մեջ», նույնիսկ համարձակվում են Գյոկչայի մահալում ապրող մուսուլմաններին առաջարկել, որ միանան նրանց և տուրքեր չվճարեն»[51]։

Նոր Բայազետի և շրջակա երեսուն գյուղերի բնակչության այս համառ ըմբոստությունը XIX դարի առաջին կեսի ամենախոշոր գյուղացիական ելույթն էր Արևելյան Հայաստանում՝ ուղղված ցարական կառավարության հարկային քաղաքականության դեմ։

XIX դարի 40-ական թթ. արևելահայ գյուղացիությունը, ֆեոդալական ճնշման ուժեղացման պայմաններում, բավական լայն պայքար ծավալեց կալվածատերերի և նրանց շահերը պաշտպանող իշխանությունների դեմ։

Կալվածապատկան գյուղացիները պայքարում էին կիսաճորտային վիճակի, կալվածատերերի կողմից կատարվող հողային հափշտակումների և անտանելի շահագործումների դեմ։ Այդ տեսակետից ուշադրության արժանի է Երևանի գավառի Գյոկչայի գավառամասի աղալարական հինգ գյուղերի բնակիչների համառ ու տևական պայքարն իրենց աղալարների դեմ։ Այդ պայքարը, սկսվելով անցյալ դարի 40-ական թթ. կեսերից, փոքր ընդմիջումներով շարունակվեց մինչև 70-ական թթ. վերջը և ավարտվեց Ջոդ, Մեծ-Մազրա, Փոքր-Մազրա, Ջախրլու և Ղոշա-Բուլախ գյուղերի բնակիչների ազատագրումով աղալարական կախումից։ Այդ գյուղերի բնակիչները փոխարքային ուղղված դիմումում տեղեկացնում էին, որ իրենց աղալարների իրավունքը հիմնված է կեղծ փաստաթղթերի վրա։ Այսպես, Մազրա գյուղացի Աղաբեկ Բաբիշ Բաղալ Օղլին, օգտվելով այն բանից, որ հայրը պարսկական տիրապետության ժամանակ սուլթան է եղել, այսինքն հեծելազորի տասնապետ, որ քույրերն ամուսնացած են Ջոդի աղաների հետ, իսկ ինքն էլ երեք տարով տանուտեր է ընտրված եղել, առանց գրավոր փաստաթղթեր ունենալու իրեն աղա է հայտարարում և իշխանությունների օժանդակությամբ հարկադրում համագյուղացիներին պարտույթներ կատարել իր համար։ Նույնպիսի ճանապարհով դրոշակակիր Մուստաֆան, օգտվելով այն բանից, որ գյուղացիները իր զինվորական կոչման նկատմամբ տածած հարգանքից ելնելով մի քանի ծառայություններ են մատուցել և տանուտեր են ընտրել, հարկադրում է գյուղացիներին ծառայել իրեն։ Չնայած Գյոկչայի հիշյալ հինգ գյուղերի բնակիչները ապացուցել էին իրենց իրավացի լինելը, փոխարքան կարգադրում է նրանց կատարել պարհակները «մինչև որ կորոշվի Երևանի գավառի կալվածատիրական հողերի վրա բնակվող գյուղացիների և հողատերերի փոխհարաբերությունների» հարցը։

Սակայն դրանից հետո էլ Ջոդ և Մեծ-Մազրա գյուղերի բնակիչները «որոշ մարդկանց սադրանքով ու դրդումով վճռապես խուսափում էին աղա-

---

[50] Նույն տեղում, էջ 30—31։

[51] Նույն տեղում, էջ 26։

լարական պարհակների կատարելուց» և Թիֆլիս պատգամավորներ են ուղարկում փոխարքային դանգատ ներկայացնելու։ Այս անգամ ևս նրանք մերժում են ստանում, բայց չեն հանդարտվում և շարունակում են պայքարել իրենց իրավունքների համար։

1860-ական թթ. սկզբներին Ջախըլու գյուղի բնակիչները նորից հարց են հարուցում Երևանի նահանգապետի առջև, որպեսզի իրենց ազատեն կեղծ աղալարի ճնշումից, մանավանդ, որ իրենք պետական գյուղացիներ են։ Այս անգամ էլ Կովկասի փոխարքայի գլխավոր վարչությունը մերժում է նրանց դիմումը, բայց միաժամանակ հայտնում, որ համապատասխան թույլտվության դեպքում նրանք կարող են տեղափոխվել և բնակություն հաստատել պետական հողերի վրա, «բայց ոչ այլ կերպ, քան պահպանելով այն կանոնները, որոնք հաստատված են կալվածատիրական հողերի վրա ապրող գյուղացիների տեղափոխության համար»[52], ինչ որ փաստորեն քողարկված մերժում էր նշանակում։ Հարկավոր եղավ այդ գյուղացիների համառ պայքարի ևս 20 տարի, որպեսզի նրանք, թեկուզ ծանր գնով, կարողանան ազատագրվել ինքնակոչ աղալարների լծից և իրենց հողերի տերը դառնան։

Զանգեզուրում նույնպես շատ էին նորաթուխ կալվածատերերի կողմից բազմաթիվ գյուղեր ու հողեր սեփականացնելու փաստերը։ Այստեղ պայքարը շատ սուր բնույթ ստացավ Տեղ գյուղում՝ ինքնակոչ կալվածատեր Ասադբեկի դեմ։ Հիշյալ գյուղի բնակիչները վճռականապես հրաժարվեցին իրենց գյուղը բեկական ճանաչել այն կառավարական հանձնաժողովի առաջ, որը զբաղված էր այդ հարցի ստուգումով։ Գյուղացիները պնդում էին, որ իրենց գյուղը պետական է, որ Ասադ-բեկը խարդախությամբ է տեր դարձել նրան։ Սակայն նրանց բողոքը մնում է անհետևանք, իսկ ցարական պաշտոնյաները «հայտնաբերում են» գյուղացիներին «խռովության» մղողին՝ գյուղի քահանա Սահակ Բաբայանին, որին և հայ հոգևոր իշխանությունների միջոցով պատժի են ենթարկում։

Այդ նույն Սահակ Բաբայանի վկայությամբ, տեղական բեկերը, պետական աստիճանավորների օգնությամբ, ահ ու սարսափ էին ստեղծել և դաժանորեն վրեժխնդիր էին լինում ամեն մեկից, ով բողոքելու փորձ էր կատարում։ Սակայն նման պայմաններում էլ դյուրին չեղավ ճնշել Տեղի գյուղացիության բուռն ընդվզումը։ Նրանց պայքարը տևեց մինչև 1852 թ.։ Ինչպես գրում էր այդ ժամանակ Անդրկովկասի քաղաքացիական վարչության պետի պաշտոնը գրավող իշխան Բեհբութովը, պայքարը կալվածատիրոջ և գյուղացիների միջև այնպես էր սրվել, որ «...բնակիչները հասել են մոլեգնության, իսկ... Ասադ բեկը ծայրահեղության»։ Ստեղծված դրության հանցավորը դարձյալ համարվում էր Սահակ Բաբայանը, որն իբր թե գործում էր «չափազանց զգույշ և ծածուկ»[53]։ Սակայն ամբողջ հարցն այն էր, որ գյուղացիները պայքարում էին կառավարության ճորտատիրական նը-

---

52 *Նույն տեղում, էջ 118—121։*

53 Լեո, *Պատմություն Ղարաբաղի հայոց հոգևոր թեմական դպրոցի, 1838—1913 թթ., Թիֆլիս, 1915, էջ 79—84,* Վ. Ռշտունի, *Հայաստանի 19-րդ դարի գյուղացիական շարժումների մասին, ՀՍՍՀ ԳԱ «Տեղեկագիր», 1945, № 6, էջ 47—48։*

պատակների և մտադրությունների դեմ, իսկ դա նրանց պայքարի մղող դըրդիչ ուժն էր։

Պակաս բնորոշ չէ նաև նույն Զանգեզուրի գավառամասի Բանազոր գյուղի երկարատև պայքարը դաժան կալվածատեր Ջաֆար-Ղուլի աղայի շահագործումից և ճնշումներից ազատվելու համար։ Սանձարձակ աղան վիրավորում էր նաև հայ գյուղացիների կրոնական զգացմունքները, ուստի նրանք դիմում էին կաթողիկոսի պաշտպանությանը՝ փրկություն որոնելով երկարամյա շահագործումից, բռնություններից ու կրոնական անարգանքներից։

1849 թ. տրված իրենց ցուցմունքներում մի շարք գյուղացիներ պատմում էին, որ Ջաֆար-Ղուլի աղայի վայրագ շահագործման հետևանքով իրենք դարձել են «կարոտ օրական հացի», որ դեռևս 1843 թ. են բողոքել իշխանություններին, բայց հրաման են ստացել «այնուամենայնիվ ծառայել նրան»։ Աղայի վայրագություններից ազատվելու համար գյուղացիներից շատերը փախչում են, բայց բռնվում են և դաժանորեն գանահարվում, որի հետևանքով մի քանի հոգի մահանում են։ Ջաֆար-Ղուլի աղան առանց քաշվելու դիմում է Ներսես Աշտարակեցի կաթողիկոսին, որպեսզի վերջինս հորդորի Բանազորից փախած 12 ընտանիքներին վերադառնալ «որ մյուսներին էլ օրինակ լինի. հույս ունիմ, որ իմ կյանքի վերջումն ինձ այնպիսի անարգանքի միջի չիք թողիլ և իմ խնդրքս անկատար չիք անիլ»,— գրում էր նա։

Ահա այս և նման «անարգված» կալվածատերերի արթուն պաշտպաններն էին անդրկովկասյան իշխանությունները՝ փոխարքա Վորոնցովի գլխավորությամբ, որոնք «բոլորովին անհիմն» էին համարում գյուղացիների բողոքները և չէին ցանկանում անգամ «ձևական քննություն կատարել Բանազորի բնակիչների գանգատի կապակցությամբ։

1849 թ. նոյեմբերին Ներսես Աշտարակեցուն ուղարկված Վորոնցովի գրությունից պարզվում է Ջաֆար-Ղուլի աղայի դեմ գյուղացիների մղած պայքարի մի քանի մանրամասնություններ։ Նրանք դեռևս 1840 թ. հրաժարվել են այդ աղային տուրքեր վճարելուց, իսկ 1842 թ. նրան մեղադրել են ծանր տուրքեր նշանակելու և դաժան բռնությունների մեջ։ 1843 թ. կառավարության որոշմամբ «Բանազոր գյուղում նշանակվել է էկզեկուցիա... բանազորցիներին իրենց կալվածատիրոջը հնազանդեցնելու համար»։ Նույն թվականին իշխանությունները երեք գյուղացու հանձնել են զինվորական դատարան՝ իբրև համագյուղացիներին կալվածատիրոջ դեմ գրգռողների, իսկ 1845 թ. դատական որոշում է եղել, որ իբր թե բանազորցիների գանգատները Ջաֆար-Ղուլի աղայի վրա անհիմն են[54]։

Ահա բռնության և ապօրինության այսպիսի մթնոլորտ էր ստեղծվել Զանգեզուրի մի շարք գյուղերի հայ գյուղացիության համար։ Հասկանալի պատճառներով կալվածատերերի ճանկերից փրկվելու գյուղացիների բոլոր ջանքերը ի դերև էին ելնում՝ բախվելով ճորտատիրություն սերմանողների համերաշխ դիմադրությանը։

Կալվածատիրական գյուղացիների երկարատև, համառ ու հետևողական

---

[54] «Крестьянское движение в Армении в XIX в.», стр. 48—49.

պայքարի մի բնորոշ նմուշ է Նոր Բայազետի գավառամասի Բջնի թիուլային գյուղի հայ և ադրբեջանցի գյուղացիների ընդհարումն իրենց կալվածատեր Արսեն սուլթան Գեղամյանի հետ։ Հիշյալ գյուղացիների պայքարը բռնկվեց 1850 թ. մարտին և ճնշվեց նույն տարվա վերջերին, բայց 1860-ական թթ. կրկին վերսկսվեց և, որոշ ընդհատումներով, շարունակվեց մինչև 1864 թ.։

1840 թ. Բարսեղ Գեղամյանցի մահից հետո Երևանի դատարանը որոշեց չեղյալ հայտարարել նրա որդի Արսեն սուլթանի թիուլային իրավունքները։ Դա մի ժամանակաշրջան էր, երբ Անդրկովկասում գործող սենատոր Գանի հանձնաժողովը բացասաբար էր տրամադրված դեպի տեղական կալվածատերերի հավակնությունները։ Սակայն շուտով փոխարքա Վորոնցովի հավանությամբ որոշում է հանվում, որ մինչև Հայաստանի և Ադրբեջանի «բարձր դասի» իրավունքների վերջնական սահմանումը, Բջնի, Գյոյ-քիլիսա և Ելղովան թիուլային գյուղերի եկամուտները պետք է մնան Գեղամյանների ազատ տնօրինության ներքո։

1850 թ. գարնանը Երևանի նահանգապետին հղված դիմումներում Բջնիի բնակիչները հայտնում էին, որ թիուլդար Արսեն Գեղամյանցը վերջին տասը տարում կրկնապատկել է պարհակները, ուստի և խնդրում էին ստուգել փաստերը և իրենց «փրկել Արսեն սուլթանի ստրկությունից ու դաժանություններից», ինչպես նաև թույլ տալ տեղափոխվելու նույն գավառամասի Ղուռի-Կալավեր ամայի ու ավեր գյուղը։ Գյուղացիները միաժամանակ խնդրում էին հոգ տանել այն մասին, որպեսզի «Արսեն սուլթանը արգելքներ չհարուցի մեր դեմ և չխլի մեր սեփականությունը, ինչպես այդ անում էր մինչև այժմ, այլ բավականանա նրանով, որ մեր տները մնալու են իրեն»։ Գյուղացիները վճռականապես հայտարարում էին. «Մենք այլևս ոչ մի պայմանով չենք կարող մնալ աստիճանավոր Արսեն սուլթանի գյուղում, այսքան տարի ճանաչելով նրա բնավորությունը և իմանալով, թե ինչ է բերել նա մեր գլխին»։

Նահանգապետի նշանակած քննությունից և թիուլդարի բացատրություններից պարզ է դառնում, թե ինչպիսի պարհակներ էին կատարում գյուղացիները։ Նրանցից պահանջվում էր թիուլդարի Երևանի տան համար մեկ պահապան, ձիեր, աշխատող ձեռքեր՝ նրա զանազան կարիքները հոգալու։ Բացի այդ, նրանք մի ամբողջ շարք այլ պարհակներ ևս պետք է կատարեին։ Իր այդ իրավունքները հաստատելու համար Արսեն սուլթանը վկայակոչում էր այն թալղան, որ Երևանի սարդար Հյուսեին-Ղուլի խանը 1825 թ. շնորհել էր նրա հորը՝ Բարսեղ Յուզբաշուն։ Նրանում ասված էր, որ Բջնի և Գյոյ-քիլիսա գյուղերը ավելի քան հարյուր տարի դրանից առաջ տրվել են Գեղամյաններին և նրանց սերունդներին իբրև թիուլ «ազնիվ ծագման և վաստակների համար»։ Այնուհետև նշվում էր, որ հիշյալ գյուղերի բնակիչները պարտավոր են կատարել Գեղամյանների կամքը։

Գավառապետը հրամայում է ձերբակալել գյուղացիների երեք առաջնորդներին և նրանց համերաշխ դիմադրությունը կոտրելու համար անհրաժեշտ է գտնում այդ երեքին մի քանի տարով աքսորել Ռուսաստանի ներքին նահանգները։ Գավառապետը կարծում էր, որ հիշյալ միջոցառման շնորհիվ «կդադարեն այդ գյուղում տեղի ունեցող բոլոր անկարգությունները»։

Բայց շուտով բջնեցիները նոր անակնկալի առջև կանգնեցին Երևանի

նահանգական իշխանություններին։ Մեծ բազմությամբ, իրենց հետ վերցրած կանանց ու երեխաներին, նրանք եկան Երևան՝ նահանգապետի մոտ բողոքի։ Վերջինս դիմեց բռնի ուժի՝ առավել ըմբոստներին ենթարկելով մարմնական պատիժների, անհնազանդներին գյուղից արտաքսելու հրաման արձակելով։

Կալվածատիրական լծից ազատվելու և պետական հողի վրա վերաբնակվելու նպատակով Բջնի գյուղի բնակիչների երկարատև ու համառ պայքարը շատ չնչին հաջողություն բերեց նրանց։ Ճիշտ է, տուրքերի գանձման հարցում Թիուլդարը ստիպված եղավ աննշան զիջումների գնալ, բայց պետական հողի վրա վերաբնակվելու նրանց պահանջը հանդիպեց ոչ միայն Թիուլդարի, այլև նահանգական իշխանությունների դիմադրությանը։ Երևանի նահանգապետը վճռականորեն առարկեց բջնեցիների այդ ցանկությանն ընդառաջելուն և իր պաշտպանության տակ առավ տեղական կալվածատերերի շահերը՝ գյուղացիական ամեն կարգի «ոտնձգությունների» դեմ։

Այդ նույն ոգով Կովկասի փոխարքայի գլխավոր վարչության պետը 1860 թ. օգոստոսին գրում էր Երևանի նահանգապետին, որ Թիուլդար Գեղամյանցից նրա գյուղացիների գանգատները անարդարացի են և թելադրված են սոսկ «պետական հողի վրա բնակվելու միտումներով»։ Ուստի նա նահանգապետին առաջարկում էր գյուղացիներին համապատասխան ձևով «ներշնչել», որպեսզի այլևս նման գանգատներով չդիմեն «գլխավոր իշխանությանը», այլապես «հանցավորները խիստ պատիժների կենթարկվեն»[55]։

Սակայն այդ սպառնալիքն էլ չօգնեց։ Բջնիի գյուղացիների ելույթները շարունակվեցին մինչև 1864 թ.։ Նահանգական և անդրկովկասյան իշխանությունները այն կապում էին Ռուսաստանում գյուղացիական ռեֆորմի ազդեցության հետ։ Այդ բանը մատնանշում էր նաև Արսեն Գեղամյանցը, միաժամանակ բացատրելով, որ ռուսական օրինակով թևավորված իր գյուղացիները չեն հասկանում, որ այն, ինչ տեղի է ունենում Ռուսաստանում, չի վերաբերում և չի էլ կարող վերաբերել Անդրկովկասի, այդ թվում նաև Երևանի նահանգի գյուղացիներին, քանի որ այնտեղ խոսքը գնում է ճորտատիրության վերացման մասին, իսկ այստեղ ճորտատիրություն չկա[56]։

Բջնիի գյուղացիության ըմբոստությունը երկրորդ անգամ ճնշվեց հենց այն պահին, երբ գյուղացիական ռեֆորմը արդեն կենսագործվում էր Վրաստանում և նախապատրաստվում նրա անցկացումը Հայաստանում և Ադրբեջանում։

Ռեֆորմի անցկացումը նախապատրաստելու կապակցությամբ ստեղծվեց Երևանի նահանգի բեկական հանձնաժողով՝ նահանգապետի նախագահությամբ։ Հանձնաժողովի կազմում էին բարձրաստիճան պաշտոնյաներ, ինչպես նաև կալվածատիրական դասի ներկայացուցիչներ։ Այն պետք է ստուգեր, ճշտեր և հաստատեր նահանգի «բարձր դասի» ցուցակը, որը յուրատեսակ մի նախապատրաստություն էր նահանգում գյուղացիական ռեֆորմի անցկացման համար։ Սա որոշ մարդկանց համար առիթ էր զանազան մեքե-

---

55 Նույն տեղում, էջ 105—107։
56 Նույն տեղում, էջ 99—100։

*նայությունների դիմելու, որպեսզի խաբեության միջոցով սողոսկեն «բարձր դասի» շարքերը և օգտվեն ռեֆորմի արդյունքներից։ Կալվածատերերի այդօրինակ ոտնձգությունների դեմ պայքարի ելան գյուղացիները։*

*Այդ տեսակետից ուշադրության արժանի է հատկապես այն պայքարը, որ Մեղրու Արչաձոր գյուղի բնակիչները, հարևան մի քանի գյուղերի օժանդակությամբ, 1866—1867 թթ. ծավալեցին Օրդուբադում պաշտոնավարող. աստիճանավոր Անդրեաս Ստեփանյանի և նրա գործակիցների չարաշահումների դեմ։ Գյուղացիները փոխարքային տված խնդրագրում պնդում էին, որ այդ անձնավորությունը, խցկվելով հանձնաժողովի մեջ, կարողացել է Նախիջևանի և Օրդուբադի հանձնաժողովի անդամների օժանդակությամբ կաշառքներ ստանալով հարուստ, բայց հարկատու դասին պատկանող մարդկանցից, նրանց դասել ժառանգական բեկերի շարքը։ Նա ինքն էլ հաջողացրել է «կեղծիքով ապացուցել իր բեկական ծագումը» և ոմն Մելիք Բուդաղի հետ ցանկանում է տիրել հիշյալ գյուղին. բայց գյուղացիների բոլոր դիմումներն ու բողոքները մնացին անհետևանք և անօգուտ*[57]*։*

*Արևելյան Հայաստանի կալվածատիրական գյուղացիության մինչռեֆորմյան շրջանի պայքարի մի քանի բնորոշ էջերի, այդ պայքարի բնույթի ու արդյունքների շարադրանքը կարելի է ամփոփել այն բնութագրումով, որ տալիս է Վ. Ի. Լենինը Ռուսաստանի ճորտատիրական էպոխայի գյուղացիական պայքարին. «Երբ գոյություն ուներ ճորտատիրական իրավունքը, այն ժամանակ գյուղացիների ամբողջ մասսան պայքարում էր իր ճնշողների, կալվածատերերի դասակարգի դեմ, որոնց պահպանում, պաշտպանում ու օժանդակում էր ցարական կառավարությունը։ Գյուղացիները չէին կարողանում միանալ, գյուղացիները այն ժամանակ բոլորովին ճնշված էին խավարից, գյուղացիներն օգնականներ ու եղբայրներ չունեին քաղաքի բանվորների մեջ, բայց գյուղացիներն, այնուամենայնիվ, պայքարում էին ինչպես գիտեին և ինչպես կարողանում էին»*[58]*։*

## 6. ՂՐԻՄԻ ՊԱՏԵՐԱԶՄԻ ԿՈՎԿԱՍՅԱՆ ՌԱԶՄԱՃԱԿԱՏԸ ԵՎ ՀԱՅԵՐԸ

*1853 թ. Ֆրանսիայի կայսր Նապոլեոն III-ը դաշնագրային համաձայնության գալով Անգլիայի հետ և զգալի հաջողությունների հասնելով ռուսավստրո-հունգարական հարաբերությունների լարման ուղղությամբ, միջազգային դիվանագիտության քննարկման հարց դարձրեց Երուսաղեմի քրիստոնեական սրբավայրերի նկատմամբ հսկողություն սահմանելու վերաբերյալ տարբեր եկեղեցիների միջև ծագած վեճը։ Պարզ է, որ թե՛ Ֆրանսիան և թե՛ Ռուսաստանը «սրբազան վայրերի» տիրապետումը դիտում էին որպես Մերձավոր Արևելքում իրենց քաղաքական ազդեցության հաստատման միջոց։ Սրվում էր պայքարը «Արևելյան հարցի» շուրջը։*

*Միջազգային այս լարված իրադրության պայմաններում Նիկոլայ I-ը 1853 թ. փետրվարին Թուրքիա ուղարկեց իշխան Ա. Մենշիկովի դեսպանու-*

57 *Նույն տեղում, էջ 130—139, 156—158։*

58 Վ. Ի. ԼԵՆԻՆ, *Երկեր, 4-րդ հրատ., հատ. 6, էջ 538։*

թյունը, սուլթանին ահաբեկելու և իր կամքը թելադրելու նպատակով։ Նիկոլայը մի հանձնարարական նամակով սուլթանից պահանջեց, որ նա պաշտպանի ուղղափառ եկեղեցու իրավունքները և չեղյալ համարի իր նախկին հրամանը կաթոլիկական եկեղեցուն արտոնություն շնորհելու վերաբերյալ։ Իշխան Ա. Մենշիկովը միաժամանակ սուլթանից պահանջեց պաշտոնազուրկ անել ֆրանսիական կողմնորոշում ունեցող արտաքին գործերի մինիստր Ֆուադ փաշային և Ռուսաստանին հանձնել Թուրքիայում ապաստանած ավստրո-հունգարական և լեհական հեղափոխականներին։

Անգլիայի և Ֆրանսիայի թելադրանքով Թուրքիան մերժեց Ռուսաստանի պահանջները։ Ի պատասխան դրան Մենշիկովը խզեց բանակցությունները և հեռանալով Կոստանդնուպոլսից, հայտարարեց՝ «Ուղղափառ կրոնին երաշխիք տալու մերժումը Թուրքիայի կողմից՝ կայսերական կառավարության համար անհրաժեշտություն ստեղծեց այդ երաշխիքը փնտրել իր սեփական ուժի մեջ»[59]։ Թուրքիային ահաբեկելու նպատակով արված այդ հայտարարությանը հետևեց 1853 թ. հունիսի 2 (14)-ին Մոլդավիայի և Վալախիայի օկուպացումը։

Սուլթանը Ռուսաստանից պահանջեց ետ քաշել զորքերը Դանուբյան իշխանություններից, սակայն, մերժում ստանալով, հոկտեմբերի 4-ին պատերազմ հայտարարեց Ռուսաստանին։ Աբդուլ Մեջիդը ոչ միայն կատարում էր իր «հովանավորներ» Անգլիայի և Ֆրանսիայի կամքը, այլև հույս ուներ նրանց օգնությամբ զավթել Ղրիմը և Կովկասը։

Այսպես սկսվեց Ղրիմի կամ «Արևելյան» պատերազմը (1853—1856)։

Պատերազմական գործողություններն սկսվեցին Դանուբի, Ղրիմի և Կովկասյան ռազմաճակատներում։

Գրավելով սբ. Նիկոլայի ամրոցը, թուրքական հրամանատարությունը ծրագրում էր դեսանտ իջեցնել Սուխումիի շրջանում և ներխուժել Արևմտյան Վրաստան։

Տեղեկանալով, որ թուրքական նավատորմի հիմնական ուժերը կուտակվում են Սինոպի ծովախորշում, այնտեղից կովկասյան ափերին մոտենալու և թուրքական դեսանտային ուժերին օգնելու համար, փոխծովակալ Պ. Նախիմովը (նրա հետ էր նաև հայազգի փոխծովակալ Լ. Սերեբրյակովը, որին հանձնարարված էր կովկասյան առափնյա գծի պաշտպանությունը), 1853 թ. նոյեմբերի 18 (30)-ին գրոհեց նրանց վրա։ Ճակատամարտը տևեց 5 ժամ և ավարտվեց ռուսական նավախմբի փայլուն հաղթանակով։

Ռազմական գործողությունները ռուսների համար աննպաստ էին զարգանում Դանուբի ռազմաճակատում։ Միայն 1854 թ. մարտին ռուսական հյուսում հազարանոց բանակին հաջողվեց անցնել Դանուբը և պաշարել Սիլիստրիա ամրոցը։

Ռազմական գործողությունները հաջող սկսվեցին Կովկասյան ռազմաճակատում, որը չնայած համարվում էր երկրորդական, բայց պատերազմի ելքի համար ունեցավ վճռական նշանակություն։ Կովկասյան կորպուսը գեներալ-լեյտենանտ Վ. Բեհբութովի հրամանատարությամբ խնդիր ուներ Ան-

---

[59] *С. Бушуев,* Крымская война 1853—1856 гг., М., 1940, стр. 51.

Անդրկովկասի սահմանները պաշտպանել թշնամու ներխուժումից և հարկադրել հակառակորդին իր ուժերի մի մասը Դանուբի և Ղրիմի ռազմաճակատներից փոխադրել Կովկասյան ճակատ։

Գեներալ Բեհբութովը Կովկասյան կորպուսի մի մասը տեղավորեց Ախալքալաքից Երևան ձգվող գծում, իսկ մասը գումարտակ հետևակ և ոչ մեծ թըվով հեծելազոր կենտրոնացրեց Ալեքսանդրապոլում[60]։

Թուրքական շուրջ 100 հազարանոց բանակը, Աբդի փաշայի ընդհանուր հրամանատարությամբ, ծրագրում էր Ախալցխայի, Ալեքսանդրապոլի և Երևանի ուղղություններով ներխուժել Անդրկովկաս, գրավել Թիֆլիսը[61] և իրագործել Կովկասի զավթման պլանը։

Ռուսական հրամանատարությունը, տեղեկանալով թուրքերի դեպի Ալեքսանդրապոլ շարժվելու մասին, իր հիմնական ուժերը կենտրոնացրեց այդ շրջանում՝ հակառակորդի առաջխաղացումը կասեցնելու համար։

Թուրքական բանակի ռազմական պլանները և առաջիկա մտադրությունները պարզելու նպատակով հոկտեմբերի 31-ին գեներալ Օրբելիանիի գլխավորությամբ 7000 հոգուց բաղկացած մի զորամաս ուղարկվեց հետախուզության։ Ալեքսանդրապոլից 4—5 կմ վրա, Բայանդուր գյուղի մոտ, նոյեմբերի 2-ին Օրբելիանիի զորախմբի վրա անակնկալ հարձակում գործեց թուրքական մոտ 40 հազարանոց բանակը։

Ալեքսանդրապոլից Օրբելիանիի զորագնդին օգնական ուժեր ուղարկվեցին։ Խուսափելով վճռական մարտից, թուրքերը նահանջեցին դեպի Կարս։

Բեհբութովի հրամանատարության տակ գտնվող Կովկասյան կորպուսի հիմնական ուժերը կանգնած էին Բաշ-Շորագյալում և նախապատրաստվում էին արշավել Կարսի վրա։ Թուրքական 15 հազարանոց մի զորաբանակ, Ալի փաշայի հրամանատարությամբ, նոյեմբերի 13-ին հարձակվեց Ախալցխայի վրա, որտեղ ռուսներն ունեին 7 հազար հոգուց բաղկացած բերդապահ կայազոր։ Նոյեմբերի 14(26)-ին Ախալցխայի զորաջոկատը գեներալ Անդրոնիկովի հրամանատարությամբ անցնելով հակահարձակման, կարողացավ ոչ մեծ դժվարությամբ ետ շպրտել Ալի փաշայի զորաբանակը։

Նոյեմբերի 18-ին գեներալ Բեհբութովը, տեղեկանալով, որ Բայանդուրից նահանջած թուրքական զորքերը ճամբար են դրել Միջին և Վերին Բաշ-Շորագյալ գյուղերի միջակայքում, 10 հազար մարդուց բաղկացած առաջապահ զորամասերով Պիրվալի գյուղի մոտ անցնելով Կարս գետը, գրավում է շըրջակա բարձունքները և սկսում նախապատրաստվել վճռական գործողությունների։

Թուրքական բանակի հրամանատար Ահմեդ փաշան այնքան վստահ էր իր զորաբանակի վրա, որ հանդես գալով զորքի առաջ, սնապարծորեն հայտարարեց. «Ահա անհավատների ուժերը, որոնցով ուզում են մեզ սարսափեցնել. ինչի համար մենք մարտ տանք, քանի որ նրանցից յուրաքանչյուրի դիմաց մենք ունենք 4 մարդ։ Կշրջապատենք նրանց, կկապոտենք բոլորին և կտանենք Կարս»[62]։

---

60 ՏԵ՛ս ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. 69, ց. 1, գ. 37, թ. 445—459։

61 Նույն տեղում։

62 Նույն տեղում։

Նախաձեռնությունն իրենց ձեռքը վերցնելու համար ռուսական զորամասերը նոյեմբերի 19-ին Բաշ-Քադըկլարի տակ անցան հարձակման, գըլխավոր հարվածը հակառակորդին հասցնելով կենտրոնից և ձախ թևից։ Առաջին իսկ հրետանային համազարկերից ու հետևակի գրոհից հետո թուրքական բանակը Մավրյակ գետի ափին բաժանվեց երեք առանձին խմբերի։ Ռուսական զորամասերն ուժեղացրին գրոհը՝ նրանց առանձին-առանձին շրջապատելու և ջախջախելու համար։ Օգտվելով հակառակորդի բանակում առաջացած խուճապից, ռուսական զորամասերը երկու կողմից թևանցեցին Բաշ-Քադըկլար գյուղը, իսկ հակառակորդը, խուսափելով աքցանի մեջ ընկնելուց, խուճապահար նահանջեց։

Այսպիսով, Բաշ-Քադըկլարի ճակատամարտն ավարտվեց ռուսական կորպուսի փայլուն հաղթանակով։ Ռուսները որպես ռազմավար վերցրին 25 հրանոթ, 60 զույգ ձի, 13 արկղ վառոդ և մեծ քանակությամբ հանդերձանք։ Հակառակորդի ընդհանուր կորուստն անցավ 6000 մարդուց[63], այդ թվում 1500-ից ավելի սպանված։ Ռուսական կողմից սպանվեց 317 և վիրավորվեց 926 մարդ[64]։ Բաշ-Քադըկլարի ճակատամարտը այդ պատերազմում Կովկասյան կորպուսի ամենանշանավոր գործողություններից մեկն էր։

Պատերազմի առաջին էտապն ավարտվեց Սև ծովում թուրքական նավատորմի ջախջախմամբ և ռուսական նավատորմի գերիշխանության հաստատմամբ։ Դրանից հետո ձախողվեց Ալեքսանդրապոլի վրայով Անդրկովկաս ներխուժելու թշնամու պլանը։

Ախալցխայի, Սինոպի և Բաշ-Քադըկլարի հաղթական մարտերից հետո Անգլիայի և Ֆրանսիայի կառավարող շրջաններն ավելի բացահայտորեն դրսևորեցին իրենց թշնամանքը Ռուսաստանի նկատմամբ։ 1854 թ. փետըրվարի 28 (մարտի 12)-ին Թուրքիայի, Անգլիայի և Ֆրանսիայի միջև կնքվեց «պաշտպանական ու հարձակողական» դաշնագիր և նրանք պաշտոնապես մտան պատերազմի մեջ։

Այսպիսով, սկսած 1854 թ. մարտից Ռուսաստանը ստիպված էր պատերազմել Թուրքիայի և նրա դաշնակիցների միացյալ ուժերի դեմ։

Չնայած դաշնակիցների ուժերի գերակշռությանն, այնուամենայնիվ, պատերազմի երկրորդ էտապում ևս (1854 թ. մարտ-օգոստոս) թշնամուն չըհաջողվեց լուրջ հաջողությունների հասնել։

1854 թ. ռազմական գործողություններին կովկասյան ռազմաճակատում կողմերը նախապատրաստվել էին ձմռան ամիսներին։ Թուրքական սահմանագլխին կանգնած ռուսական բանակի կազմի մեջ էին մտնում Ալեքսանդրապոլյան զորաջոկատը (7500 սվին և սուր, 74 հրանոթ), Գուրիականը (10 գումարտակ, 200 կազակ, 31,5 հարյուրյակ միլիցիա, 18 հրանոթ) և Երևանյանը (4,5 գումարտակ, 2 կազակական գնդեր, 4 հարյուրյակ միլիցիա, 12 հրանոթ)[65]։ Իսկ թուրքական հրամանատարությունը Կարսի շրջակայքում կենտրոնացրել էր 60 հազար զորք։ Նա խոշոր զորաջոկատներ ուներ նաև Բաթումում,

---

63 Տե՛ս *Е. Тарле*, Крымская война, т. I, М., 1942, стр. 246.

64 Տե՛ս ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. 69, ց. 1, գ. 37, թ. 445—459։

65 Նույն տեղում, գ. 57, թ. 109—112։

Օզուրգեթում և Բայազետում։ Թուրքերն, օգտվելով իրենց քանակական գերակշռությունից, 1854 թ. գարնանը դեսանտային ուժերով Գուրիայում և Մենգրելիայում սկսեցին հարձակողական գործողություններ։ Սակայն Կովկասյան կորպուսի զորամասերին հաջողվեց մայիսի 27-ին Նիգոտյան բարձունքներում, հուլիսի 4-ին՝ Օզուրգեթի մոտ, իսկ հուլիսի 17-ին՝ Չընգլի կիրճում ջախջախել թուրքական մեծաքանակ բանակներին։ Այդ հաղթական մարտերից հետո Կովկասյան կորպուսն իր գլխավոր հարվածն ուղղում է Կարսի վրա։



Ալեքսանդրապոլը XIX դ. 50-ական թթ.

Հաշվի առնելով Կարսի բերդի անմատչելիությունը, Կովկասյան կորպուսի հրամանատարությունը խուսափեց անմիջապես նրա վրա գրոհելուց և որոշեց թշնամուն ջախջախել բաց դաշտում։ Այդ տեղի ունեցավ հուլիսի 24-ին վաղ առավոտյան՝ Կարսից 18 կմ հեռավորության վրա գտնվող Քյուրուկդարայում տրված արյունալի ճակատամարտում։

Նույն ժամանակամիջոցին ռազմական գործողություններ է սկսում նաև Երևանյան զորաջոկատը։ Նա, հուլիսի 17-ին դուրս գալով Իգդիրից, Չընգլի կիրճում հանդիպեց թուրքական մոտ 20 հազարանոց բանակին։ Թշնամին տեսնելով Երևանյան զորաջոկատի փոքրաթվությունը, գրոհեց նրա վրա, սակայն հանդիպելով համառ դիմադրության, ստիպված եղավ դադարեցնել գրոհը։ Առիթից օգտվելով, Երևանյան զորաջոկատն անցավ հակահարձակման և ստիպեց թուրքերին նահանջել դեպի Բայազետ։ Պարտված թշնամին այնպիսի խուճապի էր մատնվել, որ վախեցավ նույնիսկ Բայազետում կանգ առ-

նել։ Օգտագործելով այդ, ռուսներն, առանց դիմադրության հանդիպելու, գրավեցին Բայազետը։

1854 թ. Կովկասում ռուսական զորաբանակների տարած հաղթանակները Թուրքիային և նրա դաշնակիցներին դրեցին ծանր կացության մեջ։ Ձախողվեցին անգլո-ֆրանսիական ստրատեգների և նրանց թուրք դաշնակիցների Անդրկովկաս ներխուժելու բոլոր փորձերը։ 1854 թ. ամռանը անհաջողությամբ ավարտվեց նաև Շամիլի փորձը՝ գրավելու Կախեթիան և ռուսական բանակը կտրելու թիկունքից։

Դաշնակիցները 1854 թ. սեպտեմբերից սկսում են ծովային ու ցամաքային խոշոր ուժեր կենտրոնացնել Ղրիմում՝ ռազմական կարևոր բազա Սևաստոպոլը գրավելու համար։ Ռազմական այդ գործողություններով պատերազմը թևակոխեց իր երրորդ էտապը (1854 թ. սեպտեմբեր —1855 թ. օգոստոս)։ Իշխան Մենշիկովի ապաշնորհության հետևանքով նրա հրամանատարությամբ գործող 33-հազարանոց բանակը մի քանի անհաջող մարտերից հետո նահանջեց Բախչիսարայ, Սևաստոպոլը թողնելով բախտի քմահաճույքին։ 1854 թ. հոկտեմբերի 4-ին դաշնակիցների բանակները պաշարեցին Սևաստոպոլը։ Պաշարված Սևաստոպոլի պաշտպանությունն իրենց ձեռքը վերցրին փոխ-ծովակալ Վ. Կոռնիլովը, ծովակալ Պ. Նախիմովը և կոնտր-ծովակալ Վ. Իստոմինը։

Սևաստոպոլի հերոսական պաշտպանությունը տևեց 349 օր և միայն 1855 թ. օգոստոսի 28 (ն. տ. սեպտեմբերի 8)-ին 73 հազար զինվորների կորուստի գնով դաշնակիցներին հաջողվեց գրավել այն։

Հակառակ դրան, պատերազմական գործողությունները ռուսների համար շատ նպաստավոր ընթացք ունեցան Կովկասյան ռազմաճակատում։

1855 թվականի մայիսին Կովկասյան գործող կորպուսի հրամանատարությունն իր վրա վերցրեց նոր փոխարքա գեներալ Ն. Մուրավյովը, իսկ Վ. Բեհբութովը նշանակվեց Կովկասի քաղաքացիական մասի կառավարիչ։ Նախատեսվում էր հարձակողական գործողություններ սկսել երեք ուղղություններով՝ Ալեքսանդրապոլ-Կարս՝ գեներալ Ն. Մուրավյովի հրամանատարությամբ, Ախալցխա-Ախալքալաք՝ գեներալ Կովալևսկու և Երևան-Բայազետ՝ գեներալ Սուսլովի հրամանատարությամբ։ Ալեքսանդրապոլ-Կարս ուղղությունը գլխավորն էր, ուր ռուսները կենտրոնացրին 21200 հետևակ, 6 հազար կազակ, 88 հրանոթ և 4 հարյուրյակ միլիցիա[66]։

Թուրքական հրամանատարությունը նույնպես նախապատրաստվում էր վճռական գործողությունների։ Այն դրվել էր անգլիական սպա Ուիլյամսի վրա, որին թուրքական կառավարությունը շնորհել էր փաշայի կոչում։ Թուրքերը հարձակողական ակտիվ գործողություններ վարելու համար Կարսի շրջակայքում կենտրոնացրել էին 38 հազար զորք։ Նրանք մեծաքանակ ուժեր ունեին նաև Էրզրումի շրջակայքում։

Մեծ էր Կարսի ռազմա-ստրատեգիական նշանակությունը։ Այն Փոքր Ասիա տանող ճանապարհին մի ամուր դարպաս էր, Ֆ. Էնգելսի արտահայտությամբ՝ «Հայաստանի պատվարը»։ Թուրքերն ամուր կառչել էին Կարսից,

---

[66] *Տե՛ս Е. Тарле,* Крымская война, т. II, М., 1942, стр. 389.

քանի որ նրա գրավումը ռուսական բանակի համար ճանապարհ կբացեր դեպի Էրզրում։ Կովկասյան կորպուսի հրամանատարությունը, նկատի ունենալով իր ուժերի սակավությունը, որոշեց Կարսը գրավել երկարատև պաշարման միջոցով։ 1855 թ. օգոստոսի կեսերին ռուսներին հաջողվեց օղակել Կարսը և լիովին կտրել արտաքին աշխարհից։

Կարսի բերդապահ կայազորի համար ստեղծվեց ծանր դրություն։ Նրանից ռուսական բանակի ուշադրությունը շեղելու նպատակով, Թուրքական հրամանատարությունը 1855 թ. սեպտեմբերին Օմար փաշայի քառասուն հազարանոց դեսանտը ափ իջեցրեց Սուխումիում։

Որպես պատասխան Սևաստոպոլի անկման և Օմար փաշայի Սուխումիում հայտնվելուն, Կովկասյան կորպուսի հրամանատարությունը որոշեց արագացնել Կարսի գրավումը։

Սեպտեմբերի 17-ի վաղ առավոտյան ռուսական զորամասերն սկսեցին Կարսի գրոհը։ Չնայած թշնամին կատաղի դիմադրություն ցույց տվեց, բայց ռուսական զորամասերն առաջ շարժվեցին և գրավեցին Չախմախյան ամրությունները։ Սակայն անհրաժեշտ քանակությամբ ուժեր չունենալով, ժամանակավորապես դադարեցրին հետագա առաջխաղացումը։ Ստանալով լրացուցիչ օգնական ուժեր, ռուսական բանակը նոյեմբերի սկզբներին վերսկսեց Կարսի գրոհը։ Կարսի բերդապահ կայազորի վիճակն այնքան անելանելի դարձավ, որ նոյեմբերի 12-ին Թուրքական հրամանատարությունը որոշեց բանակցություններ սկսել գեներալ Ն. Մուրավյովի հետ, անձնատուր լինելու համար։

Նոյեմբերի 13-ին գեներալ Մուրավյովը Ուիլյամսին հանձնեց կապիտուլյացիայի պայմանները, որոնք անվերապահորեն ընդունվեցին։ Նոյեմբերի 16 (28)-ին Կարսի բերդապահ կայազորը անձնատուր եղավ։

Այսպիսով, պատերազմի եզրափակիչ շրջափուլի ամենանշանավոր իրադարձությունը եղավ ռուսական զորքերի կողմից Կարսի գրավումը։ Դա արագացրեց պատերազմի ավարտը և մեծ ազդեցություն ունեցավ փարիզյան հաշտության բանակցությունների վրա։ «Կարսի անկումը,— գրել է Կ. Մարքսը,— շրջադարձային կետ հանդիսացավ Ռուսաստանի դեմ մղվող կարճեցյալ պատերազմի պատմության մեջ»[67]։

Ղրիմի պատերազմն ավարտվեց 1856 թ. մարտի 30-ին Փարիզում կնքված հաշտության պայմանագրով, որի համաձայն Կարսը և Արևմտյան Հայաստանում գրավված մյուս հողերը ետ վերադարձվեցին Թուրքիային, Սևաստոպոլը և «դաշնակիցների» կողմից օկուպացված մյուս քաղաքները՝ Ռուսաստանին։ Ռուսաստանը զրկվեց Դանուբի գետաբերանից և Բեսարաբիայի հարավարևմտյան մասից, ինչպես նաև Սև ծովում ռազմական նավատորմիղ պահելու, նրա ափերին ռազմական ամրություններ ունենալու իրավունքից։ Նա միաժամանակ ճանաչեց մեծ պետությունների կոլեկտիվ հովանավորությունը Թուրքիայի գերիշխանության տակ գտնվող քրիստոնյաների վրա։

Թեև Ղրիմի պատերազմը չլուծեց Թուրքական տիրապետությունից Արևմտյան Հայաստանի ազատագրության հարցը, բայց հետագա տարինե-

---

67 Տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Сочинения, т. 11, стр. 635.

րին ավելի ուժեղացան սուլթանական բռնապետության լուծը ռուսական զենքի օգնությամբ թոթափելու արևմտահայության ակնկալությունները։

* * *

Հայ հասարակական տարբեր խավերը, քաղաքական հոսանքները, ինչպես և առանձին գործիչներ տարբեր վերաբերմունք են ունեցել պատերազմի ժամանակաշրջանում ծավալված ազատագրական շարժման նկատմամբ։ Հայաստանի երկու հատվածներում ապրող հայ աշխատավորական զանգվածները, աչքի առջև ունենալով Արևելյան Հայաստանի պարսկական տիրապետությունից ազատագրվելու օրինակը, համոզված ու հաստատուն կերպով հույսեր էին կապում ռուսական զենքի հետ և ցանկանում, որպեսզի Արևմտյան Հայաստանը ևս միանա Ռուսաստանին։ Այդ ուղու վրա էր կանգնած նաև զարգացող արևելահայ բուրժուազիան, որը տնտեսական ու քաղաքական շահերով կապված էր Ռուսաստանի հետ։

Կոստանդնուպոլսում ծվարած, սուլթանական կառավարության հետ բազմաթիվ թելերով կապված հայ ամիրաները դեմ էին օտար պետությունների և հատկապես Ռուսաստանի միջամտությանը և գտնում էին, որ հայերը պետք է սիրաշահեն թուրքական կառավարությանը։

Ռուսական առաջխաղացմանը Մերձավոր Արևելք բացասաբար էին տրամադրված նաև արևմտահայ այն միջնորդ, կոմպրադոր վաճառականները, որոնք տնտեսական շահերով կապված էին Արևմուտքի և հատկապես Անգլիայի հետ։

Չնայած պատերազմը երկուստեք անարդարացի բնույթ ուներ, հետապնդում էր զավթողական որոշակի նպատակներ, այնուամենայնիվ Կովկասյան ռազմաճակատում մղվող մարտերում հայ ժողովրդական զանգվածները համագործակցեցին ռուսական զենքին, ոգեշնչվելով այն պատրանքներով, թե ցարական բանակի հաղթանակը կարող է Արևմտյան Հայաստանը ազատել սուլթանական բռնապետությունից։

Ելնելով նախորդ պատերազմների փորձից, երբ հայերը և անդրկովկասյան մյուս ժողովուրդները համակրանքով էին լցված ռուսների նկատմամբ, թուրքական կառավարող շրջաններն ու բանակի հրամանատարությունը, ըսկրսած 1853 թ. սկզբներից, ավելի ուժեղացրին սահմանամերձ հայկական գյուղերի ասպատակությունները և զանգվածային տեղահանումները։

Կովկասյան բանակի հրամանատարության 1853 թ. նոյեմբերի 4-ի զեկուցագրում ասված է. «...բոլոր կողմերից տեղեկություններ են հասնում թուրքերի կատարած կողոպուտների և բռնությունների մասին։ Նրանք, հաշվի չառնելով ոչ հասակը, ոչ սեռը, չեն խնայում ոչ ոքի, նույնիսկ հոգևորականությանը։ Բոլոր դիմադրողներին անխնա սպանում են, իսկ կենդանի մնացածները չեն խուսափում գերությունից»[68]։ Կովկասյան կորպուսի հրամանատարությունը, հաշվի առնելով ռուս-պարսկական և ռուս-թուրքական նախորդ պատերազմների ժամանակ Անդրկովկասի ժողովուրդների ռուսական բանակին ցույց տված օգնության նշանակությունը, սկսեց նրանցից կամա-

---

[68] *Л. А. Зисерман,* Фельдмаршал А. Барятинский, М., 1898, стр. 303—304.

փորական գումարտակներ և աշխարհազորային ջոկատներ կազմակերպել։ Հայկական աշխարհազորային ջոկատներ կազմակերպվեցին Երևանում, Վաղարշապատում, Սարդարապատում, Նոր Բայազետում, Ալեքսանդրապոլում, Շամախիում, Շորագյալում, Ելիսավետպոլում, Ղազախում, Զանգեզուրում, Նախիջևանում և Անդրկովկասի տարբեր շրջաններում։ Նույնպիսի ջոկատներ կազմակերպվեցին նաև վրացիներից և ադրբեջանցիներից։

Մինչև պատերազմական գործողությունների սկսվելը կազմակերպվել էին գուրիական 12, մենգրելական և իմերեթյան 6, երևանյան 14, քրդական 3, Շամախիի 10, օսեթական 4, Ախալցխայի 1, Գորիի հայ-վրացական 2,5, Թիֆլիսի վրացական-աղնվականական 2,5, ելիսավետպոլյան 10, Բորչալուի 5, լեռնականների 4, Շուշու 3,5 հարյուրյակներ[69]։ Դրանցից բացի կազմակերպվել էր Նախիջևանի միլիցիան։ Նախատեսված էր արագ կերպով ստեղծել Գյանջայի և Բորչալուի բնակիչներից երկու դրուժինա՝ յուրաքանչյուրը 500 հոգուց և վրացական մեկ դրուժինա, նույնպես բաղկացած 500 հոգուց[70]։

Հետագայում, պատերազմի ընթացքում, Անդրկովկասյան ժողովուրդներից կազմակերպվել են կամավորական և միլիցիայի բազմաթիվ նոր ջոկատներ՝ իրենց բնակավայրերը թուրքական հարձակումներից պաշտպանելու և զինվորական այլ կարգի ծառայություններ կատարելու համար։ Հիշատակության արժանի է Էջմիածնի 300 հոգուց կազմված ջոկատը՝ Գևորգ Մալինցյանի և Ստեփան Սամսոնյանի գլխավորությամբ։ Բացի այդ, կային Սուրմալուի, Համամլուի, Ղարաքիլիսայի, Դիլիջանի շրջանների բնակիչներից կազմակերպված ջոկատներ։ Գեներալ Վ. Բեհբութովի կարգադրությամբ 1853 թ. սեպտեմբերի 6-ին ստեղծվեց քրդական միլիցիան՝ Սուրմալուի տեղամասում, բեկական դրուժինան Երևանում, 1853 թ. օգոստոսի 31-ին Ախալքալաքում ստեղծվեց օսեթական 2 հարյուրյակը, 1853 թ. հունիսի 21-ին Ալեքսանդրապոլի և Երևանի գավառներում ստեղծվեց երեքհարյուրական հոգուց բաղկացած հեծյալ միլիցիան և այլն։ Այս ջոկատները ռուսական զորաբանակների կազմում, հաճախ էլ առանձին, գործել են ամբողջ պատերազմի ընթացքում՝ ռուսական զորամասերին ցույց տալով զգալի օգնություն։

Իրենց ծառայություններով հայերն աչքի ընկան հատկապես Կարսի պաշարման և գրավման համար մղված մարտերում։ Կարսի պաշարման ժամանակ թուրքական բերդապահ կայազորը սովից փրկելու Ուիլյամսի բոլոր փորձերը ձախողվեցին, տեղանքին լավ ծանոթ հայերից կազմված ջոկատների մղած հակագործողությունների շնորհիվ։

1853 թ. նոյեմբերի 2-ին Բայանդուրի ճակատամարտում ռուսներին օգնություն ցույց տվեց Բայանդուրի գյուղացիներից ձևավորված աշխարհազորային ջոկատը։ Հայերից ու վրացիներից կազմված 11 հեծյալ և 3 հետևակային հարյուրյակները եռանդուն մասնակցություն ունեցան 1853 թ. նոյեմբերի 14-ին Ախալցխայի տակ տեղի ունեցած ճակատամարտին։ Այդ ճակատամարտում թուրքերի դեմ զենքի դիմեց նաև քաղաքի հայ և վրացի բնակչությունը։

---

69 Տե՛ս ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. 69, ց. 1, գ. 47, թ. 447—451։

70 Նույն տեղում, ֆ. 68, ց. 1, գ. 57, թ. 134։

Հայ և անդրկովկասյան մյուս ժողովուրդներից կազմակերպված 11 հարյուրյակ հեծյալ միլիցիան եռանդուն մասնակցություն ունեցավ Բաշ-Քադըկլարի ճակատամարտին[71]։

1854 թ. գարնանը Ալաշկերտ-Կաղզվան հատվածում ծավալված ռազմական գործողությունների ժամանակ իրեն փառքով պսակեց Երևանյան զորաջոկատը, որի կազմում կռվում էր հայերից ձևավորված միլիցիայի 6 հեծյալ հարյուրյակ։ Երևանյան զորաջոկատի մարտական գործողություններին մասնակցել են նաև մահմեդական հեծյալ 4-րդ գունդը, Նախիջևանի, Շուշու, Օրդուբադի շրջանի, Երևանի և Վաղարշապատի հայկական ջոկատները[72]։

Հայերը քաջարի մասնակցություն ունեցան նաև 1854 թ. հուլիսի 24-ի Քյուրուկ-Դարայի ճակատամարտին։ Ականատեսների վկայությամբ այդ մարտում իրենց խիզախությամբ աչքի ընկան դրագունները, կազակները, մահմեդական հեծյալները, Լորիս-Մելիքովի կամավորները, վրացական դրուժինան և հայկական կամավորական ջոկատները[73]։

Հայերի օգնությունը ռուսական բանակին չի սահմանափակվել միայն Կովկասյան ռազմաճակատում ծավալված ռազմական գործողություններին ունեցած մասնակցությամբ։

Թուրքական զորաբանակները պատերազմի ամբողջ ընթացքում Կովկասի տարբեր սահմաններում հաճախակի կատարել են նաև կողոպուտ և ցուցադրական ահաբեկիչ նպատակներ հետապնդող հարձակողական գործողություններ։ Նման դեպքերում ռուսական հրամանատարությունը թշնամու դեմ հիմնականում օգտագործել է տեղական ժողովուրդներից ձևավորված միլիցիայի և աշխարհազորային ջոկատները։ 1853 թ. նոյեմբերին Սուրմալուի, Թալինի, Սարդարապատի և Էջմիածնի վրա թուրքական հրոսակախմբերի կատարած բոլոր հարձակումներն էլ ետ մղվեցին տեղական բնակիչներից կազմված աշխարհազորային ուժերով[74]։ 1853 թ. նոյեմբերին Իգդիրից ոչ հեռու թշնամու 1500 հոգուց բաղկացած հրոսակախմբի դեմ է ուղարկվել Շամախիի միլիցիան փոխգնդապետ Եղիգարովի հրամանատարությամբ, որին հաջողվել է մեծ կորուստներ պատճառել և ետ շպրտել կողոպտիչներին[75]։ 1854 թ. Ալեքսանդրապոլի քաղաքապետ կապիտան Շանսևը Վ. Բեհբությանի թույլտվությամբ կազմակերպել է ևս մեկ հեծյալ հայկական հարյուրյակ, որը միացվելով Շորագյալի երրորդ հարյուրյակին, ուղարկվել է Շորագյալի տեղամասից հյուսիս ընկած սահմանների պաշտպանության համար[76]։ Թշնամու 600 հոգուց բաղկացած հեծելազորը նույն թվականի հունիսին հարձակվել է Բայանդուր, Ղազարապատ և սահմանամերձ այլ գյուղերի վրա, սակայն տեղական միլիցիայի ջոկատները Թարխանովի գլխավորությամբ զինված բնակիչների հետ միասին ետ են շպրտել նրան և ետ վե-

---

71 ՏԽ՛ս ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. 69, ց. 1, գ. 57, թ. 109—112։

72 Վրացական ՍՍՀ ԿՊՊԱ, ֆ. 559, ց. 7, թ. 1, 5, 14, 36։

73 ՏԽ՛ս ՍՍՀՄ ԿՊՌՊԱ, ֆ. 57, գ. 155, թ. 33։

74 ՀՍՍՀ ԿՊՊԱ, ֆ. 57, գ. 155, թ. 33։

75 Նույն տեղում, թ. 84—85։

76 ՏԽ՛ս Վրացական ՍՍՀ, ԿՊՊԱ, ֆ. 559, գ. 5, թ. 3—4։

պաշարձրել կողոպտված ավարը[77]։ Հուլիսի 16-ին Բայանդուրի ուղղությամբ կրկին հարձակում գործած թուրքական 3000 հոգուց բաղկացած զորաջոկատը ետ է շպրտվել դարձյալ տեղի բնակիչների և կազակական մեկ հարյուրյակի համատեղ ջանքերով։

Հայերը ռուսական հրամանատարությանը տրամադրում էին նաև հրմուտ սուրհանդակներ, կապավորներ, ուղեկիցներ։

Կովկասյան կորպուսի տարած հաղթանակների գործում քիչ նշանակություն չունեցավ տեղական ժողովուրդների ցույց տված նյութական օգնությունը։ Պատերազմն սկսվելու առաջին իսկ օրերին հայերն ու վրացիները ռուսական զորամասերին տրամադրեցին 1700 սայլ՝ քաշող անասուններով։ Ալեքսանդրապոլում ռազմական ամրություններ կառուցելու գործում կամավոր օգնություն են ցույց տվել տեղի բնակիչները։ Սահմանամերձ շրջաններում շատ հայկական գյուղեր իրենց միջոցներից են հոգացել տեղում եղած զորամասերի սնունդը։

Հայ կանայք և աղջիկները հոգատարությամբ են շրջապատել վիրավոր և հիվանդ զինվորներին։ Նրանց տեղավորել են հոսպիտալներում, հաճախ էլ իրենց տներում, ապահովել սնունդով՝ հրաժարվելով որևէ վարձատրությունից։

Այսպիսով, անտարակույս է Ղրիմի պատերազմի Կովկասյան ռազմաճակատում ռուսական բանակի տարած հաղթանակների գործում հայերի և անդրկովկասյան մյուս ժողովուրդների օգնության նշանակությունը։

---

77 Տե՛ս Հայկական ՍՍՀ ԿՊՊԱ, քաղվածքների ֆոնդ, գ. 356, մաս 2, թ. 97։

ԳԼՈՒԽ ՅՈԹԵՐՈՐԴ

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿՅԱՆՔԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

## 1. ՏԵՂԱՇԱՐԺԵՐ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ

*Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին նպաստեց նրա տնտեսական կյանքի հետագա զարգացմանը։ Երկրում հաստատված երկարատև խաղաղությունը, պարսկական բռնապետական տիրակալության յուրահատուկ անօրինականությունների վերացումը, հարևան տերիտորիաներից հայկական բնակչության հոծ ներգաղթը հնարավորություն տվեցին հայ գյուղացուն ձեռնամուխ լինելու իր տնտեսական դրության բարելավմանը։*

*Արևելյան Հայաստանը մնում էր հետամնաց ագրարային երկիր, որտեղ արտադրության հիմնական ճյուղը դարձյալ գյուղատնտեսությունն էր։ Երկրի բնակչության ավելի քան 90 տոկոսը կազմում էր գյուղացիությունը։ Ըստ պաշտոնական տվյալների, 1859 թ. Երևանի նահանգում կար 37957 ծուխ գյուղաբնակչություն, որից 25934 ծուխը՝ պետական*[1]*։*

*Գյուղատնտեսության զարգացման ամենացայտուն արտահայտությունը մշակվող հողային տարածությունների ընդարձակումն էր։ Եթե պարսկական տիրապետության շրջանում մշակվում էին հարմարավետ հողերի 8—10 տոկոսից ոչ ավելին, իսկ մնացյալները չէին օգտագործվում, ապա այժմ դրությունը բոլորովին փոխվել էր։ 1829 թ. ցանքատարածություններն ընդգրկում էին 87000 հեկտար տարածություն, 1870 թ. արդեն ցանքսի տակ էր գտնվում 213170 հեկտար հողատարածություն, այսինքն՝ շուրջ 2,5 անգամ ավելին*[2]*։ Հատկապես ընդարձակվել էին ցորենի, գարու, շալթուկի, բամբակի ցանքատարածությունները։*

*Գյուղատնտեսական հիմնական կուլտուրաները մնում էին նույնը, այսինքն՝ ցանվում էր ցորեն, գարի, կորեկ, բամբակ, բրինձ, քունջութ, վուշ, ծխախոտ և այլն։ Բացառությամբ ցորենի, գարու և կորեկի, մնացած գյուղատնտեսական կուլտուրաների մշակման հիմնական վայրերը Երևանի և Նախիջևանի գավառներն էին։ Այս երկու գավառներում էին հիմնականում*

---

[1] АКАК, т. XII, стр. 1350.

[2] *Տե՛ս М. А. Адонц,* Экономическое развитие Восточной Армении в XIX в., Ереван, 1957, стр. 163—164.

*կենտրոնացած խաղողագործությունն ու պտղաբուծությունը, ինչպես նաև բանջարա-բոստանային կուլտուրաների մշակությունը։*

*1850-ական թթ. սկզբին ցորենի տարեկան բերքը կազմում էր 2700 հազար փութ, գարունը՝ 1080 հազար փութ, իսկ զտված բամբակի ու ծխախոտի տարեկան բերքը 10500 փութ էր։ Այդ նույն տարիներին խաղողից և մրգերից տարեկան 30000 ռուբլու (արծաթով) եկամուտ էր ստացվում*[3]*։*

*1870 թ. ցորենի ցանքատարածությունները 1827 թ. համեմատությամբ աճել էին 160 տոկոսով, իսկ գարու ցանքսերը՝ 287,5 տոկոսով։ Գարու ցանքատարածությունների նման աճը պայմանավորված էր նրանով, որ այն ավելի քիչ ծախսեր էր պահանջում և ավելի մեծ բերք էր տալիս, մոտավորապես տարեկան 3—3,5 մլն. փութ, որը օգտագործվում էր տեղական բնակչության պահանջների բավարարման համար*[4]*։*

*Այսպիսով գյուղն էլ աստիճանաբար ներգրավվում էր ապրանքա-դրամական հարաբերությունների մեջ։ Ցարական կառավարությունը Արևելյան Հայաստանի գրավումից հետո իր ուշադրությունը բևեռեց այստեղ, ինչպես նաև ամբողջ Անդրկովկասում բամբակագործության հետագա զարգացման խնդիրների վրա*[5]*։ Այդ առումով բամբակագործության զարգացման համար կարևորություն էր ներկայացնում ոչ միայն ցանքատարածությունների ընդարձակումը, այլև հումքի որակի բարձրացումը, բամբակի զտման պրոցեսի կատարելագործումը։ Ուստի և ֆինանսների մինիստրությունը հարց է հարուցում, որպեսզի Եգիպտոսից ներմուծվի մեկ միլիոն փութ եգիպտական բամբակենու սերմ «Հայկական մարզի բնակիչներին բաժանելու համար, որպեսզի այն փոխարինի տեղում աճող ցածրորակ բամբակենուն»*[6]*։ Հետագայում ներմուծվեցին եգիպտական, ամերիկյան, սիրիական, սիցիլիական բամբակենու սերմատեսակներ, որոնց արդյունքները թեև սկզբնական շրջանում բավարար չէին, սակայն հետագայում մեծապես նպաստեցին բամբակագործության զարգացմանը։ 1870 թ. բամբակենու ցանքատարածությունները գրավում էին շուրջ 26 հազար հեկտար տարածություն, 1829 թ. 8000 հեկտարի համեմատությամբ։*

*1861 թ. գյուղացիական ռեֆորմից հետո կապիտալիզմի արագ զարգացումը Ռուսաստանում, ինչպես նաև 1861—1865 թթ. քաղաքացիական պատերազմի հետևանքով հյուսիսամերիկյան բամբակի արտահանման դադարեցումը մեծապես խթանեց բամբակագործության հետագա վերելքին Արևելյան Հայաստանում։ Արդեն 1870 թ. Երևանի նահանգում բամբակի արտադրանքն ավելացել էր 9 անգամ, և արտադրվել էր 27876 փութ բամբակ*[7]*։ Բամբակի ցանքատարածություններն աճել էին ի վնաս մյուս կուլտուրանե-*

---

[3] «Военно-статистическое обозрение Российской империи», т. XVI, ч. VI. Эриванская губерния, СПб., 1853, стр. 208—209, 212.

[4] *Տե՛ս М. А. Адонц, նշվ. աշխ., էջ 165։*

[5] *Տե՛ս И. Л. Сегал,* Развитие хлопководства в Закавказском крае и современное состояние его («Труды съезда хлопководов», т. II, ч. II, Тифлис, 1914, стр. 56).

[6] АКАК, т. IX., стр. 51—52.

[7] *Տե՛ս Н. Н. Спасский, նշվ. աշխ., էջ 165։*

րի, մասնավորապես ցորենի և գարու։ 1863 թ. բամբակի փութը վաճառվել է միջին հաշվով 15—16 ռուբլով, և շուրջ 2—2,1 մլն. ռուբլու եկամուտ է բերել։ 1868 թ. Երևանի մոտ կառուցվեց բամբակ զտելու և մամլելու միջոցով հակավորելու գործարան։ Այնուամենայնիվ, ռուսական կառավարությանը չհաջողվեց Արևելյան Հայաստանը և ողջ Անդրկովկասը վերածել իր արդյունաբերության համար բամբակի հումքի հուսալի բազայի։

Ցարական կառավարությունը լրջորեն զբաղվեց շերամապահության զարգացման խնդրով ինչպես Անդրկովկասում, այնպես էլ մասնավորապես Արևելյան Հայաստանում՝ իբրև կայուն մի բազա մետաքսի թանկարժեք հումք ստանալու համար։ 1830—1840-ական թթ. ռուսական մետաքսի արդյունաբերությունը Անդրկովկասից ստացել էր 17—18 հազար փութ մետաքսի հումք[8]։ Սա արդեն վկայում է այն մասին, որ ամբողջ Անդրկովկասը դառնում էր ռուսական մետաքսարդյունաբերության հումքի կարևոր և հիմնական հենակետը։

Խաղողը և խաղողի վերամշակումից ստացվող արդյունքները՝ գինի, օղի և այլն, նույնպես շուկա էին հանվում և նպաստում գյուղացիական տնտեսությունների ներգրավմանը ապրանքա-դրամական հարաբերությունների ոլորտը։ Այսպես, 1870 թվականին, երբ խաղողի բերքը համեմատաբար վատ էր, ստացվել էր 984.172 փութ խաղող, որի 1/3 մասը սպառվել կամ վաճառվել էր, իսկ մնացյալ 2/3 մասից ստացվել էր 479585 դույլ գինի։ Բայց այս շրջանում խաղողագործությունն անհրաժեշտ չափով չէր զարգանում, բնակչության աճն ավելի էր, քան խաղողի այգիների տարածության[9]։ Դա պետք է բացատրել, ըստ երևույթին, այն հանգամանքով, որ բամբակագործության աճը և մյուս կողմից խաղողագործության արդյունքների դեռևս ոչ մեծ եկամտաբերությունը արգելակում էին այդ արժեքավոր կուլտուրայի տարածմանը։

Անասնապահությունը ևս շարունակում էր մնալ բնակչության զբաղմունքի հիմնական տեսակներից մեկը։ Անասնապահությամբ մեծ մասամբ զբաղվում էին քոչվորական կամ կիսաքոչվորական քրդական և ադրբեջանական ցեղախմբերը։ 1860-ական թթ. անասնապահության զարգացման մասին կարելի է գաղափար կազմել հետևյալ աղյուսակից[10] (տե՛ս 257 էջի աղյուսակը)։

Աղյուսակից երևում է, որ Երևանի նահանգում, ճիշտ է, դանդաղորեն, բայց անասնապահությունը ևս վերելք էր ապրում, և այն պայմանավորված պետք է համարել նույնպես ապրանքա-դրամական հարաբերությունների ծավալմամբ։

---

8 *Տե՛ս М. Рожкова,* Экономическая политика царского правительства на Среднем Востоке во второй четверти XIX в. и русская буржуазия, М.—Л., 1949, стр. 130—131.

9 «Сборник сведений о Кавказе», т. II, стр. 181—183.

10 *Տե՛ս* Վ. Հ. Ռշտունի, *Ուրվագծեր Հայաստանի գյուղացիության պատմության, մաս Ա, Երևան, 1960, էջ 229։*

| | Անասունների քանակը | | Աճը %-ներով |
|---|---|---|---|
| | 1865 թ. | 1870 թ. | |
| Ձիեր . . . . . . . . . . | 33041 | 40626 | + 23 |
| Եղջերավոր անասուններ . | 226780 | 274739 | + 21 |
| Ոչխարներ և այծեր . . . | 575142 | 688338 | + 20 |
| Խոզեր . . . . . . . . . | 1663 | 3162 | + 90 |
| Ուղտեր . . . . . . . . | 10940 | 16724 | + 53 |
| Էշեր և ջորիներ . . . . . | 17018 | 16218 | — 5 |
| Ընդամենը . . . | 864584 | 1038837 | 20% |

*Այդ պրոցեսի վկայությունն է գյուղական տոնավաճառների ստեղծումը, ինչպես Շարուր-Դարալագյազի գավառի Մալիշկա գյուղի տոնավաճառն էր, որը բացվեց 1857 թվականին։*

*1860-ական թթ. փորձեր են արվում նաև հողի վարձակալման միջոցով կապիտալիստական բնույթի ֆերմերական տնտեսություններ ստեղծելու ուղղությամբ։ Դրանց նպատակն էր լինելու տեխնիկական արժեքավոր կուլտուրաների մշակությունը և վաճառքը արդյունաբերական ձեռնարկություններին։ Սակայն այս ժամանակահատվածում նման փորձերը հաջողենտ էին և ցանկալի արդյունք չտվեցին։ Այսպես, 1862 թ. ռուս ազնվական գեներալ Կախանովը կառավարությունից 65 տարվա ժամկետով վարձակալության վերցրեց Երևանի գավառի Դավալու և Սադարակ գյուղերի միջև ընկած մի հողակտոր՝ 10022 դեսյատին տարածությամբ։ 1950 դեսյատին մեծությամբ մի հողակտոր էլ վարձակալել էր Նախիջևանի գավառում Շարուր-Դարալագյազի գավառապետ Ա. Պ. Շան-գիրեյը, որը կազմակերպել էր իր տնտեսությունը կապիտալիստական հիմունքներով և գլխավորապես բամբակագործությամբ էր զբաղվում։*

*Այսպիսով, Արևելյան Հայաստանում հետզհետե զարգանում էր գյուղատնտեսության ապրանքայնությունը, ուշադրություն էր դարձվում հատկապես տեխնիկական կուլտուրաների մշակության վրա և, դրանով իսկ, երկիրը դանդաղ, բայց անշեղ կերպով ներգրավվում էր կապիտալիստական արտադրահղանակի ոլորտը։ Նախկին բնատնտեսությունն իր տեղը զիջում էր գյուղացիական ապրանքային տնտեսությանը, դրանով իսկ փոխելով երկրի նախկին ֆեոդալական դեմքը։*

## 2. ԱՐՀԵՍՏՆԵՐԸ, ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ, ԱՌԵՎՏՈՒՐԸ

*Ռուսաստանին միացվելուց հետո Անդրկովկասում նպաստավոր պայմաններ էին ստեղծվում առևտրի ու արհեստների, արդյունաբերության զարգացման համար։ Դրանց զարգացմանը նպաստում էր նաև այն հանգաման-*

քը, որ երկրում երևան էր գալիս ռուս զինվորականությունը և պաշտոնեությունը՝ իր պահանջարկով։ Սա ևս թափ էր հաղորդում ապրանքա-դրամային հարաբերությունների հետագա խորացմանը և զարգացմանը։

Խոսելով ընդհանրապես Անդրկովկասի արհեստագործական, առևտրական և արդյունաբերական զարգացման մասին, պետք է նշել այն հանգամանքը, որ հայ ազգաբնակչությունը սփռված էր ամբողջ Անդրկովկասով մեկ և առաջնային դեր էր խաղում և արհեստային արտադրության, և արդյունաբերության, և առևտրի ասպարեզում։ Հայ առևտրականներն ու արհեստավորները կարևոր դեր էին խաղում Անդրկովկասի մի շարք քաղաքների տնտեսական կյանքում։ Պաշտոնական վավերագրերից մեկում նշվում է, որ 1840-ական թթ. Անդրկովկասի առևտուրը գրեթե բացառապես գտնվում էր հայերի ձեռքում և նրա տարեկան շրջանառության գումարը կազմում էր շուրջ վեց միլիոն ռուբլի[11]։

Արևելյան Հայաստանում, Ռուսաստանին միացվելուց հետո, արհեստագործությունը մնում էր արտադրական գործունեության հիմնական ճյուղը։ Սակայն 1830—1860-ական թթ. արհեստագործական արտադրության քանակի վերաբերյալ մենք գրեթե տեղեկություններ չունենք. դրանք ավելի շատ վերաբերում են արհեստավորների քանակին՝ արհեստագործության մի քանի տասնյակի հասնող ճյուղերում և հիմնականում 20-ական թթ. վերջերին և 30-ական թթ. սկզբներին։ Որոշ տվյալներ կան նաև 1860-ական թթ. վերաբերյալ։ Եթե 1829—1832 թթ. Հայկական մարզի երեք քաղաքներում՝ Երևանում, Նախիջևանում և Օրդուբադում արհեստավորների թիվը կազմել է համապատասխանաբար 2349, 717 և 608 հոգի, ապա 1865 թ.՝ 3238, 840 և 740 մարդ։ Հետևաբար 30—35 տարվա ժամանակամիջոցում արհեստավորների քանակական աճը տոկոսային հարաբերությամբ կազմել է. Երևանում՝ 38 տոկոս, Նախիջևանում՝ 17, Օրդուբադում՝ 29 տոկոս։ Միջին հաշվով արհեստավորների քանակական աճը 12 տոկոսով գերազանցել է հիշյալ քաղաքների բնակչության ընդհանուր աճին, իսկ Երևանում՝ նույնիսկ 23 տոկոսով։ Ալեքսանդրապոլում և Նոր Բայազետում արհեստավորների թիվը համապատասխանորեն կազմել է 2695 և 391[12]։ Այսպիսով, Երևանի նահանգի արհեստավորների ընդհանուր թիվը 1865 թ. հավասար էր 7995-ի, որոնցից վարպետներ՝ 3663, ենթավարպետներ՝ 2117 և աշակերտներ՝ 2215։ Հավանորեն արհեստի յուրաքանչյուր ճյուղ կազմված է եղել մանր արտադրողական միավորներից, քանի որ ամեն մի վարպետի միջին հաշվով ընկնում էր 1,2 ենթավարպետ և աշակերտ։ Այդ վկայում է նաև արհեստային արտադրության ոչ բարձր մակարդակի մասին։ Այսպես, Երևանի արհեստավորությունը սպասարկում էր միայն տեղական պահանջարկը, թեև արհեստավորների մեծ մասը հենց այստեղ էր կենտրոնացած։ Երևանյան նահանգի քաղաքներից միայն Ալեքսանդրապոլի արհեստավորներն էին, որ սպասարկում էին ոչ միայն տեղական պահանջարկը, այլև իրենց արտադրանքն ուղարկում էին Անդրկովկասի վարչական կենտրոնը՝ Թիֆլիս, և անգամ արտահանում Թուրքիա։ Արտահան-

---

11 АКАК, т. X, № 184.

12 «Сборник статистических сведений о Кавказе», т. I, Тифлис, 1869.

ման հիմնական ապրանքը մաշիկներն էին, որի արտադրանքի դրամական գումարը կազմում էր 8000—10000 ռուբլի արժաթով և ոսկեթել դիպակները։ Ամբողջ արհեստային արտադրության ընդհանուր գումարը Ալեքսանդրապոլում տարեկան հասնում էր 160000 ռուբլու (արծաթով)[13]։

Բավական մեծ թվով տնայնագործներ կային գյուղերում, ուր մասնավորապես լայն տարածում ուներ ջուլհակությունը։ Ջուլհակ-տնայնագործների թիվը Հայկական մարզում ըստ Շոպենի 4206 էր։ Նրանք ունեին դազգահներ և կտավ էին գործում։ Այդ եղանակով տարեկան շուրջ կես միլիոն արշին կտավ էր գործվում։ Սակայն 40-ական թվականներից արհեստի այդ ճյուղը դանդաղորեն սկսում է վերանալ, չդիմանալով ռուսական գործարանային էժան ապրանքների մրցակցությանը[14]։

Արևելյան Հայաստանում փոքր թիվ չէին կազմում նաև այն արհեստավորները, որոնք պղնձից կաթսաներ էին պատրաստում և վաճառում գյուղերում։ Նրանց մասին 1860-ական թթ. վերաբերող որոշ հարևանցի տեղեկություններ են պահպանվել։ Այսպես, 1866 թ. Ալավերդու գործարանում ձուլված 5435 փութ պղնձից 2000 փութը օգտագործվել էր ամաներեն պատրաստելու համար։ Այդ արտադրաճյուղում զբաղված էին 75 արհեստավորներ, որոնք և պատրաստի ամանեղենը վաճառքի էին հանում գյուղերում։ 1870 թ. Ալավերդում ձուլված 4572 փութ պղնձից այդ նպատակի համար օգտագործվել է 1100 փութը[15]։ Հավանորեն այդպես է եղել նաև Սիսիմադանի գործարանում, որտեղ ձուլված պղինձը «հենց տեղում վաճառվում էր եկվոր գնորդներին»։

Արհեստի հիմնական ճյուղերը մնում էին բրուտագործությունը, կաշեգործությունը, դարբնությունը, ոսկերչությունը, արծաթագործությունը, դերձակությունը, կոշկակարությունը, հացագործությունը, գզրարությունը և այլն։ Այս ճյուղերում ներգրավված արհեստավորների թիվը զգալիորեն աճել էր, որը վկայություն էր ապրանքա-դրամական հարաբերությունների հետագա զարգացման։

Այս ժամանակահատվածում էլ արհեստավորները կազմակերպված էին համքարությունների մեջ և ղեկավարվում էին նախկին ավանդույթներով։ Համքարությունների մեջ, բացի արհեստավորներից, միավորված էին նաև առևտրականները։

1863 թ. Երևանի համքարությունների թիվը հասնում էր 28-ի։ Դրանցից էին բաղաղների, կաշեգործների, որմնադիրների, կոշկակարների և այլ համքարություններ, որտեղ վարպետների թիվը հասնում էր 816-ի, վարպետացուներինը՝ 692-ի, աշակերտներինը՝ 667-ի, ընդամենը՝ 2175 հոգու։

Նույն 1863 թ. Թիֆլիսի համքարություններում կազմակերպված արհեստավորների ու առևտրականների թիվը հետևյալն էր. վարպետներ՝ 1156, վարպետացուներ կամ ենթավարպետներ՝ 334, ընդամենը՝ 1500 հոգի, ի բաց առյալ աշակերտներին, Ալեքսանդրապոլի համար համապատասխան տըվ-

---

13 Նույն տեղում։

14 Տե՛ս И. Шопен, նշվ. աշխ., էջ 851—852։

15 «Сборник сведений о Кавказе», т. II, стр. 3.

յալներն են. վարպետներ՝ 750, ենթավարպետներ՝ 603 և աշակերտներ՝ 780, ընդամենը՝ 2133 հոգի։

Ըստ 1863 թ. պաշտոնական վիճակագրության տվյալների. Երևանում համքարություններից դուրս կային 270 արհեստավորներ միայն, հիմնականում ադրբեջանցիներ, մասամբ նաև ռուսներ[16]։

Արհեստագործական այս կազմակերպությունները պահպանվում էին, երբեմն էլ որոշ հաջողությունների հասնում, քանի դեռ ռուսական գործարանային արդյունաբերության արտադրանքը քիչ էր ներթափանցել Անդրկովկաս, որը կատարվեց 1861 թ. գյուղացիական ռեֆորմից հետո։ 1870 թ. Հայաստանում և Անդրկովկասում գյուղացիական ռեֆորմի անցկացումից հետո գործունեության լայն ասպարեզ նետվեց նաև տեղական կապիտալը, որի պատճառով համքարությունների տնտեսական հիմքերն սկսեցին խարխլվել։

Այդ երևույթը առավել սպառնալի չափեր ընդունեց և ամենից շատ ըզգացնել տվեց Թիֆլիսում, որտեղ կապիտալիստական արտադրաեղանակը շատ ավելի շեշտված առաջընթաց էր կատարել։ Ահա թե ինչու հենց այստեղ բռնկվեց համքարությունների մեջ իրենց տնտեսական գոյության հենարանը տեսնող արհեստավորների ու առևտրականների 1865 թ. բավականաչափ բուռն ընթացք ստացած ելույթը՝ ուղղված Թիֆլիսի քաղաքային ինքնավարության հակահամքարական բնույթ կրող միջոցառումների դեմ։

Թիֆլիսի համքարական կազմակերպությունները, որոնց անդամների ըզգալի մասը կազմում էին հայ արհեստավորները, եռանդուն դիմադրություն էին ցույց տալիս ռուսական արդյունաբերական արտադրանքի տարածմանը։ Սա արդեն բավական էր, որպեսզի «հասարակության եվրոպական մասի մեջ սկսեին խոսել համքարությունները ոչնչացնելու անհրաժեշտության մասին»[17]։

Թիֆլիսի արդեն արդյունաբերական գործունեության ասպարեզը ոտք դրած բուրժուազիան, դեռևս Մ. Ս. Վորոնցովի փոխարքայության օրոք նման տրամադրություններ արտահայտել էր, սակայն փոխարքան դրանց չէր ընդառաջել։ Վորոնցովը գտնում էր, որ կարիք չկա մեկ հարվածով ոչնչացնել համքարությունները, քանի որ առևտրի և արդյունաբերության զարգացումը Անդրկովկասում ինքնըստինքյան ասպարեզից դուրս էր մղում դրանք[18]։ Վերջինիս միջամտությունը լոկ այն էր, որ հսկողություն էր սահմանում համքարությունների վրա, սահմանափակում դրանց արտոնությունները։ Վորոնցովը, որոշ զիջում անելով «հասարակությանը», թույլատրեց, որ արհեստով ու մանրավաճառ առևտրով զբաղվեն նաև համքարություններից դուրս գտնըվող անձինք, միաժամանակ պահպանելով մինչկապիտալիստական տընտեսական այդ կազմակերպությունները։

Համքարությունների պաշտպանությամբ 1857 թ. հրապարակ իջան հայտնի մտավորականներ և հասարակական գործիչներ Գևորգ Ախվերդյանը և Պետրոս Շանշյանը։ Ախվերդյանը համքարությունների թշնամիներն էր հա-

---

16 Տե՛ս Թ. Խ. Հակոբյան, Երևանի պատմությունը (1801—1879), հատ. III, Երևան, 1959, էջ 425—428, 430—431։

17 *В. Н. Иваненко*, Гражданское управление Закавказьем, Тифлис, 1901, стр. 453.

18 АКАК, т. X, стр. 1318.

մարում իրենց շահերով տարված խոշոր դրամատերերին, որոնք առևտրի և արհեստի ազատություն պահանջելով, կամենում էին իրենց նյութական հզորության շնորհիվ ասպարեզի միակ տերը դառնալ և ստեղծել մենաշընորհներից վաստթարագույնը[19]։ Կովկասյան գլխավոր վարչության խորհրդի անդամ բարոն Նիկոլային գրում էր, որ առևտրական համքարությունները պետք է միանգամից արգելվեն և ցրվեն որպես գաղտնի ընկերություններ, իսկ նրանց կազմակերպողները պատժվեն իբրև քրեական հանցագործներ, թեև ամենևին իրականությանը չէր համապատասխանում այն մեղադրանքը, թե համքարությունները գաղտնի կազմակերպություններ են։



Թիֆլիսի հայ համքարության դրոշակ

Համքարությունների գլխին փոթորիկ պայթեց ավելի ուշ, 1865 թ., երբ դրանց մեջ համախմբված արհեստավորներն ու մանր առևտրականները ցույց կազմակերպեցին այն պատճառով, որ նրանց վրա դրված տուրքերը ավելացվել էին 60000 ռուբլով։ Այդ առիթ դարձավ, որպեսզի 1865 թ. հունիսի 16-ին տարերայնորեն բռնկեր արհեստավորների և մանր առևտրականների շուրջ տասը հազարանոց զանգվածի ըմբոստությունը։ Նրանք փակեցին իրենց խանութներն ու արհեստանոցները և, չնայած իշխանությունների ըսպառնալիքներին, թե «խռովությունը» ճնշելու համար զենքի կդիմեն, մինչև հունիսի 29-ը չբացեցին դրանք։ Ըմբոստացած արհեստավորները և մանր առևտըրականները հարձակվեցին քաղաքագլուխ Գալուստ Շերմազանյանի տան վրա և քարուքանդ արեցին այն, իսկ քաղաքագլուխը կանացի հագուստներով ծպտված մի կերպ կարողացավ փախչել։ Կառավարությունը զենքի դիմեց.

---

19 *Տե՛ս Ахвердов,* Тифлисские амкары, Тифлис, 1883, гл. 1, стр. 2.

եղան վիրավորներ և սպանվածներ։ Կառավարական շրջաններում նույնիսկ մտացածին լուրեր տարածվեցին, թե իբր «խռովարարները» կամենում էին քաղաքի կառավարման գործը, մասնավորապես հարկերի նշանակումը և գանձումը հանձնել ժողովրդից ընտրված անձնավորությունների։ Անգամ խոսում էին ցարիզմի դեմ ծրագրված ինչ-որ դավադրության մասին և գործն այնպես էին ներկայացնում, որ իբր թե նախապատրաստվում էր Անդրկովկասի անջատումը Ռուսաստանից։ Տնտեսական ծանր կացության մեջ ընկած համքարական զանգվածների ըմբոստության շուրջը ստեղծվեց մեծ աղմուկ և այն պատրվակ ծառայեց համքարական կազմակերպությունները ոչնչացնելու համար[20]։



Ալեքսանդրապոլի պղնձագործների համքարության դրոշակը

1869 թ. ապրիլի 5-ին հրատարակված նոր կանոնների համաձայն Թիֆլիսի 80 համքարություններից թողնվում էին միայն 17-ը, որոնք պետք է ենթարկվեին քաղաքային վարչության կազմի մեջ մտնող Արհեստավորական վարչությանը։ Համքարությունների մեջ կարող էին մնալ միայն արհեստավորները, իսկ մանր առևտրականներին արգելվում էր նման կազմակերպություններ ունենալ։ Պահպանված համքարությունների ներքին կյանքը, ընտրությունների կարգը և առհասարակ նրանց ամբողջ գործունեությունը դրվում էր ոստիկանության հսկողության տակ։

Սահմանվում էին երկաստիճան ընտրություններ։ Ընդհանուր համքարական ժողովին կարող էին մասնակցել միայն լիազորները։ Յուրաքանչյուր տասը

---

20 Տե՛ս Ф. Махарадзе, Грузия в XIX столетии, Тбилиси, 1933, стр. 59—64.

*համքարից ընտրվում էր միայն մեկ լիազոր։ Համքարության գործերը վարելու նախկին կոլեգիալ կարգը և ուղղակի ընտրությունները վերացվում էին, արհեստավորաց գլխավորը ավելի լայն իրավասություններով էր օժտվում։*

*Այսպիսով, քաղաքի մանր արհեստավորների ու առևտրականների բազմահազարանոց զանգվածը «արժանի» պատիժ էր ստանում, որովհետև համարձակվել էր իր կազմակերպությունը օգտագործել ոչ միայն իբրև «ներքին ոստիկանություն», այլև փորձ էր արել ծառայեցնել այն իր շահերի պաշտպանությանը և զանգվածային բողոք կազմակերպել քաղաքային իշխանությունների հարկային քաղաքականության դեմ։*

*1865 թ. Թիֆլիսի համքարային կազմակերպությունների ցույցին իրենց համակրանքը արտահայտեցին հայ մտավորականության աչքի ընկնող ներկայացուցիչներ Պետրոս Շանշյանը, Պետրոս Սիմեոնյանը, Գաբրիել Սունդուկյանը, Պերճ Պռոշյանը և ուրիշներ։*

*Բայց և այնպես համքարությունները քայքայման էին դատապարտված. աստիճանաբար զարգանում էր կապիտալիստական արտադրության եղանակը։*

* * *

*Ռուսաստանին միացված Արևելյան Հայաստանը արդյունաբերական զարգացման տեսակետից դեռևս առաջին քայլերն էր անում։ Համեմատաբար զարգացած էր լեռնային արդյունաբերությունը՝ շնորհիվ աղի ու պղնձի հարուստ հանքերի առկայության։ Ցարական կառավարությունը որոշ քայլերի դիմեց՝ խթանելու համար լեռնարդյունաբերությունը, ընդ որում այդ միջոցառումների նպատակն էր ինչպես ընդհանրապես ամբողջ Անդրկովկասը, այնպես էլ Արևելյան Հայաստանը տնտեսապես օգտակար դարձնել մետրոպոլիայի համար։ Այդ մասնակիորեն հաջողվեց Կողբի և Նախիջևանի աղահանքերի մշակման գործը քաջալերելով և պղնձի արդյունաբերության ձեռնարկությունները պետության ու մասնավոր արդյունաբերողների միջոցների ներդրմամբ զգալիորեն եկամտաբեր դարձնելով։*

*Եթե բացառելու լինենք լեռնարդյունաբերությունը, ապա պատմական աղբյուրներում «գործարանային արդյունաբերություն» անվան տակ հիշատակվող ձեռնարկությունները ոչ այլ ինչ էին, եթե ոչ չնչին մասշտաբների մանուֆակտուրային, շատ ավելի հաճախ տնայնագործական արհեստանոցներ միայն։ Նույնիսկ արդեն 1860-ական թթ. հիշյալ «գործարանների ու ֆաբրիկաների» մասին խոսում էին իբրև «բնակարաններին կից կառուցված աշխատանքային արհեստանոցների մասին»*[21]*։*

*Հիշյալ «արդյունաբերական ձեռնարկությունները», ըստ քաղաքների, հետևյալ կերպ էին տեղաբաշխված. Երևանում՝ 10, Նոր Բայազետում՝ 2 և այլն։ Այդ գործարանները, ըստ արտադրության ճյուղերի, այսպիսի պատկեր էին ներկայացնում. կաշվի ձեռնարկություններ՝ 40, օճառի՝ 10, ներկարաններ՝ 4, օղեգործական՝ 13, բրուտագործական՝ 11, աղյուսի՝ 11, կրի՝ 9 և այլն։*

---

21 «Сборник статистических сведений...», т. I, 1869, отд. I, стр. 33.

Այդ ձեռնարկությունների արտադրության քանակի, բանվորական ուժի, աշխատավարձի և այլնի մասին պահպանվել են տարբեր ժամանակաշրջանների համար որոշակի, սակայն ոչ լրիվ ու լիարժեք տեղեկություններ։ Դրանք վերաբերում են XIX դարի առաջին երեսնամյակին կամ 1860-ական թթ. կեսերին։ Հիշյալ երկու ժամանակահատվածների միջև ընկած տարիների վերաբերյալ սոսկ հատուկենտ տեղեկություններ են պահպանվել։ Առկա տվյալները վկայում են, որ «գործարան կամ ֆաբրիկա» անվանված ձեռնարկությունները լոկ փոքրիկ արհեստանոցներ էին, որոնցից յուրաքանչյուրի տարեկան միջին արտադրանքի դրամական արտահայտությունը չէր գերազանցում 700 ռուբլուց։ Աշխատանքային օրվա ընդհանուր կարգավորման մասին խոսք չէր կարող լինել։ Սովորաբար աշխատանքային օրվա տևողությունն էր վաղ արշալույսից մինչև ուշ երեկո։ Օրավարձը խիստ չնչին էր. 1850-ական թթ. այն կազմում էր 20—25 կոպեկ, իսկ 60-ական թթ.՝ 30—50 կոպեկ։

Չնայած երկրի տնտեսական հետամնացությանը, քաղաքներում և գյուղերում տարածված մանր արդյունաբերության ծավալը, բանվորների թիվը, արտադրանքի դրամական արտահայտությունը որոշ հիմք են տալիս եզրահանգելու, որ Արևելյան Հայաստանում 1860-ական թթ., հատկապես գյուղացիական ռեֆորմի նախօրեին, դրամա-փոխանակային հարաբերությունները արդեն շոշափելի չափերի էին հասել։

Ռուս-պարսկական 1826—1828 թթ. պատերազմից անմիջապես հետո ռուսական կառավարությունը հատուկ ուշադրություն դարձրեց Արևելյան Հայաստանի հանքային հարստություններից երկուսի՝ աղի և պղնձի արտադրության կազմակերպմանը և ընդլայնմանը։

Աղի արտադրության հիմնական կենտրոնը Կողբ ավանի նշանավոր աղահանքն էր՝ հարուստ պաշարներով և աղի բարձր որակով։ Նախիջևանի մոտակայքի աղահանքերը թե՛ քանակով և թե՛ որակով զիջում էին առաջինին։

Մինչև 1870 թ. գյուղացիական ռեֆորմը երկու աղահանքերի շահագործումն էլ իրականացվում էր կամ մասնավոր կապալառուների, կամ կառավարական օրգանների միջոցով։ Երկու դեպքում էլ աղի հանույթի եղանակի մեջ ոչ մի փոփոխություն տեղի չունեցավ. հանույթը շարունակվում էր կատարվել ձեռքի աշխատանքով։

Կողբի աղահանքերին, իբրև աշխատուժ, կցված էին նույն գյուղի բնակիչներից 123 և Չնչհավատ գյուղից՝ 20 ընտանիք։ Սրանք ազատված էին պետական տուրքերից ու պարհակներից։ Նույն այդ ձևով էր կազմակերպված նաև Նախիջևանի աղահանքերի շահագործումը։ Այստեղ աղահանքերին կցված էին Շիխ-Մահմուդ գյուղից 63 ընտանիք։ Հիշյալ գյուղացիների աշխատանքը չի կարելի, իհարկե, ազատ վարձու աշխատանք համարել. նրանք ավելի շուտ հիշեցնում են ռուսական պոսեսիոն ձեռնարկությունների բանվորներին, որոնք ամբողջ գյուղով հարկադիր կարգով կցված էին լեռնարդյունաբերական գործարաններին և ստանում էին պետության կողմից սահմանված վարձատրություն։ Նույն ձևով էին վարձվում նաև Կողբի աղահանքերի բանվորները։ Համաձայն պաշտոնական տվյալների, Կողբում ամեն մի փութ աղի համար, եթե այն վաճառում էին սայլով, բանվորներին հասնում էր 1

3/4 կոպեկ, իսկ եթե աղը բեռով էր վաճառվում, ապա ավելի քան 2 կոպեկ։ Նախիջևանի աղահանքերի բանվորները վաճառված ամեն մի փութ աղի դիմաց ստանում էին 2 կոպեկից ավելի[22]։

Հայաստանի աղահանքերում մինչև 1868 թ. բանվորները շարունակում էին մնալ հարկադրական աշխատանքի պայմաններում։ Միայն ռեֆորմի նախօրյակին աղահանքերին կցված գյուղացիները ազատվեցին և ընդհանուր կարգով հարկերի ու պարհակների ենթարկվեցին։ Այդ ժամանակվանից էլ այստեղ սկսվեց կիրառվել ազատ վարձու աշխատանքը։

Կողբի և Նախիջևանի աղահանքերը մինչռեֆորմյան շուրջ քառասուն տարիների ընթացքում եկամտի բավական խոշոր աղբյուր եղան ցարական գանձարանի համար։ 1828—1869 թթ. ընթացքում, պաշտոնական վիճակագրական տվյալների համաձայն, Կողբի աղահանքերից ստացված եկամուտը կազմել է 1742887 ռուբլի[23], իսկ ըստ մեկ այլ պաշտոնական տեղեկության՝ Նախիջևանի աղահանքից ստացված եկամուտը տարեկան 20.334 ռուբլի է կազմել[24]։

Որոշակի տվյալներ են պահպանվել նաև արդյունահանվող աղի քանակի մասին։ Եթե 1852 թ. աղի արդյունահանությունը կազմել է 733.403 փութ, ապա 1866 թ. այն հասել է 1.266.131 փթի[25]։

Բերված թվերը ցույց են տալիս, որ 1852—1866 թթ. աղի հանույթի տոկոսային աճը կազմել էր 72,63%։

Ցարական կառավարությունը լուրջ ուշադրություն նվիրեց նաև Հայաստանի պղնձարդյունաբերությանը՝ Ալավերդու և Զանգեզուրի պղնձահանքերին։ Մինչև 1850-ական թթ. պղնձի արդյունաբերության մեջ նույնպես կիրառվում էր հարկադիր աշխատանք. շրջակա գյուղերի բնակիչները կցված էին ձեռնարկություններին և գործարանների համար աշխատանքային կարգախմբեր էին տրամադրում։ Վորոնցովի փոխարքայության տարիներին պղնձարդյունաբերության մեջ մտցվեց ազատ վարձու աշխատանքի սիստեմ։ Այսուհետև պղնձահանքերը կապալով էին տրվում հայ, հույն, գերմանացի արդյունաբերողներին։

1868 թ. պղնձարդյունաբերական 10 ձեռնարկություններում ձուլվել էր 15860 փութ պղինձ, իսկ բոլոր գործող ձեռնարկությունների աշխատողների թիվը հավասար էր 1230-ի, որից հիմնական բանվորներ՝ 656, օժանդակ բանվորներ՝ 574[26]։

Նույն 1870 թ. աշխատողների քանակն այդ բոլոր գործարաններում հասնում էր 987-ի, որից 567-ը հիմնական բանվորական կազմն էր, իսկ մնացյալը՝ օժանդակ[27]։ Ալավերդու, Շամլուղի և Ախթալայի ձեռնարկություններում պղնձի արդյունահանությունը 1857—1870 թթ. ունեցել է ընդամենը 5,3%

---

22 АКАК, т. VII, стр. 95—96.

23 «Сборник сведений о Кавказе», т. II, Тифлис, 1872, стр. 21—22.

24 АКАК, т. XII. стр. 1345.

25 «Сборник статистических сведений о Кавказе», т. I, отд. II, стр. 94.

26 Տե՛ս *О. Е. Туманян*, Экономическое развитие Армении, ч. I, стр. 180—181.

27 Տե՛ս *М. А. Адонц*, Экономическое развитие Восточной Армении в XIX в., стр. 194—197.

աճ, մինչդեռ Զանգեզուրի մեջ մտնող Կավարտի, Ղաթարի, Փիրդոուդանի, Ագարակի և Հալիձորի ձեռնարկություններում այդ աճը հասել է 381,4 %[23]։ Սա բացատրվում է այն հանգամանքով, որ Զանգեզուրի ձեռնարկությունները նոր էին և շատ ավելի արագ տեմպերով էին աճում։ Սակայն վերևում բոլոր բերված տվյալները ցույց են տալիս, որ պղնձարդյունաբերական ձեռնարկությունները տեխնիկական իմաստով միայն քիչ թե շատ ձևավորված մանուֆակտուրաներ էին։

Ինչպես արդեն հիշատակվեց, այս ձեռնարկություններում մինչև 1850-ական թթ. կիրառվում էր կցված գյուղաբնակչության հարկադիր աշխատանքը։ Դրանք, ըստ էության, ճորտական բնույթի պոսեսիոն ձեռնարկություններ էին։ Այսպես, դեռևս 1812 թ. Ալավերդու և Շամլուղի գործարաններին կցված են եղել 282 հայ գյուղացիներ, որոնք, բացի ընդհանուր պարհակներից, տարեկան ութ ամիս պետք է զբաղվեին գործարանային աշխատանքներով։ Կցված գյուղացիները չնչին վարձատրություն էին ստանում, որի հետևանքով էլ նրանց աշխատանքը խիստ անարտադրողական էր[29]։

Արդեն 40-ական թթ. երկրորդ կեսին փոխարքա Մ. Ս. Վորոնցովի «Հաշվետվության» մեջ ասված է, որ «գործարաններին կցված գյուղացիներն ազատվում են հարկադիր աշխատանքից և իշխանությունն այդ գործարանները տալիս է վարձակալության»[30]։

Բանվորների վիճակը խիստ ծանր էր։ Ամենափոքր զանցանքի դեպքում նրանց դաժան պատիժների էին ենթարկում։ Այսպես, Ալավերդու գործարանի բանվորների՝ ձմեռվա ցրտին փայտ կտրելուց հրաժարվելը նկատվում է «բունտ», բանվորները շրջապատվում են զինվորներով ու կազակներով և ցանակոծության ենթարկվում։ Իսկ գործարանի ղեկավարը իր զեկույցում հպարտանում էր, թե «կարողացա բունտը և անհնազանդությունը վերջացնել միայն փայտերով, այլապես բանվորները կարող էին վարպետներին և զինվորական փոքրիկ ջոկատը կացիններով կոտորել...»։ Այդ դեպքն արձագանք է գտնում Փամբակի բնակչության մեջ և բողոքի առիթ տալիս։

Նման իրադարձությունները, իրենց հերթին, չէին կարող չազդել ցարական իշխանավորի վրա, բերել այն համոզման, որ անհրաժեշտ է հրաժարվել վտանգավոր և, դրա հետ միասին, խիստ անարտադրողական հարկադիր աշխատանքի կիրառումից, մանավանդ որ գործարանները վարձակալության էին տրվում տեղական կապիտալիստներին, որով կառավարական օրգանները ազատվում էին ոչ միայն կցված բանվորների դժգոհության թիրախը դառնալուց, այլև բանվորների բավական մեծ չափերի հասնող փախուստի դեպքերից[31]։

Մասնավոր անձերի պատկանող կամ նրանց վարձակալության տրված գործարաններում, հավանորեն նաև պետական ձեռնարկություններում, 50-ական թթ. վերացավ ամրակցված գյուղացիների հարկադիր աշխատանքը։ Օ-

---

28 АКАК, т. V, стр. 287.

29 АКАК, т. X, стр. 363.

30 О. Е. Туманян, նշվ. աշխ., էջ 182—183։

31 Նույն տեղում, էջ 188։

րինակ, Միմխանայում հույն ձեռնարկատիրոջ կողմից գործարան կառուցելու պետական մանրամասն պայմանների մեջ ոչ մի խոսք չի ասվում աշխատուժի մասին։ Ըստ երևույթին դա համարվում էր նրա մասնավոր գործը[32]։

Նույնը, հավանաբար, վերաբերում է նաև Զանգեզուրի հույն և հայ արդյունաբերողներին (եղբայրք Կոնդուրովներ, Մելիք-Ղարագյոզյան, Մելիք-Փարսադանյան, Խոջամիրով, Մելիք-Ազարյան և այլք) պատկանող ձեռնարկություններին։

Գյուղացիական ռեֆորմին նախորդող տասնամյակներին, մասնավորապես 1850—60-ական թթ., բավական անբարենպաստ տնտեսական պայմաններում գտնվող Երևանի նահանգում ևս զարգանում էին ապրանքադրամական հարաբերությունները։ Հայկական գյուղը աստիճանաբար ներգրավվում էր առևտրա-փոխանակային գործառնությունների ոլորտը։ Ձեռնարդյունաբերական արտադրանքը սկսում էր լայն շուկա դուրս գալ։ Հայ առևտրական կապիտալը ներգրավվում էր արդյունաբերական գործունեության ոլորտը բուն Հայաստանի սահմաններից դուրս։ Այն մեծ հոսք կատարեց հատկապես դեպի Բաքու, որտեղ զարգացող նավթարդյունաբերությունը մեծամեծ շահույթներ էր խոստանում նրան։

* * *

Անդրկովկասի միացումը Ռուսաստանին այդ երկրամասի առևտրի զարգացման համար նույնպես նոր հնարավորություններ ստեղծեց։ Այդ բանին խթանող ամենակարևոր ազդակը կյանքի և ունեցվածքի ապահովությունն էր։ Եթե պարսկական տիրապետության ժամանակաշրջանում վաճառականների համար երաշխավորված չէր ո՛չ կյանքի, ո՛չ ունեցվածքի ապահովություն ու անվտանգություն, ապա վիճակը բոլորովին փոխվեց, երբ Անդրկովկասը միացվեց Ռուսաստանին։ Առևտուրը և առևտրականներն այժմ վայելում էին պետության հովանավորությունը, խորտակվում էին ներքին մաքսային պատնեշները, դրամագլուխը գործառնությունների մեջ դնելու լայն հնարավորություններ էին ստեղծվում։ Առևտրական կյանքի զարգացման կարևոր գործոններից էր նաև Անդրկովկասում ռուսական բանակների առկայությունը, որոնց մթերքներ մատակարարելու անհրաժեշտությունը հարստացման նոր աղբյուր էր դառնում։

Առևտրի զարգացմանը առավել ևս խթանեցին անցումը հարկային նոր սիստեմի, այն է՝ բնամթերային հարկի փոխարինումը դրամական հարկով, որը նպաստեց տնտեսության ապրանքայնացմանը, վաճառքի համար տեխնիկական կուլտուրաների ցանքատարածությունների ընդարձակումը և մի շարք այլ գործոններ։

Ռուսական կառավարությունը և նրա պաշտոնատարներն Անդրկովկասում խիստ մեծ նշանակություն էին տալիս առևտրի զարգացմանը և բազմաբնույթ միջոցառումներ էին նախագծում ու մշակում՝ խրախուսելու համար առևտրական դասին և նրա գործունեությունը։ Այսպես, 1812 թ. Վրաստանի

---

32 Տե՛ս *В. Рштуни,* Крестьянская реформа..., стр. 135—136.

կառավարչապետ մարկիզ Պաուլուչչին առաջարկում էր, ելնելով վաճառականների վարած առևտրի ծավալից, նրանց շնորհել Թիֆլիս քաղաքի մոքալաքի կամ քաղքենու, անգամ ազնվականի կոչում[33]։ Այս ծրագիրը իսկապես որ մեծապես կարող էր խթանել անդրկովկասյան առևտրի զարգացմանը։

Դեռ նոր էին Երևանի և Նախիջևանի խանությունները ազատագրվել պարսկական լծից, երբ Պասկևիչը հրահանգեց տեղական իշխանություններին հոգալ Երևանում և Սարդարապատում գրավված բամբակի շահավետ վաճառքի մասին։ Մյուս կողմից նա առաջարկում էր խրախուսել տնտեսական այդ կարևոր կուլտուրայի մշակումը բնակչության կողմից, հավաքել արտադրված բերքի մի մասը «իբրև տուրք», համաձայն տեղական վաղեմի սովորության, և իրացնել այն։ Նա տեղական իշխանությունների ուշադրությունն էր հրավիրում նաև Կողբում աղի հանույթն ընդլայնելու անհրաժեշտության վրա, որպեսզի պետք եղած քանակությամբ աղ արտադրվի և արտահանվի առաջին հերթին Վրաստան։

Ռուսական իշխանությունները ամեն կերպ խրախուսում էին հայ վաճառականների գործուն մասնակցությունը երկրամասի տնտեսական կյանքին, և, միաժամանակ, նշում նրանց խաղացած կարևոր դերն ու հաջողությունները այդ բնագավառում։ Արդեն երեսնական թվականներից ցարական պաշտոնական աղբյուրները հաստատում էին այն իրողությունը, որ հայ առևտրականներն իրենց ձեռքն են առել «Թիֆլիսի և ամբողջ Անդրկովկասի առևտուրը», որ նրանք «կատարում են ամեն տեսակի հանձնարարություններ. գրեթե բոլոր վարձակալությունները նրանց ձեռքին են, նրանք են վերցնում բոլոր կապալները»[34]։ 1840—50-ական թթ. այդ նույն բանն էր շեշտում փոխարքա Մ. Ս. Վորոնցովը, երբ գրում էր Նիկոլայ I-ին, թե հայերը Անդրկովկասում կառավարության գլխավոր ուժերն են կապալների և վարձակալությունների խնդրում[35]։

Ռուսական իշխանության հաստատման առաջին իսկ տարիներից կապալառության սիստեմը լայնորեն օգտագործվում էր ոչ միայն զորքերի մատակարարման և պետական հիմնարկների համար շինություններ կառուցելու գործում. կապալով էին տրվում շատ դեպքերում նաև տուրքերի գանձումը, արդյունատեղիները, արդյունաբերական որոշ ճյուղեր և այլն։ Այսպես, 1808 թ. Բաքվի տուրքերը չորս տարի ժամանակով կապալով տրվում էին հայտնի հայ վաճառական շուշեցի Բաբա Թառումյանին։ Որպես կապալավարձ վճարելով տարեկան 112.500 ռուբլի, նա դրա դիմաց իրավունք էր ստանում գանձել ավելի քան կրկնակին, այսինքն՝ 251.430 ռուբլի[36]։ Հայերի ձեռքին էր գտնվում նաև նավթի, ձկան, աղի, մետաքսի արտադրության կապալը։

Անդրկովկասի առևտրա-արդյունաբերական կյանքում այս շրջանում հատկապես հայ կապալառուների խաղացած դերի վկայությունն է այն ու-

---

[33] АКАК, т. V, стр. 17.

[34] «Обозрение Российских владений за Кавказом», ч. I, СПб., 1836, стр. 199.

[35] АКАК, т. X, стр. 97.

[36] АКАК, т. V, стр. 865.

շադրությունը, որ փոխարքա Վորոնցովը հանդես էր բերում կապալառուներ Արշակունու, Միրիմանյանի, Սվեշնիկյանի, Միրզոյանի նկատմամբ և 1854 թ. իր հաջորդին հանձնարարում հատուկ ուշադրություն դարձնել նրանց վրա, որպես կառավարության համար պիտանի և օգտակար մարդկանց[37]։ Հայ կապալառուներից շատերը ռուս-պարսկական 1826—1828 թթ. պատերազմի տարիներին իրենց ձեռքն էին վերցրել ամբողջ զորքի մատակարարումը։ Սակայն սրանց գործունեությունը Երևանի նահանգում լայն ծավալում չստացավ, որովհետև այդ նահանգը դուրս մնաց առևտրական տարանցիկ ճանապարհների շրջագծից։

1840-ական թթ. Արևելյան Հայաստանի առևտուրը սկսում է որոշակի աշխուժացում ապրել։ Արտահանության հիմնական առարկաները մնում էին տեղում արտադրվող գյուղատնտեսական մթերքները՝ բամբակը, բրինձը, չոր մրգերը և այլն։ Արտաքին առևտրական կապերը բավական աշխույժ էին Պարսկաստանի և Թուրքիայի հետ։ Վերջինիս հետ առևտուրը կատարվում էր Օրդուի և Ալեքսանդրապոլի մաքսային վարչությունների միջոցով։ 1840-ական թթ. երկրորդ կեսին Թուրքիա էր արտահանվել մոտ 800.000 ռուբլու (արժաթով) և ներմուծվել շուրջ 850.000 ռուբլու (արժաթով) ապրանք։ Արտահանվել էին բամբակ, բրինձ (400.000 ռ. գումարով), չմշակված կաշիներ, ծխախոտ և այլ ապրանքներ։ Ներմուծվել էր շինարարական փայտ, անասուններ, աղած ձուկ, հաց և այլն։

Բավական ծավալուն էր քաղաքային առևտուրը, որի հիմնական օջախներն էին Երևանը և Ալեքսանդրապոլը։ Թուրքիայի հետ կատարվող առևտրի հանգուցակետը Ալեքսանդրապոլն էր։ 1863 թ. հիշյալ քաղաքի վրայով Թուրքիա էր արտահանվել 350.000 ռուբլու (արժաթով) արտադրանք։ Երևանի առևտուրը հիմնականում կենտրոնացած էր քաղաքի շրջանակներում, բայց երբեմն ծավալվում էր մինչև Թիֆլիս և դրանով իսկ դուրս գալիս անդրկովկասյան շուկա։

Ըստ վիճակագրական տեղեկությունների, Երևանի նահանգի հինգ քաղաքների ներքին առևտրի շրջանառության գումարը կազմում էր 969.000 ռուբլի, իսկ քաղաքներից և նահանգից դուրս կատարվող առևտրինը՝ 50.000 ռուբլի։ Ամբողջ առևտրի գումարը կազմում էր 1.819.000 ռուբլի[38]։

Եթե 1820-ական թթ. վերջերին Հայկական մարզում ապրանքաշրջանառության տարեկան միջին գումարը կազմում էր 4 մլն. ռուբլի, ապա 1864 թ. Երևանի նահանգում այն կազմում էր շուրջ 10 մլն. ռուբլի, այսինքն՝ ավելացել էր 2,5 անգամ[39]։ Զարգացող առևտրական գործարքներին սկսում է իր մասնակցությունը բերել նաև գյուղացիությունը։ 1865 թ. քաղաքներում առևտուր անելու համար գյուղացիները վերցրել էին 305 վկայական, որից առաջին կարգի՝ 6, երկրորդ կարգի՝ 10 և երրորդ կարգի՝ 289։ Սրանց առևտուրը գլխավորապես կենտրոնացած էր Երևանում, Շուշում և Ալեքսանդրապոլում, ընդ որում Երևանում առևտուր անելու համար վերցված էր 105 վկա-

---

37 АКАК, т. X, № 71.

38 «Сборник статистических сведений...», т. I, отд. I, стр. 28—60.

39 Տե՛ս M. Адонц, նշվ. աշխ., էջ 217։

յական, Ալեքսանդրապոլում՝ 116։ Մյուս քաղաքներից Նախիջևանի համար տրված էր՝ 60, Օրդուբադի համար՝ 12 վկայական և նույնքան էլ Նոր Բայազետի համար։

Այդ վկայականները տրված էին բամբակ վաճառելու իրավունքի համար՝ Երևանում և Նախիջևանում, մրգերի վաճառքի համար՝ Երևանում և Օրդուբադում, խոշոր եղջերավոր անասունների, կաշիների, ոճառի և օղու համար՝ Ալեքսանդրապոլում, մետաքսի համար՝ Օրդուբադում, աղի համար՝ Նախիջևանում, այգեգործության, հողագործության և բանջարաբուծության արդյունքների համար՝ Նոր Բայազետում[40]։

Անդրկովկասը կայսրության համար շահավետ դարձնելու մտահոգությունը դրդում էր երկրամասի իշխանություններին բարյացակամ վերաբերմունք ցույց տալ դեպի տեղական առևտրական դասի գործունեությունը։ Բայց երբ տեղական, մասնավորապես հայ վաճառականները, փորձում էին ռուսական կապիտալի գործունեության շրջանակները սահմանափակել, հանդիպում էին իշխանությունների վճռական հակահարվածին։

Այսպես, 1847 թ. Մոսկվայի մի շարք խոշոր գործարանատերեր և վաճառականներ Թիֆլիսում հիմնեցին «առևտրական դեպո», որի միջոցով Մոսկվայի, Վլադիմիրի և Նիժնի Նովգորոդի տոնավաճառի ապրանքները վաճառահանվում էին Անդրկովկաս։ Այդ «դեպոն» միաժամանակ այստեղից Ռուսաստան էր արտահանում տորոն, մետաքս, բամբակ, սոդա և այլն։ Հենց այդ նույն տարում հայ վաճառականները փոխարքայի մոտ միջնորդություն հարուցեցին, որպեսզի «դեպոյին» արգելվի մանրածախ առևտրով զբաղվել։ Նրանց խնդիրը ոչ միայն մերժվեց, այլև վերջիններիս հասկանալ տվեցին նրման դիմումի անտեղի լինելը[41]։ Չնայած կառավարության հովանավորությանը, ստեղծված աննպաստ պայմանների պատճառով 1852 թ. «դեպոն» փակվեց։

Նույն գիծն էր տարվում նաև մաքսային քաղաքականության բնագավառում, երբ բախվում էին ռուսական և տեղական առևտրական դասի շահերը։ 1821 թ. ռուսական կառավարությունը մտցրեց մաքսային բարձր տարիֆներ, որոնցով գրեթե արգելվում էր արտասահմանյան արդյունաբերական այնպիսի ապրանքների ներմուծումը Ռուսաստան, որոնց արտադրությունն արդեն սկսված էր տեղում։ Ռուսական արդյունաբերական կապիտալի անարգել զարգացումն ապահովող այդ միջոցառումը Անդրկովկասի վրա չտարածվեց, քանի որ ռուսական արդյունաբերությունը դեռևս անկարող էր սպասարկել նրա պահանջները։ Մերձավոր և Միջին Արևելքի շուկաներում ռուսական կապիտալը դեռևս չէր կարող մրցել եվրոպական կապիտալի հետ։

Այդ պատճառով էլ դեռևս 1821 թ. վերջերին Անդրկովկասի համար մշակված էր մաքսային քաղաքականության բոլորովին այլ գիծ, որը շահավետ պայմաններ էր ստեղծում եվրոպական ապրանքները Անդրկովկաս ներմուծելու և ապա Պարսկաստան ու Թուրքիա արտահանելու համար։ Անդրկովկաս ներմուծվող ապրանքներից գանձվում էր 5 տոկոս մաքս, իսկ

---

40 Նույն տեղում, էջ 212։

41 АКАК, т. X, стр. 188—195.

Պարսկաստան առաքվող ապրանքների համար հաստատվում էր անմաքս տրանզիտ։

Մաքսային նման քաղաքականության շնորհիվ հետագա տասը տարիների ընթացքում կրկնապատկվեց Անդրկովկասի արտաքին առևտրի շրջանառությունը, որի ընդհանուր գումարը հասավ 2462700 ռուբլու[42]։ Արտաքին առևտրի ասպարեզում գլխավոր դերը խաղում էին հայ վաճառականները, որոնք առևտրական կապեր հաստատեցին եվրոպական խոշոր շատ քաղաքների հետ և, մասնավորապես, Լայպցիգի տոնավաճառի հետ։

Բայց 1821 թ. այդ արտոնյալ տարիֆը և դրա շնորհիվ եվրոպական ապրանքների առատ ներհոսքը Անդրկովկաս, մասամբ նաև Ռուսաստան, բացասական նշանակություն ունեցավ ռուսական արդյունաբերական բուրժուազիայի համար։ Ուստի և վերջինս համառորեն ձգտում էր այն բանին, որպեսզի Անդրկովկասի վրա ևս տարածվի մաքսային տարիֆը՝ կազմված հովանավորողական մաքսային քաղաքականության ոգով, որը նպաստում էր ռուսական բուրժուազիայի շահերին և անտեսում անդրկովկասյան բուրժուազիայի և նրա գլխավոր ներկայացուցչի՝ հայ առևտրական կապիտալի շահերը։ Ռուս բուրժուազիային 1821 թ. մաքսադրույքի վերացումը հաջողվեց միայն շնորհիվ տևական համառ պայքարի և ֆինանսների մինիստր Կանկրինի աջակցության։ «1831 թվականի կանոնադրությամբ Անդրկովկասը մտցվեց Նիկոլայ 1-ի կառավարության հովանավորողական մաքսային քաղաքականության շրջանագծի մեջ և դարձավ ռուսական արդյունաբերության արտադրանքի վաճառահանման ներքին շուկա»[43]։

Վերոհիշյալ կանոնադրությամբ 5 տոկոս մաքսային դրույքը ուժի մեջ թողնվեց միայն ասիական ապրանքների ներմուծման համար։ Եվրոպական ապրանքների ներմուծումն Անդրկովկաս թույլատրվում էր միայն սևծովյան նավահանգիստներից։ Այդ ապրանքներից մաքս վերցվում էր ընդհանուր հիմունքներով, համաձայն Ռուսաստանում սահմանված բարձր մաքսային տարիֆների։ Արգելվում էր արտասահմանից ներմուծել ռուսական արդյունաբերության համար ոչ ձեռնտու ապրանքներ։ Արտասահմանյան ապրանքների ներմուծումը Անդրկովկասի վրայով Ռուսաստան՝ խստիվ արգելվում էր։ Բայց միաժամանակ թույլատրվում էր առանց մաքսի Անդրկովկասից արտածել ռուսական և տեղական ապրանքներ։

Ապարդյուն անցան Անդրկովկասի վաճառականների և առաջին հերթին հայ առևտրական կապիտալի ներկայացուցիչների բոլոր միջնորդությունները այս կամ այն ձևով երկարաձգել կամ գեթ մասամբ պահպանել նախորդ մաքսային սիստեմը։ Սակայն 1831 թ. գրեթե արգելիչ մաքսային տարիֆը չտվեց այն արդյունքները, ինչ որ ակընկալում էին նրանից ցարական կառավարությունը և ռուսական բուրժուազիան։ Այն ավելի քան բացասական հետևանքներ ունեցավ, քանի որ Թիֆլիսի փոխարեն Եվրոպայի և Միջին Արևելքի միջև կատարվող առևտրի կենտրոն դարձավ Տրապիզոնը։ Ան-

---

42 Տե՛ս М. А. Адонц, նշվ. աշխ., էջ 222։

43 *М. К. Рожкова*, Экономическая политика царского правительства на Среднем Востоке во второй четверти XIX в. и русская буржуазия, М., 1949, стр. 93.

հրաժեշտություն առաջացավ միջոցներ ձեռնարկել նախկին իրավիճակը վերականգնելու համար։ Ուստի և ռուսական կառավարությունն այն եզրակացությանը հանգեց, որ անհրաժեշտ է 1831 թ. արգելիչ մաքսային սիստեմը վերացնել և եվրոպական ու ասիական տրանզիտային առևտրի համար նոր կանոններ հաստատել, ինչ և արվեց 1846 թ. վերջերին։

Նոր կանոնադրությամբ թույլատրվում էր եվրոպական և ասիական ապրանքների տրանզիտն Անդրկովկասի վրայով, իջեցվում էին եվրոպական ապրանքներից գանձվող մաքսերը։ Բայց նախկին նպաստավոր իրավիճակը այլևս չվերականգնվեց։ Արևմտաեվրոպական տերություններին հաջողվել էր Տրապիզոնի վրայով շահավետ առևտրական ուղիներ հարթել դեպի Մերձավոր ու Միջին Արևելքի շուկաները։ Առավել ևս Ռուսաստանի համար աննպաստ իրավիճակ ստեղծվեց Ղրիմի պատերազմի տարիներին, երբ դադարեց եվրոպական ապրանքների ներմուծումն Անդրկովկաս։

Ցարական կառավարությանը հեշտությամբ չհաջողվեց ռուսական կապիտալի համար ձեռնտու պայմաններ ստեղծել Անդրկովկասում և տեղական կապիտալը ամբողջությամբ ծառայեցնել պետության շահերին։ Առավել ևս մեծ դժվարությունների հանդիպեց նա Թուրքիայի և Պարսկաստանի շուկաների նվաճման ասպարեզում եվրոպական կապիտալի հետ մրցելիս։ Այսպիսով, մինչռեֆորմյան տարիներին ռուսական կապիտալին չհաջողվեց ամբողջովին տիրանալ անդրկովկասյան շուկային։ Այստեղ բավական մեծ դեր էր խաղում եվրոպական կապիտալը։ Ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, Կովկասի և Անդրկովկասի տնտեսական նվաճումը ռուսական բուրժուազիայի կողմից տեղի ունեցավ միայն հետռեֆորմյան տարիներին։

ԳԼՈՒԽ ՈՒԹԵՐՈՐԴ

# ԱՐԵՎՄՏԱՀԱՅԵՐԻ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԵՎ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ 1830—1860-ԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԻՆ

## 1. ՌԵՖՈՐՄՆԵՐԸ ԹՈՒՐՔԻԱՅՈՒՄ

XIX դարի երկրորդ քառորդին սուլթանական Թուրքիան շարունակում էր մնալ որպես հետամնաց ագրարային երկիր, տրոհված տնտեսապես իրար հետ քիչ կապված կիսանկախ փաշայությունների ու դերեբեյությունների։ Կիլիկիայում և Արևմտյան Հայաստանում կենտրոնական իշխանությունը կորցրել էր իր նախկին ազդեցությունը. սուլթանները մտահոգված էին կայսրության կենտրոնացման խնդրով։ Թուրքիայի ներսում հզորացող կենտրոնախույս ուժերի ոչնչացումը, անկախություն նվաճած իշխանությունների վերացումը, երկրի շատ նահանգների վերանվաճումը հրամայական պահանջ էին դարձել։ Ռեֆորմների խիստ կարիք էր զգացվում։

XIX դարի առաջին քառորդի մասնակի բարենորոգումները, կայսրությունում ծավալվող հարատև զինաբախումները կանխելու, կենտրոնախույս ուժերը հպատակեցնելու, բանակն ու ոստիկանությունը վերակազմելու սուլթանների բազմաթիվ փորձերը քիչ արդյունք էին տվել։ Այդ պատճառով էլ 1830—50-ական թթ. հրապարակվում են նոր ռեֆորմներ, որոնց իրագործման համար ավելի նպաստավոր պայմաններ էին ստեղծվել։

Պետության հենարաններ էին դարձել այն նոր հողատերերն ու սեղանավորները, որոնք կալվածքներ ու հարստություն էին դիզել հարկերի կապալառման, առևտրա-վաշխառուական ճանապարհով։ Սակայն կալվածքների ու իրավունքների ընդարձակման սրանց ցանկությանը դիմագրավում էր ֆեոդալական հին վերնախավը, ուստի և առաջինները սուլթանին համոզում էին զենքի ուժով հպատակեցնել ապստամբ հողատերերին, քրդական մանր ու խոշոր խաներին, բեկերին, ապակենտրոնացման քաղաքականություն վարող Թուրք փաշաներին։ Ռեֆորմներով խիստ շահագրգռված էին արդյունաբերողներն ու առևտրականները, որովհետև կյանքի ու գույքի ապահովության բացակայության պայմաններում անհնար էր ընչաքաղց ֆեոդալներից պաշտպանել սեփական ունեցվածքը, քարավանները փրկել կողոպտվելու վտանգից, տնտեսապես կամրջել երկրի ասիական ու եվրոպական մարզերը։

Տեղական ֆեոդալներից դժգոհ էին նաև նրանց կամայականություններից տուժող գյուղացիությունն ու քրիստոնյա բնակչությունը։ Պետության և ֆեոդալների հակամարտության և դրան հաջորդող ու անցկացվելիք ռեֆորմների շրջանում գյուղացիական զանգվածները ամենից ավելի էին տուժում ֆեոդալական մասնատվածությունից, ուստի և շահագրգռված էին պետության վարած կենտրոնացման քաղաքականությամբ։ Նման պայմաններում կայսրության կենտրոնացման փորձեր սկսեց Մահմուդ II-ը, որի խորհրդականն էր Մեհմեդ Ռեշիդ փաշան՝ Թուրքիայի եվրոպականացման կողմնակիցների պարագլուխը։ 1826 թ. ոչնչացնելով ենիչերիներին, Եվրոպայից հրավիրված ռազմագետների օգնությամբ սուլթանը վերակառուցեց կայսրության ցամաքային և ծովային զինված ուժերը։

Այս վերափոխումները Մահմուդ II-ին հնարավորություն տվեցին սկսել քրդական դերեբեյությունների նվաճման և կամակոր ֆեոդալների հպատակեցման գործը։ Սակայն շուտով սուլթանի առջև նոր խնդիրներ ծառացան։

Հունաստանի անկախությունից հետո, Թուրքիայի տիրապետության տակ մնացել էին Էգեյան ծովի հունաբնակ երկու կղզի՝ Կանդիան և Սամոսը։ 1831 թ. այս կղզիների բնակիչների ազատագրական պայքարն ավելի ուժեղացավ։ Չկարողանալով սեփական ուժերով հպատակեցնել ապստամբներին, որոնց հովանավորում էր Եվրոպան, սուլթանը դիմեց Եգիպտոսի փոխարքա Մուհամեդ Ալիի օգնությանը, որից մերժում ստացավ։ Տեղի ունեցան, սակայն, անսպասելի այլ իրադարձություններ։

Օգտագործելով Ալժիրի բնակչության հակաթուրքական տրամադրությունները, Ֆրանսիան առանց մեծ դժվարությունների նվաճեց այդ երկիրը։ Ապստամբում էր Ալբանիան, անկախություն ձեռք բերելու փորձեր էին անում Սիրիան ու Իրաքը։ Սակայն թուրքական կայսրության ամենից ուժեղ թշնամին դարձավ մարտունակ բանակ ունեցող Եգիպտոսը՝ փոխարքա Մուհամեդ Ալիի և նրա որդի Իբրահիմ փաշայի գլխավորությամբ։

1832 թ. օգոստոսի 11-ին Իբրահիմ փաշան գրավեց Ադանան, առանց դիմադրության հանձնվեց նաև Կիլիկիայի մեծ մասը՝ բացի Զեյթունից ու Կոզան-օղլուների մի քանի բերդամրոցներից։ Հալեպի Մեհմեդ փաշան ստիպված նահանջեց Մալաթիա, Իկոնիայի նահանգապետ Ալիշն անցավ Կիպրոս։ Տարեվերջին արդեն Եգիպտոսի փոխարքայի տիրապետության տակ էին Կիլիկիան ու Սիրիան։

Դրությունը փրկելու համար Մահմուդ II-ը 1832 թ. օգոստոսի 31-ին Մեհմեդ Ռեշիդ փաշային նշանակեց մեծ վեզիր, նրան տվեց զորքի գլխավոր հրամանատարությունը և հանձնարարեց կասեցնել եգիպտական բանակի առաջխաղացումը։

Ռեշիդ փաշան վերակազմեց բանակը, զորքի թիվը հասցնելով 80 հազարի, պատրաստվեց դիմադրության։ Սակայն Իբրահիմ փաշան 1832 թ. մայիսի 27-ին գրավեց Աքքան, ապա Դամասկոսը, Հալեպը, Հոմսը։ Կայսերական բանակը Անտիոքի ու Ալեքսանդրիայի միջև ընկած Բեյլանի դաշտում եգիպտացիների հետ ունեցած ճակատամարտում պարտություն կրեց և դեկտեմբերի 31-ին Ռեշիդ փաշան գերի ընկավ։

Եգիպտական բանակը առաջ էր ընթանում, նպատակ ունենալով վերջին
հարվածը տալ Կոստանդնուպոլսին, կործանել Թուրքական կայսրությունը։
Կայսրության համար ստեղծված այսպիսի ծանր պայմաններում սուլ-
թանի խնդրանքով փոխ-ծովակալ Լազարևի հրամանատարությամբ ռուսական
մի նավախումբ դուրս եկավ Բոսֆոր և իր պաշտպանության տակ առավ մայ-
րաքաղաքը։ Անգլիան ու Ֆրանսիան վախենալով, որ Ռուսաստանը օգտա-
գործելով նպաստավոր առիթը կարող է ամրանալ նեղուցներում, Եգիպտո-
սին հարկադրեցին Թուրքիայի հետ հաշտություն կնքել։ Սակայն մինչև Բոս-
ֆորից ռուսական դեսանտի հեռանալը՝ 1833 թ. հուլիսի 8-ին Ռուսաստանի
և Թուրքիայի միջև կնքվեց Ունքյար-Իսքելեսի պաշտպանական-դաշնակցա-
յին պայմանագիրը՝ 8 տարի ժամկետով։ Այդ պայմանագրով Թուրքիան
պարտավորվեց նեղուցները փակել ոչ սևծովյան պետությունների ռազմա-
կան նավերի առաջ։ Այդպիսով, եթե ռուսական զինված ուժերի միջամտու-
թյունը Թուրք-եգիպտական պատերազմին Օսմանյան կայսրությանը փրկեց
կործանումից, ապա Ունքյար-Իսքելեսի դաշնագիրը նպաստեց միաժամա-
նակ Մերձավոր Արևելքում ռուսական ազդեցության նկատելի ուժեղացմանը։

Եգիպտական գերությունից ազատվելուց հետո Ռեշիդ փաշան նշանակ-
վեց Սեբաստիայի կառավարիչ. սուլթանը Սեբաստիան դարձրեց կառավա-
րական զորքի բանակատեղի և հանձնարարեց Ռեշիդ փաշային հպատակեց-
նել Փոքր Ասիայի և Արևմտյան Հայաստանի քրդական ապստամբ դերեբեյ-
ներին, որոնցից շատերը 1830—34 թթ. օգնության ձեռք էին մեկնել եգիպ-
տական զորքերին։

Մ. Ռեշիդ փաշան նախ համալրեց բանակը, կազմեց գործողության ծր-
րագրեր և 1834 թ. գարնանը սկսեց իր արշավանքը։ Սև ծովից դեպի Պարս-
կաստան տանող առևտրական մայրուղին մաքրելու նպատակով նա անցավ
Տավրոսի լեռները, այնտեղից Տրապիզոն, ապա Էրզրում ու Բայազետ, ո-
չընչացրեց մի շարք ավազակախմբերի, նշանակեց պահակակետեր, դրանով
իսկ շահելով Հայաստանի առևտրականների, արհեստավորների համակրանքը։

Քսան հազարանոց Թուրքական բանակը, փաստորեն, վերանվաճեց քըր-
դական բեկերին հպատակված շրջանների մեծ մասը[1]։ Առաջին և լուրջ դի-
մադրությունը եղավ Ռևանդուզում։ Ջնյած քրդական աշիրեթների կատաղի
դիմադրությանը, Ռեշիդի բանակը հաղթանակ տարավ, գերեվարեց քուրդ բե-
կին և ուղարկեց Կ. Պոլիս։ Ռևանդուզի բեկը կաշառվելով սուլթանի խոստում-
ներով վերադարձավ Ջեզիրե և իր կողմնակից ցեղախմբերով միացավ կա-
ռավարական բանակին։ Նրա դասալքումը, սակայն, ավելի բորբոքեց թշնա-
մությունը, և պատերազմը երկու կողմից առավել արյունալի դարձավ։

1836 թ. Ռեշիդ փաշայի գլխավորությամբ Խարբերդի մոտակայքում տե-
ղի ունեցավ խոշոր ճակատամարտ։ Քրդերի հզոր ցեղապետ Ջոթելզադե Հա-
ճի խանը, մեծ բազմությամբ, երկու ամիս շարունակ կատաղի դիմադրում էր
օսմանյան բանակին։ «...Տեղացի հայերը եռանդուն աջակցություն ցույց տվին
Ռաշիտ փաշին, մինչև որ նա ... կարողացավ... Եփրատն անցնելով՝ Քար-

[1] Տե՛ս А. Карцов, Заметки о курдах, Тифлис, 1896, стр. 15—16.

րերդ մտնել»[2]։ Խարբերդի ու Չարսանջակի քուրդ բեկերը կալանավորվեցին և խիստ պատժվեցին։ «Կրակով ու արյունով» Արևմտյան Հայաստանի հարավային շրջաններով անցնող Ռեշիդ փաշան բարբարոսության դեմ կռվում էր բարբարոսաբար։ Նշենք, սակայն, որ հաշվի առնելով կայսրության շահերը, նա օգտագործում էր տեղի հայ բնակչությանը և նրանց նկատմամբ բարյացակամ էր տրամադրված։

Հավաքելով Խարբերդի հայ մեծատուններին, Ռեշիդը նրանց առաջարկում է, անջատվել քրդերից, թողնել գավառը և տեղափոխվել Դիարբեքիր, որտեղի քրդերը կտարագրվեին Չարսանջակ և Դերսիմ։ Նա խոստանում էր զենք բաժանել հայերին, նույնիսկ հայ փաշա նշանակել։ Առաջարկը դրվում է հայ վերնախավի երեքօրյա խորհրդակցության քննարկման և մերժվում։ Խարբերդցի ու չարսանջակցի հայերը մնում են տեղերում, իսկ քրդերից տարագրվում են միայն ապստամբության մասնակիցները։

Սուլթանին ձեռնտու էր թուրք փաշաների և քուրդ ապստամբ բեկերի հյատակեցումը, բայց ոչ ոչնչացումը։ Տարագրվածներին նա հողեր, արոտավայրեր էր բաշխում, փոխարենը պահանջելով զինված զորաջոկատների կազմակերպում՝ կայսերական բանակում ծառայելու համար։ Սակայն պետք է հպատակեցվեին նաև Բիթլիսը, Բայազետը, Վասպուրականը։ Ռեշիդը ձգտում էր իրականացնել իր ծրագրերը, բայց 1837 թ. հունվարին նա մահացավ։

Ռեշիդին հաջորդեց չերքեզ Հաֆըզ փաշան, որը շարունակեց արշավանքն Արևմտյան Հայաստանում։ Նա այդ ընթացքում 15 հազար քուրդ ոչնչացրեց, վեց հազար ընտանիք գերեվարեց։ Դիարբեքիրում սրանց հողեր տվեց ու հիմնավորեց այստեղ, զորանոցներ կառուցեց, ապա զորքի թիվը հասցնելով 24 հազարի, անցավ Ալաճա-դաղ։

Կառավարությանը չենթարկվող քրդական բազմաթիվ քոչվոր աշիրեթներ բարձրացել էին Անտիտավրոսյան Ալաճա-դաղի բարձունքները և ամուր դիրքեր գրավելով սպասում էին թուրքական բանակին։ 1837 թ. օգոստոսի 8-ին 12 ժամ տևող ճակատամարտում թուրքական բանակը 800 զոհերի գնով գրավեց լեռը։ Քուրդ ապստամբները 1500 մարդ կորցնելով՝ անձնատուր եղան։

Չերքեզ փաշան շատ դաժան վարվեց քրդերի հետ։ Նա գերեվարեց 4000 քրդերի, որոնց իջեցնելով լեռներից, Ալաճա-դաղի ստորոտների հրակեզ ավազուտների միջով, գրեթե մերկ քշեց դեպի Մալաթիա ու շրջակա գյուղերը՝ ստիպելով հնազանդության անցնել։ Եվրոպացի ուղևոր ականատեսի վկայությամբ «արցունքներն ու հեկեկանքները կիներում, լացը ծծկեր տղոց, կըտոր-կտոր կընեին սիրտդ։ Այս չորս հազար քյուրտերը, ամենասոսկալի տառապանքներու մատնված, երևակայել կուտան ինծի Տանդեի Դժոխքին դատապարտյալներուն տանջանքը»[3]։ Ժողովրդական զանգվածներին, հատկապես քրիստոնյա աշխատավորությանը այնքան վիշտ ու տառապանք պատճառող քուրդ դերեբեյներին, մանր ու խոշոր բեկերին ծնկի բերելը թեպետ դրական քայլ էր, սակայն կառավարությունը չափից ավելի դաժան էր վարվում քոչ-

---

2 Անդրանիկ, Տերսիմ, ճանապարհորդություն և տեղագրություն, Թիֆլիս, 1901, էջ 53։

3 «Մանզումե», 1912, սեպտեմբեր 11/24, № 2629։

վորական կյանքով ապրող քրդերի հետ։ Տասը տարվա ընթացքում Հարավային Հայաստանի ու Կիլիկիայի քրդահպատակ շրջանները վերածվել էին արյան ծովի։ Արևմտյան Հայաստանի քրդահպատակ, շերտընդմեջ քրդերով բընակեցված գավառները ևս դաժան ավերածության ենթարկվեցին և տնտեսապես քայքայվեցին։ Հայ ժողովուրդը ընկավ ծանր վիճակի մեջ։

1830-ական թթ. վերջերին կրկին սրվեցին մեծ տերությունների միջև եղած հակասությունները Կոստանդնուպոլսի և նեղուցների շուրջը։ Օգտվելով անգլո-ֆրանս-ռուսական հակամարտություններից, Պրուսիան Թուրքիա է ուղարկում ռազմական մասնագետներ, մեծ թվով խորհրդականներ։ 1837 թ. Անատոլիա է գալիս Հելմուտ ֆոն Մոլտկեն, գործակցում Հաֆըզ փաշային, վերակառուցում և համալրում թուրքական բանակը։ Գերմանական խորհըրդականների օգնությամբ թուրքական զորաջոկատները հպատակեցնում են Սինջար գավառը և շարունակում արշավանքը[4]։ Ապա նրանք անցնում են Բարձր Հայք, արյունահեղությամբ հնազանդեցնում քրդական մանր ցեղախմբերին և 1838 թ. վերադառնում Մալաթիա։ Սուլթանի կողմնակիցները նպատակ ունեին այստեղից անցնել Կիլիկիա և ապա արշավել դեպի Եգիպտոս՝ Մուհամեդ փաշային վերջնականապես ընկճելու համար։ Բայց մինչ այդ, անհրաժեշտ էր ամրապնդել թիկունքը, բարձրացնել բանակի մարտունակությունը, որոշ հանգիստ տալ նրան, կանխել տարածվող հիվանդությունները։ Թուրքական փաշաները բեկերին, թիմարների, զեամեթների, խոշոր կալվածքների տեր աղաներին զրկում էին քաղաքական, վարչական իրավունքներից և սրանց տեղը նշանակում մայրաքաղաքից առաքված, կառավարությանը հավատարիմ նոր կառավարիչներ՝ սանջակբեյեր, կայմակամներ։

Տակավին նորակազմ, փոքրաքանակ բանակը ի վիճակի չէր իհարկե իսկույն հպատակեցնել Բիթլիսի, Վասպուրականի, Տարոնի քրդական ռազմունակ խոշոր ցեղապետերին, ինչպես նաև ասորիներին, մինչդեռ առանց այդ խնդիրը լուծելու չէր կարելի արշավել Եգիպտոս։ Եվ ահա սուլթանի կողմնակից փաշաները դիմում են դիվանագիտական միջոցների։ Նրանք իրենց մոտ են հրավիրում Բիթլիսի, Հեքյարիի, Ջեզիրե-Բոհտանի, Մոկսի և այլ գավառների քուրդ դերեբեյներին, հավաստիացնում են, որ ճանաչում են վերջինների իշխանությունը, անկախության ֆերմաններ են բաժանում և փոխարենը պահանջում ձևական հպատակություն։ «Սուլթան Մահմուտը յուրեմաներե կազմված ժողով մը կըրկե Հայաստան և Քյուրդիստան, կգծե ամեն մեկ տերե-պեյիի իշխանության սահմանը, ու կըճանչնա այդ իշխանությունները իրավասու՝ ամեն մեկը իր սահմանին մեջ։ Տերե-պեյական իշխանությունները այսպիսով է, որ կունենան իրենց անկախության ֆերմանները»[5]։ Բիթլիսը, Հեքյարին, Վանը, Բոհտանը, Բայազետը, Մոկսը, Շատախը շարունակում էին պաշտպանել իրենց նախկին արտոնությունները։

Հաֆըզ փաշան զորքերի թիվը հասցնելով 70 հազարի, Մալաթիայից անցավ Կիլիկիա և պատրաստվեց ճակատամարտի եգիպտական փոխարքայի

4 Մ. Գ. Ներսիսյան, Հայ ժողովրդի ազատագրական պայքարը թուրքական բռնապետության դեմ, Երևան, 1955, էջ 80։ Տե՛ս նաև *Троттер*, Мало-Азиатские курды, Тифлис, 1886, стр. 24.

5 Հ. Շահպազյան, Քուրդո-հայ պատմություն, Կ. Պոլիս, 1911, էջ 64։

դեմ։ 1839 թ. հուլիսի 24-ին Հյուսիսային Սիրիայում, Նիզբիի մոտ, տեղի ունեցավ թուրք-եգիպտական բանակների ճակատամարտը[6]։ Սուլթանական ցամաքային բանակը ջախջախվեց, նավատորմը կես ճանապարհին հանձնվեց եգիպտացիներին։ Բանակի կորստյան լուրն առնելով, սուլթանը կաթվածահար եղավ ու մահացավ։ Գահ բարձրացավ 16-ամյա, թուլակամ, սահմանափակ ընդունակությունների տեր Աբդուլ Մեջիդը։ Մայրաքաղաքում ուժեղացավ պայքարը հնամոլ ու նորի կողմնակից թուրքերի միջև։ Պետության թուլությունից օգտվելով Անատոլիայում կրկին գլուխ բարձրացրին քուրդ դերեբեյները։

Նիզբիի պարտությունից հետո Թուրքիայի համար ստեղծվեցին նաև արտաքին անբարենպաստ պայմաններ։ Ներքին ու արտաքին ծանր կացությունից դուրս գալու, կայսրության ինքնուրույնությունը պաշտպանելու միակ միջոցը համարվեց բարեփոխություններ անցկացնելը։

1839 թ. Լոնդոնից Կ. Պոլիս վերադարձավ Մուստաֆա Ռեշիդ փաշան, որին վիճակված էր բացելու «Թանզիմաթի» դարագլուխը։ Օգտվելով նպաստավոր պայմաններից, արտաքին գործերի մինիստրի պաշտոնում նշանակված Ռեշիդ փաշան և նրա կողմնակիցները սուլթանին ստիպեցին 1839 թ. նոյեմբերի 3-ին ստորագրել ռեֆորմների ծրագիրը, որը կոչվեց Գյուլխանեի Հաթթը-շերիֆ (Վարդաստանի հրովարտակ)[7]։

Հաթթը-շերիֆը պետության այլազգի և մյուս հպատակներին խոստանում էր պատվի, ունեցվածքի և կյանքի ապահովություն, որոշ փոփոխություններ հարկատվության սիստեմում։ Կայսրահպատակ այլազգիները բանակում ծառայության թույլտվություն էին ստանում, կանոնավորվում էր զինվորական ծառայության ժամկետը։

Հաթթը-շերիֆի հրապարակումով ռեշիդականները նպատակ ունեին հըպատակ այլազգիների բախտով առերես հետաքրքրվող, իրականում նրանց մանրադրամի տեղ ծառայեցնող եվրոպական պետություններին հավաստիացնել, թե կայսրության կյանքում լուրջ փոփոխություններ են եղել, հետևաբար և կարիք չկա Արևմուտքի նոր միջամտություններին։ Սակայն ամենաէականն այն է, որ նրանք շահում էին այլազգիների համակրանքը, վերջիններիս մեջ հենարաններ գտնում կենտրոնախույս տրամադրություններով համակված իրենց ռեակցիոն հակառակորդների՝ թուրք խոշոր հողատերերի ու քուրդ ցեղապետերի դեմ մղվելիք պայքարում։

1856 թ. փետրվարի 18-ին տրվեց նոր հրովարտակ, որը կոչվեց Հաթթը-հումայուն։ Ղրիմի պատերազմից հետո կնքվելիք Փարիզի պայմանագրի նախօրյակն էր այս, երբ ազդարարվում էր նոր դարագլուխ Թուրքիայի պատմության մեջ։ Սակայն, եթե «Թանզիմաթի» առաջին տարբերակը կազմվել էր եվրոպացիներին խաբելու նպատակով, ապա երկրորդ հրովարտակը թելադրված էր արևմտաեվրոպական պետությունների կողմից։ Իրականում Հաթ-

---

6 Տե՛ս Համբարձում Երամյան, *Հուշարձան Վան-Վասպուրականի*, հատ. Ա, Աղեքսանդրիա, 1929, էջ 22։

7 Տե՛ս *А. Д. Новичев*, Очерки экономики Турции до мировой войны. М.—Л., 1937, стр. 34—35.

*թը-հումայունը Հաթթը-շերիֆի շարունակությունն էր։ Այստեղ որոշ հոդվածներ գրեթե նույնությամբ վերակրկնվում էին։*

*1856 թ. օրենքով այլահավատ հպատակները խոսքով քաղաքացիական իրավունքներ էին ստանում։ Ստեղծվում էին մինիստրություններ, կազմակերպվում էր Օտոմանյան բանկը, քրիստոնյա ազգերը հոգևոր խորհուրդներ ընտրելու թույլտվություն էին ձեռք բերում։ Իբրև փաստաթուղթ «Թանզիմաթը» իր բովանդակությամբ ժողովրդի մեջ պատրանքներ էր առաջ բերում։ Այդ օրենքները հիմնականում չկիրառվեցին և բռնապետական Թուրքիայի սոցիալ-տնտեսական կյանքում էական փոփոխություն չմտցրին։*

*«Թանզիմաթի» կիրառման փորձ կատարող Թուրք կառավարող շրջանները փորձեցին շարունակել քրդական ապստամբ խաների ու բեկերի հպատակեցումը, սակայն հանդիպեցին լուրջ դիմադրության։ Հարավային Հայաստանի մեծ մասի տիրակալ Բեդեր-խան բեյը չհպատակվեց կառավարական զորամասերին և 1843 թ. նույնիսկ ապստամբեց, ձգտելով իր շուրջն համախմբել քրդական մյուս իշխաններին. մի տարի առաջ ապստամբել էր Խան-Մահմուդը՝ առաջինի զինակիցը[8]։*

*Սուլթանական կառավարությունը տեսնում էր այս ամենը, բայց ելքը փնտրում էր իր քաղաքականության հին զինանոցում։ Նա վարձկանների միջոցով քրդական բեկերին գրգռում էր ասորիների, հայերի ու եզիդների դեմ, կազմակերպել տալիս քուրդ-ասորական ջարդեր։ 1843 թ. Բեդեր խանը և Նուր-Ալլահը հարձակվեցին Հեքյարիի իշխանության մեջ մտնող Թիար լեռնագավառի վրա, կոտորեցին տասը հազար ասորի խաղաղ բնակիչների, արյան մեջ ողողեցին Թխոմա գավառը։ Արևմտյան Հայաստանի քրիստոնյա ազգերն էլ ավելի մեծ ցասումով լցվեցին դեպի Քյուրդիստանի ջարդարար բեկը։ Նրան պակաս չէին ատում եզդիները, նեստորական ասորիները, որոնց ողբը հասավ մինչև ռուսական մայրաքաղաք, զայրույթ առաջացրեց եվրոպական երկրներում։ Սուլթանական կառավարությունը իրար դեմ հանելով հպատակներին, կարծում էր, թե հասել է իր նպատակին և ստեղծել դեպի Արևմտյան Հայաստան ու Փոքր Ասիայի քրդական շրջաններն արշավանք սկսելու հարմար պահ։*

*1845 թ. սուլթան Աբդուլ Մեջիդը Սըրրի փաշային հանձնարարում է հըպատակեցնել քուրդ բեկերին։ Այդ ժամանակ պետական զորքերի դեմ զենք էին բարձրացրել նաև Վան-կուլերի զորաջոկատները՝ Թեմուրզադե Մուստաֆա բեյի գլխավորությամբ։ Ռեջիդականները կռվում էին ոչ միայն քուրդ, այլև թուրք ռեակցիոն տարրերի դեմ։*

*Ապստամբ Վան-կուլերին օգնության ձեռք են մեկնում քրդերի ղեկավար Խան-Մահմուդը և նրա վեց եղբայրները։ Նրանք եկել էին Մոկսից[9], Ռըշտունյաց ու Կորդվաց լեռներից, Աղձնիքից, Հայոց ձորից[10]։ Ապստամբների գլուխն է անցնում Բեդեր-խան բեյը և ջանում համախմբել նրանց ուժերը։*

*Ապստամբները 1847 թ. որոշում են նվաճել Վանի, Բաղեշի ու Դիարբե-*

---

8 *Մատենադարան, ձեռագիր 9424, թերթ 273։*

9 Ա. Ալպոյաճյան, *Պատմական Հայաստանի սահմանները, Գահիրե, 1950, էջ 451։*

10 *Մատենադարան, ձեռագիր 9424, թթ. 143—144։*

քիրի կուսակալությունները, անջատվել Թուրքիայից և Պարսկաստանի հովանավորությամբ՝ Բեդիր-խան բեյի գլխավորությամբ ստեղծել անկախ Քյուրդիստան։ Հատկանշականն այն է, որ հայերին իրենց կողմը գրավելու միտումով, ապստամբները լուրեր էին տարածել, թե հայկական գավառներին թույլ կտան ստեղծել անկախ Հայաստան՝ Ռուսաստանի հովանավորությամբ, իսկ եթե այդ չհաջողվի, Բեդիր-խանը նրանց կհանձնի Քյուրդիստանի «տընտեսական բաժնի մատակարարությունը»[11]։ Հայերի օգնությանը կարոտ էին և կառավարությունը, և քրդական ցեղապետերը, դրա համար էլ նրանց զիջումներ էին անում և խոստումներ տալիս։ Հարավային Հայաստանի հայ ֆեոդալները պաշտպանում էին ապստամբներին, ջանում երկարաձգել իրենց ֆեոդալական իրավունքները։ Նրանցից ոմանք դարձան Բեդիր-խանի խորհրդականները։

Տեղի վերնախավի ջանքերով Շատախի ու Մոկսի հայ ռազմիկների մի մասը միացավ ապստամբներին։ 1847 թ. սրանց միացավ Դըհի հայ ու քուրդ բնակիչների մի ստվար հատված։ Նույն տարում Բեդիր-խանի բազմահազարանոց բանակն արշավեց Վանի վրա, գրավեց քաղաքը և պաշտոնից հեռացրեց Թուրք Մուստաֆա բեյին, նոր կառավարիչ նշանակելով քուրդ Խան-Մահմուդին։

Ապստամբների հաջողությունները մեծ տագնապ էին առաջացրել Թուրքական արքունիքում։ Սակայն քիչ սարսափ չէր տարածվել նաև Վասպուրականի գյուղացիության մեջ, որի կյանքի, ունեցվածքի, պատվի ապահովությունը կախված էր քուրդ առաջնորդների քմահաճույքից։ Քրդաբնակ հայկական շրջաններն արյունահեղ կռիվների ասպարեզ էին։ Քայքայվում էին արհեստն ու առևտուրը, գյուղատնտեսությունն ու անասնապահությունը։ Հայ գյուղացու վիճակը երբեք այնքան ողբերգական չէր եղել, ինչպես այդ ժամանակ։

Կենտրոնական պետության հրապարակած օրենքները որոշ չափով ձեռնտու էին հայ գյուղացիությանը։ Կարինի, Սեբաստիայի, Տրապիզոնի փաշայություններում մասնակիորեն փոխվել էին հողատիրության նախկին ձևերը, գյուղացիությունը, երգնման ճանապարհով, մասամբ հող էր ձեռք բերել։ Քըրդահպատակ շրջանների գյուղացիները տեղյակ էին դրան և ջանում էին ազատվել քուրդ ֆեոդալների նոր բռնություններից։ Ագրարային ակտերից գրեթե մեկ տասնամյակ անց նրանք ոչ միայն հողեր, իրավունքներ չէին ստացել, այլ եղածն էլ աստիճանաբար կորցնում էին։ Լցվել էր հայ գյուղացու, արհեստավորի, առևտրականի համբերության բաժակը։ Վերադաս իշխանություններին ամենուրեք բողոքագրեր էին հղում, օգնություն աղերսում։

Գավառահայերի բողոքները պոլսահայերին դրդում էին գործողությունների դիմել։ Մատթեոս պատրիարքը երիցս դիմում է Բ. Դռանը, անձամբ այցելում սուլթանին և խնդրում Վասպուրականի ու Տարոնի հայ ազգաբնակչությանն ազատել քրդական ցեղապետերի կամայականությունից։ Նա կառավարությանն զգուշացնում էր, որ եթե հայերին օգնություն ցույց չտան, ապա նրանք ամբողջ գերդաստաններով կգաղթեն Ռուսաստան։

---

11 Հ. Նահպազյան, Քուրդո-հայ պատմություն, էջ 86։

*Հայերի ցանկություններն ու պահանջները սերտաճում էին Աբդուլ Մեջիդի ու Ռեշիդ փաշայի պլաններին։ 1847 թ. ամռանը սուլթանի հրամանով, Օսման փաշայի ղեկավարությամբ հատուկ բանակ է ուղարկվում Արևմտյան Հայաստան։ Բ. Դուռը Մատթեոս պատրիարքին առաջարկում է հորդորել տեղի հայերին օգնության հասնելու բանակին, իսկ Օսման փաշային իրավունք է վերապահվում տեղացիներից զինվորագրություն կատարել։*

*Մատթեոս պատրիարքը հատուկ շրջաբերականներով դիմեց Տիգրանակերտի, Բաղեշի, Բալուի, Կարինի և Վանի հայ ազգաբնակչությանը։ Հայերը առաջին անգամ զինվորական ծառայության էին կանչվում կառավարության կողմից։*

*1847 թ. աշնանը Օսման փաշան մտավ Մոկս։ Կառավարական բանակը ռմբակոծեց Արդալ-բեյի անառիկ բերդերը, ջարդեց նրա զորաբանակը և գերեվարեց առաջնորդին։ Քյոռ Մուստաֆա փաշան առանց կռվի հանձնվեց։ Երկրորդ ճակատամարտը տեղի ունեցավ Վանի տակ։ Խան-Մահմուդը պաշարեց Այգեստանը։ Հայերը դիմադրում էին խիզախությամբ։ Վասպուրականի քաջարի աշխարհազորը գերի վերցրեց Խան-Մահմուդին և հանձնեց Օսման փաշային։*

*Վճռական ճակատամարտը տեղի ունեցավ Բոհտանի Ջեզիրե գավառում. այնտեղ, որտեղ ապաստանել էր քրդական ցեղախմբերի գերագույն սյուզերեն Բեդեր-խան բեյը*[12]*։ Կառավարական զորքի և հայ ու եզիդ աշխարհազորայինների անխնա հարվածների տակ Բեդեր-խանը նահանջեց և փակվեց Ջեզիրեի Օրագ բերդում։ Բերդը պաշարվեց և, 17 օր անց, 1847 թ. հուլիսի 20-ին անձնատուր եղավ Օսման փաշային։*

*1848 թ. սկզբներին ընկճվեց նաև Խոշաբը։ Նույն օրերին նվաճվեց Մուշը։ Բիթլիսի իշխանությունը համառորեն դիմադրում էր։ Օսման փաշայի զորաբանակները հաղթության չհասան։ Օգնության եկավ Գ. Ռեշիդ փաշան, որը 1849 թ. միայն կարողացավ գրավել Բաղեշը, գերեվարել Շերեֆների տոհմի բոլոր անդամներին և մեկընդմիշտ վերջ դնել նրանց տիրապետությանը։ Բաղեշին միացվեց և նրա ենթակայության տակ դրվեց դաշտային Սասունը։ Գրավված մարզերում բանտարկված բեյերին անմիջապես փոխարինելու էին գալիս թուրք փաշաները։*

*Սուլթանական բանակի հաղթանակը կատարյալ էր։ Դերեբեյությունները, օջաքլըքները, հյուքյումեթությունները ու յուրթլուկները վերացված էին։ Դիարբեքիրի վիլայեթը հպատակվեց Թուրք Էսատ փաշային*[13]*, այսինքն՝ կենտրոնական պետությանը։ Հայ և քուրդ ռայան, ըստ խոստման, պիտի ազատվեր քուրդ բեկերի հարկային ծանր բեռից ու ֆեոդալական քմայքներից։ Այս առթիվ շնորհակալական բազմաթիվ հեռագրեր էր ստանում Մատթեոս պատրիարքը, որը նույնպես զերծ չէր հեռագրերի հեղինակների փայփայած պատրանքներից։*

---

12 *Տե՛ս П. И. Аверьянов,* Курды в войнах России с Персией и Турцией в течение XIX столетия, Тифлис, 1900, стр. 82.

13 *«Արշալույս Արարատյան», 1847, 28 նոյեմբերի, № 299։*

*Թուրք պետական խորամանկ գործիչները զսպել էին քրդական ցեղապետերի քաղաքական հավակնությունները, սակայն բնավ մտադիր չէին հրաժարվել նրանց ռազմական ծառայություններից։ Այդ իսկ պատճառով էլ նրանք հռչակում էին «Թանզիմաթ», քիչ անց ընդարմացնում նրա գործադրությունը, բանտարկում քուրդ ցեղապետերին, միաժամանակ սիրաշահում, առաջ քաշում նոր քուրդ առաջնորդներ։*

*Բեդեր-խանն աքսորվեց Կրետե կղզի, Խան-Մահմուդը՝ Սիլիստրե։ Բայց դրա հետ միաժամանակ պաշտոնի կանչվեց Բեդեր-խանի եղբորորդին՝ Եզդանշիրը, շատ ցեղապետերի շնորհվեցին արտոնություններ, ասորական ջարդի կազմակերպիչներից արյունախում Նուր-Ալլահ բեկը նույնիսկ վարչական պաշտոն ստացավ։ Այսպիսի կիրառություն ուներ «Թանզիմաթի» առաջին ակտը քրդաբնակ հայկական նահանգներում։*

* * *

*Դերբեյությունների ոչնչացումից հետո, սակայն, սուլթանական կառավարությանը թվում էր, թե ընկճել է քուրդ ցեղապետերին, դրա համար էլ պաշտոններ էր բաժանում շատերին։ Կատարվեց սպասածին հակառակը։ Արևմտյան Հայաստանում գտնվող քուրդ բեկերի հպատակեցման պահին Թուրքական բանակը դաժանությամբ վարվեց քուրդ և եզիդ աշխատավորության հետ։ Այդ դաժանություններն էլ ծնունդ տվեցին քրդական մի նոր շարժման, որն իր բնույթով տարբերվում էր նախորդ ապստամբություններից և որի գլուխն էր կանգնած Բեդեր-խան բեյի ազգական Եզդանշիրը։*

*Օգտվելով Ղրիմի պատերազմի ժամանակ ստեղծված իրադրությունից, 1854 թ. դեկտեմբերին Եզդանշիրը ապստամբության դրոշ պարզեց և 1855 թ. հունվարին արդեն նրա գերագահության տակ էին Մոսուլը, ողջ Վասպուրականը։ 1855 թ. փետրվարի սկզբներին ապստամբներն ունեին 30 հազարանոց բանակ, որը գնալով ստվարանում է և ամսվա վերջին հասնում շուրջ 60 հազարի։ Շուտով ապստամբները տիրեցին Բաղդադից մինչև Վան ընկած գավառներին, ապա նվաճեցին Բաղեշ, Սղերդ, Շատախ, Խարազան և այլ գավառներ ու քաղաքներ[14]։*

*Ապստամբների հաջողությունները անհանգստություն առաջ բերեցին ոչ միայն սուլթանի արքունիքում, այլև Թուրքիայի դաշնակիցների, հատկապես Անգլիայի կառավարող շրջաններում։ Գործի անցավ բրիտանական դիվանագիտությունը և, միջոցների մեջ խտրություն չդնելով, ջանաց «խաղաղեցնել Քյուրդիստանը»։ Մոսուլի անգլիական հյուպատոսը բանակցություններ սկսեց ապստամբության ղեկավարների հետ, հայտարարելով, թե նպատակ ունի Թուրքիային առաջարկելու կատարել Եզդանշիրի պահանջները և այդպիսով նրան ստիպել հաշտություն կնքել[15]։ Անգլիացի դիվանագետի այս փորձը հաջողությամբ չպսակվեց։ Դրանից հետո նա կաշառեց քուրդ բեկերից*

---

14 *Տե՛ս М. Лихутин,* Русские в Азиатской Турции в 1854—1855 гг., СПб., 1863, стр. 256—259.

15 *Տե՛ս П. И. Аверьянов,* Курды в войнах России с Персией и Турцией в течение XIX столетия, Тифлис, 1900, стр. 150—154.

շատերին, հեռացրեց ապստամբներից, ապա Եզդանշիրին ապահովության խոստում տալով, հրավիրեց բանակցությունների։ Թուրք և անգլիացի բանագնացները երդմնազանցությամբ բանտարկեցին Եզդանշիրին և ուղարկեցին Կ. Պոլիս։ Առանց ղեկավարի մնալով, ապստամբներն աստիճանաբար ցրվեցին և այդ ձևով ճնշվեց ապստամբությունը[16]։

Այսպիսով, XIX դարի 50-ական թթ. դեռևս սրված էին մնում սուլթանական կառավարության և Արևմտյան Հայաստանի քրդական ցեղապետերի հարաբերությունները։ Բ. Դուռը երբեմն սիրաշահում էր, երբեմն խուսանավում ու օգտագործում նրանց ուժերը, սակայն հիմնականում գործադրում էր քրդերի թուրքացման ու նրանց վերնախավերին քրիստոնյա ազգերի դեմ ուղղելու քաղաքականությունը։ Այլահավատ հպատակները, մասնավորապես հայերն ու սլավոնները, գիտակցելով դարերով ապաճանաչված իրավունքները, պայքարի էին դուրս գալիս իրենց արյան ու տանջանքների գնով ձեռք բերած թղթեղեն խոստումներն իրողություն դարձնելու համար։

## 2. ԳՅՈՒՂԱՑԻՈՒԹՅԱՆ ՎԻՃԱԿԸ

XIX դարի երկրորդ քառորդից փոփոխության ենթարկվեց Թուրքիայի վարչաձևը։ 1834 թ. նախկին փաշայությունները վերանվանվեցին վիլայեթներ, որոնք իրենց հերթին բաժանվեցին սանջակների ու կազաների։ Կառավարիչներն այժմ ուղարկվում էին մայրաքաղաքից, որոնք օժտված էին վարչական իրավունքներով։

Արևմտյան Հայաստանը բաժանվեց Էրզրումի (Կարին), Սվազի (Սեբաստիա), Դիարբեքիրի և նորաստեղծ Խարբերդի վիլայեթների, իսկ մի քանի գավառներ էլ միացվեցին Տրապիզոնին։ Նախկինում Վանի փաշայության մեջ մտնող Մոկսը, Դերսիմը, Հեքյարին կցվեցին Դիարբեքիրին։ Վերացվեցին Կարսի, Չըլդըրի, Բայազետի փաշայությունները։ Քրդական իշխանությունների վերացումից հետո 1847—49 թթ. երկրի վարչամիավորների մեջ վերախմբավորում կատարվեց։ Վանը, Ջեզիրեն, Հեքյարին միացվեցին և դըրվեցին մեկ կուսակալի իշխանության տակ։ 1848 թ. հուլիսին Մարաշի վիլայեթը միացվեց Ադանային և հանձնվեց այնտեղ նստող Օսման փաշայի իրավասությանը[17]։

1864—67 թթ. կայսրությունը վարչական նոր բաժանման ենթարկվեց։ Այս անգամ խոշորացվեցին վարչամիավորները, «վերականգնվեցին» կայսրության կազմում մտնող այլազգի ժողովուրդների նախկինում ունեցած իշխանությունների սահմանները։ 1864 թ. ստեղծվեց Դանուբի, իսկ 1866 թ.՝ Բոսնիայի վիլայեթը։ Արևմտյան Հայաստանի մեծ մասը 1865 թ. ընդգրկվեց Էրզրումի վիլայեթի մեջ, նրան տալով Էրմենիստան անուն։

1864—1866 թթ. վարչական ակտերը, սակայն, փորձնական նպատակ էին հետապնդում և սուլթանի կողմից վավերացված չէին։ 1867 թ. միայն մշակվեց ու հրապարակվեց «Վիլայեթների վարչության մասին օրենքը»[18]։

---

16 Տե՛ս П. И. Аверьянов, նշվ. աշխ., էջ 154—157։

17 «Արշալույս Արարատյան», 1848, 9 հուլիսի, № 315։

18 ՌԱՔԱ, Քաղ-արխիվ, գ. 9468, «Բացատրական գրություն», էջ 1—37։

էրզրումի վիլայեթի մեջ մտցվեցին Կարսը, Բայազետը և Էրզինջանը։ Սվազի վիլայեթին էր մնում Սեբաստիան, Ամասիան, Դիվրիկը, Խարբերդի վիլայեթին՝ Խարբերդը, Մալաթիան, Մադենը։ Շապին-Կարահիսարը և Գյումուշխանեն անջատվում էին հայկական նահանգներից և կցվում Տրապիզոնին։

Զգալի փոփոխության էր ենթարկվում Դիարբեքիրի վիլայեթը։ Սրա մեջ էին մտցվում Դիարբեքիրը, Մուշը, Վանը, Հեքյարին, Ջեզիրեն, Բիթլիսը։ Այժմ, երբ վերացվել էին հյուքումեթները, դերեբեյությունները, օջաքլըքները, կառավարությունը միավորում էր սրանց և տալիս Քյուրդիստան անունը։ Եվ ահա այս անվան հրապարակումն էլ տեղիք տվեց հայերի զայրույթին և բողոքին, քանի որ Վանը, Մուշը, Բիթլիսը մտցված էին Քյուրդիստանի մեջ։ Բ. Դուռը նոր անախորժություններից խուսափելու համար Վանի և Մուշի նախկին տարածքը անջատեց Դիարբեքիրից և միացրեց Էրզրումի վիլայեթին։



Վարագա լեռը Թոփրախ կալեի բարձունքից

Վարչական այս բաժանումը պատճառաբանվում էր ծախսերի կրճատումով։ Մյուս կողմից եվրոպական տերություններին, մասնավորապես Ռուսաստանին հավաստիացվում էր, թե վերականգնվում են քրիստոնյաների և ընդհանրապես հպատակ այլազգիների երբեմնի պետական սահմանները, հետևաբար մեծ պետությունները կայսրության ներքին գործերին միջամտելու և հպատակներին գրգռելու հարկ չպիտի ունենան այլևս։

Արևմտյան Հայաստանի և ողջ կայսրության վարչական անդադար բաժանումները հիմնականում բխում էին ազգերի բեկորացման, քրիստոնյաների տարանջատման, ազգային շարժումների արհեստական արգելակման,

*քրիստոնյաների ձուլման Թուրքիայի վարած ավանդական քաղաքականությունից։ Այդուհանդերձ Թուրքիան «Թանզիմաթի» ժամանակ բացարձակ զըրոհի չէր անցել, առերես սիրաշահում էր քրիստոնյաներին, իսկ գործնականում քողարկված ձևով իրականացնում իր պլանները։*

*1867 և 1870 թթ. օրենքներով փոխվեց վիլայեթների կառավարման, կառավարիչների նշանակման, ցածրաստիճան իշխանավորներ ընտրելու և հաստատելու ձևը։ «Վիլայեթների վարչության մասին օրենքի»*[19] *(1870) համաձայն, նահանգների նախկին փաշաները կոչվում էին վալի, որոնք նշանակվում էին Բ. Դռան և վավերացվում սուլթանի կողմից։ Սահմանափակվում էին նահանգապետերի երբեմնի իրավունքները, նրանք զրկվում էին զինվորական հրամանատարի պաշտոնից, բանակը և վարչա-կառավարչական ապարատը զատվում էին իրարից։ Նույնիսկ սանջակների կառավարիչ մյութեսարիֆներին, կազաների փոխկառավարիչ կայմակամներին, վիճակների գլուխ կանգնած մյուդիրներին հաստատում էր ոչ թե վալին, այլ ներքին գործերի մինիստրը*[20]*։*

*Ստեղծվում էին վիլայեթների վարչություններ, գավառական ժողովներ։ Իրավաբանորեն և ձևականորեն վիլայեթի բարձրագույն օրենսդիր մարմինը ընդհանուր ժողովն էր (մեջլիս ումումի), որի անդամ երեսփոխանները ընտրովի էին։*

*Ընդհանուր ժողովը գումարվում էր տարին մեկ անգամ՝ 40 օրվա նստաշրջանով։ Այն քննում էր վիլայեթի հարկերի, ճանապարհաշինության, առևտրի և արդյունագործության, հողագործության և անասնապահության, պետական ունեցվածքի պահպանման և այլ խնդիրներ։ Բոլոր որոշումները, վալիի միջոցով, ներկայացվում էին Բ. Դուռ։ Այն կարող էր մերժվել, իսկ հաստատվելու դեպքում վերադարձվում էր տեղական իշխանության գործադիր մարմիններին։ Վարչական խորհուրդները գործում էին վալիի նախագահությամբ, կադիի, մյուֆտիի, ուլեմների մասնակցությամբ։ Խորհրդի անդամների մի մասը քրիստոնյաներ էին՝ սանջակներից ընտրված։*

*Թուրքիայում այս վարչական օրգանները ձևական նշանակություն ունեին և երկրի սոցիալ-քաղաքական կյանքում էական դեր չէին խաղում։ Համենայն դեպս, սրանք նոր երևույթ էին կայսրության կյանքում և փաշայական նախկին անարխիկ վարչակարգերի համեմատությամբ որոշ քայլ էին դեպի առաջ։*

*Թուրքիայի և Արևմտյան Հայաստանի բնակչության, առավել ևս այլազգի հպատակների թվաքանակի մասին հավաստի տեղեկություններ չկան։ «Երկյուղը, կասկածամտությունը սպառնալի ուրվականների նման կարծես միշտ կանգնած են Եղդըզի գլխին և շարունակ ստիպում են... ամենապարզ, ամենահասարակ փաստերն աղավաղել։ Եվ հենց դրանից էլ առաջ են եկել այն հակասական թվերն ու տեղեկությունները, որ գոյություն ունեն Թուրքահպատակ հայերի քանակի մասին»*[21]*։*

*Քիչ դեր չէին խաղում նաև այլադավան հպատակների նկատմամբ կի-*

---

19 *Հայկական ՍՍՀ ԿՊՊԱ, Քաղվածքների ֆոնդ, գ. 39, թ. 2—3։*

20 *ՌԱՔԱ, Քաղ-արխիվ, գործ 3468, թերթ 17։*

21 *«Լույս պատկերազարդ օրացույց հանդես 1905 թվականի», 1904, Թիֆլիս, էջ 198։*

բռռվող ծանր հարկային քաղաքականությունը, մասնավորապես քրիստոնյաներից գանձվող զինվորական հարկը, որի չափը որոշվում էր արու ազգաբնակչության քանակով։ Ահա թե ինչու քրիստոնյաները նվազեցրած տեղեկություններ էին տալիս իրենց թվի մասին, որպեսզի կարողանային համեմատաբար թեթևացնել հարկային ծանր բեռը։

Արևմտահայության թվաքանակի մասին եղած թուրքական բոլոր տվյալները հավաստի չեն եղել և նվազեցված են։ Լրիվ տեղեկություններ չեն տալիս նաև Կ. Պոլսի Հայոց պատրիարքարանի մարդահամարները, քանի որ վիճակագիրները հնարավորություն չեն ունեցել թափանցել հայկական ու հայաբնակ բոլոր վայրերը, գրանցել մեռածներին ու նորածիններին։ Այստեղ մասամբ օգնության են հասնում եվրոպական դիվանագետների հրապարակած թվերը և հայ պարբերական մամուլի հաղորդագրությունները։

Օտար հեղինակներից մեկը՝ Բրուսալին, Օսմանյան կայսրության մեջ XIX դարի 50—70-ական թթ. ապրող հայերի քանակը հաշվում էր 3.800.000[22], ամերիկյան միսիոներ Ձր. Դեվիս Գրինը՝ 2,5 միլիոն[23], էլիզե Ռեկլյուն՝ 2.520.000[24] մարդ։ Լ. Կոնդանսոնը համադրելով նախորդների հրապարակած բազմաթիվ տվյալները, գտնում էր, որ ասիական Թուրքիայում ապրում են 2.050.586, եվրոպական մասում՝ 280.000[25] հայեր։ Ուրեմն եվրոպացի հեղինակների տվյալներով, Բեռլինի վեհաժողովի նախօրյակին արևմտահայ ազգաբնակչության թիվը երկուս ու կես միլիոնից մինչև երեք միլիոն էր։ Այդ կարծիքը հաստատում են նաև հայկական աղբյուրները։

Մկրտիչ-բեյ Դադյանը 1860-ական թթ. արևմտահայերի թիվը հաշվում է 3.400 հազար[26]։ Րաֆֆին և Գր. Արծրունին բազմիցս վկայել են, թե Թուրքիայում երեք միլիոն հայեր էին ապրում[27]։ Նույն կարծիքը հաստատում է նաև «Մասիս» պարբերականը։ Ակնհայտ է, որ ինչպես եվրոպացի, այնպես էլ վերոհիշյալ հայ հեղինակների կարծիքները հայերի թվաքանակի հարցում համընկնում են։

Բեռլինի վեհաժողովի նախօրեին Ն. Վարժապետյան պատրիարքի գլխավորած մարդահամարը արևմտահայության թիվը 3 միլիոն գրանցեց։ Այդ թվից 400.000-ն ապրում էին Եվրոպական Թուրքիայում, 600.000-ը՝ Փոքր Ասիայում ու Կիլիկիայում, 670.000-ը՝ Փոքր Հայքում (Սեբաստիայի ու Կեսարիայի վիլայեթներում) և 1.330.000-ը՝ Մեծ Հայքի թուրքահպատակ նահանգներում (Էրզրումի, Վանի վիլայեթներ, Դիարբեքիրի վիլայեթի հյուսիսային մասը և Սղերդի սանջակի հյուսիսային մասը)[28]։ Մեկ այլ վկայությամբ Վանի վիլայեթում ապրում էին 400.000, Սվազի վիլայեթում՝ 280.000,

---

[22] Les revendications de l'Arménie, par Jean Broussali, „Revue française de l'etranger et des colonies", t. 3, 1886, p. 517, см. также *Е. К. Саркисян*, *նշվ. աշխ.*, *էջ 26*։

[23] «Армянский кризис и владычество турок», стр. 255.

[24] Էլ. Ռեկլյու, *Լազիստան, Հայաստան և Քուրդիստան, Վաղարշապատ, 1893, էջ 70*։

[25] *«Նոր կյանք», Լոնդոն, 1901, 15-ը մայիսի, էջ 150—151*։

[26] *Տե՛ս Мкртич-бей Дадиан*, Армяне Оттоманской империи, Тифлис, 1878, стр. 8.

[27] *«Մշակ», 1872, № 30, 1874, №1, 1875, № 24, № 35, 1876, №24*։

[28] *Տե՛ս* Մ. Գ. Ներսիսյան, *նշվ. աշխ., էջ 35, տե՛ս նաև «Ծրագիր կազմակերպական կանոնագրի Օսմանյան Հայաստանի», Կ. Պոլիս, 1878, էջ 30*։

Խարբերդի վիլայեթում՝ 270.000, Բիթլիսի վիլայեթում՝ 250.000, Դիարբեքիրի վիլայեթում՝ 150.000, Էրզրումի վիլայեթում՝ 280.000, Ադանայի և Հալեպի վիլայեթներում՝ 380.000, Ասիական Թուրքիայի մնացած մասերում՝ 455.000, Եվրոպական Թուրքիայում՝ 195.000[29] հայեր։

Տոկոսային փոխհարաբերությամբ ևս հայկական տարրը 1830—60-ական թվականներին կազմում էր Արևմտյան Հայաստանի ազգաբնակչության համեմատական մեծամասնությունը։ Նկատենք, որ այս հանգամանքը փորձում են ժխտել ժամանակակից թուրք ռեակցիոն պատմաբանները[30]։

* * *

1830—50-ական թվականներին Թուրքիայում որոշ չափով վերափոխվում էին նաև հողատիրության ձևերը։ Ռումելիայում, Անատոլիայի մեծ մասում, այդ թվում և Արևմտյան Հայաստանի սուլթանահպատակ մարզերում՝ Էրզրումում, Սվազում, Կարսում սուլթանը գլխատեց, բանտարկեց կամ թոշակ նշանակելով պաշտոններից հանեց թուրք էմիրներին, աղաներին, նույնիսկ պալատում մեծ պաշտոններ զբաղեցնող զինվորականներին և բռնագրավեց նրանց հողային կալվածքները՝ թիմարները, զեամեթները, խասերը։ Արևմտյան Հայաստանի երբեմնի քրդահպատակ շրջանների հողատիրության մեջ որոշ փոփոխություններ կատարվեցին 1840-ական թթ. վերջերին միայն, այսինքն քրդական դերեբեյությունների ոչնչացումից, քուրդ խոշոր ֆեոդալների իրավազրկումից հետո։ Կայսրության հողերի մեծ մասը որպես պետական սեփականություն օգտագործման տրվեց նոր հողատերերին։

Սուլթանները փոփոխելով հողատիրության ձևերն ու հողատերերին, սակայն չէին վերացնում գյուղացիության շահագործման ֆեոդալական սիստեմը։ Գյուղացիները շարունակում էին հողերը մշակել այնպես, ինչպես նախորդ շրջանում։ Հին բեկերին փոխարինելու եկան նորերը։ Պետության ու կալվածատերերի եկամտի աղբյուրը մնաց ֆեոդալական ռենտան՝ իր տարատեսակներով։ Փոփոխվեցին հարկերի անունները, պարհակների ձևերը, իսկ շահագործումն ու ճնշումը մնացին նույնը։

Աբդուլ Մեջիդը 1858 թ. ապրիլի 21-ին ձևակերպեց հողային օրենք՝ Դուստրը, որը «չփոխելով գյուղական ազգաբնակչության դրությունը, պաշտպանեց ֆեոդալական հողատիրությունը։ Նրա նշանակությունը կայանում էր նրանում, որ օրինականացնում էր պատմական տարբեր պայմաններում առաջացած հողատիրության ձևերը»[31]։ Դուստրը իրավաբանորեն սահմանում էր հողատիրության հինգ հիմնական ձևեր՝ 1. պետական՝ միրիե, 2. մասնավոր՝ մյուլք, 3. հոգևոր՝ վակֆ, 4. մետրուքե՝ համայնական, 5. մեվաթ՝ մեռյալ-անօգտագործելի հողատարածություններ։ Արևմտյան Հայաստանում հողատիրության այս բոլոր ձևերը կային, սակայն գերակշռում էին պետականը և վակֆայինը։

---

29 «Արարատ», Էջմիածին, 1914, № 9, էջ 811։

30 Տե՛ս Türk inkilab tarihi, ikinci Türk tarih Kongresi, էջ 1062, 1074, տե՛ս նաև— Esat Uras, Tarihte Ermeniler ve Ermeni meselesi, Ankara, 1950, էջ 3։

31 Տե՛ս *П. П. Моисеев*, Аграрные отношения в современной Турции, М., 1960, стр. 19—21.

Արևմտյան Հայաստանի պետական և վակֆային կալվածքները կալվածագրերով, ագարակ առ ագարակ ձևակերպվեցին թուրք, քուրդ, մասամբ էլ հայ հողատերերի վրա։ Ցեղապետների հիմնական դասը մնաց մահմեդական վերնախավը, որը փողով, բռնությամբ կամ նախկին հողատերերի չհանձնըման ճանապարհով պաշտպանեց իր հողատիրական իրավունքները։ Դրան նպաստեց նաև այն, որ 1867 թ. սուլթանը նոր օրենք հրապարակեց՝ հողատերերին թույլատրելով հինգ տարվա ընթացքում պետությունից գնել օգտագործվող հողակտորները։

1867—1870 թթ. ընթացքում հողօգտագործողները վճարեցին պահանջվող գումարը, սակայն ոչ բոլորը ստացան թափու՝ կալվածագիր։ 1873 թ. ստուգումների ժամանակ պարզվեց, որ գյուղացիության մեծ մասը կալվածագրեր չուներ։ Բ. Դուռը սրանց ստիպեց կրկին վճարել պահանջվող գումարը։ Թուրք աղաները, քրդական աշիրաթապետերը զավթեցին քուրդ, թուրք և հատկապես հայ գյուղացիների հողակտորները։ Պետությունը արհեստականորեն ագրարային վեճեր հրահրեց հայերի, քրդերի, թուրքերի միջև։

Բեռլինի կոնգրեսի նախօրյակին երկրում շրջող հանձնախմբի հաղորդագրությունների համաձայն Չմշկածագի առաջնորդության մեջ «հողերը մեծավ մասամբ թրքաց կը պատկանի, վեցեն մեկը հայոց թափու են»[32]։ Բալուի և Չարսանջակի հողերը բռնագրավել էին 24 քուրդ ու թուրք աղաներ[33]։ Միայն Մեծկերտի ու Աղջովայի հայ գյուղացիները թափուական իրավունքով հողեր ունեին։ Խարբերդի «հողերուն 3/4 մասը թրքաց և 1/4 մասը հայոց ձեռքն է թափուլով»[34]։ Բաբերդի առաջնորդության հայերը «ըստ չափու հող ունին և ընդհանրապես թափու են, իսկ բաղդատմամբ թուրք գյուղականաց ոչինչ ունին գրեթե»[35]։

Բեդիր-խանի տոհմը սուլթանի ֆերմանով Վասպուրականում պահպանել էր իր կալվածքների գերակշռող մասը։ Նոր կալվածատեր էր դարձել Եզդանշիրը։ Մոսուլի շրջանի վրանաբնակ 24 աշիրեթներ ամեն ամառ տակն ու վրա էին անում Վասպուրականի հայ գյուղացու տնտեսությունը, յուրացնում նրա ստացած արդյունքները։ Քուրդ ցեղապետերը կործանել էին Գավառ, Մարմեդ, Խնձորգեն, Օրմենաս, Պնդունի, Կսկինձ գյուղերը։ Ընդհանրապես Ղրիմի պատերազմից հետո նորից գլուխ է բարձրացնում քրդական վերնախավը, աքսորավայրերից Արևմտյան Հայաստան են վերադառնում նոր իրավունքներ նվաճած ցեղապետերը։

Արևմտյան Հայաստանում խոշոր հողատերեր էին մզկիթները, քուրդ շեյխերը, թուրք ուլեմները։ Մուսուլման հոգևորականությունը լիովին պաշտպանեց ոչ միայն իր վակֆները, այլև Մեքքայի և Մեդինայի ծախսերը հոգացող կալվածքները։

Արևմտյան Հայաստանում որոշ չափով ավելացավ նաև հայ հողատերերի թիվը։ Մշո դաշտում ընդարձակ կալվածքներ ձեռք բերեցին Հաճի Ա-

---

32 ԳԱԹ, Թ. Ազատյանի արխիվ, III բաժին, փաստաթուղթ 52, էջ 4։

33 «Ատենագրութիւնք երեսփոխանական ընդհանուր ժողովոյ», հատ. Բ, էջ 15—16։

34 Նաթանյան Պողոս, Արտոսր Հայաստանի կամ տեղեկագիր Բալուա, Քարբերդու, Չարսանճակի, Ճապաղջուրի և Երզնկայու, Կ. Պոլիս, 1879, էջ 136։

35 ԳԱԹ, Թ. Ազատյանի արխիվ, III բաժին, փաստաթուղթ 38, էջ 7։

*ղայանցը, Կոնճոյանները և այլն[36]։ Սղերդի նահիեյի խիզան գավառի կալվածատեր Վարդան քահանան 100 արտավար հող ուներ, ս. Խաչ վանքի վանահայր Սահակ վարդապետը պահպանում էր վանքապատկան 40 արտավար հողը և սեփականացնում ստացված եկամուտը։ Հայ խոշոր հողատերեր կային Կարինի, Խարբերդի, Բաղեշի, Սեբաստիայի վիլայեթներում։ Սոցիալական հարստահարման ասպարեզում սրանք քիչ էին զիջում Թուրք ու քուրդ ֆեոդալներին։ Այնուամենայնիվ, երկրի տնտեսական հաշվեկշռում հայ աշխարհիկ հողատերերը չնչին տոկոս էին կազմում։*



**Բայազետի բերդը**

*XIX դարի երկրորդ կեսին հարուստ հողատերեր էին մնում Արևմտյան Հայաստանի վանքերը, եկեղեցական վերնախավը։ Մուշի ս. Կարապետի վանքը տարեկան ստանում էր 400 հազար ղուրուշի եկամուտ։ Ժամեր էին հարկավոր «երիվարով անցնելու ու կտրելու այն հողատարածությունները, հատանելի անտառները, վարելի հողերը և բուսաբեր մեծատարած լեռնադաշտերը»[37], որոնք վանքի սեփականությունն էին կամ նրա վրա Թափու արած։ Մուշի առաջնորդական վիճակին ենթակա ս. Հովհաննու վանքը տարին 200 հազար ղուրուշի եկամուտ ուներ[38]։ Նրա ագարակների Թիվը անցնում էր 400-ից։ Վասպուրականի հոգևոր վիճակի Լիմ անապատի միաբանությունն ուներ ընդարձակ հողեր, անտառներ, ջրաղացներ և խանութներ։*

---

36 *Տե՛ս* Գեղամ տ. Կարապետյան, *Հողային հարցը հայաբնակ նահանգներու մեջ, Կ. Պոլիս, 1911, էջ 6։*

37 *«Ուղևորություն ի Փոքր Ասիա»»,* գրեցին Ալպէր Տրվրյե և Գեորգ Փիսոն, *Վիեննա, 1892, էջ 57։*

38 *ԳԱԹ, Թ Ազատյանի արխիվ, III բաժին, վավ. 49, թ. 1—2։*

1850—1860-ական թթ. Արևմտյան Հայաստանում և ողջ Թուրքիայում կային 200-ից ավելի հայկական վանքեր, որոնցից շատերը զբաղվում էին նաև առևտրական գործարքներով և բավականաչափ եկամուտ ստանում։

1830-ական թթ. սկսած քրիստոնեական վանքերն ու եկեղեցիները, նրանց հողերն ու անասունները անխտիր հարկադրվում են, վերանում է վանական հողատիրության ապահարկ կացությունը։ Դեռևս սուլթան Մահմուդ II-ը ստեղծեց մի հանձնաժողով, որը պետք է ուսումնասիրեր մուսուլման և քրիստոնյա հոգևորականության «վակֆերի»» դրությունը և հսկողություն սահմաներ նրանց եկամուտների վրա, ինչպես նաև կալվածքների առքն ու վաճառքը կատարեր կառավարության ստեղծած վարչության միջոցով։ Հետագայում հայ ամիրաների ու պատրիարքի ջանքերով սուլթանը վերանայեց իր հրամանագիրը։

Աբդուլ Մեջիդը 1853 թ. մայիսի 25-ին տված հրովարտակով հրահանգում էր, որ «...եկեղեցիներն ու վանքերը և անոնց սեպհական կալվածներն ու անշարժ ստացվածները զերծ մնան այսուհետև ամեն վնասներե։ Նմանապես բոլոր կրոնական հաստատությանց և եկեղեցականներու ապահարկությունը, և պատրիարքներուն և անոնց փոխանորդներուն արտոնությունններն ու առանձնաշնորհությունները, որոնք հիննեն ի վեր նշանակված են պերաթներուն մեջ...»[39]։ Ղրիմի պատերազմի նախօրյակն էր այս։ Սուլթանը դրանով սիրաշահում էր այլահավատներին, ձգտում նրանց հեռու պահել Ռուսաստանի ազդեցությունից։ Աբդուլ Ազիզը պետականացնում էր հայոց վանքերի ու եկեղեցիների կալվածքները, դրանք թողնելով նախկին տերերի օգտագործմանը՝ պայմանով, որ հարկ վճարեն պետությանը։

Վանի Սալնապատ վանքը մեկ տարում վճարում էր 1179 ռուբլի կալվածական հարկ ու աղնամ։ Վարագա վանքը տասանորդ էր տալիս 2811 ղուրուշ 10 փարա, երկու տարվա կալվածահարկ՝ 1106 ղուրուշ 30 փարա, ոչխարի հարկ՝ աղնամ 1581,3 ղուրուշ։ Աղթամարի վանքը և ողջ միաբանությունը պարտավոր էր նվիրատվությունից ստացած դրամից հարկ տալ, իսկ ոչխարների դիմաց, չնայած թալանվել էին քրդերի կողմից, երկու տարի շարունակ վճարում էր նախկին աղնամը։

Հարստություն դիզած վանքերը միշտ չէ, որ հանգիստ վայելում էին իրենց եկամուտները։ Քուրդ ու թուրք ավազակախմբերն ամեն րոպե կարող էին հայտնվել, կողոպտել նրանց ունեցվածքը և աղքատության դատապարտել վանականներին։ Այստեղ ևս ունենալը չէր կարևոր, այլ ունեցվածքի ապահովությունը։ Դրա համար էլ փողը գանձ էր դառնում, վերածվում ոսկու, թաղվում գաղտնարաններում, հանվում շրջանառությունից։

Այսպիսով, Արևմտյան Հայաստանում և Թուրքիայի հայաբնակ նահանգներում XIX դարի 30—60-ական թթ. ստվարացավ ամենատարբեր դավանանքի, տարբեր ազգությունների պատկանող խոշոր հողատեր-կալվածատերերի դասը։ Խոշոր հողատերեր մնացին սուլթանը, Բ. Դռան պաշտոնյաները, թուրք աղաները, մահմեդական հոգևորականները, քուրդ ցեղապետերը, հայկական վանքերը, հայ սարաֆները, չորբաջիները, էֆենդիները,

---

39 Տիգրան Սավալանյանց, Պատմություն Երուսաղեմի, հատ. 2, Երուսաղեմ, 1931, էջ 1218։

աղաները։ Կալվածատերերը, սակայն, ազգաբնակչության վեցը տոկոսն էին կազմում, բայց և այնպես տիրում էին հողային հարստության մի զգալի մասին, իսկ գյուղացիությանը, որն իր ուսերին էր կրում սոցիալ-քաղաքական ճնշումների անընդհատ ծանրությունը, մնում էր հողերի շուրջ 30%-ը։ Անվիճելի է, որ արևմտահայ ազգաբնակչության գերակշռող հատվածը հողագործությամբ զբաղվող, սոցիալական ու իրավական ծանր ճնշումների ենթակա աշխատավոր գյուղացիությունն էր։

Ագրարային ռեֆորմից հետո Թուրքահպատակ նահանգների թիմարատեր ու զեամեթատեր, առավել ևս խասատեր կալվածատերերի հողերի վրա աշխատող գյուղացիների զգալի մասը փրկագին վճարեց և թափուական իրավունքով հողակտորներ գնեց։ Ոչնչացված, տարագրված քուրդ ու Թուրք բեկերի և աղաների հողերի մի մասը ևս տրվեց գյուղացիներին, պարտավորեցնելով հարկը վճարել Բ. Դռանը։

Արևմտյան Հայաստանի սակավ հող ունեցող բոլոր գյուղացիները չէ, սակայն, որ հող ստացան կամ, մի կերպ դիմանալով պետության հարկային ծանր քաղաքականությանը, պաշտպանեցին իրենց հողատարածությունները։ Դրամատեր, իշխանավոր ու զորավոր հարուստները շարունակեցին վաշխառության, բռնության, կողոպուտի միջոցով ունեզրկել գյուղացուն, նրան կախման մեջ դնել ու աշխատեցնել կալվածատիրական հողերի վրա։ Գյուղացիության մի մասն էլ վարձակալությամբ հողը վերցնում էր քաղաքներում ապրող հողատերերից։ Գյուղացիների մյուս խումբը կիսարարներն էին։ Կիսրար հողամշակմամբ զբաղվող գյուղացիությունը աստիճանաբար վերածվեց մի ստվար դասի, որը կոչվում էր մարաբա։ 1858 թ., հատկապես 1867—72 թթ. ռեֆորմներից հետո մարաբայությունը տարածվում է հատկապես քրդախառն հայկական գավառներում։

Մարաբաները հիմնականում հողազուրկ գյուղացիներն էին։ Սրանք կախման մեջ էին քուրդ ու Թուրք ֆեոդալներից, հայ հողատերերից, կալվածատեր վանքերից։ Մարաբաները ևս բաժանվում էին մի քանի մասերի։ Կային մարաբաներ, որոնք ունեին հողակտորներ, սակայն չունեին գյուղատնտեսական գործիքներ, բանող անասուններ։ Մարաբաների մյուս խումբն ուներ հող, անասուններ, սերմացու, սակայն ֆեոդալը բռնությամբ նրանց հողերը դարձրել էր իր սեփականությունը և նախկին հողատերերին պարտադրում էր աշխատել իր համար[40]։ Խիստ ծանր էր վիճակն այն գյուղացիների, որոնք աշխատում էին ռազմատենչ, զորավոր ցեղապետերի, քուրդ խաֆիրների, էմիրների համար։ Այստեղ առկա էր չձևակերպված կիսաճորտությունը, որն ավելի քան տարածված էր Տարոնում, Վասպուրականում, դաշտային Սասունի մի շարք գյուղերում։

Գր. վ. Աղվանյանցը, որը Կ. Պոլսի պատրիարքարանի հանձնարարությամբ 1870—72 թթ. շրջում էր Տարոնի ու Վասպուրականի գյուղերում, իր նամակներում նկարագրում էր հայ գյուղացու ողբերգական կացությունը։ Նրա բազմաթիվ գրությունները վկայում են, որ Մշո, Ճատախի, Խութի, Բռնաշենի, Սասունի դաշտային շրջանների քուրդ բեկերը, խաֆիրները հայ ու քուրդ

---

40 Տե՛ս Ա. Համբարյան, նշվ. աշխ., էջ 70—71։

գյուղացիներին ճորտական կացության մեջ էին դրել։ «Դաս դաս նոցա բաժին եղած յուրաքանչյուրին իբրև հպատակ և սեփհականություն համարված և ոչ տերության՝ տարեկան տուրքը կուտան խաֆիրներուն։ Այն մարդակերպ վայրենի գազան խաֆիրներ՝ ինքնագլուխ և ապստամբ վիճակի մեջ լինելով՝ իրենց ճորտ հայերը՝ կանամբ և որդվոք շարժական և անշարժ կալվածներով իրարու ծախելու սովորություն ունին. և երբ իրարու դեմ կատաղին և թշնամանան, յուրաքանչյուրն իրենց ստրուկ հայերն բռնի առջևնին ձգելով, իրարու սահման կասպատակեն, մանավանդ թե հայոց բնակած գեղերու վրա, կկողոպտեն, կքանդեն, կայրեն, կվիրավորեն, կսպանեն և կվերադառնան տեղերնին։ Հաղթահարեալ թշնամին՝ մյուսին վրեժը լուծելու համար, զորաժողով կլինի, կասպատակե թշնամույն հպատակ հայերու գյուղերը, արշային զայրույթով կկողոպտե, կքանդե, կայրե, կսպաննե և կդառնայ»[41]։

Խութում և Բռնաշենում խաֆիրները հայ գյուղերն ամբողջ համայնքներով վաճառում էին իրար, իսկ գնողները հարկերը գանձում էին քառապատիկ ավելի, քան թուրքահպատակ շրջաններում։ Ամբողջ Բռնաշենը պատկանում էր երեք քուրդ խաֆիրի։ Սասունի գավառի Մահպապանք գյուղի խաֆիրներն էին Հայտար Մահմուդը, Իսկան Քահվարը, Շավեշը և Մեհմետը։ Խաֆիրները փոխադարձաբար թալանում էին «իրար գյուղերը», իսկ երբ Մ. Խրիմյանը դրա համար բողոքեց Բ. Դռանը, ոչ մի պատասխան չստացավ։ Նա հասկացավ, որ թուրք կառավարիչները ոչ միայն համաձայն էին նման ակտերի գոյությանը, այլև իրենք հրահրում էին քրդական վերնախավին, որպեսզի այս մեթոդով հնազանդեցնեին Սասունը, Շատախը, Մոկսը։ Պատահական չէ, որ կիսաճորտական վիճակը հետագայում ուժեղացավ և տարածվեց հայկական մյուս նահանգներում։

Այսպիսով, խաֆիրապատկան գյուղացիները միայն ձևականորեն էին ազատ, իսկ իրականում կիսաճորտեր էին։ Նրանք վճարում էին բազմաթիվ հարկեր, կատարում պարհակներ և առանց վճարի ու թույլտվության ոչ կարող էին ամուսնանալ և ոչ էլ թաղել իրենց հանգուցյալներին։

* * *

XIX դարի 40—60-ական թթ. Թուրքիայի տնտեսության հիմնական ճյուղը գյուղատնտեսությունն[42] էր, որը ֆեոդալական մակարդակի վրա գտնվելով, ընդգրկում էր ազգաբնակչության շուրջ 85 տոկոսը։ Կայսրության գյուղատնտեսությունն իր եկամտաբերությամբ, մանավանդ ժամանակի կապիտալիստական երկրների գյուղատնտեսության համեմատությամբ, գտնվում էր զարգացման ցածր աստիճանի վրա։

Այդուհանդերձ, XIX դարի 50—60-ական թթ. Թուրքիայի և Արևմտյան Հայաստանի մի շարք մարզերում, նախորդ տասնամյակների համեմատությամբ, գյուղատնտեսությունը որոշ առաջընթաց էր կատարել։ Կիլիկիայի ծովամերձ շրջաններում զարգացել էր բամբակագործությունը, Ադանան սկսել

---

41 Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 219, վավ. 152, տե՛ս նաև «Մասիս», 1872, № 1239։

42 Տե՛ս *А. Д. Новичев*, Очерки экономики Турции до мировой войны, М.—Л., 1937, стр. 43—44.

էր իր աճտահանած բամբակով սնել ֆրանսիական տեքստիլ արդյունաբերությունը, Տրապիզոնը անցնում էր տարբեր տեսակների ծխախոտ, եվրոպացիների, մասամբ էլ տեղացի հայ վաճառականների միջոցով հումքը արտահանվում էր հարևան երկրները և երբեմն էլ Ռուսաստանի ու Անգլիայի շուկաները։ Արտահանվում էին նաև հացահատիկ, չոր մրգեր, անասուններ, բուրդ, կաթնամթերք։ Ապրանքների արտահանության աճը նպաստում էր գյուղատնտեսության մի շարք ճյուղերի առաջընթացին։

Արևմտյան Հայաստանի գյուղատնտեսությունը, սակայն, դեռևս մնում էր զարգացման ֆեոդալական մակարդակի վրա։ Գործիքների պարզունակության պատճառով ցածր էր գյուղատնտեսության արտադրողականությունը։ Արտադրողներն անկարող էին կատարելագործել արտադրամիջոցները, իսկ կառավարությունը բնավ չէր էլ մտահոգվում դրանով։ Ուրեմն, գյուղատնտեսության հետամնացության առաջին ու հիմնական պատճառը տիրապետող ֆեոդալական արտադրաեղանակն էր։ Կ. Մարքսը նկատում էր, թե Ասիայում «բերքը այնպես է կախված լավ կամ վատ կառավարությունից, ինչպես Եվրոպայում՝ լավ կամ վատ եղանակից»[43]։

Արևմտյան Հայաստանի տնտեսության հետամնացության հիմնական պատճառներից էր նաև օտար կապիտալի զորեղ ու քայքայիչ ազդեցությունը։ XIX դարի 40-ական թթ. արտասահմանյան կապիտալը ծանր հարվածներ էր հասցնում հողագործին, քայքայում նրա տնտեսությունը, շուկայական մրցության մեջ պարտության մատնում տեղական հումքով սնվող ազգային փոքրաթիվ ձեռնարկություններին։ Եվրոպացիները էժան գներով հացահատիկ էին գնում Թուրքիայից և թանկ գներով արդյունաբերական ապրանքներ վաճառում նրա ազգաբնակչությանը։

Ղրիմի պատերազմը ճակատագրական նշանակություն ունեցավ կայսրության տնտեսության համար։ Եվրոպացիները մի ձեռքով առատ վարկեր էին տալիս սուլթանին, մյուս ձեռքով ազդեցության շրջանների բաժանում նրա կայսրությունը։ Ֆրանսիան հաստատվեց Սիրիայում, փորձեց տնտեսապես նվաճել Կիլիկիան, Անգլիան տիրացավ Միջագետքին, ջանալով իր ազդեցությունը հաստատել Անատոլիայում և միջերկրածովյան կղզիներում։ Անգլիան ու Ռուսաստանը մրցում էին Արևմտյան Հայաստանը ազդեցության գոտիների բաժանելու համար։ 1860-ական թթ. վերջերին Թուրքիան արդեն դարձել էր եվրոպական տերությունների կիսագաղութ։

Օտարերկրացիները դրամով չբավականացան։ Նրանք Թուրքիայում բացեցին բանկեր։ 1856 թ. հիմնված Օտոմանյան բանկը 1863 թ. պետական բանկի իրավունք ստացավ, արտոնություն ունենալով ոչ միայն փոխառություններ բաց թողնել, այլև դրամաթղթեր փոխանակել և այլն։ Օտոմանյան բանկը աստիճանաբար իրեն ենթարկեց կայսրության ֆինանսները։ Եվրոպացիները վերցնում են նոր կոնցեսիաներ, իսկ պետական պարտքը գնալով ավելի էր մեծանում։ Մեծ ծախսեր էին պահանջում բանակը, սուլթանի բազմանդամ հարեմը, մեծաքանակ պաշտոնյաները։

1850—60-ական թթ. Թուրքիան ապրեց ֆինանսական ճգնաժամ։ Կայսր-

---

[43] *К. Маркс и Ф. Энгельс,* Соч., том 9, стр. 133.

րության դրամական եկամուտների գլխավոր աղբյուրը մնում էին գյուղատնտեսությունը, մահմեդական բնակիչներից, առավել ևս քրիստոնյա հպատակ ազգերից գանձվող բազմաթիվ հարկերը։ Որքան ավելի էր պետությունը սարկանում Եվրոպային, այնքան սաստիկ էր նա կողոպտում ժողովրդական զանգվածներին։

Գյուղացիությունից գանձվող հարկերը բազմատեսակ էին։ Դժվար է ճշգրիտ կերպով ցույց տալ, թե ամեն մի ծխին միջին հաշվով ինչքան հարկ էր հասնում կամ ինչ անուններ ունեին այդ հարկերը, քանի որ «միևնույն կազայի տարբեր գյուղերում, կամ նույնիսկ միևնույն... վիճակում նույն հարկը անվանվում էր այլ ձևով, գանձվում էր այլ կերպով, տարբեր չափերի, տարվա տարբեր ժամանակներում, այլ պայմանների առկայությամբ»[44]։ Համապատասխան նյութերի պակասը հնարավորություն չի տալիս ընդհանուր հայտարարի բերել հարկման գործում եղած կամայականություններն ու չարաշահումները։ Այնուամենայնիվ կային հարկեր, որոնք պարտադիր էին բոլորի համար, դրանցից ամենահիմնականն ու ծանրը աշարն էր։

Աշար-տասանորդը գանձում էին ոչ միայն աղաներն ու բեյերը, այլև պետական հարկահավաքները, հարկերը կապալով վերցնող պաշտոնյաներն ու սարաֆի նշանակած մարդիկ։ Հարկը ծանրանում էր, քանի որ վաշխառուն կամ սարաֆը նահանգի աշարը գնում էր պետությունից, իր հերթին վաճառում փոքրերին, սրանք էլ իրենց ստորադրյալներին էին հանձնարարում կատարել հարկահավաքումը։ Ինչքան ավելանում էր վաշխառուների թիվը, այնքան շատանում էր հարկաչափը։

Պաշտոնական տվյալներով, պետությունը Էրզրումի վիլայեթից 1864—1865 թթ. աշար է գանձել բերքի 15%-ը, իսկ հաջորդ հինգ տարիներին՝ 12,5%-ը։ 1867 թ. վիլայեթը գանձարան է մուծել 152.900 թուրքական լիրայի աշարագումար, 1868 թ.՝ 184.470 լիրայի, 1870 թ.՝ 195.000 լիրայի[45]։ Բայց դա բոլորը չէր։ Եթե տարվա հացը թանկ էր, հարկը գանձում էին բնամթերքով, իսկ եթե էժան էր՝ դրամով։ Եթե սրան գումարենք հարկահավաքների ապօրինությունները, ապա աշարի քանակը կանցնի եկամտի 20%-ից։

Էմլաք-կալվածահարկը գանձվում էր տների, կալվածքների, մարգագետինների համար։ Այն բաժանվում էր երկու մասի՝ հողային հարկի կամ արազի և շինությունների հարկի կամ էմլաքի։ Կալվածահարկը գանձվում էր կալվածքի գնահատման յուրաքանչյուր 1000-ից 4%-ը և ստացված եկամտի յուրաքանչյուր հարյուրից 4%-ը[46]։ Քաղաքներում, եթե տունը հարկվում էր, վճարվում էր գնահատման 5 և ավելի տոկոսը։ Էրզրումի վիլայեթը 1866 թ. տվել է 73.700 թուրքական լիրայի էմլաք, 1867 թ.՝ 69.300, 1868 թ.՝ 70.950, 1869 թ.՝ 69.410 օսմ. լիրայի[47]։

Աղնամ կամ ղամճուրը գանձում էին ամեն մի ոչխարի կամ այծի համար երեք դահեկան։ 1850-ական թթ. աղնամ էին գանձում մանր եղջերա-

---

44 ՌԱՔԱ, ՍՊԲ, Գլխավոր արխիվ, V—Ա2, 1872 թ., գ. 1083 (72), թ. 16։

45 Նույն տեղում, թթ. 17—19։

46 «Ընդարձակ օրացույց ազգային հիվանդանոցի», Կ. Պոլիս, 1901, էջ 300։

47 ՌԱՔԱ, Գլխավոր արխիվ, V—Ա2, գ. 1083, թ. 19։ Տե՛ս նաև Ա. Համբարյան, նշվ. աշխ., էջ 108—109։

վոր անասունների տերերից, ամեն մի ոչխարի համար 1,5 ղուրուշ։ 1868 թ. հարկը դարձավ 2 ղուրուշ, իսկ 1870—71 թթ.՝ 3 ղուրուշ[48]։

Սակայն աղնամը ավելի էր ծանրանում գանձման ձևերի և գանձողների կամայականությունների պատճառով։ Եթե անասունները գարնանը հաշվառված էին և մի քանի օր հետո թալանված քուրդ ավազակապետերի կողմից, միևնույնն էր, անասնատերը պարտավոր էր հարկերը վճարել ամբողջությամբ։ Չվճարելու դեպքում բռնագրավվում էր նրա շարժական ու անշարժ գույքը։ Աղնամը և տրվում էր կապալով։ Միայն 1872 թ. պետությունն ինքը կազմակերպելով աղնամի գանձումը, հավաքեց 2.010.000 դահեկանով ավելի, քան նախորդ տարին։ Իսկ Էրզրումի վիլայեթի նույն տարվա աղնամը կազմեց 9.404. 286 դահեկան[49]։

Բեյրե անվանված հարկը հավաքվում էր զույգ եզների տերերից՝ մեկ բեռ ցորեն, մեկ բեռ գարի, իսկ շահնալըխը կամ եոլչեկ հակկը վճարվում էր հարկահաններին՝ աշարի 1/16 մասի չափով։ Ճանապարհների հարկը պարտադիր էր 20—60 տարեկան տղամարդկանց համար, ամեն մեկից 20 ղուրուշ գումար կամ փոխարենը պետք է կատարեին ֆիզիկական աշխատանք։

Էհթիսաբը վերցվում էր խոշոր եղջերավոր անասունների, ձիերի, ջորիների վաճառքի, նույնիսկ փոխանակման դեպքում, նրանց գնի մեկ քառասուներորդի չափով[50]։

Թուրքահպատակ այլազգիները մահմեդականներին հավասար հարկեր վճարելուց զատ, տալիս էին մի շարք այլ հարկեր, որոնք իրենց ծանրությամբ պակաս չէին վերոհիշյալից, իսկ իրավական տեսակետից ցուցադրում էին հայերի «ռայա» լինելու հանգամանքը։ Դրանցից առաջինն ու ամենածանրը խարաջն էր՝ վերանվանված բեդելի ասկերիե (զինվորական հարկ)։

1840 թ. հրամանագրով գլխահարկի գանձումը կատարվում էր ոչ թե զատ-զատ՝ անհատներից, այլ ընդհանուր գումարը դրվում էր համայնքների վրա և պահանջվում համայնապետերից։ Հնուց եկող գլխահարկը հարատևեց մինչև 1855 թ., այնուհետև փոխարինվեց զինվորական հարկի՝ ըստ էության մնալով նույնը, սակայն ստանալով նոր հիմնավորում, այլազգի ժողովուրդներին կեղեքելու նոր երանգներ։ Պատճառաբանությունը հետևյալն էր. զինվորական օրենքով Օսմանյան կայսրության մեջ բնակվող ամեն մի համայնքի համար նախատեսվում էր արական սեռին պատկանող յուրաքանչյուր 180 մարդուց մեկ զինվոր։ Քանի որ ոչ-մուսուլման հպատակները զրկված էին բանակում ծառայելու իրավունքից, ապա նրանք պետք է վճարեին 5000 ղուրուշ հարկագումար[51]։

Աբդուլ-Ազիզը հարկատու համայնքի անդամների թիվը իջեցրեց 135-ի, իսկ հարկը բարձրացրեց 6000 ղուրուշի։ Ըստ որում, այժմ հարկը գանձում էին արական սեռի բոլոր քրիստոնյաներից՝ ներառյալ հաշմանդամները, անաշխատունակները։

---

48 ՌԱՔԱ, Գլխավոր արխիվ, V—Ա2, գ. 1083, թթ. 20—21։

49 Նույն տեղում, թ. 22։

50 Նույն տեղում, թ. 23։

51 Տե՛ս M. A. Ubicini, Etat présent de l'Empire Ottoman, Paris, 1876, էջ 128։

1860-ական թթ. Արևմտյան Հայաստանում բեդելի ասկերիեն արդեն գանձվում էր 21—32 ղուրուշի չափով, սակայն այն անխախտ օրենք չէր, անփոփոխ բոլորի համար։ Մի քանի գավառներում բեդելի ասկերիեն վերցվում էր նորածնից մինչև ղառամյալ հասակի արական սեռի հայերից, որոշ տեղերում 15 կամ 18 տարեկան հասակից սկսած[52]։ 1871 թ. Վանում զինվորական հարկ էր գանձվում աղքատներից ու հարուստներից, սկսած 15, վերջացրած 60 տարեկանով՝ ամեն մեկից 21 ղուրուշ 20 փարա։ 1872 թ. Վանի իդարե մեջլիսը որոշեց արական սեռի քրիստոնյաներին հաշվել հարյուրներով, ամեն մի խմբից 25-ին ազատել, իսկ մնացած 75-ից գանձել՝ յուրաքանչյուրից 21,5-ի փոխարեն 27 ղուրուշ 30 փարա։ Կարին քաղաքի հայերը տալիս էին յուրաքանչյուրը 21 ղուրուշ. հարկի մեկ տարվա գումարը կազմում էր 84000 ղուրուշ[53]։ Էրզրումի վիլայեթը 1865 թ. պետական գանձարան մուտք է արել 25.960, 1866 թ.՝ 25.960, 1867 թ.՝ 24.860, 1869 թ.՝ 30.960 ղուրուշ զինվորական հարկ։ Սեբաստիայի վիլայեթի մեկ տարվա ընդհանուր հարկագումարը ավելի մեծ չափերի էր հասնում[54]։

Հարկերի և առանձնապես զինվորական հարկի ծանրության պատճառով նվազում էր հայ ազգաբնակչությունը, կրճատվում էր բնական աճը, տեղի էին ունենում կրոնափոխության դեպքեր, մի երևույթ, որը վերջին սուլթանների վարած ազգային քաղաքականության բնորոշ կողմերից մեկն էր։

Գավառահայ ռայան, պետական հարկերից բացի, տուրքեր էր տալիս քրդական վերնախավին, խաֆիրներին, թոռաններին. սրանք պարբերաբար արշավանքներ էին կազմակերպում, կողոպտում հայերին, հաճախ չենթարկվելով ոչ միայն կուսակալ վալիներին, այլև սուլթանական կառավարությանը։

Վրանաբնակ քուրդ ցեղապետերը հայերին հարկադրաբար դարձնում էին իրենց հարկատուներ։ Մեկ համփա հողամաս ունեցողը վճարում էր $12^1/_2$ ղուրուշ հարկ, կիսահամփան՝ դրա երկու երրորդը, իսկ պճեղը՝ մեկ երրորդը[55]։ Դրանից բացի, հայերը պարտավոր էին քուրդ բեկերին փեշքեշ տալ, զավակ ծնվելու դեպքում թանկարժեք նվերներ տանել, կոռ ու բեգար կատարել։

Երբ վրանաբնակ քրդերը ձմեռելու նպատակով գյուղերն էին իջնում, ֆիլաները պարտավոր էին հոգալ խաֆիրների ուտեստի, անասուններին կերով ապահովելու գործը։ Երբեմն խաֆիրը ֆիլայի հացն ուտելու համար դիշքիրասի՝ ատամի վարձ էր ստանում։ Հպատակները հարսանեկան հանդեսի թույլտվություն ստանալու համար պարտավոր էին 50—150 ղուրուշի գումար տալ[56]։

Նիկոմիդիայի (Իզմիտի) գավառի կալվածատիրական հողերի վրա աշխատող գյուղացին, եթե թողներ բեկի հողը և անցներ մեկ ուրիշի կալվածքը կամ գաղթեր ընդհանրապես, համայնքի մյուս անդամները պարտավոր էին նրա

---

52 ՌԱՔԱ, Գլխավոր, արխիվ, V—Ա2, գ. 1086, թ. 27։
53 Նույն տեղում, թ. 28։
54 Տե՛ս Վ. Համբարձումյան, Գյուղաշխարհ, Փարիզ, 1927, էջ 42։
55 «Մասիս», 1872, 18 մայիսի, № 1239։
56 Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 202, վավ. 549։

տեղ 5 ոսկի վճարել։ Համայնքի անդամները 50 օրվա պարտադիր, անվճար կոռային աշխատանք պիտի կատարեին կալվածատիրոջ համար։ Ձի ունեցողները «տիրոջ» ընտանիքը փոխադրում էին ամառանոցներ, իսկ չունեցողները պարտավոր էին շալակել նրա երեխաներին և տանել ամառանոցներ կամ ուր կ՜արգադրվեր[57]։

Սասունի որոշ գյուղերում, Բռնաշենում, Խութում, Շատախում խաֆիրապատկան գյուղացիները, քրդական դերեբեյությունների վերացումից հետո էլ, հովանավոր խաֆիրին տալիս էին բնամթերային ռենտա։

Արևմտյան Հայաստանի տնտեսական հետամնացության, ժողովրդի սոցիալական անտանելի կացության պատճառներից էին տիրակալների՝ զինված ջոկատներ ունեցող Թուրք ֆեոդալների, առավել ևս վրանաբնակ, միշտ տեղից տեղ շարժվող, իրենց հետևից մոխրակույտեր, ավերածություն, ողբ ու աղաղակ թողնող քուրդ ցեղապետերի ասպատակությունները, ավարառությունը, անպաշտպան ռայայի ունեցվածքի կողոպուտը։ Եթե 1850-ական թթ. գավառներում որոշ չափով զսպվեցին հարստահարությունները, ապա 1860-ականներին դրանք ավելի սաստկացան և հայ աշխատավորի կյանքըն, ունեցվածքը կրկին դրվեցին անապահովության վտանգի տակ։

Հայ աշխատավորը սոցիալապես ճնշվում էր նաև ազգակից վերնախավի՝ սարաֆ ամիրաների, չորբաջիների, Կ. Պոլսի հայոց պատրիարքարանի, տեղական առաջնորդների, վանքերի ու եկեղեցիների վանականների ու եկեղեցականների կողմից։ Թուրք փաշային սարաֆ դառնալով, ամիրաներից ամեն մեկը անխնայորեն կողոպտում էր աշխատավորությանը։ Դրամի տենչով մոլեգնած նա աշխատում էր, առանց ազգի ու դավանանքի խտրության, գյուղացուց կորզել այնքան, որքան հնարավոր էր։ Արևմտյան Հայաստանում եղած վաշխառուների զգալի մասը հայեր էին։ Նրանք դրամը փոխ էին տալիս բարձր տոկոսներով, գյուղացուն գցում իրենց ոստայնի մեջ և կեղեքում նրան։

XIX դարի կեսերին ապրանքա-դրամական հարաբերությունների զարգացման հետևանքով վանքերը ևս ուժեղացնում են գյուղացիության սոցիալական շահագործումը։ Զբավականանալով վանքապատկան հողերից ստացված եկամուտներով, նրանք ծանրացնում էին հարկերը, ավելի անխնա կողոպտում հայ գյուղացուն։ Գյուղացիները վանքին տալիս էին պտղի, աշխատում վանքապատկան հողերում, ուտելիք և վառելիք մատակարարում վանականներին։ Իսկ եկեղեցուն, ծխատեր քահանային կամ վարդապետին վճարում էին «... քառասնից, ժամոց, աջճամբույր, խաչճամբույր, գավազանպտուղ»[58] և այլն։ Գոյություն ուներ նաև «վանական կողոպուտ» անունով տուրք, այն է՝ մեռնողի հագուստը տրվում էր քահանային, իսկ եթե հարուստ լիներ՝ մի հատ էլ խոշոր եղջերավոր անասուն՝ որպես «մեղաց գին»[59]։

1861 թ. սահմանվեց հարկահավաքման նոր ձև։ Արևմտահայ հարկա-

---

57 Տե՛ս Մինաս Գասապյան, Հայերը Նիկոմիդիո գավառին մեջ, Պարտիզակ, 1913, էջ 82—83։
58 «Արծվի Վասպուրական», 1862—1863, № 3, էջ 89։
59 Հայկ Ղազարյան, Մ. Մամուրյան, Երևան, 1961, էջ 79—80։

տուները բաժանվեցին չորս խմբի. 1. 20—30 ղուրուշ հարկ վճարողներ, 2. 50—60 ղուրուշ, 3. 100—120 ղուրուշ, 4. 120 և բարձր վճարողներ՝ «...ըստ չափու կարողության և ազգասիրության»[60]։ Պատրիարքարանը հարկ էր վերցնում նաև քահանաներից, իսկ սրանք էլ՝ «հովվյալներից»։ Վանում մանկան մկրտության համար գանձում էին 2—5 ղուրուշ, պսակի համար՝ 10—20 ղուրուշ, թաղման համար՝ 5—20 ղուրուշ, տնօրհնեքի համար՝ 30—40 փարա, գերեզմանօրհնեքի համար՝ 20—40 փարա, քառասունքի համար՝ 40—60 փարա[61]։

* * *

Սոցիալական հարստահարություններից ավելի անտանելի էին ազգային այն ճնշումներն ու հալածանքները, որոնք բաժին էին ընկնում կայսրության քրիստոնյա հպատակներին։

«Թանզիմաթի» խոստումները չէին կարող իրականացվել ֆեոդալական բռնապետական տերության մեջ և վերացնել կրոնական ու ազգային խտրականությունը Թուրքիայում, իրավական տեսակետից հավասարության նշան դնել քրիստոնյա ու մահմեդական ժողովուրդների միջև։ Ծրագրված բարեփոխությունները ձևական էին, իսկ կառավարության կողմից հրահրվող ազգամիջյան խտրականությունն ու ընդհարումները սուլթանական կառավարության վարած քաղաքականության հիմնանպատակն էր։

1850—60-ական թթ. հրապարակված փաստերը կասկած չեն թողնում, որ «Թանզիմաթը» մնացել էր թղթի վրա։ Գազանությունների, ոճրագործությունների անթիվ դեպքերը մերթ հիշեցնում էին սուլթանական մռայլ միջնադարը, մերթ էլ անօրինակ դառնալով, գրեթե նմանը չէին գտնում մարդկության պատմության մեջ։

Հայերի նկատմամբ կատարած իրենց վայրագությունների մեջ, մասնավորապես Ղրիմի պատերազմից հետո, քուրդ վերնախավերը կրկին արտոնության իրավունք էին վայելում։ «Ի՞նչ է պատահում դժբախտ հայերի հետ,— գրում էր նշանավոր արևելագետ Ա. Կրիմսկին,— այդ ամենքին էլ հայտնի է. նույնպես հայտնի է բոլորին, որ գազանությունների մեղսագործներն ոչ միայն չեն արժանանում պատժի, այլ, ընդհակառակը, կառավարությունից պարգևներ են ստանում։ Մինչև անգամ Ասորիքում, այն երկրում, որը տաճկական ուրիշ գավառներից քրիստոնյաների համար ավելի ապահով է համարվում, մահմեդականը սպանելով քրիստոնյային՝ անպատիժ է մնում. սկզբում մի որևէ հյուպատոսի պահանջով նա բանտ կնստի, իսկ երեք օրից հետո տաճիկ կառավարության շնորհիվ ազատ կհամարվի (մանավանդ, եթե կաշառք էլ ստանան), և բոլորին ծանոթ մարդասպանը հպարտ կերպով անցուդարձ կանի, օրինակ այնպիսի բազմամարդ փողոցով, ինչպես Բեյրութի բյուրժն է»[62]։

---

60 «Տեղեկագիր քաղաքական ժողովո», Կ. Պոլիս, 1861, էջ 31։

61 «Մուրճ», 1904, № 12, էջ 46։

62 Ա. Կրիմսկի, Մահմեդական աշխարհն ու նրա ապագան, Վաղարշապատ, 1906, Թարգմանեց Բաբգեն վարդապետը, էջ 105—106։

Ռուս գեներալ Լիխուտինը, ծանոթանալով հայերի իրավազուրկ վիճակին, գրում է. «Նրանք իրավունք չունեն զենք կրելու... Ես տեսա մի քանի հայեր կտրված ականջներով ու քթերով, մի բան, որ արված էր ոչ թե դատարանով, այլ կամայականորեն և բռնությամբ, այս կամ այն ազդեցիկ ու հարուստ գյուղապետի կամ տեղական դատարանի անդամի կողմից։ Նրանք [հայերը] մշտապես գտնվում էին տագնապի մեջ, ունեին ահաբեկված տեսք...»[63]։

Թուրք և քուրդ վերնախավերը քրիստոնյա հպատակների հետ վարվում էին ինչպես ցանկանում էին, անարգում էին նրանց, վիրավորում, կողոպտում և անպատիժ հեռանում։ Այդ մասին Վասպուրականի սոցիալ-քաղաքական կյանքին քաջատեղյակ Գ. Սրվանձտյանցը գրում է. «Թուրքաց մոլեռանդությունն և աններողությունն այնչափ է, որ կրնան հայ մը ձիեն վար առնել, շուկայի և փողոցներու մեջ անտեղի պատճառով մը, կամ ի՞նչ պետք է պատճառ, մի՞թե հայ լինելը բավական պատճառ չէ՞, կքաշեն, կգանակոծեն. եթե թուրք մը բան գնած է հայե մը իրավունք չունի հայն ստակ պահանջելու, եթե վճարե թուրքն՝ շնորհ մ'ե, եթե ոչ յուր իրավունքն է»[64]։ Թուրքական թաղամասերով հայերն ազատ, համարձակ անցնել չէին կարող։ Եկեղեցի, շուկա գնալիս կամ ընդհանրապես փողոցով երթևեկելիս հայ կանայք ու աղջիկները ստիպված էին մինչև աչքերը փաթաթվել շալերի մեջ, որպեսզի չնկատվեր նրանց գեղեցկությունը։

Սուլթանական կառավարությունը 1850—60-ական թթ. սկսեց ուժեղացնել ազգային ճնշման ու հալածանքների իր քաղաքականությունը և ընդհանուր գրոհի անցավ արևմտահայության դեմ[65]։ Դրա պատճառն այն էր, որ նախ շովինիստական նոր ծրագրերով հրապարակ իջավ թուրք բուրժուազիան, որի հիմնական ձգտումներն էին երկարաձգել Օսմանյան կայսրության գոյությունը, ազգային-ազատագրական շարժումներն արյան մեջ խեղդելով, հավերժացնել իր տերության ամբողջականությունը և ընդարձակել նրա սահմանները։ Թուրք բուրժուազիայի ռազմատենչ ծրագրերը իրականացնելու նպատակով 1868 թ. ստեղծվեց «Իթթիհատը», որի հիմնադիրները հանդիսանում էին «մոլի թուրքերը, մոլի նացիոնալիստները»[66]։ «Իթթիհատը» որդեգրըվեց «Թուրքիան թուրքերի համար» քաղաքականությանը։

1860-ական թթ. կառավարությունը սկսեց ավելի շատ զբաղվել հպատակ այլազգիների խնդրով։ Քրիստոնյաներին պատեհառիթ ձուլելու նախկին պրակտիկան վերածվեց պետական քաղաքականության։ 1869 թ. Ֆուադ փաշան թուրք նորաստեղծ բուրժուազիային ու կառավարությանը պատգամեց. «Ներքին գործերում մեջ մեր բոլոր ջանքը միմիայն մեկ նպատակի մը ձգտելու է, որ է զանազան ցեղերու ի մի ձուլումը։ ... Ասկե հետո այդ մեծ կայսրությունը ո՛չ հույներուն, ոչ ալ Սլավներուն կրնա վերաբերիլ, ո՛չ մի կրոնքի և ոչ ալ մեկ ցեղի։ ... Գարատաղ մը, Սերպ իշխանապետություն մը, Հայաստանի թա-

---

[63] *М. Лихутин*, Русские в Азиатской Турции в 1854 и 1855 гг., СПб., 1863, стр. 168.

[64] Գ. Սրվանձտյանց, *Թորոս աղբար Հայաստանի ճամփորդ, մաս Ա, էջ 162—163*։

[65] *Տե՛ս* Մ. Գ. Ներսիսյան, *նշվ. աշխ., էջ 76—80*։

[66] «История XIX века», под ред. *Лависа* и *Рамбо*, т. VI, М., 1938, стр. 121.

գավառությունը մը, իրենց և աշխարհի ամենափոքր օգուտ մը չընծայելե զատ, առավել կամ նվազ ցնորական երազներ են...»[67]։

Մահից քիչ առաջ կազմված Ֆուադի այս կտակը դարձավ Թուրքական կառավարության վարած «նոր» քաղաքականության հիմնաքարը, մանավանդ, երբ Բ. Դուռը տեսավ, թե Բուլղարիան, Չեռնոգորիան, Սերբիան ինչպիսի համառ պայքար մղեցին իրենց ազատագրման համար։ Ուժեղացավ հայերի ձուլման քաղաքականությունը։ Մահմեդականացումը կատարվում էր և՛ բռնությամբ՝ ուղղակիորեն, և՛ հարկային ծանր քաղաքականության միջոցով՝ անուղղակիորեն։

«Խաղտիք և Բարձր Հայք Թրքացած, մոլորված, գաղթած և աքսորված՝ կը հեծե այսօր,—գրում էր Սրվանձտյանցը,—Քեղքիթ գավառն այսօր ունի... 98 գերեզմանոց ավերակ, այդ ընդարձակ գավառին մեջ միայն 15 տուն հայ մնացեր է»[68]։ Տիգրանակերտի մոտակայքում բնակություն էին հաստատել սասունցիների մի քանի հարյուր ընտանիք, որոնք մահմեդականություն էին ընդունել[69]։ Նրանք շարունակում էին խոսել հայերեն, հարգել հայ վանականներին, հաճախել հայոց վանքեր, իսկ մահմեդականությունն ընդունելը առերես էր, հարկադրված։

Հայերի մահմեդականացումն ավելի ուժեղ էր արտահայտվում քրդաշատ Վասպուրականում։ Վանի վիլայեթում հազարների հասնող քրդացած ու Թուրքացած հայեր, 44 ավերակ վանքեր, 800-ից ավելի «... շեն և անշեն եկեղեցիք կան, որոնք քրդեր ավիրեր, մզկիթ, գոմ և ախոռ շիներ են»[70]։ Կ. Պոլիս առաքված բողոքագրերից մեկում արձանագրված է. «Խլաթա մեջ հայ կին մը սաստիկ ծեծելով Թևն ու գլուխը ջարդեցին զոռով տաճիկցնելու համար»[71]։

Տարոնի հայ բնակչությունը 1868 թ. դիմելով Կ. Պոլսի Ազգային ժողովին և պատրիարքին գրում էր. «...զմեզ անխնա կնեղեն, կչարչարեն, և կհարստահարեն... մեր Մշո գավառին մեջ քանի, քանի եկեղեցիներ կողոպտեցին ու բազմաթիվ գանձեր տարին... այս տարի բազմաթիվ գանձեր հափշտակեցին ու տարին, թե՛ Մշո մեջ և թե՛ ի գյուղորեսն ամեն գիշեր զխանութս և զտունըրնիս կպատռեն և զոնեցածնիս կտանին... Մենք չենք համարձակիր որևիցե այլազգիներեն զմեր իրավացի պահանջն պահանջել ու ուզել, կամ կանարգեն և կամ կուրանան. Թե հայ վկաներ բերենք՝ չեն ընդունիր...»[72]։ Հարանման բովանդակության բողոքագրեր էին պատրիարքարան առաքվում Քղիի, Չարսանջակի, Մուշի, Դիարբեքիրի և այլ վիլայեթներից ու գավառներից։ Փաստերի առատությունը հիմնավորապես ապացուցում է, որ 1860-ականների երկրորդ կեսը արևմտահայության ուծացման մի ժամանակաշրջան էր՝ հովանավորված ու խրախուսված սուլթանական կառավարության կողմից։

---

67 Ա. Ալպոյաճյան, Պատմություն հայ Կեսարիո, հատ. Բ, Գահիրե, 1937, էջ 1430։

68 ԳԱԹ, Թ. Ազատյանի արխիվ, III բաժին, վավ. 42։

69 Նույն տեղում, վավ. 50, էջ 5—6։

70 ԳԱԹ, Թ. Ազատյանի արխիվ, III բաժին, վավ. 57։

71 «Դիվան հայոց պատմության», գիրք ԺԳ, Թիֆլիս, 1915, էջ 493։

72 Նույն տեղում, էջ 143—144։

Բ. Դուռը, Թուրք նորելուկ բուրժուական գործիչները, չբավարարվելով հայ ժողովրդի հարստահարման, իրավազրկման և մահմեդականացման քաղաքականությամբ, սկսեցին գրոհը նախ պետական ապարատը հայերից մաքրելու, ապա հայկական պատմական հուշարձանները ոչնչացնելու համար[73]։ «Հյուսիսափայլ»-ի ... «Համբավաբեր Ռուսիո» պարբերականը 1863 թ. գրում էր. «Գրեթե 80 տարիև ի վեր Օսմանյան պետության վարչական պաշտոնները հայոց հանձնված էր, ընդ վերատեսչությամբ Տատյան... գերդաստանին։ Այժմ Բ. Դուռը արժան համարեր է վառոդարանի վերատեսչությունը նույն գերդաստանեն առնուլ և հայ աշխատավորաց քով Թուրք զինվորներ դնել, և նույն աշխատավորներն ստիպել, որ անոնց հետ գործեն և վառոդաշինության արհեստն ուսուցանեն անոնց, որպեսզի հետո հայերը բոլորովին արտաքսե վառոդարանեն»[74]։ Հատկանշական է նաև, որ Կ. Պոլսի ռուսական դեսպան Իգնատևը 1869 թ. հաղորդում է իր կառավարությանը, թե Բ. Դուռը գաղտնի հրահանգ է տվել տեղական իշխանություններին, որպեսզի սրանք ոչնչացնեն հայկական պատմական հուշարձանները, այնպես անեն, որ այդ կոթողները չհիշեցնեն Հայաստանի անցյալը և ազգային անկախության գաղափար չզարթնեցնեն հայ ժողովրդի մեջ[75]։

Հայերի նկատմամբ սուլթանական կառավարության վարած ազգային ճնշումներն ուժեղացնելու պատճառներից էր և այն, որ 1840-ական թվականներին զսպելով քրդական դերեբեյներին, վերացնելով ապստամբ, կենտրոնախույս ուժերը, Բ. Դուռը 60-ական թթ. կտրուկ միջոցների էր դիմում Արևմտյան Հայաստանի և Կիլիկիայի լեռնային գոտիներում անցյալից մնացած հայերի կիսանկախությունը վերացնելու համար։ Դարամիջին սուլթանական պալատականներն ամեն միջոց խորհում էին հպատակեցնելու Սասունն ու Զեյթունը։ Այս նպատակին հասնելու համար Թուրքական կառավարությունը Լեռնային Կիլիկիայում և Արևմտյան Հայաստանում բնակեցրեց Հյուսիսային Կովկասից գաղթեցրած չերքեզ բնակչությանը, սրբեց նրանց և հայերի, հայերի ու քրդերի փոխհարաբերությունները, պարարտ հող նախապատրաստեց իր ապագա արշավանքների համար։

### 3. ՔԱՂԱՔՆԵՐ

Արևմտյան Հայաստանի ազգաբնակչությունը, երկրագործությունից ու անասնապահությունից բացի, զբաղվում էր արհեստագործությամբ և առևտրով։ Արհեստով էր պարապում նաև արևմտահայ գյուղական ազգաբնակչության մի մասը, սակայն արդյունագործության և առևտրի հիմնական կենտրոնները մնում էին քաղաքները։

XIX դարի երկրորդ երեսնամյակին Թուրքիայում կային չորս տասնյակից ավելի հայկական ու հայաբնակ քաղաքներ։ Այդ քաղաքներում ապրում էին բուն քաղաքացիներ, գյուղերից գաղթած արհեստավորներ, առևտրական-

73 Տե՛ս Մ. Գ. Ներսիսյան, նշվ. աշխ., էջ 78—79։

74 «Համբավաբեր Ռուսիո», Մոսկվա, 1863, № 48, էջ 3։

75 «Биржевые ведомости», 1869, № 109.

ներ, պանդուխտ օրամշակներ։ Հայկական քաղաքներն էին ներհոսում նաև քուրդ ու թուրք բնակչությունը՝ խոշոր հողատեր կալվածատերերը, մահմեդական առևտրականներն ու արհեստավորները։

Այս հոսքի պատճառով սովարանում էր Խարբերդի, Բաղեշի, Եվդոկիայի, Ադանայի, Մարաշի, Վանի բնակչությունը։ Ադրիանապոլսի պայմանագրից հետո, գաղթի հետևանքով Կարինի ազգաբնակչության մեծ մասը արդեն թուրքեր էին, բայց տնտեսության հիմնական ճյուղերը կենտրոնացած էին հայերի ձեռքում։

1830—60-ական թթ. Խարբերդն ուներ 16 հազար բնակիչ, Դիարբեքիրը՝ 40—50 հազար, Սեբաստիան՝ 30 հազար, Երզնկան՝ 15 հազար, Ադանան՝ 40 հազար, Մարաշը՝ 40 հազար, Հաճընը՝ 25 հազար, Զեյթունը՝ 20 հազար, Վանը՝ 30—40 հազար, Կարինը՝ 45—50 հազար։ Քաղաքային բնակչության մեծ մասը հայերն էին։ Արևմտյան Հայաստանում և Փոքր Ասիայի հայաբնակ վայրերում ապրում էին մոտ 350 հազար հայ քաղաքացիներ[76]։

Դարի առաջին քառորդի համեմատությամբ աճեց Կ. Պոլսի, Զմյուռնիայի, Հալեպի, Ադանայի քաղաքաբնակ հայերի թիվը։ Կարինը մնաց առևտրի ու արհեստագործության խոշոր կենտրոն։ Առևտրական նոր մայրուղիներից հեռու ընկած հայկական նահանգների երբեմնի հայաշատ քաղաքներն, ընդհակառակը, վերածվեցին ընդարձակ գյուղերի։ Գաղթեց արհեստավորների ու առևտրականների մեծ մասը, քայքայվեցին արհեստն ու առևտուրը։ Բայազետը, Բալուն, Մուշը, Դերսիմը կորցրին հայկական տարրի մեծ մասը և ստացան հետամնաց գյուղաքաղաքների կերպարանք։ Այնուամենայնիվ, արևմտահայերի արհեստագործությունն ու առևտուրը շարունակում էր ոչ միայն հարատևել, այլև որոշ չափով զարգանալ։

XIX դարի առաջին քառորդին Թուրքիայի արհեստագործությունը և մանուֆակտուրային արդյունաբերությունը զգալի առաջընթաց էր կատարել։ Դարի երկրորդ քառորդին եվրոպական գործարանային ապրանքների մուտքը մի կողմից, կյանքի ու գույքի անապահով պայմանները, ֆեոդալական ռեժիմը, փաշաների ու բեկերի կամայականությունները՝ մյուս կողմից, փակեցին առաջընթացի ճանապարհը։

«...Թուրքական, ինչպես և բոլոր մյուս արևելյան տիրապետությունները անհամատեղելի են կապիտալիստական կարգի հետ. ձեռք բերած հավելյալ արժեքը,—գրում էր Ֆ. Էնգելսը,—ոչնչով ապահովված չէ սատրապների ու փաշաների գիշատիչ ձեռքերից, գոյություն չունի բուրժուական շահույթի առաջին հիմնական պայմանը՝ վաճառականի անձի և սեփականության ապահովությունը»[77]։ Ֆ. Էնգելսը ավելացնում էր թե «... անգլիական գործարանային ապրանքները... իրենց ցածր գների շնորհիվ, ասիական հարեմներից արագորեն դուրս են մղում տնայնագործական արդյունագործության արտադրանքները»[78]։ Օտարերկրացիների առևտրական գործարքները, տնտեսակա-

---

[76] Տե՛ս Հայկ Ղազարյան, նշվ. աշխ., էջ 287—295։

[77] *Ф. Энгельс,* Внешняя политика руеского царизма (*К. Маркс и Ф. Энгельс,* Соч., т. 22, стр. 33).

[78] *К. Маркс* и *Ф. Энгельс,* Соч., т. 9, стр. 22.

*նին զուգահեռ հետապնդում էին քաղաքական նպատակներ։ Եվրոպական կապիտալը ջանում էր կասեցնել Թուրքիայի տնտեսության առաջընթացը, քայքայել երկրի արդյունաբերական ձեռնարկությունները, ի վերջո երկիրը դարձնել հումքի բազա։*

*Եվրոպական կապիտալը հասավ իր նպատակին։ Քայքայումը սկսվեց 1830-ական թթ., իսկ հաջորդ երկու տասնամյակներում Թուրքիան հասավ այն դրության, որ Եվրոպայից ներմուծում էր «բոլոր անհրաժեշտ ապրանքները, բացի գյուղատնտեսական մթերքներից»[79]։ Թուրքիայում չկային մեքենաշինական, թուղթի և պողպատի ձեռնարկություններ, 250 մետաղահանքերից գործում էր միայն 30-ը, մնացածները մատնված էին անգործության։*

*1840-ական թթ. Թուրքիայի նախկին մանուֆակտուրաներն արդեն քայքայվել էին։ Սկյութարում, Թըրնովոյում 1812 թ. գործող մանածագործական 2000 դազգահներից 1841 թ. մնացել էր 200-ը, Սալոնիկի 280 մետաքսագործներից՝ 18-ը։ Անատոլիան, Դիարբեքիրը, Բուրսան, որոնք հայտնի էին իրենց արտադրած թավիշով, սատինով, մետաքսյա կտորեղեններով, այժմ արտադրում էին առաջվա արտադրանքի մեկ տասերորդը։ Մետաղներով հարուստ Թուրքիան երկաթ և այլ տեսակի մետաղահումք էր ներմուծում դըրսից։ Կայսրության արդյունագործությունը, արհեստները ընդհանուր առմամբ անկում էին ապրում։ Սակայն երկրի ընդհանուր դեգրադացիայի պայմաններում հայ արհեստավորները կարողանում էին հարմարվել նոր իրադրությանը և, դիմագրավելով օտար կապիտալին, շարունակում էին պահպանել իրենց արտադրության նախկին մակարդակը։ Ավելին, երբ թուրքապատկան գործարանները փակվում էին, հայերը նոր գործարաններ էին բացում։ Կայսրության մեջ արդյունաբերության չքայքայվող ճյուղերից մեկը գորգագործությունն էր, որի արտադրությունը և վաճառահանումը կենտրոնացած էին հայերի ձեռքում։ Տեղաշարժեր էին նկատվում արհեստագործության մի քանի ճյուղերում։ Հայկական քաղաքները մանուֆակտուրային արտադրության զարգացման տեսակետից ավելի կայուն էին, քան ասիական Թուրքիայի արհեստագործական մյուս կենտրոնները։*

*Տեքստիլ արհեստագործությունը՝ հատկապես չթագործությունը, կտավագործությունը զարգացած էին Եվդոկիայում, Բաղեշում, Կարինում, Ադանայում, Երզնկայում և այլուր։ Գործիմաց հայ արհեստավորները ստիպված կատարելագործում էին իրենց գործիքները, վառ դարձնում ներկերի գույները, արտադրանքին եվրոպական ձևավորում տալիս, շարունակում տեղեր ապահովել ազգային, նույնիսկ եվրոպական շուկաներում։*

*Եվդոկիայում գործում էին յաղմայի 120 և կտավագործության ու բազմաթիվ այլ արհեստանոցներ։ Ամեն մի արհեստանոցում աշխատում էին 8—10 բանվորներ[80]։ Նրանք արտադրում էին վերմակի թավիշե երեսներ, սեղանի սփռոցներ, լուսամուտներ վարագուրող զարդակտավներ։ Արաբկիրում աշխատում էին մանուսա գործող 1000 դազգահներ։ 1878 թ. նրանց թիվը հասնում էր 1600-ի։ Սեբաստիայի տեքստիլագործները տարեկան ներմու-*

---

79 *Карлайл Мак-Коан,* Наш новый протекторат, стр. 153—154.

80 Տե՛ս Ա. Ալպոյաճյան, *Պատմություն Եվդոկիո հայոց, Գահիրե, 1952, էջ 1282 և հետ։*

ծում էին մոտ երկու միլիոն ֆրանկի արժողությամբ 10 հազար հակ ներկված բամբակ։ Արտադրանքի արժեքը կազմում էր 20 միլիոն ֆրանկ։ 1847 թ. Բաղեշում կային կտավագործական 100 արհեստանոցներ՝ 400 դազգահով «...որանց շատին գործարաններուն կտավը Ամերիկայինեն վար չմնար։ Կարմիր ներկով ներկված կտավ մը կը շինեն, որ բոլոր Քրդստանի մեջ կգործածվի»[81], Բաղեշի «կարմիր շիլան» շնորհիվ իր բարձր որակի, բնավ չգունաթափվելու հատկության, հայտնի էր նույնիսկ եվրոպացիներին։ Խարբերդի հայերը ասորիների հետ արտադրում էին բազմատեսակ չիթ, ներկում բուսական ներկով և գեղեցիկ ծաղկազարդման վարպետությամբ գերազանցում գործարանային արտադրանքին։

Մարաշում տարածված էր ջուլհակությունը։ Արտադրում էին ալաճա կոչվող չիթը, որն ավելի շատ քաթանի էր նման։ Պատրաստում էին գունավոր մետաքսաթել աբաներ, սրմաներ, իսկ պետեն կոչվող բրդյա աբաներն ավելի էժան էին և գործածում էին միայն տեղացիները։ Հաճընը աչքի էր ընկնում իր գուլպաներով և բրդյա շալվարներով։ Դրանք արտադրվում և մեծ քանակությամբ արտահանվում էին Մարաշ, Բիթլիս, Այնթապ, Հալեպ, Ալեքսանդրիա։ Արհեստի այս ճյուղերում ներգրավված էին ոչ միայն կանայք, այլև անչափահաս երեխաներ։

Այսպիսով, արևմտահայ քաղաքային ազգաբնակչության մի ստվար մասը ներգրավված էր մանածագործական մանուֆակտուրայի մեջ։ Արտադրությունը, ինչպես նաև վաճառքը կենտրոնացված էին տեղական հումքով սնվող գավառահայ առևտրականների ձեռքում։

Արևմտյան Հայաստանի ընդերքը հարուստ էր օգտակար հանածոներով։ Սակայն թուրքական իշխանությունները ժողովրդին զրկում էին դրանցից օգտվելու հնարավորություններից։ Դարակեսին գործում էին Արղանայի պղնձահանքերը։ Տարեկան հանվում էր երկու միլիոն հոխա* պղինձ, ամեն մի հոխան վաճառվում էր 12 ղուրուշով։ Պղինձն իր մեջ պարունակում էր ոսկի, դրա համար էլ տեղափոխում էին Անգլիա՝ այնտեղ մշակելու։ 1860 թ. Եվդոկիայի հարավ-արևելյան մասում կառուցվեց պղնձաձուլարան. պղնձամըշակման տեխնիկան պարզունակ էր։

Կապան-մադենում մշակվող արծաթահանքերը օգտագործվել էին դեռևս միջնադարում, սակայն նրանց հանույթը մեծացավ 1830—60-ական թվականներին։ Մեծ քանակությամբ արծաթ էր հանվում նաև Գյումուշխանեի հինավուրց հանքերից։ Դերսիմում գործում էին ոսկու և աղի հանքերը։

Կարևոր է հիշատակել նաև Վանի Կարճկան գյուղի շրջակայքում գտնըվող պղնձաձուլարանը, Ջեյթունի Պիրիդ լեռների պղնձահանքերը։ 1840—50 թթ. Եվդոկիայում գործում էր «Ղալխանեն»՝ եվրոպական ձևով կառուցված պղնձաձուլական գործարանը։ Ղալխանեում էր մշակվում Թոխաթի շրջակայքից հանված ողջ պղինձը։ Եվդոկիան պղնձագործների քաղաք էր։ Պղնձագործության բնագավառում ամբողջ Թուրքիայում այն մրցակից չուներ։

Խարբերդում կային մեծ թվով երկաթագործներ և դարբիններ, որոնք

---

81 Բառնաբ Պէյի Ֆեռանխեան, Ժամապարհորդութիւն ի Բաբելոն ընդ Հայաստան, Արմաշ, 1876, էջ 149։

* Մեկ հոխան 400 դրամ է։

պատրաստում էին կողպեքներ, երկրագործական գործիքներ, տնային գործածության այլ իրեր, ինչպես նաև կառքեր, օրորոցներ, պղնձյա գեղեցիկ ամաններ, փոքր ու մեծ կաթսաներ։ Երզնկայի պղնձագործներն իրենց արտադրանքով մասնակցում էին Լիոնի, Փարիզի, Վիեննայի, Ֆիլադելֆիայի ցուցահանդեսներին։ Վանը արծաթագործության և ոսկերչության ասպարեզում լայն ճանաչում ստացած քաղաք էր։

Վանում, Կարինում, Սասունում, Զեյթունում տարածված էր զինագործությունը։ Կարինում հրացան և ատրճանակ էին արտադրում հարյուրից ավելի արհեստավորներ։ Սակայն մետաղագործությունը մնում էր խարսխված հին տեխնիկայի վրա։ Տակավին գերակշռում էր ձեռքի աշխատանքը։

Խարբերդում գործում էին կաշեգործական արհեստանոցներ, ուր մշակում էին տարբեր տեսակի կաշիներ։ Մշակված կաշին ներկում էին բազմատեսակ գույներով, կարում ճտկավոր կոշիկներ՝ վաճառելու համար։ Հումքը ըստացվում էր շրջակայքից, ներկերը՝ արտասահմանից։ Կարինը կաշեգործության կենտրոն էր, սակայն հայ արհեստավորների շարքում գնալով ավելանում էր թուրքերի թիվը։ Եվդոկիայի կաշեգործարանը տարեկան 1000—1500 ոսկու արժողությամբ կաշի էր մշակում։ Կաշեգործության, կոշկակարության, թանկարժեք մորթիներից մուշտակներ պատրաստելու արհեստանոցներ կային Ադանայում, Մարաշում, Բաղեշում, Վանում։ Արհեստի այս մարզը, սակայն, ծանրակշիռ տեղ չէր բռնում հայ արհեստագործության մեջ. այն տեղական նշանակություն ուներ։

Հայաստանի քաղաքներում և գյուղերում կային բազմաթիվ դերձակներ, թիթեղագործներ, հյուսներ, վարսավիրներ, ժամագործներ, հացագործներ, թաղիքագործներ, պայտառներ, որմնադիրներ, բրուտներ, համետագործներ։ Արհեստագործության ճյուղերի մեջ ներգրավված մարդիկ, չնչին բացառություններով, արտադրում էին հետամնաց արտադրամիջոցներով և բավարարում միայն տեղական կարիքները։

Արևմտյան Հայաստանում և Փոքր Ասիայում հայերը հիմնել էին նաև մի շարք գործարաններ։ Նիկոմիդիայի շրջակայքում 1836 թ. Հովհաննես բեյ Տատյանը կառուցել տվեց չուխայի գործարան։ Նրա վարպետները և բանվորները հավաքագրվեցին արևմտահայ արհեստավորներից։ Նույն տարում Հ. Տատյանը հիմնեց Հրեքեի մետաքսյա գործվածքների գործարանը։ «Չուխայի թագավորական գործարանը, որ Իզնիմիտու և Պաղչեճագու մեջտեղ շինվեցավ, այն կողմերու հեռավոր բնակիչներուն անգամ, թե մտավոր կըրթության և թե ապրուստի շատ մեծ օգուտ ըրավ...»[82]։ Գործարանում աշխատում էին 385 բանվորներ, որից 284-ը հայեր էին։ Օսմանյան բանակին նըրանք հանդերձանք էին մատակարարում։

Հայերը գործարաններ ունեին Կեսարիայում։ 1840 թ. կեսարացի Սարգիս Խալֆան Կոստանդնուպոլսում գլխաշորի գործարան է հիմնում[83]։ Մայրաքաղաքում աշխատում էին կեսարացի պանդուխտ արհեստավորներ։ Նըրանք հմտանալով արհեստի մեջ և դրամագլուխ հավաքելով, վերադառնում

82 «Հայաստան», Կ. Պոլիս, 1847, № 13, սեպտեմբեր։

83 «Վերջին լուր», 1921, № 2192։

էին Կեսարիա, հիմնում նոր «գործարաններ»։ «...կեսարական նազմաները շուտով առաջնություն կշահին թե՛ արտասահմանյան, և թե՛ բոլոր կուսակալության մեջ»[84]։ 1856—1857 թթ. Գասպաճյան եղբայրները հիմնում են ալաճայի գործարանները, որոնց մեջ գործում էին 300—350 դազգահներ, 400—450 վարպետ բանվորներով, շուրջ 2500 օրամշակ, սեզոնային աշխատողներով. «...ամեն կողմեն հռչակված էր Գայսերի- Զիթարը Գասպաճյան եղբարց գործարանը՝ ուր ... 3 հազարի մոտ հոգիներ կապահովեին իրենց ապրուստը»[85]։

Խարբերդում ավելի ուշ հիմնվեցին Քյուրքչյան, ինչպես նաև Յաբրիկատորյան եղբայրների մետաքսի գործարանները, ուր աշխատում էին մի քանի հարյուր բանվորներ։

Մանուֆակտուրային տիպի տեքստիլագործական բազմաթիվ ձեռնարկություններ կային Վանում ու Բաղեշում։ Վանում պատրաստվում էին «...Շամի, Հալեպի և Պուրսայի ապրանքներու տեսակներ...»[86]։ Սակայն քաղաքների ազգաբնակչության ապրուստի հիմնական միջոցները գյուղատնտեսությունը, արհեստագործությունը և առևտուրն էին։

Բանվորների մի զգալի բազմություն ներգրավված էր երկրի ռազմական արդյունաբերության մեջ։ Զեյթուն-Բուռնի հրանոթներ արտադրող (Թոփխանե) գործարանում աշխատում էին 3500 բանվորներ։ Ձեռնարկության մեքենաները գնված էին Եվրոպայից, հումքի մեծ մասն ստացվում էր տեղական երկաթահանքերից, մյուս մասը՝ Անգլիայից։

1860-ական թթ. ֆրանսիացիները բամբակամշակման մի քանի գործարաններ են հիմնում Ադանայի վիլայեթում։ Հայերը գործարար դեր էին կատարում ինչպես այս, այնպես էլ Կ. Պոլսում և Զմյուռնիայում եվրոպացիներին պատկանող գործարաններում։

Թվարկված արդյունաբերական ձեռնարկությունները, սակայն, փոքրիկ ջահեր էին ֆեոդալական տնտեսակարգի մեջ։ Թուրքիայում, Արևմտյան Հայաստանում շարունակում էին տիրապետել ֆեոդալական կարգերը, արտադրության հնամենի եղանակը։ Կային արդյունաբերողներ, բայց ոչ արդյունաբերական ձևավորված բուրժուազիա, կային բանվորներ, բայց ոչ կազմավորված բանվոր դասակարգ։

Հատկանշական է նաև, որ դարակեսից սկսած հայ արհեստավորներն ու արդյունագործողները մրցակցության մեջ էին մտնում օտար կապիտալի հետ, շատերը տնտեսապես քայքայվում ու սնանկանում էին։

Արևմտահայ քաղաքային ազգաբնակչության մի մասը զբաղվում էր առևտրով։ XIX դարի առաջին կեսին Եըլդզի տիրապետության տակ գտնվող երկրների առևտուրը գտնվում էր քրիստոնյա ազգերի, առավելապես հայերի և հույների ձեռքում։ Տակավին նոր էր ձևավորվում թուրք առևտրական բուրժուազիան, որն անծանոթ լինելով եվրոպական լեզուներին և առևտրի եվրոպական մեթոդներին, ստիպված էր դեռևս «զիջել» քրիստոնյաներին։

---

84 Մկրտիչ Պոտուրյան, Գաղութահայ տարեգիրք, Ա տարի, Պուքրեշ, 1939, էջ 152։

85 Նույն տեղում, էջ 153։

86 «Մասիս», 1882, № 3219, 6 հուլիսի, տե՛ս նաև № 3222։

Կայսրության քրիստոնյա հպատակները, վաղուց ի վեր զբաղվելով առևտրով, կապվել էին դրսի շուկայի և արտասահմանյան կապիտալի հետ։ Մանչեստրի շուկաներում հաճախ երևացող հայ և հույն վաճառականները օրգանվել էին օտար կապիտալին, դարձել նրա գործակալը, ինչպես նաև թուրք-եվրոպական առևտրի միջնորդներ։ Նրանք կարողացել էին ձեռք բերել այն արտոնությունները, ինչից օգտվում էին եվրոպացիները Թուրքիայում։

Արևմտյան Հայաստանի գրեթե ողջ առևտուրը տնօրինում էին հայ վաճառականները։ Նրանց տրամադրության տակ էր ներքին շուկան, ինչպես նաև ասիական ներքնագավառների հումքի մթերման, ընդհանուր արտադրանքի առ ու ծախի գործը։ Հայերն էին ապրանք մատակարարում ասիական Թուրքիայի հայ, թուրք, քուրդ, ասորի ազգաբնակչությանը։ Կարինը, Բաղեշը, Վանը, Սեբաստիան, Եվդոկիան, Ադանան, Մարաշը մնում էին տեղական արտադրանքի, եվրոպական ու ասիական արդյունաբերական ապրանքների գնման, վաճառահանման, քարավանային առևտրի կարևոր կենտրոններ։

Կարինի առևտուրն անկում ապրեց 1830—40-ական թթ., սակայն հաջորդ երկու տասնամյակներին նորից աշխուժացավ։ 1859 թ. գերմանացի ճանապարհորդ Հոֆմեստերը հաղորդում էր. «Այսուհանդերձ... տակավին այսօր Տաճկահայաստանի ամենանշանավոր քաղաքն է Կարին, թե՛ զինվորական, և թե՛ վաճառականական տեսակետե։ Այսօր դեռ տարեկան 50000-ի չափ ուղտեր Կարնեն կանցնին վաճառքներով»[87]։ Կարինը կապեր էր ստեղծում Տրապիզոնի, Ալաշկերտի, Վանի, Բիթլիսի, Մուշի, Խարբերդի առևտրականների միջև։

Կարինում 1860-ական թթ. գործում էին 250—300 խանութներ և խաներ, որոնցից «ամենակարևորներն ալ հայ վաճառականներու ձեռքն էր»[88]։ Նշկյան, Ասատուրյան, Տեր-Ներսիսյան առևտրական տներն արևելյան արտադրանք էին տեղափոխում Եվրոպա, դրա փոխարեն Հոլանդիայից, Ռուսաստանից, Ֆրանսիայից ներմուծում գործարանային ապրանքներ։ Հայ առևտրականները տարեկան միջին հաշվով արտահանում էին 30 միլիոն դահեկանի ապրանք, ներմուծում՝ 60 միլիոնի։

Առևտրի հանրաճանաչ կենտրոն էր նաև Վանը։ Ի տարբերություն Կարինի, Վանի և ամբողջ վիլայեթի առևտուրը հայերի ձեռքում էր։ Նրանք վաճառում էին գերազանցապես տեղական արտադրանքը՝ գյուղատնտեսական մթերքներ, արհեստագործական իրեր։ Վանեցիները կապ ունեին նաև Կ. Պոլսի, Այնթապի, Դիարբեքիրի, Մոսուլի, Պարսկաստանի, Մոսկվայի հետ։ Ներմուծում էին գորգեր, բամբակ, չիթ, քիշմիրի շալեր, մանրավաճառ ապրանքներ։

Խարբերդում կային հայ առևտրականներ, որոնք կապված էին Հալեպի, Կ. Պոլսի, Դիարբեքիրի, Այնթապի, Սամսոնի, Արաբկիրի, Բալուի, Մալաթիայի հետ։ 1860-ականներին «... վաճառականությունն այնքան ծաղկեցավ, որ պարապ խանութ և կամ խանեrու որևէ մթերանոց պարապ չմնաց...»[89]։ Խարբերդն առևտրական կապեր ուներ նաև Ամերիկայի հետ։

---

87 Հ. Վ. Քոսյան, Բարձր Հայք (Կարինը և շրջակայք), Վիեննա, 1925, էջ 36։

88 Ղազար Չարըգ, Հուշամատյան Բարձր Հայքի, Կարինապատում, Պեյրութ, 1957, էջ 107—108։

89 Մ. Գ. Ճիզմեճյան, Խարբերդ և իր զավակները, Ֆրեզնո, 1955, էջ 175։

*Եվդոկիայում աշխույժ էր պղնձեղենի առևտուրը։ Հայ պղնձագործներն ունեին 150 խանութ։ Երկաթագործական 50 խանութից 40-ը թուրքերինն էր, 10-ը՝ հայերինը, թիթեղագործներից՝ 7-ը, անագագործներից՝ 15-ը[90]։ Քաղաքի առևտրական շառավիղը մեծ էր, վաճառքի հանված տեղական ապրանքների արժեգումարը տարեկան կազմում էր 116.500 թուրքական ոսկի։*



Տեսարան Կարս քաղաքից

*Բազմաթիվ մանր ու խոշոր խանութ-կրպակներ ունեցող Բաղեշի շուկայի հիմնական տերերը հայերն էին։ Նրանք սպասարկում էին քաղաքին, շրջակա քուրդ աշիրեթներին, Տարոնի ու Վասպուրականի գյուղացիությանը։ Վաճառում էին մետաքսեղեն, կարմիր կտավ, մանուֆակտուրային ապրանքներ։ Քաղաքի առևտրի հաջողությունը պայմանավորված էր նրանով, որ իր դիրքի շնորհիվ Բաղեշը երկրի արևելքը կապում էր արևմուտքի հետ։ Քաղաքի Խաչմանուկյան, Բենտերճյան, Մխչյան առևտրական գերդաստանները տարեկան 50 հազար թուրքական ոսկու առևտուր էին անում։*

*Կեսարիայի առևտուրը գերազանցում էր մյուս քաղաքների առևտրին։ Քաղաքի հայ առևտրականները կապված լինելով Անգլիայի հետ, Թուրքիայում վաճառում էին անգլիական ապրանքներ։ Մեծ թիվ էին կազմում կերպասեղենի, պատրաստի հագուստի առևտրականները, բազազները, ղինեվաճառները, երկաթ ու երկաթեղեն, պղինձ ու պղնձեղեն վաճառողները։ Առաջին անգամ կեսարացիները գրախանութներ կազմակերպեցին։*

90 «Արաքս», 1887, գիրք Ա, էջ 92։

Կեսարացի հայ առևտրականներն առևտրից տարեկան շահում էին 650 հազար ոսկի։ Հետագայում շատերը թողեցին Թուրքիան և առևտրական գաղութներ ստեղծեցին Եվրոպայում։

Ասիական Թուրքիայի առևտրի կարևոր կենտրոններից էին Դիարբեքիրը, Տրապիզոնը, Սեբաստիան, Երզնկան, Բաբերդը։ Առևտրի հանրաճանաչ



Տեսարան Վան քաղաքից

կենտրոններ էին մնում Մարաշը, Հաճընը, հատկապես Ադանան։ Սուեզի ջրանցքի բացումը առևտրական շուկաների, ճանապարհների նոր խմբավորում առաջ բերեց։ Արևմտյան Հայաստանի քաղաքները զրկվեցին իրենց նախկին առևտրական նշանակությունից։ Ռուսաստանի, Պարսկաստանի, Արևելքի շատ երկրների հետ կապող ցամաքային մայրուղիները փոխարինվեցին ծովայիններով։ Ադանան ավելի սերտորեն կապվեց Եվրոպայի հետ։

Թուրքիայի առևտրականները սակայն զրկված էին անձի ու գույքի ապահովության երաշխիքից։ Առևտրական հարաբերությունների կաշկանդման գործում քիչ դեր չէին խաղում հարկային ծանր բեռը, մաքսային բարձր տարիֆները, բացահայտ խտրականությունը մահմեդական և քրիստոնյա առևտրականների միջև, օտարերկրյա առևտրականներին տրվող արտոնությունները, եվրոպական կապիտալի քայքայիչ գործունեությունը։ Եվրոպացի առևտրականները, նրանց հայ հանձնակատարները մրցության մեջ շարքից հանում էին գավառահայ առևտրականներից շատերին։

* * *

Թուրքիայի և Արևմտյան Հայաստանի արհեստավորներն ու առևտրականները հիմնականում համախմբված էին ցեխային կազմակերպությունների՝ էսնաֆությունների մեջ։

Օտար տիրակալների ֆեոդալական լուծը, պարբերական զինաբախումները, անձի ու գույքի անապահովությունը, տնտեսական ու քաղաքական շահերի պաշտպանության անհրաժեշտությունը արհեստավորներին ու առևտրականներին մղում էին միավորվելու, եղբայրություններ կազմակերպելու։ «Միացյալ ավազակային ազնվականության դեմ միավորվելու անհրաժեշտությունը,— գրում էր Կ. Մարքսը,— շուկայական ընդհանուր շենքերի կարիքն այն դարաշրջանում, երբ արդյունագործողը եղել է միաժամանակ և վաճառորդ, դեպի ծաղկող քաղաքները ներհոսող փախստական ճորտերի մրցակցության աճը, ամբողջ երկրի ֆեոդալական հասարակարգը, այս ամենը ծնեցին համքարություններ»[91]։

Արևմտահայ էսնաֆությունների առաջացման ու զարգացման մյուս կարևոր պատճառներն էին տնտեսական տագնապները, երբ արհեստավորի աննախանձելի նյութական դրության պայմաններում «մարդիկ կարիք էին զգում միանալ, համերաշխորեն գործել ձախող հանգամանքների դեմ»[92], օգնության ձեռք մեկնել թույլին ու տկարին, փրկել նրանց կործանումից, դիմակայել հարկահանների ապօրինություններին, սնանկացման պահին «վարկավորել» արհեստակցին, դժբախտության ժամանակ օգնել նրա ընտանիքին։

Մինչև XIX դարի առաջին կեսը թուրքական պետությունը խրախուսում էր էսնաֆությունները։ Սուլթաններին ձեռնտու էին առևտրականների և արհեստավորների միությունները, որովհետև իրենց սահմանած բազմաթիվ հարկերն ավելի հեշտ էր գանձել ընդհանուր գանձարկղից, քան անհատ արհեստավորներից։ Պատահական չէր, որ 1835—36 թթ. սուլթան Մահմուդ II-ը հրատարակեց ծավալուն մի ֆերման, որտեղ գրանցվում էին Տրապիզոնի առևտրա-արհեստավորական միությունները և վերջիններիս օրինակով սահմանում երկրի էսնաֆությունների իրավունքներն ու պարտավորությունները[93]։ Նրա քաղաքականությունը շարունակեց Աբդուլ Մեջիդը՝ կենտրոնախույս ուժերի զսպման գործում արհեստավորների նյութական, բարոյական ու ռազմական օգնության խիստ կարիք ունեցող սուլթանը։

Սակայն էսնաֆությունների ստվարաթիվ դառնալու պատճառներից մեկն էլ օտար կապիտալի քայքայիչ ազդեցությունն էր։ Գործարանային արտադրության դիմագրավումը, սեփական գոյության երկարաձգումը, տեղական առևտրով ու հնամենի արհեստագործությամբ պարապող էսնաֆներին ստիպում էին ավելի համախմբվել էսնաֆությունների մեջ, կատարելագործել արտադրության միջոցները, գանձարկղներում կուտակվող գումարներից վարկավորել առևտրականներին, նրանց փրկել սնանկացումներից, նույնիսկ մտահոգվել երկրի ներքին կյանքում բարեփոխություններ կատարելու և քաղաքացիական իրավունքներ նվաճելու հարցերով։

Թուրքիայում գործող էսնաֆությունների ճշգրիտ քանակը մինչև օրս էլ

---

91 К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 4, стр. 14—15.

92 «Մշակ», 1888, № 134։

93 Հայկական ՍՍՀ ԿՊՊԱ, Թուրքական ֆերմանների ֆոնդ, վավ. 94։

*պարզված չէ։ Հայտնի է, սակայն, որ XVIII դարի վերջին Կ. Պոլսում գործում էին առևտրականներ և արհեստավորներ համախմբող հայկական 65 էսնաֆություններ[94]։ Հաջորդ դարասկզբին. սրանց թիվը հասնում է 98-ի[95]։ Կ. Պոլսում և Տրապիզոնում էսնաֆություններ ունեին բեռնակիրները, ջրկիրները, հրշեջները, այսինքն այն մարդիկ, որոնք թողած տունն ու հայրենիքը, փող վաստակելու, պարտքերը մարելու հույսով պատանդականի ցուպ էին վերցրել, դարձել պանդուխտներ, հանգրվանել քաղաքներում։ Եվ փոխօգնության գանձարկղը ամենից առավել հարկավոր էր այս պանդուխտներին։*

*Էսնաֆությունների քանակով աչքի էր ընկնում Կարինը։ Մինչև Ադրիանապոլսի պայմանագիրը և հայկական տարրի զանգվածային գաղթը, քաղաքի առևտրականներն ու արհեստավորները համախմբված էին 50-ից ավելի էսնաֆությունների մեջ, որոնք ունեին իրենց կանոնադրությունները և, որոշ իմաստով, օրինակ էին ծառայում հայկական մյուս քաղաքներում գործող առևտրա-արհեստագործական միություն-եղբայրություններին։ Հայտնի էին երկաթագործների, զինագործների, պղնձագործների, կոշկակարների, կաշեգործների, դերձակների, մետաքսագործների, ջուլհակների, որմնադիրների, հացագործների, չթագործների ու բազմաթիվ այլ էսնաֆություններ։ 1837 թ. Կարինում գործող ռուսահպատակ ախալցխացի, թիֆլիսեցի, գյումրեցի, գյոկչեցի, երևանցի հայ վաճառականները ևս ստեղծել էին իրենց էսնաֆությունները[96]։*

*Նախքան Ռուսաստանին միացվելը Ախալցխայում ու Ախալքալաքում գործում էին շուրջ 30 էսնաֆություններ[97]։ Քրդական ավազակախմբերի անարգել գործունեությունը, առևտրականի առավել անպաշտպան վիճակը՝ Բայազետի, Վանի, Բաղեշի հայ արհեստավոր-առևտրականներին ստիպել էին գրեթե ամբողջապես համախմբվել էսնաֆությունների մեջ։*

*Վանի ոսկերչական համայնքի վարպետները աշխատում էին 70-ի հասնող արհեստանոցներում. յուրաքանչյուր խանութ ուներ միջին հաշվով 4—5 աշակերտ։ Նրանք կենտրոնացված էին շուկայում, արտադրում ու միանման գներով վաճառում էին ոսկեղենը։ Վանի «փաշային ծառայող արհեստավորը կնշանակվեր իր արհեստակիցներուն պետը՝* էսնաֆ պաշի... աշճը պաշի, նալպանտ պաշի, ճյուրճի պաշի, գույումճի պաշի *և այլն։ Ասոնք հաճախ կախաղանե մարդ կազատեին, թեև իրենք ալ երբեմն զոհ երթալով իրենց տիրոջ մեկ քմահաճույքին՝ կճոճեին նույն կախաղաններեն ու իրենց պաշտոնը կտրվեր իրենց ժառանգորդներեն մեկուն կամ ուրիշի մը»[98]։*

*Եվդոկիայի էսնաֆություններից ամենամեծը պղնձագործներինն էր, որոնց արտադրանքը վաճառվում էր ամբողջ Թուրքիայում։ 1850 թ. քաղաքի էսնաֆությունների վեքիլը գույումճի Գրիգորն էր, որը պարտավոր էր արհեստավոր-վաճառականներից հավաքել 300 քիսեի հարկ և տալ պետությա-*

---

94 *«Դիվան հայոց պատմության», գիրք Ժ, Թիֆլիս, 1912, էջ 338։*

95 *Մատենադարան, ձեռագիր 2622, թերթ 85։*

96 *Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 90, վավ. 58։*

97 *«Մշակ», 1890, № 127, 130։*

98 *Հ.* Երամյան, *Հուշարձան, հատ. Ա, էջ 27։*

նը։ Սեբաստիայի մեծաթիվ էսնաֆությունները ընդգրկում էին և՛ առևտրականներին, և՛ արհեստավորներին։

Էսնաֆության անդամներ էին վարպետները, ենթավարպետները (խալֆա, քարգահ), աշակերտները, նրանց ընտանիքների չափահաս անդամները։ Ի տարբերություն, սակայն, մնացածների, ընտրելու ու ընտրվելու իրավունք ունեին միայն վարպետները, որոնք մասնակցում էին եղբայրության գործերին վերաբերող բոլոր հարցերի լուծմանը։

Ամեն մի էսնաֆություն կազմվում էր տարբեր քանակի արհեստավորներից։ Արհեստանոցի տերը վարպետն էր, որն ուներ ենթավարպետ կամ խալֆաներ, 1—5 աշակերտներ։ Աշակերտելու պայմանաժամանակը, տարբեր արհեստատեսակների համար և տարբեր քաղաքներում տարբեր էր։ Կարինում և Ախալցխայում աշակերտից վարպետ դառնալու ժամանակը սահմանված էր 3—9 տարի. կոշկակարները՝ 8 տարի, դաշտագները՝ 3 տարի, դարբինները՝ 6 տարի, դերձակները՝ 4 տարի։

Վարպետի ու աշակերտի փոխհարաբերությունները սահմանվում էին նախօրոք մշակված կանոններով, որոնցից խոտորվելը պատիժ էր նախատեսում։ Ըստ ոսկերիչների կանոնադրության՝ վարպետի մոտ սովորելու եկած աշակերտը նրա տանը պետք է մնար մինչև վարպետ «օրհնվելը»[99]։ Ընկերնական շրջանում նա ծառայում էր անվարձ, ստանալով միայն հագուստ և ուտելիք։ Աշակերտը, սակայն, այս տարիներին, ամեն շաբաթվա վերջում ստանում էր մի քանի կոպեկ վարձ՝ շեֆիրտանըղ։ Երկու, հաճախ և չորս տարուց հետո, վարպետը աշակերտին դարձնում էր խալֆա, նշանակում տարեկան վարձատրություն։ Ինչպես աշակերտը, այնպես էլ ենթավարպետը, արհեստ սովորելուն զուգընթաց, պարտավոր էին կատարել նաև այլ աշխատանք՝ արհեստանոցի ու վարպետի տնտեսության համար։ Վարպետը շահագործում էր ենթավարպետներին, առավել ևս աշակերտներին։ XIX դարի երկրորդ կեսին սոցիալական շահագործումը էսնաֆություններում ավելի է ուժեղանում։

Էսնաֆությունն ուներ իր ղեկավար մարմինը, գանձարկղը, դրոշակը, ժողովատեղը, կառավարման ուրույն, գրավոր կամ սովորութային օրենքները։ Բոլոր էսնաֆությունների արհեստանոցատեր վարպետներն ընտրում էին եղբայրության ղեկավարին՝ ուստաբաշուն, նրա խորհրդականներին. ախսախկալներին, գանձապետին և իգիթբաշուն։ Ուստաբաշու, նրա խորհրդականների ու գործակիցների ընտրությունը կատարվում էր հոգևորականի ներկայությամբ[100]։

Ուստաբաշին խորհրդականների հետ միասին գնում էր հումքը, որոշում արտադրանքի գները, վարձում արհեստանոցներ, խանութներ, թույլատրում նոր արհեստանոցների բացումը, սահմանում ենթավարպետների ու աշակերտների թիվը, բաժանում էսնաֆության վրա դրված հարկագումարը, այն հավաքում ու հանձնում պետությանը, հետևում արհեստավորների կենցաղին, հսկում ապրանքների որակին, լուծում միության անդամների, ինչպես նաև գնորդների ու արհեստանոցատերերի միջև ծագած վեճերը։ Տարաձայնությու-

---

99 «Լումա», 1898, գիրք Ա, էջ 328—333, գիրք Բ, էջ 193—210։

100 Նույն տեղում, էջ 328—329։

նը հաճախ հարթվում էր ուստաբաշու կողմից, իսկ լուրջ բնույթ ստանալիս, հրավիրվում էին ախսախկալները, քննում վեճը և կայացնում համապատասխան դատավճիռ։

Էսնաֆության իգիթբաշին համայնքին հաղորդում էր ուստաբաշու հրամանները, փակում «հանցապարտների» խանութները, գանձապետի հետ միասին շրջում խանութներում՝ հավաքում սահմանված դրամը։



Բաբերդ քաղաքի ընդհանուր տեսքը

Ամեն մի էսնաֆությունն ուներ իր գանձարկղը, ուր խաղնադարի միջոցով մուտք ու ելք էր արվում դրամը։ Այդ դրամը հավաքվում էր յուրաքանչյուր վարպետից։ Ոսկերիչ էսնաֆներից ամեն մեկը պարտավոր էր ամսեկան 20 կոպեկ տալ գանձարանին։ Կարինի պղնձագործները 1826 թ. ընդունած կանոնների համաձայն, չմշակված պղինձ վաճառելու դեպքում մեկ ղուրուշից մեկ փարա էին տալիս, պղնձյա ապրանքների վաճառքի դեպքում ևս այդքան։ Քաղաքի երկաթագործները, 1825 թ. կանոնադրությամբ, տալիս էին երկաթեղենի համար մեկ ղուրուշից մեկ փարա, իսկ երկաթ վաճառելիս՝ 2 ղուրուշից մեկ փարա։ Որոշ գումար հավաքվում էր նաև տուգանքներից, բռնագանձումներից, էսնաֆության «անխոհեմ» անդամներին դրամական պատիժների ենթարկելուց։

Հավաքված գումարը ծախսվում էր էսնաֆության անդամների կարիքների համար։ Այստեղ էր, որ երևում էր էսնաֆությունների հավաքական ուժի, ամբողջ կարևորությունը բռնապետական երկրում ապրող, միշտ անակընկալների ենթակա հայ քաղաքաբնակների համար։ Էսնաֆությունները փաստորեն դառնում էին աղքատությունը ու ոճիրները կանխող, փոխօգնության

սկզբունքով կազմակերպված տեղական արհեստի ու առևտրի առկա մակարդակը պահպանող միություններ։

Էսնաֆությունները օգնում էին միության աղքատ, սնանկացած անդամներին, որբերին, ժամանակավորապես կարիքի մեջ գտնվող արհեստավորներին ու առևտրականներին։ Եթե էսնաֆներից մեկը ծերության կամ հիվանդության պատճառով անաշխատունակ էր դարձել և հեռացել էր աշխատանքից, մանավանդ, եթե զավակներ չուներ, ապա ձմռանը գանձարկղից անվերադարձ դրամ էր ստանում, ինչպես նաև հաց, փայտ, հագուստեղեն։ Աղքատ արհեստավորի մահվան դեպքում թաղման ծախսերը էսնաֆությունն էր կատարում։

Էսնաֆության անդամները անհրաժեշտություն չունեին վաշխառուներին դիմելու, քանի որ կար իրենց գանձարկղը[101]։ Էսնաֆները գանձարկղից դրամ վերցնելով, պարտավորվում էին ժամանակին վերադարձնել «մի ծաղիկ էլ ավելացնելով վրեն ի սեր հասարակության ու գանձարանի օգտին»։ Սակայն գանձարանի դրամը փոխարինաբար ուրիշ մարդկանց տալիս՝ բարձր տոկոսներ էին վերցնում։ Ընդհանուր գանձարկղից էին վերցվում գումարները՝ ամեն տարի ուստաբաշուն նվերներ տալու, իգիթբաշուն ու խազնադարին վարձատրելու, համաէսնաֆական հանդեսներ կազմակերպելու համար։

Համաքաղաքային խնդիրները, դատաստանական ու վարչական գործերի լուծման անհրաժեշտությունը էսնաֆություններին թելադրում էին միավորվել, ավելի մեծ միություններ կազմակերպել։ Այս դեպքում ուստաբաշիները պիտի ընտրեին ուստաների-ուստային՝ շեյխուստասուն, որի մահմեդական, հաճախ և մուսուլմանական կրոնավոր լինելը, նոր ժամանակաշրջանում, գրեթե պարտադիր էր։ Բանն այնտեղ էր հասնում, որ ոչ միայն շեյխուստասիների, այլև ուստաբաշիների ընտրության գործերին արդեն խառնվում էին Բ. Դռան պաշտոնյաները, նահանգապետ փաշաները և նույնիսկ սուլթանները։ Ռուս-թուրքական 1828—1829 թթ. պատերազմի շրջանում, մանավանդ Ղրիմի պատերազմից ու Զեյթունի հերոսամարտերից հետո, հայերի վրա ավելի կասկածանքով նայող թուրք պալատականները փորձում էին իրենց «աչքն ու ականջն ունենալ» բոլոր էսնաֆությունների մեջ։

Էսնաֆությունները դարձել էին Արևմտյան Հայաստանի ճակատագրով հետաքրքրվող ընդդիմադիր ուժ, ուղղվել հայ ֆեոդալա-ամիրայական գերդաստանների մենատիրության, պատրիարքի միահեծանության դեմ, փորձում էին սրանց ձեռքից խլել դարերով վայելած առանձնաշնորհումները։

Արևմտահայ գաղթօջախներում XIX դարի երկրորդ քառորդին ծավալված քաղաքական պայքարը հիմնականում արտահայտվում էր արհեստավորների և ամիրաների գոտեմարտերի մեջ՝ ծնելով Ազգային սահմանադրության տարբերակները, մարտահրապարակ հանելով պանդուխտներին և օրամշակ բնակիչներին։

---

101 Տե՛ս «Լումա», 1898, գիրք Բ, էջ 197։

## 4. ՊՈԼՍԱՀԱՅԵՐԸ

*XIX դարի առաջին կեսին, առավել ևս 50—60-ական թթ. Կ. Պոլսի հայ գաղութը դարձել էր արևմտահայերի տնտեսական, քաղաքական ու մշակութային խոշոր կենտրոն։ Հայ ազգաբնակչության քանակով, ժողովրդի լուսավորության նկատմամբ ունեցած մտահոգություններով, հասարակական մտքի զարգացումով ու ծավալված շարժումներով Կ. Պոլիսն իրավամբ առաջնակարգ դեր էր խաղում արևմտահայության կյանքում։ Գաղթօջախը ուղղություն էր տալիս արևմտահայության ազատագրական և համազգային ձգտումներին և որոշակի ազդեցություն թողնում նրա կրթական-մշակութային առաջընթացի վրա։*

*Գաղթօջախը գնալով ընդարձակվում էր Արևմտյան Հայաստանի բնակչության հաշվին. ստվարանում էր հայ ազգաբնակչության թիվը։ Կ. Պոլիսն ուներ 36 թաղամաս։ Հայերն զբաղեցնում էին ծայրամասային 20 թաղամասերի կեսից ավելին։ Միայն Սուլու Մանաստըրում ապրում էին 1000 տընտեսություն հայեր, ս. Հրեշտակապետում՝ 800, Գում-Գափույում՝ 2000, Ղալաթիայում՝ 3000, վեց Օտալարներում՝ 2000։ Հայաշատ էին Սկյուտարը, Պալաթը, Ենի Գափուն, Կետիկ փաշան, Սելամիյեն։ Ամբողջովին հայկական թաղամասեր էին Խաս գյուղը, Գատը գյուղը, Մաքրիգյուղը, Միջագյուղը (Օրթագյուղը)*[102]։

*XVIII դարի վերջին և XIX դարի սկզբին Կոստանդնուպոլիսն ուներ 860 հազար բնակիչ, որից 374 հազարը մահմեդականներ էին, 152 հազարը՝ հույներ,* 150 հազարը՝ հայեր, *44 հազարը՝ հրեաներ, շուրջ 90 հազարը՝ եվրոպացիներ, ասորիներ, ղպտիներ և այլ ազգեր*[103]։

*1840-ական թթ. մայրաքաղաքի հայերի թիվը հասավ 222 հազարի*[104], *1860—80-ական թթ.՝ 250—300 հազարի։ Այսպիսով, Կ. Պոլսի հայ գաղութը աճում էր զգալի արագությամբ։*

*Արհեստի ու առևտրի զարգացման համար քաղաքում լայն հնարավորություններ կային։ Թուրք-եվրոպական առևտուրը պահանջում էր գործիմաց, լեզուներ գիտցող վաճառականներ։ Իրենց վայելքներով տարված իշխողներն արհամարհում էին առևտրական գործը։ Առևտուրը մնում էր հայ և հույն վաճառականների ձեռքում։ Հետևաբար առևտրի և արհեստագործության զարգացման հնարավորությունները գավառից դեպի Կ. Պոլիս էին ձգում հայկական տարրի նոր քարավաններ։*

*Մայրաքաղաք էին գալիս հիմնականում պանդուխտներ, օրամշակ բեռնակիրներ։ Նրանք գալիս էին հաց ու աշխատանք որոնելու, փող շահելու, հայոց պատրիարքարանից պաշտպանություն ու ապահովություն հայցելու։*

---

102 «Ընդարձակ օրացույց ազգային հիվանդանոցի», Կ. Պոլիս, 1902, էջ 198։

103 Տե՛ս Յ. Գ. Փալագաշյան, Տեղագրություն Կոստանդնուպոլսո և յուր շրջակայից, հաստակագիծ պատկերով Վոսփորի, Կ. Պոլիս, 1887, էջ 7, տե՛ս նաև Հ. Գ. Մ. [Հարություն Մըրմըրյան], Մասնական պատմություն հայ մեծատուններու, Կ. Պոլիս, 1909, էջ 49։

104 *M. A. Ubicini*, Lettres sur la Turquie, Paris, 1853, էջ 27։

Պատրիարքարանի առկայությունը սուլթանի նստավայրում քիչ դեր չխաղաց պոլսահայության համախմբման գործում։

Կ. Պոլիսը ազգաբնակչության սոցիալական կազմով, զբաղմունքի տեսակներով, մտավորականության առկայությամբ, մշակութային պահանջների մակարդակով, կառավարության հրապարակած «Թանզիմաթով» առերևույթ նմանվում էր եվրոպական քաղաքի՝ միշտ պահպանելով իր ասիական բնույթը։ Գավառի հետ համեմատած այստեղ քիչ մեղմացած էին ազգային ճնշումները։ Եվրոպական բազմաթիվ դեսպանությունների առկայությունը Կ. Պոլսում, Թուրքիայի տնտեսական ու քաղաքական կախումն այդ տերություններից այս կամ այն կերպ կաշկանդում էին և թույլ չէին տալիս հպատակների հետ վարվել այնպես, ինչպես վարվում էին ծայրագավառներում։

Նկատելի էին գաղութահայության և գավառահայության ապրելակերպի, հատկապես քաղաքական դրության էական տարբերությունները, դրա համար էլ պատահական չէր, որ մտավորականությունը, առևտրականների ու արհեստավորների մեծ մասը, մշակներն ու բեռնակիրներն անընդհատ կենտրոնանում էին ծովամերձ քաղաքներում։ Պոլիսը վերածվում էր արևմտահայ մշակույթի ամենախոշոր օջախի։

Կ. Պոլսի հայկական գաղութը XIX դարի առաջին կեսին բաղկացած էր սոցիալական տարբեր, հակադիր ու իրարամերժ դասերից։ Հասարակական այդ դասերը էական դեր էին խաղում Թուրքիայի տնտեսական կյանքում։ Երկար ժամանակ Օսմանյան պետության կարևոր զարկերակներն իրենց ձեռքում էին պահում պոլսահայ ամիրաները՝ հայ առևտրա-վաշխառուական կապիտալի այն մագնատները, որոնք քիչ առ քիչ պետք է նահանջեին Թուրքիայի նավահանգստներում խարսխված եվրոպական կապիտալի ու նրա շոշափուկներն հանդիսացող կոմպրադորական բուրժուազիայի առաջ[105]։

Ամիրաներն ընդհանրապես ֆեոդալական Թուրքիայի ջատագովներն էին, իսկ մի մասն էլ՝ խոշոր կարողություն դիզած հայ վաշխառուներ։ Ամիրաների գոյությունը ձգվում էր XVI դարից։ Ամիրա-էմիր-պատրիկ տիտղոս են կրել հայ մեծատունները, տերության բարձրաստիճան պաշտոնյաները, կուսակալների սեղանավորները։ «Ամիրա բառը, թեև ոչ հայկական (արաբերեն ....էմիր-իշխան, յումերա-իշխաններ) միայն հայազգիներու տրված տիտղոս մ'էր և անպատճառ կենթադրեր կառավարության քով դիրք ունեցող անձ մը։ ...Ամիրա տիտղոսն իբրև պատվանուն բացառապես կտրվեր նաև հարուստ և երևելի ազգայնոց ոմանց»[106]։

Ամիրաների մեծ մասը եւս տարբեր ժամանակներում մայրաքաղաք էր գաղթել հայկական ու հայաբնակ քաղաքներից։ Քանից ավելի ամիրայական գերդաստաններ, սկզբում գործելով Ակն քաղաքում ու նրա շրջակայքում, դրամագլուխ դիզելով, հետագայում Կ. Պոլիս էին տեղափոխվել և կայսրության տնտեսական մի քանի կարևոր գերատեսչությունների տնօրեն դարձել։ Ակնից էին եկել Տատյանները, Ճեզայիրլյանը, Խորասանճյանը, Միրճան-

105 Տե՛ս Աշոտ Հովհաննիսյան, Նալբանդյանը և նրա ժամանակը, գիրք 1, Երևան, 1955, էջ 348 և հետ.։

106 Բյուզանդ Քեչյան, Պատմություն ս. Փրկչի հիվանդանոցին հայոց ի Կ. Պոլիս, Կ. Պոլիս, 1888, էջ 49։

յանը, Փեշմիշյանները, իսկ Ջուպանյան, Ջերազյան գերդաստանները, չկարողանալով դիմանալ մրցությանը, սնանկացել և կործանվել էին XIX դարի սկզբներին։ Դիվրիկից էին գաղթել «հանդերձակարությամբ» պարապող Տյուզյանները։ Ամիրաներից առավել ճարպիկները կարողացել էին սուլթանների պալատում որոշ դիրք գրավել։

Ամիրաների գերազանց մեծամասնությունը (սարաֆները՝) շուրջ 80—100 հոգի, կազմելով սարաֆական ընկերություններ, զբաղվում էր սեղանավորությամբ և հիմնականում հարստանում գավառի ազգաբնակչությունից գանձվող հարկերի հաշվին։ Թուրքիայում հարկերի գանձումը հանձնարարված էր փաշաներին, որոնք պարտավոր էին ժամանակին գանձել հարկերը և մուծել պետական գանձարան։ Կենտրոնախույս տրամադրություններով համակված թուրք փաշաները անբարեհույս էին պետության աչքում։ Զգացվում էր դրամատեր հայ հարուստների կարիքը։ Դառնալով փաշաների սարաֆներ, սրանք իրենց վրա էին վերցնում հարկերը պետական գանձարանին հանձնելու պարտականությունը։ Կնքվում էր մի տեսակ դաշինք փաշայի ու սեղանավորի միջև, սկսվում էր գավառի ինչպես թուրք, առավել ևս այլազգի գյուղացիության հարկային հարստահարությունը։

Հին սեղանավորների մնացորդները և նոր դրամատերերը սուլթանի թույլտվությամբ դարակեսին կազմեցին սարաֆական երկու՝ «Անատոլուի» և «Ռումելիի» ընկերությունները։ Անատոլուի ընկերության անդամներն էին Հարություն Ուզունյանը, Քյուրքչիխանլը Պետրոսը, Ծեզայիրլյան Մկրտիչը, Ջերազյան Պաղտասարը, Աշնան Պողոսը։ Ռումելիի ընկերությունը բաղկացած էր Ճանիկ և Մագսուտ ամիրաներից, անդամակցում էին Հարություն Կելկելյանը, Աբրահամ Ալլահվերդին, Հովհաննես Թընկըրյանը, Հովսեփ Տավուտյանը։ Սրանց երկուսի գլխավորն էր Ուզունյան Հարություն ամիրան, որին սուլթանը «ականակուռ շքանշան» պարգևեց և հաճախ խորհրդակցում էր նրա հետ՝ իր պալատական գործերը վարելիս։

Այս ընկերություններից «առաջինը կտնտեսեր ու կը հավաքեր իր գործակատարներուն և հարյուրորդավոր հավաքողներուն ձեռքով Անատոլուի հարկերը, և երկրորդը նույնպես Ռումելիի հարկերը, այնպես, որ բովանդակ տերության հարկերն և տուրքերը կժողովվեին այդ ընկերության ձեռքով, որ շատ անգամ ի հաշիվ տերության կանխավճարներ ընելով այդ հարկերուն փոխարեն՝ կդյուրացներ անոր պյուտճեն՝ առ ձեռն հավասարակշռության, և ինքն ալ կշահեր լիովին ցորչափ գիտնար իր հաշիվը»[107]։

Ամիրաներն օգտվելով այն հանգամանքից, որ Թուրքիայում մինչև 1850 թ. կանոնավոր բանկեր չկային, իրենք էին կատարում այդ գործարքները, վարկեր էին բաց թողնում այս կամ այն վաճառականին, առևտրական ընկերությանը, պետական գրասենյակներին, հաճախ էլ սուլթաններին[108]։ Սրանք վարկ էին տալիս 20—25%-ով, իսկ պարտք վերցնող փաշաների հետ, պայմանադրությամբ, հարկերից ստացված գումարի ավելադիրը հավասարա-

---

107 «Վերջին լուր», 1921, 4 հունիսի, № 2194։

108 Տե՛ս Գ. Խ. Ստեփանյան, Ուրվագիծ արևմտահայ թատրոնի պատմության, հատ. 1, Երևան, 1962, էջ 22։

չափ բաժանում։ Ակնհայտ է, որ սարաֆ ամիրաները հարստություն էին կուտակում բացառապես վաշխառության ճանապարհով։

Ամիրաների մի մասը պարապում էր սեղանավորությամբ։ Հիմնական հատվածը կապված էր պալատի հետ, պատասխանատու պաշտոններ էր վարում արքունիքում, ղեկավարում կայսրության տնտեսական կարևոր գերատեսչությունները։ Ակնի Ապուչեխ գյուղից գաղթած և արհեստագործության մեջ աչքի ընկած Մահտեսի առաքել Տատ ամիրան՝ Տատյան գերդաստանի ավագագույնը, 1795 թ. կանչվում է պալատ և նշանակվում արքունի վառոդարանի, այսինքն զինագործության ղեկավարը։ Այնուհետև, շուրջ 75 տարի Տատյան ամիրայական տան զավակները ժառանգաբար ղեկավարում էին ողջ Թուրքիայի զինագործարանները, նույնիսկ թղթի արտադրության և բանակի հանդերձավորման գործերը։

Տյուզյան ամիրայական տանն էր վստահված պետական ոսկերչանոցը, հետագայում նաև «փողերանոցը»։ Նրանք կտրում էին ոսկյա ու արծաթյա դրամներ։ Արքունի ճարտարապետությունը գլխավորում էին Պալյանները։ Սրանց «ոսկյա մատամբ» շքեղաշեն էին, դառնում սուլթանի պալատները, ծնվում շքնաղ Դոլմա-բախչեն, վերանորոգվում Այա-Սոֆիան։ Մկրտիչ Ճեզայիրլյանը կարգավորում էր Կ. Պոլսի և համարյա ողջ Թուրքիայի մետաքսագործության, մաքսահավաքման գործերը։ Ակնեցի Արփիարյան ամիրայական տունը երկար տարիներ վարեց Կապան-մատենի արծաթի հանքերի վերատեսչության գործը։

Հայ ամիրաների ձեռքերով Թուրքական սուլթանները կառուցեցին արդյունաբերական մի շարք կենտրոններ։ Հակոբ Չելեպի Տյուզյանը, արքունի փողերանոցի տնօրենը, սուլթանի հանձնարարությամբ Անգլիայից տեղափոխեց շոգեշարժ մեքենա, Կ. Պոլսում հիմնեց դրամահատարան և սկսեց կտրել ոսկյա ու արծաթյա դրամներ։

Հայ ամիրաները Թուրքական սուլթանների հանձնարարությամբ XIX դարի առաջին կեսին կառուցում էին մի շարք գործարաններ, որոնք տեղավորված էին թե՛ մայրաքաղաքում, և թե՛ Արևմտյան Հայաստանում։ Այդ գործարանները կառուցում և վերասարքավորում էին Տյուզյան և Տատյան ամիրայական գերդաստանները։ Անկասկած է, որ ամիրաները սեղանավորությամբ զբաղվելուց բացի խոշոր դեր էին կատարում նաև կայսրության պետական արդյունաբերության զարգացման գործում։ Սակայն ամիրաների մեծ մասը դեմ էր բուրժուական ռեֆորմներին։

Ամիրաները զորեղ ազդեցություն ունեին նաև հայոց պատրիարքների վրա։ Նրանք, փաստորեն, միջնորդ էին պատրիարքի ու պետության միջև, ֆինանսավորում էին պատրիարքարանը և նրա միջոցով իրենց ազդեցությունը տարածում արևմտահայության վրա։

Հայկական համայնքների վրա ազդեցությունը չկորցնելու դիտավորությամբ՝ պատրիարքարանի, եկեղեցականների ու վանականների միջոցով ամիրաներից շատերը հաճախ հիմնում էին դպրոցներ, հիվանդանոցներ, մեկենասի դեր ստանձնում, հրատարակում գրքեր և ամսագրեր։

Բայց հարստությունից հղփացած հայ ամիրաները, առավել ևս սարաֆ-

ները, քաղաքականապես հեղհեղուկ վիճակում էին, միշտ ենթակա անակընկալների։ Առանձնապես անապահով էին սեղանավորների կյանքն ու ունեցվածքը։ «...Երբ փաշան պաշտոնեն իյնար կամ պատժվեր, անոր սարաֆը խստության մեծագույն բաժին կկրեր, ան երբեմն կաքսորվեր, երբեմն ստացվածքեն կզրկվեր և երբեմն ստացվածքեն և կյանքեն»[109]։ Հ. Մրմրյանը գրում էր. «Բայց և այնպես՝ իրենք (ամիրաները) միշտ անակնկալով մը ամեն բան կորսնցունելու վտանգի մեջ են»[110]։

Սուլթանն ամեն րոպե կարող էր պատճառ գտնել կառափնարան ուղարկելու Ղալաթիայում ծվարած հայ մեծահարուստ սեղանավորին։ Ոսկիների պարկերը նրան չէին փրկում, քանի որ տիրոջ գլխատումից հետո ամբողջովին բռնագրավվում էր նրա հարստությունը։ Այս տեսակետից օրինակ է Տյուզյան գերդաստանի ճակատագիրը։

Տյուզյանները շուրջ մեկ դար իրենց ձեռքումն էին պահում Թուրքիայի դրամահատության գործը. Նրանց հարստությանը նախանձում էին նույնիսկ թուրք պալատականները։ Սուլթան Մահմուդ II-ը ընդառաջելով իր պալատականների ցանկությանը, միաժամանակ ձգտելով տեր դառնալ Տյուզյանների հարստությանը, 1819 թ. օգոստոսին նրանցից հաշվետվություն պահանջեց գանձարանի մասին և պատրվակ բռնելով պակասորդը, գիշերով պաշարեց հայ ամիրայի բնակարանը, բռնագրավեց նրա ողջ ունեցվածքը, գլխատելով ընտանիքի արու բոլոր անդամներին։ Այս փաստը խոսում է կյանքի ու գույքի անապահով վիճակի մասին թուրքական կայսրության մեջ։

Անցյալ դարասկզբից սկսած, Թուրքիայի պետական ապարատի վերակառուցման, նոր, եվրոպական տիպի գերատեսչությունների ստեղծման պատճառով, ամիրաները զրկվում էին պալատում գրաված տեղերից, կայսրության տնտեսական կյանքում խաղացած նախկին դերից։ Նվազում են վաշխառության համար երբեմնի ստեղծված հնարավորությունները։

1856 թ. վերականգնվում է սուլթանի 1848 թ. հրամանագիրը և կազմակերպվում Օսմանյան բանկը։ Այժմ սուլթանը, նրա պալատականները, նահանգապետ փաշաները դրամը վաշխով վերցնում էին ոչ թե հայ ամիրաներից, այլ այդ բանկից։ Կազմակերպվում են ֆինանսական, ռազմական, ներքին և արտաքին գործերի մինիստրություններ, վերակառուցվում է արքունիքը, կազմվում դիվան, բազմահազար չինովնիկներ-էֆենդիներ պաշտոններ են ստանում։ Մի խոսքով ստեղծվում է «էֆենդիների» մի ստվար խավ, որը հաջորդելու էր ամիրայությանը ոչ միայն պաշտոններ գրավելու, այլև տնտեսական բարձունքներին տիրապետելու տեսակետից։

1850—60-ական թթ. Թուրքերի, հույների ու սլավոնների կողքին մայրաքաղաքում ձևավորվեց ու առանձնացավ նաև հայ պետական պաշտոնյաների նոր դաս՝ արևմտահայ էֆենդիները։ Եթե մինչև 30-ականները Թուրքիայի պաշտոնյա էֆենդիների մեջ հայերի անուններ քիչ էին հիշատակվում, ապա 40-ականներից սկսած Կ. Պոլսում, Զմյուռնիայում և նույնիսկ գավառական քաղաքներում տեղեր են գրավում նաև հայ էֆենդիները, որոնք բարձրա-

109 «Ընդարձակ պատմություն Հայոց», պատրաստեց Հ. Հ. Ջագմագճյան, Պոսթոն, 1917, էջ 556։

110 Հ. Գ. Մ., նշվ. աշխ., էջ 118։

նում էին գաղութահայ վաճառականների, ներքին ու արտաքին առևտրով պարապող հայ առևտրականների միջավայրից։ Կոստանդնուպոլսում աշխույժ էր ներքին առևտուրը, որի գերակշռող մասը կենտրոնացած էր հայ վաճառականների ձեռքում։ Սրանք սկզբում համախմբված էին էսնաֆություննների մեջ, պարապում էին նախ գավառից բերված գյուղատնտեսական մթերքների, ապա և տեղական արհեստների արտադրանքների վաճառքով։ Դարասկզբին արդեն հայ առևտրականները տիրապետում էին առևտրի եվրոպական մեթոդներին։ Նրանք առևտրական սերտ հարաբերությունների մեջ էին Վենետիկի, Հռոմի, Ամստերդամի հետ։ Հնդկաստանից ներմուծում էին շալեր, համեմներ ու գոհարեղեն, Իրանից՝ կերպասներ, Դամասկոսից՝ բեհեզներ։ Պոլսահայ վաճառականները Ֆրանսիայից, Իտալիայից բերում էին ծանրագին կերպասներ, վենետիկյան հայելիներ, ապակյա ճրագարաններ, գերմանական սաթ, որոնց մի մասը վաճառում Թուրքիայում, մյուս մասը՝ Իրանում, Եգիպտոսում, Հարավային Ռուսաստանում։ Ահա այս առևտրականներն էին, որոնք առևտրից, մեծ մասամբ գյուղատնտեսական մթերքների վաճառքից հսկայական եկամուտներ ստացան և տարածվելով Արևմտյան Եվրոպայում՝ դարձան թուրք-եվրոպական առևտրի միջնորդները։

Ամիրայական դասին հակադրվող վաճառականական այս դասը գերազանցապես կոմպրադորական էր, որը տեր դառնալով քարավանային և ծովային առևտրին, քիչ էր մտահոգված երկրի տնտեսական զարգացման, ազգային արդյունաբերության ստեղծման խնդիրներով։

Մինչև XIX դարի կեսերը պոլսահայ «եվրոպականացած» առևտրականները կապված էին ֆրանսիական, գերազանցապես իտալական շուկաների հետ[111]։ Անգլիայի տնտեսական հզորացումը մի կողմից, Ղրիմի պատերազմը մյուս կողմից, փոխեցին նախկին իրադրությունը։ Պոլսահայ առևտրականները մեծ մասամբ զինվորագրվեցին Անգլիային՝ նրա ապրանքները տարածելով ողջ երկրով մեկ։

Սկզբնական շրջանում նրանք սոսկ միջնորդներ էին։ Դարի երկրորդ կեսին նրանց մի մասը բնակություն է հաստատում եվրոպական քաղաքներում, մասնավորապես Լոնդոնում, Մանչեստրում, Լիվերպուլում, Փարիզում և այլուր։

1861 թ. Մանչեստրի հայ վաճառականների թիվը հասնում էր 30-ի, որոնք կազմելով առևտրական ընկերություններ, միաժամանակ պետությունից թույլտվություն ստացան հայկական եկեղեցի ունենալու, հայերեն գրքեր տպագրելու։ 1863 թ. մի հիշատակարանում նշված է, որ Մանչեստրում այդ ժամանակ կային 25 խոշոր հայ առևտրականներ, իսկ Լիվերպուլում՝ վեց։ Դրանք գաղթել էին Պոլսից, Զմյուռնիայից և Կեսարիայից[112]։

Գաղթելով նախկին բնակավայրերից, հայ կոմպրադորներն իրենց կապերը պահպանում էին Թուրքիայի հետ և միջնորդ օղակ դառնում թուրք-անգլիական առևտրի մեջ։ Այդ վաճառականների «կեսը,— գրում է Մրմըր-

111 Տե՛ս Աշոտ Հովհաննիսյան, Նալբանդյանը և նրա ժամանակը, գիրք 1, էջ 353։

112 Հ. Գ. Մ[րմրյան], Թուրքահայոց հին վաճառականությունն և վաճառականք, Կ. Պոլիս, 1908, էջ 47։

յանը,— Կ. Պոլսեն և Զմյուռնայեն Մանչեստր երթևեկողներ էին, մյուս կեսը մնայուն կերպով հոն գործողներ՝ իբրև ներկայացուցիչ Կ. Պոլսի և Զմյուռնայի իրենց կեդրոնական տուներուն»[113]։

XIX դարի առաջին, առավել ևս երկրորդ կեսին, Պոլսի հայ ազգաբնակչության ստվար մասը և հիմնական դասը կազմում էր արհեստավորությունը։ Արհեստավորների մեծ մասը Հայաստանից նախկինում գաղթած հայերն էին։ Այս շրջանում ևս շարունակում էին Կ. Պոլիս գալ կիլիկեցի ու վանեցի ոսկերիչներ, ակնեցի հացագործներ, սեբաստացի դերձակներ, կեսարացի կառուցող ու շինարար վարպետներ, կարնեցի զինագործներ, բաղեշցի կտավագործներ։ Քաղաքի ողջ արհեստագործությունը կենտրոնացած էր հայերի, հույների և հրեաների ձեռքում։

Թուրքիայի վիճակագրական գրասենյակի հաղորդագրության համաձայն XIX դարի երկրորդ կեսին Կ. Պոլսում ապրող հայերից 494-ը, էֆենդի հորջորջմամբ, պետական պաշտոնյաներ էին, 35.979-ը՝ վաճառականներ, արհեստավորներ, խանութպաններ, 32.399-ը՝ ուսանողներ և աշակերտներ, 14.998-ը՝ անզբաղմունք մարդիկ[114]։ Մոտ 40 հազար հայ արհեստավորներ և առևտրականների մի մասը XVIII դարավերջին ընդգրկված էին արհեստավորական 65, իսկ XIX դարակեսին՝ 100-ից ավելի կազմակերպությունների՝ էսնաֆությունների մեջ[115]։

XIX դարի կեսերին հիշատակվում են մայրաքաղաքում կազմակերպված հայկական հետևյալ էսնաֆությունները. սառաֆ (սեղանավոր), խույումճի (ոսկերիչ), տյուլպենտճի (ծաղկարար, դաճող), հացագործ, քերեստեճի (փայտյա շինանյութ պատրաստող և վաճառող), սանտալճի (հողաթափ կարող), թերզի (դերձակ), սահաթճի (ժամագործ), պեզազ (ճոթավաճառ), ղաղանճի (պղնձագործ), տյուրկեր (հյուսն), ֆինճանճի (գավաթագործ), մեստըճի (բարակ կաշվից կոշիկ կարող), համամճի (բաղնիսպան), աշճի (խոհարար), մանկավարժներ, պերպեր (վարսավիր), գաֆաֆ (կոշկավաճառ), փեշտիմալճի (գոգնոց, բաղնիքի ցամքոց գործող), էնֆիյեճի (քթախոտավաճառ), քիթապճի (գրավաճառ), պախալ (նպարավաճառ), պչախճի (դանակ շինող) և այլ միությունններ[116]։

Կ. Պոլսի էսնաֆություններից ամենանշանավորը ամբողջ երկրում ու Եվրոպայում հայտնի ոսկերիչներինն էր։ Սրանց էսնաֆության մեջ էին համախմբված վարպետ ոսկերիչները, ոսկեղենի վաճառականները, ակնավաճառները, արծաթեղենի առևտրով պարապողները։ Կ. Պոլսի մեծ շուկայում նրանք զբաղեցնում էին մի ընդարձակ հրապարակ։ Կողք-կողքի շարված էին արհեստանոցները, վաճառողների փոքր ու մեծ խանութները։ Հայ ոսկերիչների արտադրանքը շուկայում մրցության մեջ հաջողությամբ դուրս էր մղում եվրոպականին։

---

113 Հ. Գ. Մ., Թուրքահայոց հին վաճառականությունն..., էջ 53։

114 «Արձագանք», 1885, № 10, էջ 142—143։

115 «Ընդարձակ օրացույց ազգային հիվանդանոցի», Կ. Պոլիս, 1902, էջ 199, տե՛ս նաև Մատենադարան, ձեռագիր 2622, թ. 82—83։

116 Մատենադարան, ձեռագիր 2622, թերթ 85—87։

XIX դարի թե՛ առաջին և թե՛ երկրորդ կեսերին Կ. Պոլսի հայ գաղթօջախի արհեստավորներից բացի, առևտրականների գերակշռող հատվածը ևս համախմբված էր միություն-եղբայրությունների մեջ, որոնք միասնաբար էին հանդես գալիս ազգի ներքին գործերը տնօրինելիս։ «Ըվ պետք է ընդունել,— գրում է Ա. Ալպոյաճյանը,— թե ազգն այն ատեն կներկայացնեին ավելի դասակարգերը, քան թե ազատ քաղաքացիական խումբերը, վասնզի արհեստապետությունները (էսնաֆ) զորավոր կազմակերպություն ունեին, և իրենց արհեստապետովը և արհեստապետական ժողովներովը (լոնճա օտասը) կներկայացնեին տեսակ մը ինքնագլուխ վարչություններ և մատակարարություններ, որոնք հավաքաբար կկատարեին էսնաֆի մը ամբողջական ներկայացուցչի հանգամանքը»[117]։

Թուրքիայի մայրաքաղաքի հայ աշխատավորական զանգվածների ըզգալի մասը գավառից եկած պանդուխտներն էին։

Հայերի նկատմամբ Օսմանյան կայսրության վարած քաղաքականության հետևանքն էին պանդխտությունն ու գաղթականությունը։ Գաղթականության պատճառով դատարկվեցին Արևմտյան Հայաստանի մի շարք գավառներ, առաջացան գաղութահայ նոր օջախներ։

Քիչ վտանգավոր ու վնասակար չէր պանդխտությունը, որի հետևանքով պակասում էր գավառահայ բնակչության թիվը, քայքայվում էր գյուղատընտեսությունը, աղքատանում էին հազարավոր ընտանիքներ։

Պանդուխտները նրանք էին, որոնք չկտրվելով հայրենիքից, ժամանակավորապես գնում էին օտար վայրեր՝ աշխատանք և վաստակ որոնելու և ապա հայրենիք վերադառնալու հույսով։ Պանդուխտը միայն ժամանակավորապես էր թողնում բնակավայրը և գաղթում՝ միևնույնն է հայրենիքի սահմաններից դուրս կամ նրա սահմանների մեջ։

Պանդխտության էր դիմում ոչ միայն գյուղացին։ Ճիշտ էր նկատում Մ. Մամուրյանը. «...վաճառականը կգաղթե, երկրագործը կգաղթե, արհեստավորը կգաղթե, բանվորը կգաղթե, մեկ խոսքով՝ ամենքը կգաղթեն և Հայաստան կմնան շատ տեղեր միայն ծերեր, կիներ, մանկունք»[118]։

Արևմտյան Հայաստանից պանդխտության ճանապարհ բռնած հայերի տարածման շառավիղը, մանավանդ դարակեսին, շատ լայն էր։ Նրանք պանդըխտում էին Բաքու, Թիֆլիս, Պարսկաստանի քաղաքները, անգամ Եվրոպա և ԱՄՆ։ Սակայն հայ պանդուխտները հիմնականում կենտրոնանում էին Կոստանդնուպոլսում, Զմյուռնիայում և նավահանգստային Տրապիզոն քաղաքում։ «Արծագանքի» Կ. Պոլսի թղթակցի վկայությամբ «...այսօր հարյուր հազարով պանդուխտ հայեր եկած են այստեղ (Կ. Պոլիս—խմբ.) Վանա, Բաղեշի, Մուշի, Էրզրումի, Տիգրանակերտի, Ակնա, Երզնկայի և Փոքր Ասիո ամեն կողմերեն, որպեսզի քիչ մը դրամ շահելով, կարողանան հատուցանել իրենց պարտքն կամ տուրքը, զոր տերության գործակալներն անգթորեն կըպահանջեն»[119]։

---

117 «Ընդարձակ օրացույց ս. Փրկչյան հիվանդանոցի հայոց», Կ. Պոլիս, 1910, էջ 202—203, Ա. Ալպոյաճյան, Ազգային սահմանադրությունը, իր ծագումը և կիրառությունը։

118 Մ. Մամուրյան, Անգլիական նամականի կամ հայու մը ճակատագիրը, Զմյուռնիա, 1881, էջ 200։

119 «Արծագանք», 1886, № 24, էջ 337։

Մինչև XIX դարի 70-ական թթ. Մալաթիայից պանդխտել էին 2 հազար, Վասպուրականից՝ 38 հազար հայեր։ Տարոնից 17 հազար հայեր էին պանդխտել Պոլիս, Ռուսաստան և Պարսկաստան[120]։ Մուշի վիճակի ամեն մի ընտանիք 1—2, նույնիսկ 4—5 պանդուխտներ ուներ քաղաքներում։ Միայն Խաս գյուղը, որն ուներ ընդամենը 250 տնտեսություն, տվել էր 3—4 հարյուր պանդուխտ, Նորաշենը՝ 200 տնից՝ 300 պանդուխտ, Բերդակը՝ 120 տնից՝ 200 պանդուխտ։

Բաղեշի վիճակից «2800 գաղթյալներ կան, որոնք Պոլիս, Կարին, Կարս, Ալեքսանդրապոլ և այլ տեղեր գաղթած են»։ Սեբաստիայի գավառի 60 տնտեսություն ունեցող Խառնվիլ գյուղից գաղթել էին 140 հայեր, Մուրվանա գյուղից՝ 100, Օտուրից՝ 150, Ալուշենից՝ 70, Կիրասոնից՝ 40, որոնք բոլորն էլ կուտակվել էին Կոստանդնուպոլսում[121]։ Քղիի վիճակից 1878 թ. 3000 պանդուխտներ կային մայրաքաղաքում և այլ վայրերում։ «Արձագանքի» արևմտահայ թղթակից Վարդանը վկայում է, թե «Քղիի ժողովուրդը արյուն արցունք կթափե, բոլորովին ընկճված է, հորդորեցի, որ քիչ մը սպասեն և չգաղթեն»[122]։ «Հողերը,— ընդհանրապես թրքաց և քրդաց թափու են... ուստի ընդհանրապես պանդխտությամբ կճարեն ապրուստնին»[123]։ Խարբերդից տարեկան մի քանի հազար հայեր էին պանդխտում Կ. Պոլիս, իսկ 1870-ականներից սկսած՝ Ամերիկայի մայր ցամաք։ Բազմահազար պանդխտողներ կային Կ. Պոլսում նաև Կարինից և Կիլիկիայից։ Հաճընի պանդուխտները 60-ական թվականներից այլևս չէին բավարարվում Միջերկրականի ծովամերձ քաղաքներով, այլ սփռվում էին եվրոպական շահաստանները։ Դարակեսից սկսած պանդուխտները Մարաշից խմբերով էին հեռանում և շատերն այլևս չէին վերադառնում Կիլիկիա։

Մարաշցի պանդուխտները ընդհանրապես հեռանում և հաստատվում էին Եվրոպայում[124]։

Ազգային ժողովի 1860 թ. տվյալներով Կ. Պոլսում 15.000 հայ պանդուխտներ էին ապրում[125]։ 1870-ական թթ. նրանց թիվը հասնում էր 45.000-ի[126]։ 1860 թ. Զմյուռնիայում կային 4 հազար պանդուխտներ, իսկ 1870-ական թթ. վերջին՝ մինչև 5.000, որոնց գերակշռող մասը այլևս չվերադարձավ հայրենիք։

Արևմտյան Հայաստանից Կ. Պոլիս գաղթող հայ պանդուխտները պարապում էին օրավարձու մշակությամբ, բեռնակրությամբ կամ ջրկիրությամբ[127]։ «Պոլսի հայերը մեծ մասամբ բեռնակիրներ, գործակատարներ, տան ծառաներ և հավատարմատարներ են... Դրամական հաստատությունները, գրասենյակները, Պերայի, Կալաթիայի և Ստամբուլի մեծամեծ խանութները համալներ են պահում»։

---

120 ԳԱԹ, Թ. Ազատյանի արխիվ, III բաժին, վավ. 47, 49, 57։

121 «Արձագանք», 1882, № 12, էջ 276—277։

122 Նույն տեղում։

123 ԳԱԹ, Թ. Ազատյանի արխիվ, III բաժին, փաստաթուղթ № 59, էջ 7։

124 Տե՛ս «Մարաշ կամ Գերմանիկ և հերոս Զեյթուն», երկասիրեց Գր. Հ. Գալուստյան, Նյու-Յորք, 1934, էջ 834—869։

125 «Ատենագրություն ազգային ժողովո», հատ. Ա, էջ 24։

126 Ա. Հովհաննիսյան, Նալբանդյանը և նրա ժամանակը, գիրք 1, էջ 360։

127 Տե՛ս Հայկ Ղազարյան, նշվ. աշխ., էջ 426—429։

Պոլսի պանդուխտները լցվում էին «քարվանսարաները, նավահանգիստները, մաքսատները, և համալի ստոր պաշտոն էին կատարում... Այդ ժողովուրդն է, որին հանդիպում ես Տաճկաստանի և Եգիպտոսի (որտե՞ղ չկան նըրանք), բոլոր ծովեզրյա քաղաքներում, ուր նոցա գործն է չոփչիություն (քաղաքից աղբ են առնում կողովները, տանում նետում ծովը—խմբ.), թուլումբաջիություն (ջրկիր, հրշեջներ) և այլ այսպիսի ստոր պարապմունքներ։ Ուր նոցա կերակուրն է՝ զինվորներից ավելցած սոմունը և մեչիդների միաբանության (սոֆթայների) սեղանից ավելցած փշրանք։ Ուր նոցա օթևանն է բաղնիքների վառարանի (թուլումբարի) մոխիրները»[128]։

Անտուն, անօթևան պանդուխտները ամառները գիշերում էին բաց երկնքի տակ, իսկ ձմեռները լցվում բաղնիքների նկուղահարկերը, թուլումբարանները, որտեղ ծուխը, մոխիրը և բոցը խեղդում էր նրանց, մրոտում, սևացնում դեմքերը, քայքայում առողջությունը, մի բան, որն այլևս չէր հետաքրքրում կարիքի ու թշվառության մեջ մոլորված հայ պանդուխտին։ Միայն 1868—1869 թթ. Պոլսի խոնավ նկուղներում մեռնող պանդուխտների թիվը հասել է 1700-ի։

Ծանր պայմաններում ապրող ու աշխատող պանդուխտները օրական վաստակում էին 30—40 կոպեկ, սակայն այդ էլ պակասեց, երբ Պոլսում կառուցվեց երկաթուղի, իսկ հույները սկսեցին գործադրել ձիաքարշ տրամվայներ[129]։

1840—60-ական թթ. Թուրքիայի առափնյա քաղաքներում, մասնավորապես մայրաքաղաքում կենտրոնացած պանդուխտներն էին, որ արտահայտում էին գավառի հայ գյուղացիության տրամադրությունները։ Զրկված ընտանիքից, հայրենիքից, նրանք քաղաք էին բերել հայրենատենչ սիրտ, որի վրա խորը վերքեր էին թողել թուրքական կառավարողները, թուրք ու հայ վաշխառուները։ Պանդուխտներն անմիջականորեն էին կրել այն քայքայիչ ազդեցությունը, որն ունեցել էր արտասահմանյան կապիտալը Թուրքիայի տնտեսության վրա։ Նրանք ավելի շատ էին տուժել օտար բռնակալների ճընշումներից, ավելի հաճախակի հարստահարվել քուրդ ու թուրք հրոսակների կողմից, այդ իսկ պատճառով էլ նրանց համար ավելի անտանելի էր թուրքական լուծը։

Պանդուխտներն առանց երկնչելու ստիպում էին պատրիարքարանի պաշտոնյաներին, նրանց միջոցով և՛ սուլթանական կառավարությանը՝ ըզբաղվելու գավառահայության սոցիալ-քաղաքական կյանքի հարցերով։ Նրանց ճնշման տակ էր, որ հաստատվեց «Ազգային սահմանադրությունը», կազմվեց գավառական հարստահարությունները ուսումնասիրող խորհուրդը, Բ. Դռանն ուղղվեցին բազմաթիվ բողոքագրեր, որոնցում նկարագրվում էին այն բոլոր զրկանքներն ու հարստահարությունները, որ կրում էին գավառահայերը։ «Կ. Պոլսո հայ գաղթականությունն է, որ ամեն պարագային մեջ,— գրում էր «Արձագանքը»,— ցույց տված է, թե կա հայ ազգություն մը, որ

---

128 Րաֆֆի, Երկեր, հատ. 9, Երևան, 1958, էջ 196—197։

129 «Մշակ», 1875, № 51։

գիտե գործել յուր անդամոց համար»[130]։ Պանդուխտները, դառնալով Թուրքիայի, մասնավորապես արևմտահայության XIX դարի երկրորդ կեսին վերապրած խորունկ տնտեսական ճգնաժամի հայտարարը[131], արտահայտելով բախտակիցների քաղաքական ու տնտեսական շահերը, հենք դառնալով մարտահրապարակ իջնող դեմոկրատական հոսանքին, այնուամենայնիվ չձևավորվեցին իբրև բանվոր դասակարգ։

Եվրոպական կապիտալի ներմուտը Թուրքիա մի կողմից սաստկացնում էր սոցիալական ճնշումն ու հարստահարությունները Արևմտյան Հայաստանում, բնաշխարհից կտրում սնանկացած, պարտքերով բեռնավորված հայ ազգաբնակչությանը, ստեղծում էր բանվորական հսկա պահեստաբանակ, մյուս կողմից պատճառ դառնում ազգային արդյունագործական ձեռնարկությունների քայքայման, պանդուխտներին զրկում ժամանակակից տեխնիկայի վրա հանգչող աշխատանքի գործող բանակ դառնալու հնարավորություններից։ «Սրա մեջն էր հենց վերապրած ճգնաժամի էությունը, և այստեղ էր առաջանում նաև հին ու նոր պանդխտության ոչ միայն քանակական, այլև որակական տարբերանքը»[132]։

Այսպիսով, արևմտահայ այս խոշոր գաղթօջախում էին խարսխված աստիճանաբար մարող ամիրայությունը, նրա դեմ խոյացող կոմպրադորական բուրժուազիան, էսնաֆությունների մեջ ընդգրկված ու նրանցից դուրս եղած արհեստավորները, տեղական արտադրանքի առևտրականները, բազմահազար հին ու նոր պանդուխտները և, վերջապես, այս դասերի ծնունդ, սրանց դասակարգային շահերը յուրովի պաշտպանող, հասարակական տարբեր ու հաճախ իրարամերժ հոսանքների, խմբերի փեղկված ստվարաթիվ արևմտահայ մտավորականությունը։

Կ. Պոլսի գաղթօջախը արևմտահայ մշակույթի զորեղ կենտրոնն էր։ Մայրաքաղաքի հայ գաղթօջախում ամենից առաջ զարգանում էր տպագրական գործը։ XIX դարի առաջին կեսին հայկական տպարանների թիվը հասնում էր 25-ի[133]։ Հայտնի էին Արապյանները, որոնք գուտենբերգյան ձեռնաշարժ մեքենան փոխարինում են արագատիպ մեխանիզմներով, տպագրության մեջ օգտագործում լուսանկարներ, բարձրորակ թուղթ։

Հայ տպագրության մեջ էական դեր են կատարել 1792 թ. Մ. Միրիջանյանի ջանքերով հիմնված Մայր Դպրատունը, 1799 թ. բացված Մ. Հովնանյանի տպարանը, 1839 թ. հիմնված Մյուհենտիսյան և այլ տպարանները, որոնք աստվածաբանական և կրոնա-բարոյագիտական գրքերի հետ միաժամանակ տպագրում էին նաև աշխարհիկ բովանդակությամբ, աշխարհաբարով գրված ինքնուրույն ու թարգմանական ստեղծագործություններ, օրացույցներ, պարբերականներ։

1806 թ. Կ. Պոլսում, Քիթապճի Մարգարի ջանքերով, հիմնվում է ա-

---

130 «Արձագանք», 1886, № 20, էջ 289։

131 Տե՛ս Աշոտ Հովհաննիսյան, Նալբանդյանը և նրա ժամանակը, հատ. 1, էջ 361։

132 Նույն տեղում, էջ 362։

133 Տե՛ս Քնարիկ Կորկոտյան, Հայ տպագիր գիրքը Կոստանդնուպոլսում, Երևան, 1964, էջ 107—150։

րևմտահայերի առաջին գրավաճառանոցը, որը, փաստորեն, դարձել էր յուրօրինակ մի կենտրոն, որտեղ գրքափոխանակությունից, գնումներ անելուց բացի, ընթերցասեր մարդիկ փոխանակում էին նաև գաղափարներ, հաղորդակից դառնում մշակութային նորույթներին։ Ինչպես Քիթապճի Մարգարը, այնպես էլ մյուս գրավաճառներն ու տպարանատերերը Կ. Պոլսում տպագրած գիրքը տարածում էին մյուս հայ գաղթօջախներում։

XVIII դարի վերջերին սկսում է աշխուժանալ կրթական գործը։ 1770 թթ. Կ. Պոլսում սկսեց գործել «Սրբոյն Հակոբա Մծբնա Հայրապետի մանկատունը», իսկ 1790 թ. հիմնվեց անդրանիկ Թաղային դպրոցը։ Դարասկզբին այստեղ բացվեցին շուրջ 15 դպրոցներ, որոնցում ընդգրկված աշակերտների թիվը հասնում էր 2000-ի։ Դրանցից աչքի ընկնող դեր են կատարել Միջագյուղ, Սամաթիա, Գուրուչեշմե թաղերի հայկական նորաստեղծ դպրոցները, 1797 թվականին բացված Սկյուտարի ս. Խաչի, 1813 թ. Պեյքոզի Թուղլաճի Մարտիրոսի հիմնած դպրոցը։ 1828 թ. Հարություն Պեզճյանը Բերայում հիմնում է ասեղնագործության դպրոց՝ փաստորեն պոլսահայերի իգական առաջին վարժարանը[134]։ Նույն թվականին Մայր եկեղեցու մոտ կառուցվում է ևս մի դպրոց, ուր ուսուցչության է կանչվում հայտնի հայկաբան Գր. Փեշտիմալճյանը։

Հետագա տասնամյակներին հիմնվում են Հռիփսիմյանց, Գայանյանց, ապա Էյուպ Թաղամասի Պեզճյան վարժարանը (1832)։ 1836 թ. արդեն գործում էր Խասգյուղի Ներսիսյան վարժարանը, հանրահայտ Սկյուտարի ճեմարանը, որն ամիրաների ու էսնաֆների ընդհարումների առիթ դարձավ։

1840-ական թթ. սկսած հետադիմական մտավորականությունը համառ պայքարով ու դանդաղորեն իր տեղը զիջում է ֆրանսիական հեղափոխության գաղափարներով սնված ու հայրենիք վերադարձած պոլսահայ լուսավորյալների սերնդին։ Կազմվում են դպրոցական ու մշակութային մի շարք ընկերություններ, ավելի հրատապ է դառնում ժողովրդի լուսավորության խնդիրը։

1846 թ. ապրիլի 1-ին Մուրադ-Ռաֆայելյան դպրոցավարտները, Մ. Պեշիկթաշլյանի մասնակցությամբ, հիմնում են «Համազգեաց ընկերությունը», որին հաջորդում են «Ուսումնական ընկերությունը», «Արամյան ընկերությունը», «Հայկական թանգարան ընկերությունը», «Վերածնության ընկերությունը» և, վերջապես, 1860 թ. «Բարեգործական ընկերությունը»։ Տակավին չերկփեղկված, լուսավորական հովերով տարված պոլսահայ երիտասարդ, խանդավառ ու հայրենանվեր գործիչները ջանք չէին խնայում դպրոցական գործի կազմակերպման, ժողովրդի կրթության ու լուսավորության համար։

XIX դարի երկրորդ կեսին դպրոցների ու այնտեղ ընդգրկված աշակերտության թվով Կ. Պոլիսն առաջինն էր հայ իրականության մեջ։ 1859 թ. այստեղ կար 42 վարժարան՝ 4376 աշակերտներով, 1155 աշակերտուհիներով, 197 ուսուցիչներով։ 1871 թ. վարժարանների թիվը հասել էր 48-ի՝ 3936 աշակերտներով, 1886 աշակերտուհիներով, 224 ուսուցիչներով[135]։ Գաղթօջախը

134 Տե՛ս Գ. Ստեփանյան, Ուրվագիծ արևմտահայ թատրոնի պատմության, էջ 27—28։

135 Տե՛ս Գր. Գալուստյան, Մարաշ կամ Գերմանիկ և հերոս Զեյթուն, Նյու-Յորք, 1934, էջ 427։

*դպրոցների հիմնման, կրթական գործի կազմակերպման տեսակետից վերելք է ապրել հիմնականում անցյալ դարի 50—60-ական թթ.։ Հետագայում, համիդյան ռեժիմի տարիներին, նա հանդիպեց մեծ դժվարությունների։*

*1834 թվականին Կ. Պոլսում բացվում է Ազգային հիվանդանոցը, որն ուներ վարժարան, 100—150 մահճակալ՝ հիվանդների համար։ Դարակեսին մահճակալների թիվը հասնում է 200-ի, «ծաղկում է» հիվանդանոցին կից գործող վարժարանը, տալիս ազգային, մշակութային գործիչներ։ Հիվանդանոցի ծախսերը սկզբում հոգում էր Հարություն Պեզճյան ամիրան, իսկ 1863 թ. սկսած՝ Ազգային սահմանադրությամբ ստեղծված հոգաբարձությունը։*

*Կ. Պոլսի գաղթօջախում ձևավորվեցին արևմտահայ հրապարակախոսությունը, հասարակական-քաղաքական հոսանքները։ Այստեղ էին հրատարակվում «Ջոհալ», «Երևակ», «Հայաստան», «Ժամանակ», «Արևելյան դար» կղերա-ամիրայական հոսանքի խոսափողերը հանդիսացող պարբերականները, «Մեղու», «Մյունատի», «Թատրոն», «Սիծաղ», «Թատրոն բարեկամ մանկանց» դեմոկրատական հանդեսները։ Սրանց շուրջը համախմբված մտավորականները, իրարամերժ պայքար ծավալելով, գաղափարական մարտեր մղելով, միաժամանակ զգալի զարգացման հասցրին արևմտահայ գրականությունը։*

* * *

*Թուրքիայի կիսագաղութի վերածվելը պարտատեր եվրոպական տերությունններին ու Վատիկանին նոր հնարավորություններ էին ընձեռում կրոնական քարոզիչների միջոցով իրենց ազդեցությունը տարածել գաղթօջախի հայ զանգվածների վրա՝ ջանալով նրանց հեռու պահել դեպի Ռուսաստանն ունեցած կողմնորոշումից։ Մերձավոր Արևելքում և Անդրկովկասում իրենց առևտրական գործարքները դյուրին դարձնելու, Ռուսաստանի տնտեսական, առավել ևս քաղաքական ազդեցությունը թուլացնելու նպատակով Իտալիան և Ֆրանսիան կաթոլիկ պրոպագանդիստների, ուսուցիչների բազմամարդ խմբեր էին շարժում դեպի Կ. Պոլիս, ապա Արևմտյան Հայաստան, «քաղաքակրթություն տարածելու» և քրիստոնեական եկեղեցու շահերը պաշտպանելու կեղծ պատրվակով դավանափոխում հազարավոր հայերի և ջանում վերջիններիս ծառայեցնել Արևմուտքի նվաճողական դիտավորություններին։*

*Միսիոներական շարժումը, կաթոլիկական քարոզչարանները Կ. Պոլսում սկզբնավորվում էին XVI դարավերջից։ «Վատիկանը, որն համառորեն ջանում էր իր գերիշխանությունը հաստատել համաքրիստոնեական եկեղեցու վրա... խաչակրաց արշավանքների վերջնական ձախողումից հետո անցավ Արևելքի ոչ-քրիստոնեական երկրներում «խաղաղ» ներթափանցման գործելակերպին»[136]։ Առաջինը Ֆրանսիան սկսեց կաթոլիկ քարոզիչներ առաքել Կ. Պոլիս և, հայերից շատերին դավանափոխելով, մահմեդականներից ու հրեաներից հազարավոր գործակալներ պատրաստելով՝ ջանք չխնայեց իր նվաճողական քաղաքականության համար հող ստեղծելու։*

---

[136] Е. А. Беляев, Предисловие к кн.: Мустафа аль-Халиди, Омар Фарух, Миссионеры и империализм в арабских странах, М., 1961, стр. 4. *Հայերի կաթոլիկացման մասին մանրամասն տե՛ս Հ. Մ. Պողոսյան, Զեյթունի պատմությունը, Երևան, 1969, էջ 217—230։*

XIX դարի առաջին քառորդում հայ կաթոլիկների համայնքը Կ. Պոլսում համախմբում էր 25000 մարդ և եվրոպացիների հարկադրանքի տակ վարում հակահայկական քաղաքականություն, նույնիսկ հակադրվում հայկական ընդհանուր եկեղեցու ավանդույթներին, Հռոմի կղերապետության սադրանքներով դավանաբանական վեճեր մղում էջմիածնի կաթողիկոսության և Կ. Պոլսի հայոց պատրիարքարանի դեմ։

Սուլթանական կառավարությանը ձեռնտու էր արևմտահայության պառակտումը, ուստի, մերթ պաշտպանելով համայնքներից մեկին, մերթ՝ մյուսին, հարմար առիթով վնասում էր երկուսին էլ։ 1828 թ. հունվարի 27-ին[137] Մահմուդ II-ը, կաթոլիկ-լուսավորչական պայքարի առիթով, 12,000 հայ կաթոլիկների, այդ թվում 42 հոգևորականների, աքսորում է Կ. Պոլսից, Բերայից, Ղալաթիայից։ Կողոպտված հայկական գերդաստանները ցրտաշունչ ձմռանը քշվում են Փոքր Ասիայի խորքերը։ Ճանապարհին մահանում են շուրջ 400 երեխաներ, ծերեր ու կանայք։

Որոշ ժամանակ անց, Ֆրանսիայի միջամտությամբ, սուլթանը նորից արտոնում է կաթոլիկ հայերի վերադարձը մայրաքաղաք, որը և խթանում է կաթոլիկացման պրոցեսի արագացմանը։ 1840-ական թթ. հայ կաթոլիկները 35.000 էին, որոնք ունեին քարոզչարաններ, բազմաթիվ դպրոցներ, հիվանդանոց։ 1846 թ. կաթոլիկների համայնապետ դարձավ Անարզաբայի եպիսկոպոս Անտոն Հասունյանը, որը միջոցների մեջ խտրություն չդնելով համախմբում էր «իր համայնքը»։ Մինչ այդ կաթոլիկների առաջնորդ Գևորգ Ը-ն նստում էր Զմառի վանքում, իսկ նրա մահից հետո Թուրքիայում ստեղծվեց կաթոլիկների պատրիարքություն և տեղափոխվեց Կ. Պոլիս՝ իրեն ենթարկելով Ասորիքի, Միջագետքի, Փոքր Հայքի, Եգիպտոսի 40.000 հայ կաթոլիկներին։

Հասունյանը Հռոմից ստացավ կաթոլիկների կաթողիկոս-պատրիարք՝ «պատրիարք տանն Կիլիկիո» տիտղոսը, եպիսկոպոսական աթոռներ հաստատեց Կ. Պոլսում, Հալեպում, Մարաշում, Ադանայում, Դիարբեքիրում։ 1856 թ. Թուրքիայի հայ կաթոլիկների թիվը մոտենում էր 100 հազարի։

1850-ական թթ. սկզբին Կ. Պոլսում ձևավորվեց և հետագայում ավելի մարդաշատ դարձավ «Հասունյան կուսակցությունը»։ Հասունյանները բացում էին արական ու իգական վարժարաններ, անվճար հագուստ և սնընդամթերք տալիս հայ աղքատ երեխաներին, կաթոլիկացնում նրանց, ապա ուղարկում Հայաստանի ամենատարբեր գավառները։ Կարիքը, թշվառությունն ու քաղցը հայ մայրերին ստիպում էին այդ ճանապարհով կորցնել իրենց զավակներին, իսկ կաթոլիկ պրոպագանդիստներն էլ Ֆրանսիայից ու Վատիկանից միջոցներ ստանալով, հոգիներ էին գնում։ Կ. Պոլսից կաթողիկոսին բողոք էր ուղարկվում, որտեղ ասված էր. «կաթոլիկ որսորդները խիստ հաջող դեր կխաղան, անհնարին է մրցել նոցա հետ, վասնզի Եվրոպայեն ահագին գումարներ են թափում հոն»[138]։

---

137 Տե՛ս Ա. Պերպերյան, Պատմություն հայոց, Կ. Պոլիս, 1871, էջ 196—197։

138 Մատենադարան, Իզմիրլյանի արխիվ, թղթ. 12, վավ. 370։ Տե՛ս նաև Հ. Պողոսյան, նշվ. աշխ., էջ 237։

*Կաթոլիկների վարքագիծը՝ սուլթանին դրածո դառնալը զայրույթ առաջ բերեց Կ. Պոլսի հայ առաջավոր մտավորականների մեջ և, ի հակադրություն նրանց, կազմակերպվեց «Հակահասունյան կուսակցությունը»։*

*1846 թ. հիմնված «Համազգյաց» մշակութային ընկերությունը Հասունյանների կողմից Բ. Դռանը ներկայացվեց իբրև քաղաքական կազմակերպություն և արգելվեց։ Այդ առիթով Մ. Պեշիկթաշլյանը գրեց «Հանելուկ» բանաստեղծությունը, որտեղ Անտոն Հասանյանի մասին ասվում էր.*

| | |
|---|---|
| *Անունով մեծ ճգնավոր* | *Գործքով գիտնաս ինչ ըլլալս* |
| *Ու եմ հովիվ պաշտոնով* | *Պիտի դողաս սարսափով[139]։* |

*Հասունյանների դեմ պայքար սկսեցին Կ. Փանոսյանը, Ա. Հայկունին, Հ. Սվաճյանը և ուրիշներ։ Փանոսյանը գումարներ էր հանգանակում, Սամաթիայում բացում աղջիկների վարժարան, ձրի ուսում տալիս հայ մանուկներին, որպեսզի նրանք չընկնեին կաթոլիկների թակարդը։ Ա. Հայկունին գրեց երգիծական պամֆլետներ, Հ. Սվաճյանը «Մեղու» պայքարի ամբիոն դարձրեց Հասունյանների դեմ։ Րաֆֆին Հռոմի պապի Թուրքիայում ծավալած գործունեությունը որակեց հայակործան, իսկ Հասունյան ամբողջ խումբը՝ պապի «ծանր լծի տակ» պատսպարվածներ[140]։*

*Կ. Պոլսում Հասունյան-հակահասունյան պայքարն ավելի սրվեց Զեյթունի 1862 թ. ապստամբությունից հետո։ Ա. Հասունյանը Զեյթունի իշխաններին ֆրանսիական կառավարության անունից հովանավորության խոստումներ էր տալիս, փոխարենը պահանջելով կաթոլիկություն ընդունել։ Գործին միջամտում է Կ. Պոլսի հայոց պատրիարքարանը, Սարգիս Ջալալյանց եպիսկոպոսը, որը 1868 թ. նոյեմբերի 30-ին էջմիածնի կաթողիկոսին գրում էր. «Հասունն ամենայն զորությամբ ջանում է մեր ազգը կաթոլիկ դարձնել և պրոպագանդ է մղում, որին իբրև ծախս տրամադրվում է 25000 մանեթ, որով և այս և այն տեղեր կառուցում է դպրոցներ, հեշտությամբ մեր ազգը որսալու համար։ Պողոս բեյ Մսրլին ցանկանում է դպրոց կառուցել Զեյթունում և ընծայել հանուն սուլթանին, տեսեք թե ինչպիսի խորամանկությամբ են գործում...»[141]։ էջմիածնի միջամտությամբ Զեյթունում բացվեցին լուսավորչական դպրոցներ, սակայն կաթոլիկներն իրենց նպատակներն սկսել էին իրականացնել Կիլիկիայում, մասամբ էլ Զեյթունում։ 1863 թ. այնտեղ 285 տուն կաթոլիկ էր դարձել, իսկ 1864 թ. Հասունի կոնդակով Զեյթունի կաթոլիկների առաջնորդ է ճանաչվում Կղեմես Միքայելյանը։ 1860-ականներին արևմտահայ կաթոլիկների թիվը հասնում էր շուրջ 150 հազարի, որոնք իրենց «ֆրանկ» էին անվանում։*

*Հայերի կաթոլիկացման գործը կատարվում էր Ֆրանսիայի թելադրանքով։*

---

139 *Տե՛ս* Մ. Պեշիկթաշլյան, *Տաղեր, Երևան, 1961, էջ 86։*

140 *Տե՛ս* Րաֆֆի, *Երկեր, հատ. 9, էջ 487։*

141 *Մատենադարան, Կաթ. դիվան, թղթ. 214, վավ. 198։*

Եթե Արևելքում կաթոլիկություն տարածելու միսիան հիմնականում կապված էր Ֆրանսիայի հետ և պաշտպանվում, վարկավորվում էր ֆրանսիական կառավարության կողմից, ապա բողոքականությունը տարածում էին ամերիկյան միսիոներները, հովանավորվելով Կոստանդնուպոլսի անգլիական դեսպանության կողմից, քանի որ Ամերիկան Թուրքիայում դեռևս պաշտոնական ներկայացուցիչներ չուներ[142]։ 1810 թ. Բոստոնում հիմնադրված բողոքականների միությունը 1820 թ. Մալթա կղզում մասնաճյուղ է հաստատում, տպարան հիմնում, դպրոցներ բացում և քարոզիչներ պատրաստելով ուղարկում Թուրքիայի ասիական գավառները։

Բողոքական միսիոներներն Արևելք ներթափանցելիս հիմնական կենտրոնն ընտրում են Կ. Պոլիսը և աշխատում գլխավորապես արևմտահայության մեջ։ 1824 թ. մայրաքաղաքում նրանք բացում են տարրական կրթարաններ, ապա ողջ Եվրոպայում հայտնի Ռոբերտ-կոլեջ բարձրագույն դպրոցը, տպարան, ուր վեց լեզուներով հրատարակվում և ձրի բաժանվում էին կրոնական գրքեր։

XIX դարի կեսերին Բոստոնից վարկավորվող ընկերությունը Թուրքիայում հաստատում է 15 գլխավոր, 254 երկրորդական քարոզչարաններ, որոնք բաժանված էին երեք խմբի. 1. Արևմտյան Թուրքական՝ Կ. Պոլիս կենտրոնով, 2. Կենտրոնական Թուրքական՝ Այնթապ կենտրոնով, 3. Արևելյան Թուրքական՝ Խարբերդ կենտրոնով։ 1845 թ. Փոքր Ասիայում բողոքականներն ունեին 7 դպրոցներ՝ 135 սովորողներով, որը գնալով աճեց։ Թուրքիայում 1865 թ. արդեն կային 6 արական միջնակարգ դպրոցներ, 9 իգական պանսիոնատներ, 122 տարրական դպրոցներ՝ 139 ուսուցիչներով, 5126 աշակերտներով, իսկ 1869 թ. այդ դպրոցների թիվը հասնում էր 185-ի։ Դարավերջին դրանք քառապատկվել էին։

Արևմտահայության դավանափոխության գործը «հաջող» էր կազմակերպել Արևելյան միսիան, որն ուներ 5 գլխավոր (Խարբերդ, Կարին, Վան, Բիթլիս, Մարդին) և 110 երկրորդական կայաններ։ Բոլոր կայանների ղեկավարները, դպրոցների տնօրենները բացառապես ամերիկացի միսիոներներ էին, որոնց կենտրոնն ու հրահանգիչը դառնում էր Կ. Պոլսի անգլիական դեսպանատունը։

Միսիոներական շարժման տարածումը բողոքի ալիք առաջ բերեց Կ. Պոլսի հայ մտավորականության մեջ։ Մ. Պեշիկթաշլյանը գրեց մի շարք հոդվածներ, Ա. Հայկունին 1860 թ. հրատարակեց «Թուրֆանտա տիկինը և իր գաղափարը ամերիկացի երիցական քարոզչաց վրա», «Պղատոն ի Վոսբոր» գործերը, որտեղ ամերիկացի քարոզիչներին անվանեց «ինքնակոչ առաքյալներ», «անճոռնի և իմաստակ փախստականներ»։ «Մեղու» հոդվածաշարով քողազերծ արեց բողոքականների դեմքը, արևմտահայությանը թախանձեց հեռու մնալ «վարակիչ այդ ախտից»։ Ներսես Աշտարակեցի կաթողիկոսը հատուկ կոնդակով հայ ժողովրդին կոչ արեց զոհ չգնալ եվրոպացի ու ամերիկացի քարոզիչների «մեղրածոր լեզվին»։ Կ. Պոլսի հայոց պատրիար-

142 Տե՛ս А. Д. Желтяков, Ю. А. Петросян, История просвещения в Турции, М., 1965, стр. 137—138.

քը բազմաթիվ դիմումներով ու գրություններով բողոքում էր էջմիածնի կաթողիկոսին, որ ինքը չի կարող արգելել բողոքականության տարածումը, քանի որ նրանց հովանավորում է Կ. Պոլսի անգլիական դեսպանը։

Կաթոլիկների, բողոքականների և լուսավորչականների միջև մղվող պայքարը մեծ ծավալ ստացավ։ Դավանաբանական այդ վեճերը խիստ բացասական դեր խաղացին Օսմանյան կայսրության տիրապետության տակ հեծող արևմտահայության սոցիալ-քաղաքական կյանքում։

## 5. ԱՐԵՎՄՏԱՀԱՅԵՐԻ ԱԶԳԱՅԻՆ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

XIX դարի առաջին կեսին Կ. Պոլսում աստիճանաբար աշխուժանում էին հասարակական-քաղաքական շարժումները, հատկապես ամիրայության դեմ բռնկված արհեստավորական ելույթները։

Մինչև 1840-ական թթ. պոլսահայ գաղթօջախի ներքին կյանքը տնօրինում էին ամիրաները և նրանց կամակատար Կ. Պոլսի հայոց պատրիարքները։ Ամիրաները առաջադրում և սուլթանների միջնորդությամբ քմահաճորեն հաստատել կամ հեռացնել էին տալիս պատրիարքին, լուծում կրոնադավանաբանական բնույթի վեճերը, վճռում գավառին հուզող հարցերը, բացում և փակում դպրոցներ։

Սակայն արևմտահայ կրոնական համայնքին վերաբերող եկեղեցական, երբեմն էլ աշխարհիկ խնդիրներում տակավին ընդարձակ իրավունքներից էին օգտվում Կ. Պոլսի հայոց պատրիարքները, որոնց ստացած առանձնաշնորհումները սկիզբ էին առնում սուլթան Մահմեդ Ֆաթիհի ժամանակներից և շարունակում գոյություն ունենալ մինչև 1860 թվականը։ Նախքան Ազգային սահմանադրությունը, հայոց պատրիարքներն իրավունք ունեին դատել, պատժել, նույնիսկ աքսորել բոլոր այն հոգևորական ու աշխարհական հայերին, որոնք անհնազանդ էին գտնվել կամ մեղանչել էին կրոնական ավանդույթների դեմ, վատնել եկեղեցու հարստությունը, հրաժարվել հարկատվությունից[143]։

Պատրիարքների ու ամիրաների վերոհիշյալ իրավունքները ծանր էին նստում գավառներում ապրող արևմտահայության վրա, քանի որ այստեղ էլ չարաշահումներն ու բռնությունները գործադրում էին եկեղեցական թեմերի առաջնորդները, հայ աղաները։

Դարի առաջին քառորդին պոլսահայ արհեստավորությունը, քաղաքականապես հասունանալով, իր շահերը գիտակցելով, մարտահրավեր էր նետում ամիրայությանն ու պատրիարքին։ 1820 թ. օգոստոսին տեղի է ունենում արհեստավորության կազմակերպած անդրանիկ ելույթն՝ ուղղված ամիրայության և նրա դրածո Պողոս պատրիարքի դեմ։

Այդ օրերին մայրաքաղաքում լուրեր էին տարածվել, թե պատրիարքը կաթոլիկություն է ընդունել։ Օգտվելով այս առիթից, օգոստոսի 8-ին ցուցարարները հոծ բազմությամբ մտնում են պատրիարքարան՝ Պողոսին սպանելու մտադրությամբ։ Պողոսը ճողոպրում է։ Արհեստավորները չեն հեռա-

143 «Մասիս», 1893, էջ 163-ի ծանոթագրությունը։

նում։ Վրա են հասնում թուրք զինվորները և ցրում ցուցարարներին։ Օգոստոսի 9-ին արհեստավորներն իրենց պահանջները ձևակերպում են և գրավոր ներկայացնում Բ. Դռանը։ Մեծ սադրազամը ամիրաների սադրանքով բանտարկում է ցույցի ղեկավարներին։ Օգոստոսի 18-ին կեսարացի Հակոբը և Գրիգոր Սաքայանը մահապատժի են դատապարտվում։ Առանց վճռի Դելի Բաղդասարին, Կարապետ սարկավագին, պատանի Ազարիային կառափնարան են առաջնորդում, իսկ բազմաթիվ ցուցարարների աքսորում։

Արհեստավորության ցույցեր են բռնկվում նաև 1825, 1827, 1832, 1836 թվականներին։ Նախորդի ծավալը չընդունած, բայց ամիրայական մենատիրության դեմ խոյացած այս ընդվզումները ժողովրդական զանգվածներին արդյունք չտվեցին։ Սուլթանը դեռ զգում էր ամիրաների կարիքը, ուստի կատարում էր նրանց կամքը, հաճությամբ պատժում արհեստավորներին։

Արհեստավորական ցույցերն ավելի հաճախակի և հուժկու դարձան 1840-ական թվականներին։ 1838 թ. սեպտեմբերի 9-ին Կ. Պոլսի Սկյուտար թաղամասում բացվեց գիշերօթիկ դպրոց։ Ըստ նախնական պայմանավորվածության, Սկյուտարի ճեմարանի ծախսերը պետք է հոգային ամիրաները և Երուսաղեմի պատրիարքությունը՝ տրամադրելով տարեկան 20 հազար դահեկան նպաստ։ Այնտեղ պիտի սովորեին նաև էսնաֆների երեխաները։

Ամիրաներն «անպատվաբեր» են համարում իրենց երեխաների կողքին տեսնել «հասարակ մարդկանց» զավակներին, դրա համար էլ ոչ միայն միջոցներ չտրամադրեցին, այլև Երուսաղեմի պատրիարքին պարտադրեցին հրաժարվել խոստացած նպաստատվությունից։ Արհեստավորներն ստիպված էին դրամ հանգանակել, միաժամանակ Հակոբ պատրիարքին խնդրել ամեն մի անձնագրի վրա հինգ ղուրուշ հարկ դնել և այդ միջոցներով երկարաձգել ճեմարանի գոյությունը։ «Ժողովրդական արհեստավոր մասը ջանք կթափե ճեմարանի կանգուն պահելուն, մինչդեռ ամիրայությունը կփակե այն»[144]։

Սկյուտարի ճեմարանի շուրջը սկսված պայքարը գնալով սուր կերպարանք ստացավ։ 1841 թ. կազմվեց Միական ընկերությունը, որի մեջ մտնող 24 արհեստավորները որոշեցին դրամ հանգանակել և սեփական միջոցներով գիշերօթիկ դպրոցը պահել։ Մարտին կառավարությունը ցրեց այդ հանձնախումբը, փակեց ճեմարանը։ Ապրիլի 13-ին ճեմարանի մի խումբ աշակերտներ, ներկայանալով մեծ սադրազամին, աղերսագիր մատուցեցին և խնդրեցին 24 արհեստավորներից կազմված հանձնախմբի վերականգնում, ճեմարանի նոր հոգաբարձության ստեղծում[145]։ Կառավարությունը սկզբում համաձայնվեց կատարելու ցուցարարների պահանջները։ Սակայն ամիրաները օգտագործելով իրենց հարստությունը, պալատում գրաված դիրքը, արքունի պաշտոնյաների ու սուլթանի հետ ունեցած կապերը, տապալել են տալիս արհեստավորներին ընդառաջող հայոց պատրիարքին, աթոռը հանձնում իրենց կամակատարին[146]։ Արհեստավորներն ստիպված են լինում նորից բո-

---

144 Հ. Պարոնյան, Երկեր, հատ. 3, էջ 55։

145 Ա. Պերպերյան, Պատմություն հայոց, Կ. Պոլիս, 1871, էջ 272։

146 Նույն տեղում, էջ 272—273։

զրկել Բ. Դռանը, բայց կառավարությունը օգոստոսի 14-ին ձերբակալում է ճեմարանի վարչության 24 անդամներին։ Կղերա-ամիրայական ռեակցիան փաստորեն վերստանում է իր մենատիրական դիրքը։

Այս բացարձակ անարդարությունից զայրացած, 1841 թ. օգոստոսի 24-ին պանդուխտ օրամշակներից, արհեստավորներից բաղկացած երեք հազարանոց ամբոխը նոր ու հզոր ցույց կազմակերպեց։ «Չենք ուզեր պատրիարք և սեղանավոր ամիրաներից կազմված վարչությունը» կոչով նրանք պահանջեցին ազատել բանտարկյալներին։ Բողոքի այս ցույցը ղեկավարում էր «գինեպան Իսկենտերը—զայրն ճարտարախոս»[147]։

Ամբոխի հուզմունքից վախեցած Րիֆատ փաշան ակամայից համաձայնեց ազատ արձակել կալանավորներին։ Սակայն չանցած քսան օր, արդարադատության ատյան կանչվեցին արհեստավորների ղեկավարները և հարցաքննությունից հետո մայրաքաղաքից աքսորվեցին Պողոս և Հովհաննես վարդապետները, Հակոբիկ Մանվելյանը, ոսկերիչ Անդրիասը, Տիվիթյան Գևորգը, պասմաճի Պետրոսը, հարթաքչի Հովհաննեսը։ Աքսորի ահից շատերն անցան Արևելյան Հայաստան, իսկ գինեպան Իսկենդերը փախավ Օդեսա։

Բանտարկությունների ու խստությունները ոչ միայն չվհատեցրին, այլ պայքարի ոգեշնչեցին մայրաքաղաքի արհեստավորությանը, նրա հետ համաքայլ ընթացող գավառահայ պանդուխտներին։ 1841 թ. նոյեմբերի 9-ին նոր ցույց կազմակերպվեց։ Լցվելով նավակները, ցուցարարները շարժվում են դեպի սուլթանի պալատը, աղերսագիր ներկայացնում նրան, որի մեջ շեշտվում է, թե «տերության հնազանդ են, բայց ամիրաներու գերի չեն ուզեր մնալ, ավելի կսիրեն մեռնիլ, քան անոնց ծառայել»[148]։

Մեծ սադրազամի հրամանով, թուրքական զափթիեները շրջապատում են ցուցարարներին, բանտարկում շատերին, սակայն շուտով ազատ արձակում։ «Հազիվ երկու շաբաթ հետո Աստվածատուրի ընտրութենեն, 1841 թվականի հոկտեմբերի 3-ին կը փակվեր Սկյուտարի ճեմարանը, իբր պատճառ ազգին խռովության... Սակայն արհեստավորք պարտություն չխոստովանեցան, այլ ընդհակառակը ավելի սերտիվ հարեցան ամիրաներու լուծը թոթափելու գաղափարին»[149]։

1841 թ. նոյեմբերի 9-ին կրկին ցույց է կազմակերպվում։ Կառավարությունը տեսնելով, որ այլևս չի կարող հանգիստ վիճակում պահել մայրաքաղաքը, ընդառաջելով նորընտիր պատրիարքի թախանձանքին, դեկտեմբերի 12-ին կայսերական հրովարտակով 27 արհեստավորներից կազմված վարչությանն է հանձնում պատրիարքարանի տնտեսական գործունեության ղեկավարությունը։ Չնայած փակվում է Սկյուտարի ճեմարանը, բայց և այնպես պարտվում է ամիրայությունը։ Հակառակ վերջիններիս ոտնձգություններին, էսնաֆները հաղթանակ են տանում և ջանում նվաճել նոր իրավունքներ։

1846 թ. հոկտեմբերի 1-ին վերաբացվում է Սկյուտարի ճեմարանը։ Նրա

---

147 Ա. Պերպերյան. Պատմություն հայոց, էջ 273։

148 Մ. Օրմանյան, Ազգապատում, մասն երրորդ, Երուսաղեմ, 1927, էջ 3733։

149 «Ընդարձակ օրացույց ս. Փրկչյան հիվանդանոցի հայոց», Կ. Պոլիս, 1910, էջ 196։

շուրջն անմիջապես բորբոքվում է նախկին պայքարը։ Հայոց պատրիարքը հարկադրված էր հաշտարարի դեր ստանձնել, ամիրաներին համոզելով կառավարության համաձայնությունն ստանալ, որպեսզի արհեստավորության համար տեղեր հատկացվեին ազգային-մշակութային բնույթի հիմնարկների գործերը տնօրինող մարմինների մեջ։ Դեռևս 1846 թ. կազմված Ազգային ժողովի 30 անդամներից 16-ը ամիրաներ էին, 14-ը՝ էսնաֆներ։ 1847 թ. մայիսի 9-ին այդ ժողովը վերակազմվում է երկուսի՝ Կրոնական ժողով՝ բաղկացած 14 անդամներից, Քաղաքական ժողով՝ 20 հոգուց։ Աբդուլ Մեջիդի մայիսի 20-ի հրովարտակով վավերացված, արհեստավորներից ու ամիրաներից բաղկացած, պատրիարքի նախագահությամբ գործող այս հիմնարկությունները նոր երևույթ էին արևմտահայոց կյանքում։

Այսպիսով, 1840-ական թթ. կեսերից փաստորեն սահմանափակվում են ամիրաների մենատիրական իրավունքները, վերջ է տրվում կղերա-ավատական վերնախավերի անկաշկանդ թելադրանքին արևմտահայ մշակութային օջախների վրա, ուժեղանում է լուսավորական շարժման ազդեցությունը, պայքարի հրապարակ է դուրս գալիս արհեստավորությունը, որն աստիճանաբար իր շուրջն է համախմբում մայրաքաղաքի աշխատավորական զանգվածներին։

Ղրիմի պատերազմից հետո Թուրքիայի ներքին ու արտաքին ծանր կացությունն օգտագործեցին Եվրոպայի մեծ տերությունները, որոնք կարճ ժամանակամիջոցում տեր դարձան կայսրության տնտեսական կարևոր մարզերին, կիսագաղութային կախման մեջ դրեցին երկիրը։ Գնալով անմխիթարական դարձավ կայսրության տնտեսական ու քաղաքական վիճակը։

Զգալով այս բոլորը, Նոր Թուրքիայի կողմնակիցները, երկրի ներքին գործերը արտաքին միջամտությունից զերծ պահելու, վարկատուների ձեռքին մանրադրամի դեր կատարող քրիստոնյա հպատակ ազգերին սիրաշահելու, նրանց և մանավանդ մահմեդական ժողովուրդների մեջ լեռնացող դժգոհությունը կանխելու նպատակով Աբդուլ Մեջիդին ստիպեցին, թեկուզ խոսքով, քրիստոնյա ժողովուրդներին ազգային ներքին գործերը տնօրինող կանոնադրությունների ստեղծման թույլտվություն տալ։ Դրանք ավելի շուտ ժողովրդական զանգվածներին խաբելու և արտաքին միջամտություններից խուսափելու միջոցառումներ էին։ Փարիզի 1856 թ. մարտի 30-ի պայմանագրում մտցված 9-րդ հոդվածը խոսքով ճանաչում էր քրիստոնյա հպատակների դարերով ապաճանաչված իրավունքները։ Այն սուլթանի ու թուրք ֆեոդալների կամքին հակառակ, օբյեկտիվորեն նպաստեց հայ հասարակական-քաղաքական ու մշակութային կյանքի աշխուժացմանը։

Օգտվելով ընձեռած հնարավորություններից, նոր գաղափարներով սնված, արհեստավորների և ողջ աշխատավորության ճակատագրով մտահոգվող մտավորականները նորից ոտքի են ելնում։ Պոլսի հայ գաղութը դառնում է դասակարգային պայքարի մարտադաշտ, նոր թափ է ստանում լուսավորական շարժումը։ Ամիրայության, պատրիարքի, նրանց հովանավորող սուլթանական կառավարության դեմ նախկինում եղած ընդվզումները 1850-ական թվականներին թևակոխում են վճռական շրջափուլ։ Դարամիջի երկու

տասնամյակներին Թուրք փաշաներին, վեզիրներին, անգամ սուլթաններին նեցուկ դարձած հայ դրամատերերի դեմ մարտադրոշ են պարզում Եվրոպայից վերադարձած, ֆրանսիական 1848 թ. հեղափոխության ավազանում մկրտված, բուրժուական առաջավոր մտածողների գաղափարներին հաղորդակից մի շարք հայ մտավորականներ։ Սրանք ջանում էին ստեղծել մի այնպիսի կանոնադրություն, որով հնարավոր լիներ չեզոքացնել ֆեոդալական կարգերի հայ պաշտպաններին և ազգային հիմնարկների մեջ տեղեր ապահովել առևտրական նորելուկ բուրժուազիային։ Գր. Օտյանը, Սերվիչենը (Սերովբե Վիչենյան), Գ. Պալյանը, Ն. Ռուսինյանը մի քանի հոգևորականների մասնակցությամբ 1854 թ. կազմեցին նախօրոք մտահղացված կանոնադրության տեքստը և օգոստոսի 26-ին ներկայացրին պատրիարքին ի հաստատություն։ Նախագիծը կազմված էր բուրժուական սահմանադրությունների սկզբունքով, տեղ-տեղ նույնիսկ արտագրված էին 1789 թ. ֆրանսիական հեղափոխությունից հետո ընդունված սահմանադրության որոշ հոդվածները։ Եվրոպական ազատամտական հովերով տարված հայ լուսավորյալ սահմանադրականներն իրենց կազմած օրինագծի մեջ տեսնում էին ապագա ազգային ինքնավարության սաղմը։

Կանոնադրության անդրանիկ նախագիծը դուր չեկավ հայ ամիրաներին և երկու տարի ընթացքի մեջ չէր դրվում։ Կազմվեց 21 եկեղեցականներից ու աշխարհականներից բաղկացած սահմանադրական նոր հանձնաժողով, որը 1856 թ. դեկտեմբերին ավարտում է վաղուց ի վեր սկսած իր աշխատանքը[150] և 1857 թ. մարտի 22-ին հրապարակում հայկական համայնքի ներքին գործերի տնօրինությունից շատ հեռու գնացող, ազատամիտ, ընդարձակածավալ կանոնադրությունը[151]; «Բայց հազիվ քանի մը ամիս կանցնի, և ահա ամիրաներու խումբ մը, իրենց հետ ունենալով մաս մը կղերական դասեն, այն կանոնադրությունը անհարմար կտեսնեն, ազգին կրոնքի և ազգային ավանդության հակառակ բաներ անոր մեջ տեսնել կկարծեն...»[152]; Կառավարության միջամտությամբ խափանվում է գործը, ընտրվում ավելի չափավոր հայացքներ ունեցող անձնավորություններից բաղկացած նոր հանձնաժողով։

Այս հանձնաժողովը 1858 թ. երկրորդ կեսին վերսկսում է իր աշխատանքը, ձգտում շուտափույթ վերամշակել և Ազգային ժողովի վավերացմանը ներկայացնել կանոնադրության խմբագրված նախագիծը։ Գործը նորից հետաձգվում է։ Նախ վախճանվում է ամենայն հայոց կաթողիկոս Ներսես Աշտարակեցին, ապա և 1858 թ. հունիսին հրաժարական է տալիս Հակոբ պատրիարքը, հոկտեմբերի 17-ին նոր պատրիարք է ընտրվում Գեորգ եպիսկոպոսը։

Հակասահմանադրականները ձգտում են տապալել կանոնադրությունը, քանի որ «... շատ ազատամիտ կնկատվեր Տատյանց, Պալյանց, Երամյանց և

150 «Մեղու», 1856, դեկտեմբեր, № 31, էջ 173—175։
151 «Մասիս», 1857, 28 մարտի, № 270։
152 «Հանդես ամսօրեա», 1902, հուլիս, էջ 207։

սոնց համախոհ ամիրայական խմբակն»[153]։ Հակառակ սրանց, 1859 թ. մայիսին ընտրվում է հերթական հանձնաժողովը՝ 5 եկեղեցականների և 14 աշխարհականների մասնակցությամբ։ Հանձնախմբի կազմումն էին Կ. Յութուճյանը, Բարունակ բեյը, Մկրտիչ Աղաթոնը, Նահապետ Ռուսինյանը, Ենովք Տեմիրճիպաշյանը, Գրիգոր Օտյանը։ Խմբի ոգին և գաղափարական առաջնորդը տակավին ֆրանսիական հեղափոխության գաղափարներով տարված Նահապետ Ռուսինյանն էր, որը գրեթե միանձնյա խմբագրում էր կանոնադրությունը։

Հանձնախումբը նոյեմբերին ավարտում է աշխատանքները և վերամըշակված տեքստը ներկայացնում Ազգային ընդհանուր ժողովի հաստատությանը[154]։ Քննարկման ժամանակ ամիրաները առաջարկ են մտցնում նույն նիստում չվավերացնել այն, այլ փոփոխությունները հանգամանորեն քըննելուց հետո ներկայացնել հաջորդ անգամ։ Սակայն հաջորդ նիստը հետաձգվում է անորոշ ժամանակով. ավելին, Գեորգ պատրիարքը, դաշնակցած ամիրայական խմբավորման հետ, ոչնչի առաջ կանգ չի առնում, ջանալով Բ. Դռան միջնորդությամբ մեկընդմիշտ արգելել տալ կանոնադրությունը։

Հակասահմանադրականների նման արարքը զայրացնում է սահմանադըրականներին և աստիճանաբար ուժեղացնում սահմանադրական շարժումը։ Կանոնադրության արդեն պաշտպան են կանգնում ոչ միայն բուրժուական մտավորականները, արհեստավորները, այլև պանդուխտ մշակները և գավառահայ հոծ բազմությունը։ Այս ամենը նոր ոգևորություն է առաջ բերում և պոլսահայ լրագրապետերին մղում ակտիվ գործողության։ Աշխուժանում են դեմոկրատական ուժերը, վարկազրկվում է պատրիարքը և հեռացվում։ Նորընտիր պատրիարք Սարգիս Գույումճյանը 1860 թ. մայիսի 24-ին ստիպված ընդունում է կանոնադրությունը։ Գր. Օտյանի, Սերվիչենի, Գ. Պալյանի կրկին խմբագրումով կանոնադրությունը ներկայացվում է ընդհանուր ժողովի քննարկմանը և հաստատվում։ Ն. Ռուսինյանի առաջարկությամբ այն ստանում է Ազգային սահմանադրություն անվանումը[155]։

Ազգային սահմանադրության այս տարբերակը նվաճվեց Կ. Պոլսի հայ արհեստավորների, օրամշակ բանվորների, բազմահազար պանդուխտների և սրանց ղեկավարող հայ առաջադեմ մտավորականության պայքարի գնով։ Չի կարելի համաձայնվել հայ բուրժուական այն պատմաբանների հետ, որոնք Սահմանադրությունը դիտում են իբրև բարեխնամ սուլթանի գթության ու շընորհի արդյունք։ Արևմտահայ դեմոկրատիայի օրգան «Մեղու» պարբերականի վկայությամբ. «...տասն անգամ տակն ու վրա եղավ ազգը այս բանիս (Սահմանադրության —խմբ.) համար...»[156]։

1860 թ. ընդունված Ազգային սահմանադրությունը բաղկացած էր ընդարձակ առաջաբանից, 150 հոդվածներից։ Պետք է ընտրվեին 220 երեսփո-

---

153 Մ. Օրմանյան, Ազգապատում, մասն երրորդ, էջ 4016։

154 «Մասիս», 1859, 24 դեկտեմբերի, № 413։

155 «Մասիս», 1860, № 433, 26 մայիսի։

156 «Մեղու», 1860, № 86, էջ 11։

խաններ, հրավիրվեին 140 անդամակիցներ։ Կազմվում էին կրոնական ու քաղաքական ժողովներ, որոնց միացյալ ընտրությամբ ստեղծված Գերագույն ժողովը օրենսդիր իրավունքներ ուներ։ Ժողովների որոշումները գործադրության էր դնում Ազգային կենտրոնական վարչությունը[157]։

Սահմանափակվում էին ամիրաների իրավունքները։ Կ. Պոլսի հայոց պատրիարքին քվեարկող Ազգային ժողովի երեսփոխաններին իրավունք էր վերապահվում նախօրոք, նույնիսկ մամուլի միջոցով, հրապարակայնորեն իրենց կարծիքներն հայտնել պատրիարքի թեկնածության մասին։ Պատրիարքը զրկվում էր ինքնագլուխ ազգի ներքին գործերին վերաբերող օրենքներ հրապարակելու, առավել ևս գործադրության մեջ դնելու իր նախկին արտոնությունից։ Նա, փաստորեն, մնում էր ազգի և կառավարության միջև միջնորդ մի օղակ, որը, եթե Սահմանադրությանը հակառակ գործեր (հոդված 5), կհեռացվեր պաշտոնից։

Կրոնական ու քաղաքական ժողովների անդամներն ընտրվում էին գաղտնի քվեարկությամբ։ Կրոնական ժողովի ղեկավար ու մշտական գործող կազմը բաղկացած էր 12 հոգուց, իսկ քաղաքականինը՝ 20։ Քաղաքական ժողովն իր հերթին կազմում էր ազգային խորհուրդներ և հոգաբարձություններ։ Սրան կից ստեղծվում էին ուսումնական և դատական խորհուրդներ։ Դատական խորհրդի նախագահ էր նշանակվում Կ. Պոլսի պատրիարքի փոխանորդը (հոդված 44)։ Կրոնական ժողովը կազմել էր տալիս վանորեից խորհուրդ, ելևմտից, կտակաց, հիվանդանոցի հոգաբարձություններ։ Այս մարմինները ղեկավարում էին համապատասխան հիմնարկների գործերն ու տընտեսությունը[158]։ Վերոհիշյալ հիմնարկների ստորին օղակներն էին գավառական ու թաղական խորհուրդները, որոնք անմիջապես շփվում էին ժողովրդի հետ։

Ակնհայտ է, որ արևմտահայերի Ազգային սահմանադրություն անունն իր ներքին բովանդակությանն անհարիր էր։ Սահմանադրությունը սոսկ հայկական համայնքի ներքին կյանքին վերաբերող մի կանոնադրություն էր և սուլթանական բռնապետության ճնշումներից հայ ժողովրդի իրավունքների պաշտպանության տեսակետից արժեք չէր ներկայացնում։ Ինչպես հետագայում գրում էր բելգիացի Ռոլեն Ժեկմենը, «Այստեղ ամեն ինչ կար, բացի մի հոդվածից, որի վրա հայը կարողանար հենվել, որպեսզի քուրդը չխլեր նրա ոչխարները, բեյը չբռնաբարեր նրա աղջիկներին և չվարեր նրա հողը, հարկահավաքը երկու կամ երեք անգամ չպահանջեր միևնույն հարկը, մի խոսքով՝ ամեն ինչ կար, բացի մի այնպիսի կարգադրությունից, որն իրոք երաշխիք լիներ թուրքական կառավարության կամայականության դեմ»[159]։ Սահմանադրությունը չէր ներկայացնում արևմտահայ աշխատավորության հավաքական կամքը, չէր արդարացնում նրա հույսերն ու ակնկալությունները։ Մ. Նալբանդյանի բնութագրությամբ «... դա մի անուն է, որ անիմաստ է,

---

157 «Ազգային սահմանադրութիւն հայոց», Կ. Պոլիս, 1860, էջ 26, 28։

158 Նույն տեղում, էջ 27։

159 *М. Г. Ролен-Жекмен,* Армения, армяне и трактаты, М., 1896, стр. 197.

թե հայ ազգի և թե այս կանոնադրության իսկ վերաբերյալ»։ Զուր չէ, որ մեծ վեզիր Ալի փաշան արհամարհանքով «տեղից չշարժվող քառակուսի անիվ» էր անվանում այն։

Չնայած այս բոլորին, արևելյան բռնապետների դժնի տիրապետության պայմաններում կյանքի կոչված Ազգային սահմանադրությունը առաջադիմական երևույթ էր։ Այն պայքարի էր հանում ինչպես նոր ձևավորվող բուրժուազիային, այնպես էլ ժողովրդական զանգվածներին։ 1850—60-ական թթ. Ազգային սահմանադրությունը այն առանցքն էր, որի շուրջը պտտվում էին հայ հասարակական-քաղաքական հոսանքներն ու պարբերաթերթերը, որոնք սահմանադրության կապակցությամբ հայտնում էին իրենց կարծիքները ժամանակաշրջանի ամենքին հուզող հարցերի մասին։ Արևմտահայերի ազատագրական պայքարի գաղափարաբանության կաղապարման տեսակետից իսկ էական դեր խաղաց 1860—1863 թթ. ծավալված սահմանադրական շարժումը:

Ազգային ժողովի ու պատրիարքի կողմից 1860 թ. մայիսի 24-ին ընդունված Ազգային սահմանադրությունը գործադրության մեջ կարող էր դրվել կառավարության վավերացումից հետո միայն, որը ուշացվում էր։ Բ. Դուռը պաշտպանում էր ռեակցիոն ամիրաներին ու բարձրաստիճան հոգևորականությանը։ Հովանավորը և հովանավորյալները մտադրվել էին թաղել Սահմանադրությունը։ Նրանք սպասում էին հարմար առիթի, որը և չուշացավ։

1860 թ. դեկտեմբերի 23-ին հանկարծամահ եղավ Երուսաղեմի հայոց պատրիարքը։ Կղերա-ամիրայականները, Կ. Պոլսի հայոց պատրիարքի գլխավորությամբ, մերժելով Սահմանադրության սկզբունքները, պահանջեցին Երուսաղեմի պատրիարքության թեկնածուներն առաջադրել տեղի միաբաններից՝ ներսից: Սահմանադրության պաշտպանները, հասկանալով հակառակորդների հեռամետ դիտավորությունների իմաստը, հակադրվեցին դրան և Երուսաղեմի պատրիարքին դրսից ընտրելու առաջարկ արեցին։

Այս հողի վրա նոր կրքեր բորբոքվեցին։ Պոլսահայ մտավորականությունը համախմբվեց «ներսեն»—«դըրսեն» խմբակցությունների մեջ և շարունակեց պայքարը այլ անունով, բայց փաստորեն Ազգային սահմանադրության մերժման կամ հաստատման համար։ «Սահմանադրականները» «դըրսենականներն» էին, «հակասահմանադրականները»՝ «ներսենականները»։ «Վասնզի այսօր ամեն ողջամիտ հայ կտեսնե թե Երուսաղեմի պատրիարքը մեջեն ըլլա, դուրսեն ըլլա կռիվներուն ներքին նպատակը Սահմանադրության կործանումն է»[160] կամ «Ազգային խավարյալ և կոպտավոր մասը ս. Երուսաղեմի պատրիարքը ընտրելու խնդիրը պատրվակ բռնելով... Հակոբ Տիրունի եպիսկոպոս իրենց գլուխ ունենալով՝ Սահմանադրության կործանել փորձում են. հաջողացուցին, գնացին Դռան կասկածելի ցուցեցին, զրպարտեցին։ Սարգիս պատրիարքն ալ բոլորովին անոնց հորդորությամբ գնաց Դուռը իր ազգը բամբասեց, զրպարտեց»[161]։

---

160 «Մեղու», 1861, հուլիսի 26-ի «Հավելվածը»։

161 Հայկ Ղազարյան, նշվ. աշխ., էջ 459։

1861 թ. հուլիսի 12-ին խառը ժողովը հրավիրեց առաջին նիստը՝ որոշելու Երուսաղեմի պատրիարքության խնդիրը։ Արհեստավորները հավաքվեցին պատրիարքարանի դռան մոտ և պահանջեցին պատրիարքի հրաժարականը։ Նիստն անարդյունք և կիսատ մնաց։ Երեսփոխանները ցրվեցին։ Հուլիսի 21-ին կայացավ հաջորդ նիստը[162]։ Ժողովուրդն իմացավ այդ մասին, խուժեց պատրիարքարան, սպառնալիքներ տեղաց երեսփոխանների գլխին և պահանջեց հավատարիմ մնալ Ազգային սահմանադրության սկզբունքներին։

1861 թ. օգոստոսի 21-ին պոլսահայ աշխատավորությունը ապստամբեց պատրիարքի ու հակասահմանադրականների դեմ։ «Ժողովուրդը ըստ մեծի մասին կբաղկանար ընկերություններէ ու ուսանողներէ»[163]։ Սարգիս պատրիարքը փորձեց դիմել հավաքվածներին, բայց նրան լռեցրին և պահանջեցին հրաժարական տալ կամ հնազանդվել Սահմանադրությանը։ Ապարդյուն անցան Բ. Դռան անունից ժողովրդին արած նրա բոլոր սպառնալիքները։ Հուզումը ավելի ու ավելի էր աճում։ Վրա է հասնում Սելիմ փաշան իր զափթիեններով։ Սակայն մթնոլորտը այնքան շիկացած էր, որ վախեցած զինվորները ետ քաշվեցին։ «Ան ատեն պատրիարքը որոշեց սահմանադրությունը կատարելապես ընդունելու ստորագրություն մը տալ»[164]։

Սահմանադրական շարժման ուժեղացումն անհանգստացրեց կառավարությանը։ Մեծ վեզիր Ալի փաշան, կառավարության կողմից վավերացված չլինելու պատճառաբանությամբ, հատուկ գրությունով պահանջեց դադարեցնել Սահմանադրության գործադրությունը։ Հետադիմականները փաստորեն հասան իրենց նպատակին՝ արգելվեց Սահմանադրությունը[165], ցրվեցին բոլոր համայնաժողովները, որը և առիթ դարձավ, որպեսզի քաղաքական պայքարն ավելի սուր կերպարանք ստանար։

Նախկին լիբերալ-սահմանադրականները, ականատես լինելով ժողովրդական ցույցերին, 1861 թ. վախեցան, սկսեցին պահպանողականների հետ հաշտության եզր փնտրել, և մարտահրապարակը մնաց դեմոկրատական մտավորականությանը, նրա ետևից շարժվող ժողովրդական զանգվածներին։ Սահմանադրության արգելումից քիչ անց փակվեցին նաև «Մեղու», «Մյունատի», «Ծաղիկ» դեմոկրատական պարբերաթերթերը։ Կ. Փանոսյանը, Հ. Սվաճյանը, Գր. Չիլինկիրյանը, Ա. Հայկունին և շատ ուրիշներ սկսեցին թռուցիկներ տպագրել և գաղտնի տարածել ժողովրդի մեջ։

Ժողովրդի և պոլսահայ դեմոկրատների ցուցաբերած հաստատակամությունը վախեցրեց և՛ կառավարությանը, և՛ պատրիարքին։ Սարգիս պատրիարքը հարկադրված հրաժարական տվեց։ Նշանակվեցին համայնաժողովներ՝ Ազգային սահմանադրությունը վերաքննելու հանձնարարությամբ։ Դրանց մեջ ընդգրկվեցին Սերվիչենը, Ստ. Ասլանյանը, Մ. Մինասյանը, Հ. Սուրենյանը, Գր. Օտյանը, Մ. Աղաթոնը, Ն. Ռուսինյանը։ Սահմանադրության նոր նախագիծը 1862 թ. ապրիլին հանձնվում է կառավարության հաստատությանը, որը կրկին դիտավորյալ ուշացվում է։ Պետությունից ու պատ-

162 «Փորձ», 1876, № 3, Ա. Երիցյան, Տաճկահայոց իրավունքները, էջ 155։

163 «Փարիզ», 1861, № 55։

164 Նույն տեղում։

165 «Մասիս», 1861, № 506։

րիարքից դժգոհ աշխատավորությունը նորից բողոքի ցույցեր է կազմակերպում։

1862 թ. օգոստոսի 1-ին, Զեյթունի ապստամբության օրը, ամբոխը հարձակվում է պատրիարքարանի վրա, շենքից վռնդում պատրիարքի տեղապահին և խառը ժողովի անդամներին։ Երեկոյան Սելիմ փաշան շտապում է պատրիարքարան։ Զենքի սպառնալիքի տակ ցուցարարները ցրվում են։ Այս իրադրության մեջ պատրիարքի տեղապահ Մաղաքիան և խառը ժողովի նախագահ Բարունակ բեյը հրաժարվում են պաշտոնից։ Բարձրագույն Դուռը մերժում է նրանց հրաժարականը և խոստանում վավերացնել Ազգային սահմանադրությունը։ 1863 թ. մարտի 17-ին, բազմաթիվ վերափոխություններից հետո, կառավարության կողմից հաստատվեց այն և անմիջապես գործողության մեջ դրվեց։ Մ. Նալբանդյանի արտահայտությամբ «թլպատվեց» Սահմանադրությունը, նախկինում եղած 150 հոդվածների փոխարեն, ազգին հրամցվեց 99 հոդվածներից բաղկացած սահմանափակ մի կանոնադրություն։

Գերազանցապես լիբերալների գրչով վերաձևված 1863 թ. Սահմանադրությունը, նախորդի համեմատությամբ, հետընթաց քայլ էր։ Ազգային ընդհանուր ժողով կազմող երեսփոխանների թիվը 220-ից իջեցվում էր 140-ի, որոնց մեծ մասը ընտրվում էին ոչ թե աշխարհականների, այլ եկեղեցական ժողովների կողմից։ Արգելվում էր նախկին 140 անդամակիցների մուտքը Ազգային ժողով։ Դեմոկրատական մտավորականությունը զրկվում էր ամբիոնն օգտագործելու հնարավորությունից։ Գավառից եկող 60 երեսփոխանների թիվը իջեցվում էր 40-ի։ Ազգային համագումար ժողովների նստաշրջանների ժամկետը մեկ տարուց երկարաձգվում էր երկուսի։ Ազգային սահմանադրության և սահմանադրական հանձնաժողովների գործունեությունը, բազմաթիվ վերապահումներով, խղճուկ վիճակի և կախման մեջ էր դրվում սուլթանի քմահաճությունից։

Այսպիսով, 1863 թ. մարտին ընտրված սահմանադրական վարչությունը սկզբից ևեթ հանդես եկավ որպես գավառահայ աշխատավորության շահերին հակադրվող մի ուժ։ Կղերա-ամիրայականների հետ դաշինք որոնելու մտադրությամբ, լիբերալները սկսեցին ժողովրդի ձեռքից ետ խլել այն փոքրիկ զիջումները, որոնք սկզբից տրված լինելով, այժմ չափազանց մեծ էին թվում և վախեցնում նրանց։

Ազգային սահմանադրության համար մղվող պայքարն իր բուռն արտահայտությունը գտավ հայ պարբերական մամուլի էջերում։ Հասարակական տարբեր, հակադիր ու իրարամերժ հոսանքների պատկանող արևմտահայ մտավորականները յուրովի գնահատեցին կանոնադրությունը և ջանք չխնայեցին Սահմանադրությունն ու նրա համար ծավալված շարժումը ծառայեցնել իրենց դասակարգային նպատակադրումներին։

Պոլսահայ ամիրաների և նրանց հետ բազմաթիվ գործարքներով աղերսվող բարձրաստիճան հոգևորականության շահերի արտահայտիչ կղերա-ամիրայականներն սկզբից ևեթ դեմ էին Սահմանադրությանը։ Նոր կանոնադրության մեջ նրանք տեսնում էին ոչ միայն իրենց ու պատրիարքի իրավունքների սահմանափակումը, այլ ավելի սարսափելի թվացող բարեփոխու-

թյունները եկեղեցական կանոնների մեջ։ Կղերա-ամիրայականների ձայնափող դարձած «Երևակը», «Արևելյան դարը», «Ժամանակը» և սրանց խմբագիրներ՝ Հովհաննես Տերոյենց-Զամուռճյանը, Տեյիրմենճյանը, Ս. Փափազյանը ամեն կերպ անվանարկում էին սահմանադրականներին, փակել տալիս դեմոկրատական թերթերը, հալածանքի ենթարկում Հ. Սվաճյանին, Կ. Փանոսյանին, Գր. Չիլինկիրյանին։ «Երևակը» սուլթանական կառավարությանը հուշում էր, թե Սահմանադրությունը «... կնշանակե միևնույն կառավարության մեջ երկու կերպ կառավարություն ընդունիլ»[166] կամ «հայախնամ» Թուրքական պետության մեջ նոր պետություն ստեղծել։ Ստրկամիտ ռեակցիոներները ժխտում էին հայկական ինքնավարության, ազգի քաղաքական իշխանության գաղափարները։

Լիբերալ բուրժուական հոսանքը, նրա սահմանադրական ներկայացուցիչներ Գր. Օտյանը, Ն. Ռուսինյանը, Մ. Աղաթոնը, Գ. Պալյանը, այսինքն նախկին լուսավորականները, 1850—1860-ական թթ. ապրեցին գործունեության երկու շրջան։ Մինչև 1861 թ. պոլսահայ լիբերալներն ավելի առաջադիմական դիրքեր էին պաշտպանում։ Նրանց էր պատկանում Ազգային սահմանադրության մտահղացումը, նրա մի քանի տարբերակների խմբագրումը։

1860 թ. «Մեղու» պարբերականում տպագրված Գր. Օտյանի ու Ն. Ռուսինյանի հոդվածաշարում հանգամանորեն շարադրվում էին նրանց հայացքները Ազգային սահմանադրության վերաբերյալ։ Դեռևս համաքայլ ընթացող ապագա դեմոկրատները և լիբերալ-սահմանադրականները գրչով ու խոսքով ապացուցում էին Սահմանադրության անհրաժեշտությունը։

1850-ական թթ. լուսավորյալ սահմանադրականները նույնիսկ մտադրություն ունեին Թուրքիայի տիրապետության տակ հայկական բուրժուական ազգային ինքնավարություն ստեղծել, ապա և ծնունդ տալ պառլամենտական հանրապետության: Սակայն նրանք այդ պատրանքը ուզում էին իրողության վերածել ազգի «լուսավոր ու ճարտասան» ներկայացուցիչների միջոցով, սկզբից ևեթ խուսափելով ժողովրդական զանգվածների լայնահուն հեղափոխական շարժումներից։ Լիբերալները դեռևս 1860 թ., իրենց պարագլուխ Գր. Օտյանի բերանով, ընտրությունների ժամանակ սահմանում էին կրթական ցենզ և անգրագետ գավառահայությանը զրկում ընտրելու և ընտրվելու իրավունքներից։

1861—63 թթ. սահմանադրական շարժումները, Զեյթունի հերոսամարտերը, Վասպուրականի ու Մուշի զինված ելույթները սարսափ ներշնչեցին լիբերալ-սահմանադրականներին։ Նրանք փորձով տեսան, որ ժողովուրդն այլևս իրենց ետևից չի գնում, ընդհակառակը, հակադրվում է չափավոր պահանջներին, ուստի գերադասեցին սահմանազատվել դեմոկրատներից, ընդհանուր ճակատ կազմել կղերա-ամիրայականների հետ և համաձայնվել Սահմանադրության աղճատմանը։ Լիբերալները 1861 թ. մշակեցին գրաքննչական կանոնների անդրանիկ նախագիծը, փորձեցին արգելել պետության ու եկեղեցու մասին քննադատական հոդվածների տպագրումը։

Արևմտահայ լիբերալների օրգան «Մասիս» պարբերաթերթը, սկզբնական

166 «Երևակ», 1861, № 109։

շրջանում հետևողականորեն պաշտպանելով Սահմանադրությունը, երբեմն պայքար մղելով ամիրաների ու պատրիարքի դեմ, 1861—62 թթ. սահմանադրական շարժումից վախեցավ և խմբագրի բերանով օգոստոսյան ցույցերն անվանեց «անկարգ ու անպատեհ» դեպքեր[167]։ Կ. Յութուճյանը, լսելով «Մեղու» և «Ծաղիկ» դեմոկրատական թերթերի փակման լուրը, չվարանեց հրապարակայնորեն կշտամբել նրանց խմբագիրներին։

Գավառահայության շահերի պաշտպան Մ. Խրիմյանը, Գ. Սրվանձտյանցը, Իսկենդերյանը, «Արծվի Վասպուրական» և «Արծվիկ Տարոնո» պարբերաթերթերն ավելի հետևողականորեն պաշտպանեցին Ազգային սահմանադրությունը և չխզեցին իրենց կապերը դեմոկրատական մտավորականության հետ։ Կառավարական շրջաններում «տաքգլուխ» հայի համբավ վայելող Մկրտիչ Խրիմյանը գրում էր. «Սահմանադրություն մերժող դասը ավելի ճասկըցողներն են, քան թե պարզամիտ հասարակությունը»[168]։ Իր կուսակիցների հետ միասին Խրիմյանը գովասանքի խոսքեր չէր խնայում Ազգային սահմանադրության հասցեին, սակայն ծաղրում էր պոլսահայ փափկասուններին լիբերալ բարեհոգությունը, պահանջելով սահմանադրական հիմնարկների ստեղծում Արևմտյան Հայաստանում։

1869 թ. Մ. Խրիմյանը պատրիարք կարգվեց։ Նրա նախաձեռնությամբ ստեղծվեցին գավառահայերի հարստահարությունները ուսումնասիրող հանձնաժողովներ և հայրենասեր երեսփոխանների միջոցով Հայաստանի վիշտը մայրաքաղաք տեղափոխվեց, ճնշված հայ գյուղացու աղեկտուր ճիչը պատրիարքարանի պաշտոնյաների ու սուլթանի թանձրաթաղանթ ականջին հասցվեց։

Սահմանադրական երկարատև շարժման պրոցեսում դեմոկրատական մըտավորականությունը ևս հայացքների երկու շրջան ապրեց։ Պայքարի առաջին էտապում արևմտահայ դեմոկրատիայի տրիբունը՝ Մ. Նալբանդյանի ապագա զինակից Հ. Սվաճյանը սահմանադրական պատրանքի մեջ էր, կարծում էր, թե դրանով կարող է փրկության սպեղանի հասցնել խոշտանգվող գավառին՝ Արևմտյան Հայաստանի աշխատավորությանը։ Տակավին լիբերալներից չսահմանազատված մեղվական երիտասարդությունը հայտարարում էր. «Աշխարհ թող զարմանա, երբ օր մը քո տարեգրությանց այս բերկրալից գլուխը կարդալով տեսնե, թե ի՜նչ մեծ գործ մը, ի՜նչ մեծ դյուրությամբ ի գլուխ ելած է, ու զմայլի հայ ազգին խաղաղասեր բնավորության վրա։ Եվ դուք...աղքատ և հարստահարյալք՝ ցնծացեք և ուրախ եղիք...։ Ծափ զարկեք ու օրհնեցեք ազգին բարերարները»[169]։ Ազգային սահմանադրության հետ ընկըզընական շրջանում մեծ հույսեր էին կապել Հ. Սվաճյանի գաղափարամերձ Կ. Փանոսյանը, Գր. Չիլինկիրյանը, Մ. Մամուրյանը։

1861—1863 թթ., սահմանադրական պայքարի նոր շրջափուլում, լիբերալների ետընթաց շրջադարձը զգաստացրեց ձևավորվող դեմոկրատական հոսանքի ներկայացուցիչներին։ Սուլթանական լծի դեմ սկսված ապստամբական շարժումները, Միքայել Նալբանդյանի զորեղ ազդեցությունը նրանց հանեց սահմանադրական պատրանքների մշուշից։

---

167 «Մասիս», 1862, № 549։

168 «Արծվի Վասպուրական», 1861, № 8, էջ 228—229։

169 «Մեղու», 1860, № 108, օգոստոսի 30, էջ 189։

Դեմոկրատական հոսանքը զգաց, որ լիբերալները, «թլպատելով» Ազգային սահմանադրությունը, լեզու գտնելով պահպանողականների հետ, դրվատելով կանոնադրության նոր նախագիծը, փաստորեն խաբում են ժողովրդին, ձգտում բավարարվածի տեսք ընդունել և վերջիններիս հեռու պահել ոչ միայն սոցիալ-դասակարգային, այլև ազգային-քաղաքական պայքարից։

Դեմոկրատական հոսանքը զատվեց նախկին կուսակիցներից, շարունակեց ղեկավարել պոլսահայ սահմանադրական շարժումը, քննադատության նշանախեց դարձրեց «թլպատված» սահմանադրությունը։ Այս հարցում ամենից վաղ շրջադարձ կատարեց Հ. Սվաճյանը, որին հետևեցին Կ. Փանոսյանը, Մ. Մամուրյանը, Գր. Չիլինկիրյանը և ուրիշներ։

Հ. Սվաճյանը, գաղտնի, թե՛ հրապարակով, «Մեղվի» հոդվածներով, թե՛ «Մատնություն» գրքույկով, ժողովրդի մեջ տարածած բազմաթիվ թռուցիկներով, Ազգային ժողովի ամբիոնից քննադատության կրակ էր տեղում ժողովրդադավ կղերա-ամիրայականների, չափավոր լիբերալների, անգործունյա երեսփոխանների գլխին։ Արդեն հեղափոխական դեմոկրատիզմին հարող Սվաճյանը խոր հիասթափություն էր ապրել այս հարցում, գրելով՝ ժողովուրդը «... երեսփոխան ընտրեց, անոնց տվավ ազգը կառավարելու իշխանությունը և մինչև հիմա ամենայն կերպով հնազանդեցավ անոր։ Սակայն ատոնք, ցավելով կսենք մեծագույն մասով խաբեցին անոր վստահությունը և ի դերև հանեցին անոր գեղեցիկ հույսերը»[170]։

Սահմանադրական անգործունյա հիմնարկները քննադատեց Կ. Փանոսյանը։ Ընտրվելով Ազգային ժողովի երեսփոխան, նա սակայն, շուտով հիասթափվեց և հրաժարվեց մասնակցել նրա նիստերին։ 1863 թ. Մ. Մամուրյանը գրում էր. այժմ «...երբ սահմանադրական հայ կտեսնեմ, կհիշեմ այն մուրացկանը, որ հացը մեղրի գոց ամանի վրա կքսեր և կկարծեր թե մեղր է կերածը... անոր հոտով կկշտանար»[171]։ Մ. Մամուրյանը խիստ դժգոհ էր կրոնական ու քաղաքական ժողովների անդամներից։ Այդ մասին նա ավելացնում է. «մի՞թե Պոլսի հայը Սահմանադրությունը պիտի մեջ բերե, զոր հանուն ազգին շինեց, տպեց և ծոցը դրավ»[172]։ Թեկուզ ուշացումով, բայց և այնպես Գր. Չիլինկիրյանը հասկացավ, որ «Սահմանադրության ազդեցությունը խիստ փանաքի եղավ... ամիրաններու քմածին կամքին հաջորդեց ամիրայական բեկորներու խումբը և անզգա ժողովականներու թոթվումը»[173]։ Պոլսի հայերը հուզվում են, վիճում, գոչում «Կեցցե՛ Սահմանադրությունը», հույս ունենալով դրանով «զորավոր» ազգերի շարքին դասվել»...[174]։

Մ. Նալբանդյանի արևմտահայ զինակիցներ ու հետևորդներ Հ. Սվաճյանը, Կ. Փանոսյանը, Մ. Մամուրյանը, Գր. Չիլինկիրյանը եկան այն համոզման, որ սոցիալ-քաղաքական կազմակերպված պայքարը զինված ապստամբությունն է։ Բայց և այնպես, նրանք չժխտեցին 1850-ական, առավելա-

---

170 «Մեղու», 1865, № 255, էջ 1։

171 Վրույր [Մ. Մամուրյան], Հայկական նամականի, Զմյուռնիա, 1872, էջ 124։

172 Նույն տեղում, էջ 34։

173 Գր. Չիլինկիրյան, Ուղևորություն ի Կոստանդնուպոլիս, Զմյուռնիա, 1883, էջ 58։

174 Նույն տեղում, էջ 56։

պես 60-ական թթ. իրենց մղած սահմանադրական պայքարի, այսինքն՝ համուն ժողովրդական սահմանադրության սկսած շարժման դերը, որն արևմտահայ աշխատավորությանը քաղաքական պայքարի աստիճանի հասունացնելու գործում շոշափելի արդյունք տվեց։ Ազգային սահմանադրությունը սուլթանների տիրապետության տակ դարերից ի վեր հալածվող հայ ժողովրդին ինքնագիտակցության բերեց, պայքարի և հաղթանակի հնարավորության վստահություն ներշնչեց։

Ազգային սահմանադրությունը իր բոլոր թերություններով հանդերձ մի կարևոր էջ էր արևմտահայ հասարակական մտքի ու քաղաքական պայքարի պատմության մեջ։ Հատկապես կարևոր նշանակություն ունեցավ Սահմանադրության համար մղվող պայքարը։

Ազգային սահմանադրությունը առանց փոփոխության գործադրվեց մինչև 1870 թվականը։ Մ. Խրիմյանը իր պատրիարքության վերջին շրջանում պահանջում էր վերանայել Սահմանադրության հոդվածները, փոխել երեսփոխանների թիվը, ընտրության կարգը, միացնել գործադիր ժողովները, կրոնական և քաղաքական խնդիրները զատել իրարից, գավառահայ ներկայացուցիչների քանակն ավելացնել։ Ազգային ժողովը կղերա-պահպանողականների ճնշման տակ մերժեց այդ առաջարկը։ Սահմանադրությունը հարատևեց մինչև 1896 թվականը։ Համիդյան ջարդերի օրերից այն դադարեց գործելուց, ապա վերականգնվեց 1908 թ. Երիտթուրքերի հեղաշրջումից հետո։ Ազգային սահմանադրությունը վերջնականապես արգելվեց 1915 թվականին։ Ցրվեցին Ազգային ժողովները, երեսփոխանների մեծ մասը աքսորվեց կամ ոչնչացվեց Տեր-Զոր տանող ճանապարհին։

Արևմտահայերի Ազգային Սահմանադրությունը, որոշ խմբագրումներով, մինչև օրս էլ գործադրվում է Սփյուռքի մի շարք հայաշատ համայնքներում։

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## Բ Ա Ժ Ի Ն Դ

## ՀԱՅԱՍՏԱՆԸ 1830—1860-ԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԻՆ



## Բ Ա Ժ Ի Ն Դ

## ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԸ

## ԲԱԺԻՆ Ե

## ՀԱՅԿԱԿԱՆ ԳԱՂԹԱՎԱՅՐԵՐԸ

### Գլուխ տասնմեկերորդ.— Հայկական գաղթավայրերը 1800—1870 թթ.



## ԲԱԺԻՆ Զ

## ՄՇԱԿՈՒՅԹԸ (1801—1870)

### Գլուխ տասներկուերորդ.— Լուսավորություն, գիտություն, մամուլ (Գ. Խ. Ստեփանյան)



### Գլուխ տասներեքերորդ.— Գրականություն և արվեստ